ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՂԷ.

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ
# ՀԱԶԵՏՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

ՀԱՏՈՐ Զ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1964

# UNTERSUCHUNGEN ZUR GESCHICHTE DER ARMENISCHEN LITERATUR

BAND VI

VON

P. NERSES AKINIAN

MITGLIED DER MECHITHARISTEN-CONGREGATION

WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1964

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ
# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ
## ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

## ՀԱՏՈՐ Զ

ԳՐԵՑ
Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1964

## Ա Զ Դ

Հեղինակին «Մատենագրական Հետազօտութիւններ»ու այս Զ·րդ հատորին մէջ ամփոփուած են անոր զանազան յօդուածները, ամէնքն ալ նախապէս լոյս տեսած «Հանդէս Ամսօրեայ» Ուսումնաթերթի այլեւայլ տարիներու մէջ (տես Բովանդակութեան ցանկը) :

Հեղինակն ինչ ինչ փոփոխութիւններ եւ երբեմն նաեւ յաւելումներ կատարած է արտատպութեան մէջ, որ լոյս կը տեսնէ իր մահէն — 1963 — ետքը :

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԼԷ.

# ՍՏԵՓԱՆՈՍ ԱՍՈՂՆԻԿ ԵՒ ԿՈՄՍԱՋԱԳՔ

1. ԵԿԱՄՈՒՏ ՏԱՐՐՆԵՐ ՍՏ. ԱՍՈՂՆԻԿԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ: 2. Գ. 20 ԵՒ 22 ԽԱՐԴԱԽՈՒԱԾ: 3. ԲՈՒԼԳԱՐԱՑ ԲՈՐԻՍ Բ. ՑԱՐՆ ԵՒ ԵՂԲԱՅՐՆ ՌՈՄԱՆՈՍ: 4. ԿՈՄՍԱՋԱԳ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ: 5. ԱՒՈՒՍԻԱՆԻ ԵՐՐՈՐԴ ՈՐԴԻՆ ԳՐԻԳՈՐ ՏՈՒԿ

## 1.

*Ստեփանոս Ասողնիկ Տարօնեցի գրած է իր Պատմութիւնն տիեզերական 1004ին իբրեւ տարեգրութիւն երեք գրքերու մէջ, որոնք կը ներկայացնեն հին, միջին եւ նոր դարերու պատմական անցքերը, սկսեալ Ադամէն մինչեւ իր օրերը, կարճ ի կարճոյ, համառօտախօս: Հին եւ միջին դարերու համար ունեցած է աղբիւր հայ եւ հայերէն թարգմանուած օտար պատմագրութիւնները. ինքնակաց պատմիչ է 930—1003 տարիներու համար: Խոյս տուած է դաւանաբանական հարցերէ եւ վիճաբանութիւններէ. զգուշացած է ողբերգութիւններէ, միշտ հետամուտ սակաւախօսութեան, «զի ոչ ճառից են ժամանակ(ք), այլ դոյզն յիշատակարանաց» (էջ 275. հրտ. Մալխասեան):*

*Աչքի առաջ ունենալով Պատմութեանս այս նկարագիրը, հարկադրուած ենք իբրեւ եկամուտ նշաւակել այն բոլոր լայնածաւալ*

եւ կարճառօտ տեղիքները, որոնք կը հակասեն պատմագրին սկզբունքներուն։

Ասոնց են.

ա· Թուղթ Ներսէս Գ. կաթողիկոսի առ Կոստանդին Կայսր. Բ. 2, էջ 89, տ. 23—98, տ. 14· անհարազատ թուղթ մը, որ նաեւ Սեբէոսի Պատմութեան մէջ ներմուծուած է։

բ· Թուղթ առ մետրապոլիտն Սեբաստիոյ, գրեալ հրամանաւ Խաչիկ կաթողիկոսի. Գ. 21, էջ 202—243։

գ· Նախաբան առ մետրապոլիտն գրուած Թուղթին. Գ. 20, էջ 201—202։

դ· Վերջաբան նոյն Թուղթին. Գ. 22, էջ 244—245։

ե· Անդրադարձութիւն Գ. 20 եւ 22 գլուխներուն. Գ. 24, էջ 246, տ. 1—6։

զ· Անդրադարձութիւն Գ. 20 գլուխին. Գ. 43, էջ 276, տ. 1—4։

է· Հատուած մը Բ. 2, էջ 87, տ. 16—88, տ. 19։

ը· Հատուած մը Գ. 7, էջ 178, տ. 19—179, տ. 7։

թ· Ա.—Գ. գիրքերու գլխակարգութիւններն եւ խոստարանութիւնները, պատրաստուած չատ վերիվերոյ։

Յիշուած ա—ը մեծ եւ փոքր ներմուծութիւնները կը չօշափեն առհասարակ դաւանաբանական խնդիրներ եւ վէճեր, յուզուած Հայոց եւ Հոռոմոց մէջ։

*Այստեղ մենք նկատի պիտի առնենք* գ—գ *տեղիքները եւ այն ըստ մասնէ միայն, որոնք սերտիւ կապուած են իրարու հետ* :

*Խմբագիրը* Գ. 20 *գլուխը կը խմբագրէ այսպէս*. «Յաղագս անցուցանելոյ թագաւորին վասլի ի ժողովարանէս Հայոց յաշխարհն Մակեդոնացւոց. եւ հալածանք ի ձեռն Մետրապոլտին Սեբաստիոյ :

*Այլ յորժամ էր ի Բաղդատ Թագաւորն Վարդ եւ խաղաղանայր Թագաւորութիւն Վասլին՝ կամեցաւ յազգէն Հայոց որ ընդ իւրով Թագաւորութեամբն՝ անցուցանել ի Մակեդոնիա ընդդէմ Բուլղարացն, զի չի֊նեսցեն զերկիրն : Որ եւ տարեալ բնակեցոյց գյոլովս յաշխարհն յայն* :

*Եւ կանացի հովիւքն եւ մետրապոլիտն Սեբաստիոյ սկսան նեղել զազգն Հայոց վասն հաւատոյ : Եւ գրնութիւն ի ձեռն առեալ՝ սկսաւ տանջել զքահանայս վասն հաւատոյ. եւ զգլխաւոր քահանայս Սեբաստիոյ քաղաքին երկաթեղէն կապանօք հասուցանէր ի դուռն Թագաւորին : Եւ ի բանտի չարչարեալ զաւագն երիցանցն զԳաբրիէլ [illegible]անին. զի էր այր ծեր եւ իմաստութք լի [illegible] քաջապինդ ի հաւատս աստուածեղէնս : Այս եղեւ ի ՆԼԵ* (986) *Թուականին : Իսկ այլք յաննշան քահանայից եւ երկու եպիսկոպոսունք Սեբաստիոյ եւ Լառիսոյ, Սիօն եւ Յովհաննէս, ի ձեռն նոյն մետրապօլտին ընկալան զժողովն Քաղկեդոնի, ի բաց կալով ի միաւորու*—

*թենէն Հայոց։ Եւ յայնմհետէ արգելլին զժամաձայն Հայոց ի քաղաքէն Սեբաստիոյ, մինչեւ ցգալ Թագաւորին Վասլի յաշխարհն արեւելից. զոր յիւրում տեղւոջն ասասցուք։*

*Եւ ապա մետրապօլիտն այն եւ այլ մետրապօլիտք սկսան թուղթս մեծամեծս գրել առ տէր Խաչիկ Հայոց կաթողիկոս։ Որոց ընդդէմ պատասխանել քաջակորով իմաստիւք յառաջասացեալ վարդապետքն. զոր պարտ համարեցաք զմի ի Թղթոցն կարգել յայսմ վայրի*» (*էջ* 201—202)։

*Կը յաջորդեն* Գ. 21. «Պատասխանի Թղթոյն Մետրապոլտին Սեբաստիոյ, գրեալ հրամանաւ տեառն Խաչկայ Հայոց կաթողիկոսի։ — *Աստուածային վեհագոյն քան զմիտս...*» (*էջ* 202—243) *եւ* Գ. 22. «Թէ զիա՛րդ չարաչար մահուամբ մեռաւ (Զ. *սատակեցաւ*) մետրապօլիտն Սեբաստիոյ եւ վասն թագաւորացն Բուլղարաց, որք սպանին զնա։ — *Իսկ յետ ընդունելոյ զթուղթս զայս՝ ամօթալից լինէր մետրապօլիտն այն։ Բայց ոչինչ թուլացաւ յիւրմէ չարութենէն։ Այլ ի նմին ամի առաքեաց զնա Թագաւորն Վասիլ յաշխարհն Բուլղարաց՝ խաղաղութիւն առնել։ Եւ նոցա խնդրեալ զքոյր Թագաւորին Վասլի ի հարսնութիւն ինքեանց. եւ տուեալ Թագաւորին կին մի ի ծառայից իւրոց, ի կերպ քեռն իւրոյ՝ առաքեաց ի ձեռն մետրապօլտին։ Եւ յերթալն յաշխարհն Բուլղարաց՝ ծանեան զկինն զայն. եւ զատեալ*

*մետրապօլիտն իբրեւ զշուն եւ խարերայ՝ գօղուն եւ ժժան պատեալ զնովաւ՝ հրով տոչորեցին Թագաւորքն Բուլղարաց. զի էին նոքա երկու եղբարք, որք Կոմսաձագքն կոչէին...»* (էջ 244):

Գ. 24. *«Եւ յայսմ ամի, որ էր ՆԼԵ* (986) *Թուականն Հայոց, յորում չարաչար մեռանէր Գաբրիէլ երէց Սերաստիոյ, եւ մետրապօլիտն, որ էր պատճառ սպանման նորա՝ չարաչար մահու չարչարեալ ի Բուլղարս ստտակէր վրէժխնդրութեամբն Աստուծոյ. եւ հարաւ զօրն Վասլի յաշխարհին Բուլղարաց»* (էջ 246, տ. 1—6):

Գ. 43. *Վասիլ Բ.* 1000 *Թուականին Տարոնէն գալով «եւ ի կողմանս Մել(ի)տինոյ եւ ի կայն առաջի քահանայիցն Սերաստիոյ՝ հրամայեաց համարձակ լինել յամենայն գործս հաւատոց եւ հնչեցուցանել զձայն ժամահարի, զոր արգելեալ էր մետրապօլիտն, որպէս յառաջն ասացաք»* (էջ 276):

*Շատ աչքի կը զարնեն* Գ. 20 *գլուխի խոստարանութեան քերականական անկանոնութիւնները. առաջին պարբերութեան սեռի խնդիրը կը պակսի. երկրորդ պարբերութեան «հալածանք» պէտք է ըլլար «յաղագս... Եւ հալածանաց (Հայոց որ) ի ձեռն...»: Տարօրինակ է հոս «ի ժողովարանէս Հայոց» ասութիւնը. բնագիրն ունի «յազգէն Հայոց». պէտք է իմանալ «ի գաւառաց Հայոց որ ընդ*

Թագաւորութեամբ Հոռոմոց»: Նաեւ բնագիրը կ'երեւցնէ անկանոնութիւններ. «կամեցաւ յազգէն Հայոց... անցուցանել ի Մակեդոնիա». չկան ոչ բային տէրն եւ ոչ ալ «անցուցանել» բային խնդիրը: Եթէ «ընդդէմ Բուլղարացն» տարուած է տեղահան ժողովուրդը, տարուած է կռուի եւ ոչ թէ «գի՛ չինեսցեն գերկիրն»: «Որ եւ տարեալ բնակեցոյց». լռուած է «որ»ին յարաբերականը. խմանալու է «Վասիլ» թագաւոր: Այս տեղահանութեան պիտի անդրադառնամ ապա:

Բնագիրը հոս կ'ընդհատի յանկարծօրէն. կը յաջորդէ նոր հատուած մը, որ եկամուտ է, անյարիր նախորդին հետ եւ տարօրինակ իր սկզբնաւորութեամբ: Բովանդակութիւնն է «Հալածանք ի ձեռն մետրապոլտին Սեբաստիոյ», ինչպէս խոստարանութեան մէջ նշանակուած էր. լսենք. «Եւ կանացի հովիւքն եւ Մետրապոլիտն Սեբաստիոյ սկսան նեղել զազգն Հայոց վասն հաւատոյ...»: «Հովիւք եւ Մետրապոլիտն Սեբաստիոյ սկսան... եւ զրոնութիւն ի ձեռն առեալ սկսաւ...»: Այսպէս: Յոգնակին եզակի փոխուած. հալածողն է Սեբաստիոյ Մետրապոլիտը. որուն անունը լռուած է, թէ հոս եւ թէ յաջորդ գլուխներու մէջ: Հալածանքը տեղի ունեցած է Սեբաստիա. «այս եղեւ ի ՆԼԵ (986) թուականին». կրկնուած եւ այլուր: Մետրապոլիտը Հայոց «գլխաւոր» քահանաները երկաթեղէն կապանքներով

Կ. Պոլիս կ՚ուղարկէ. «զաւազն երիցանցն զՊարրիէլ սպանին, զի էր այր ծեր»: «Այլք յաննչան քահանայիցն եւ երկու եպիսկոպոսունք Սերաստիոյ եւ Լառիսոյ... ընկալան զծողոմն Քաղկեդոնի»: «Արգելին զժամաձայնն Հայոց», որ լսեց մինչեւ 1000 թուականը:

Հալածանքը տեղի ունեցած ըլլալու է նաեւ ուրիշ քաղաքներու մէջ, վասն զի «Մետրապոլիտն եւ այլ մետրապոլիտք սկսան թուղթս մեծամեծս գրել առ տէր Խաչիկ Հայոց կաթողիկոս». որոնց պատասխան տուած են «յառաջ ասացեալ վարդապետք»: Կարեւոր համարած է խմբագիրը «զմի ի թղթոցն Հայոց վարդապետաց» զետեղել Պատմութեան մէջ. «կարգել յայսմ վայրի»: Այն է Սերաստիոյ մետրապոլիտին թղթոյն պատասխանը, գրուած «հրամանաւ» կաթողիկոսին: Թէ ո՞վ է յանուանէ այդ թուղթը գրողը, չի գիտեր խմբագիրը. բայց գիտէ թէ ան «յառաջ ասացեալ վարդապետներէն» մէկն է: Վաւերագիր մը, որ ոչ հեղինակին եւ ոչ ալ հասցէակիրին անունները կը կրէ, կը տուժէ իր արժէքէն:

Խմբագիրը երբ կը գրէ, թէ «եւ այլ մետրապոլիտք» թուղթեր գրած են, կ՚երեւայ թէ ծանօթ էր իրեն Մելիտինէի (Մալաթիայի) մետրապոլիտին թուղթը, որուն պատասխանը գրած է նոյն Խաչիկ կաթողիկոսի «հրամանաւ» Սամուէլ Կամրջաձորեցի.

*այս Թուղթը պահուած է մեզի, որ խորագիր կը կրէ. «Տեառն Խաչկայ Հայոց կաթողիկոսի բան խոստովանութեան, պատասխանի Յունաց գրոյն, զոր արձակեալ էր առ նա մետրոպոլիտն Մելիտինոյ», որ ի լուսանցսն աւելի բացայայտ եւ աւելի հարազատ վերնագիրն ունի. «Թուղթ Սամուէլի Կամրջաձորեցւոյ Հայոց փիլիսոփայի. պատասխանի թղթոյն Թէոդորոսի մետրապոլտի Մելիտենոյ, գրեալ հրամանաւ Խաչկայ Հայոց կաթողիկոսի: — Բերաւ գիր ողջունաբեր... գլուխ եպիսկոպոսաց տէր Թէոդորոս մետրապոլիտ մայրաքաղաքիդ Մելետինոյ...» (Գիրք Թղթոց, էջ 302—322):*

*Այս երկու թուղթերու ներքին յատկանիշները, խաղաղական ոգին եւ ճարտար ջատագովութիւնը, մէկ գրիչ կը մատնանշեն. անտեսելով ե՛ւ հոս ե՛ւ հոն ներմուծուած ինչ ինչ հակառակախօս, առաւելապէս յոգնակի երկրորդ դէմքով արտայայտութիւնք, որոնք այն ձեռքէ կը թուին, որ խմբագրած է չարաչար Ստեփանոս Սիւնեցւոյ խաղաղական թուղթն առ Գերմանոս (Գիրք Թղթոց, 373—395): Ստ. Ասողնիկ, որ անձամբ ծանօթ էր «իմաստակ Սամուէլի» եւ կը գրուատէ զանիկա «բազմաշնորհ ի գիտութիւնս Գրոց սրբոց եւ յերգս երաժշտութեանց» (էջ 174), որ եւ է խօսք չ՚ըներ անոր գրած թուղթերու եւ անոնց շարժառիթին մասին:*

Խմբագիրը գրած է թէ Մետրապոլիտը այդ թուղթը ստանալէն ետքը «ամօթալից լինէր... բայց ոչինչ թուլացաւ յիւրմէ չարութենէն»։

Նոյն տարւոյն, 986ին, Վասիլ կայսր Սեբաստիոյ մետրապոլիտը Բուլգարիա կ'ուղարկէ «խաղաղութիւն առնել»։ Բուլգարներու «թագաւորները» պայման կը դնեն, կը խնդրեն կայսեր քոյրը «ի հարսնութիւն իւրեանց»․ կայսրը փոխանակ իր քրոջ կ'ուղարկէ անոր նման «կին մի ի ծառայից (խմացիր յաղախնայց) իւրոց» «ի ձեռն մետրապոլտին»․ խարդախութիւնը կ'իմացուի․ «եւ դատեալ զմետրապոլիտն իբրեւ զչուն եւ խարերայ... հրով տոչորեցին (զնա) թագաւորքն Բուլգարաց»։ Այս թագաւորները «երկու եղբարք» էին։

Այս դէպքին միւսանգամ կ'անդրադառնայ խմբագիրը Գ. 24. նոյն տարին, երբ Գաբրիէլ երէց մեռաւ «չարաչար», նաեւ մետրապոլիտը «չարաչար մահու չարչարեալ ի Բուլգարս սատակէր վրէժխնդրութեամբն Աստուծոյ»․ նոյն տարւոյն նաեւ «հարաւ զօրն Վասլի յաշխարհին Բուլգարաց», որ պատմուած էր նախորդ գլուխին մէջ։

Բիւզանդական աղբիւրներուն անծանօթ է, թէ Վասիլ կայսր Սեբաստիոյ մետրապոլիտը խաղաղութեան համար Բուլգարներու «թագաւորներուն» պատգամաւոր ղրկած

ըՍայ· բայց ծանօթ է անոնց, թէ Վասիլ իր քոյրն Աննա 988ին ի հարսնութիւն տուած է Ռուսներու Վլադիմիր մեծ իշխանին [1]:

Սերաստիոյ «Մետրապոլիտի» անձնաւորութիւնը հնարուած է. ինչ որ կը պատմուի անոր դիպանագնացութեան եւ սպանման մասին, առասպել է [2]:

Դարերու ընթացքին, սկսեալ Զ· դարէն, Հայոց եւ Հոռոմոց մէջ յուզուած են առաւել կամ նուազ չափով դաւանաբանական վիճաբանութիւններ, բարձրաստիճան եկեղեցականներու միջեւ թղթակցութիւններ, բայց թէ նա՞եւ Վասիլ Բ· կայսեր (976—1025) օրով նման վէճեր յարուցուած են, չի գիտեր ԺԲ· դարու հեղինակ Պաւղոս Տարօնեցի· «Մեծ թագաւորն Հոռոմոց Վասիլն զայդ ամենայն քննութիւնդ վասն հաւատոց ոչ է արարեալ ընդ Հայս», կը գրէ առ Թէոփիստէ թուղթին մէջ (էջ 273): Եւ եթէ Տարօնեցին Պաւղոս անտեղեակ է Սերաստիոյ Հայոց հալածանքին, պիտի հետեւցնենք, թէ ան չէր կարդացած Տարօնեցի Ստեփանոսի Պատմութեան մէջ նման հալածանքի մը մասին:

Այն պարագան, որ խմբագիրը այնքան երկար կանգ առած է այս «հալածանքի»

---

[1] H. Gelzer (Krumbacher, Geschichte der byzantinischen Literatur), S. 992. Հմմտ, Lebeau, Histoire du Bas-Empire, tom XIV, Paris 1833, p. 176—178.

[2] Ն· Ադոնց, Samuel l'arménien roi des Bulgares, p. 13, n. 28.

*չուրջը, չորս գլուխներու մէջ անդրադարձած է անոր, ցոյց կու տայ, որ ճիգ թափուած է մտացածին դէպքը իբրեւ պատմական իրողութիւն հաւատացնելու համար:*

*Խմբագիրը մոլեռանդ հակաքաղկեդոնական մըն է, գայրացած ոգւոյ տէր· հռոմատեաց մը, աղբիւրներու պղտորիչ, անվայելուչ համարձակախօս մը, լրջամիտ, պարկեշտասուն հեղինակ մը անուանարկող: Կարելի էր չքմեղել զինքը, եթէ իր ստորագրութեամբ գրուածքի մը մէջ արտայայտած ըլլար իր սրտի գայրոյթը· բայց ան արտազեղած է իր զգածումները լրջամիտ, սրբանունդ, ողջախոհ հեղինակի մը, Ստեփանոս Ասողնիկի անունը կրող գրուածքին մէջ, որ յօրինուած է հրամանաւ Սարգիս կաթողիկոսի: Այդ ողջախոհ հոգին չէր կրնար թոյլ տալ իր գրչին ործոգոքս Եկեղեցւոյ հովիւները «կանացի»[3] որակել, Մետրապոլիտ մը «չուն եւ խաբեբայ» անուանել, եւ անոր սպանութիւնը ներկայացնել «չարա-*

[3] *Այսպէս «կանացի» որակուած են «հովիւքն եւ մետրապոլիտն», վասն զի երկար վարսեր կը կրեն: Այս մասին ակնարկութիւն մը կայ նաեւ Խաչիկ կաթողիկոսի հրամանով գրուած թուղթին մէջ· «Իսկ զինչ* վասն վարսաւոր գիսուցդ *ասիցէք, զոր իբրեւ սահման քրիստոնէութեան զայդոսիկ ունիք»* (Գ. 21, *էջ* 241): *Այս թղթին տեղիքը* (տ. 1—10) *տակայն եկամուտ կ'երեւայ. մինչ թուղթին հեղինակը մետրապոլիտին հետ եզակի երկրորդ դէմքով կը խօսի, հոս յանկարծ յոգնակի երկրորդ դէմքի կը փոխուի: Կը կարծեմ, թէ նաեւ այլուր ներմուծումներ կամ փոփոխութիւններ կրած է թուղթս:*

չար մահու չարչարեալ ի Բուլղարս սատակէր վրէժխնդրութեամբն Աստուծոյ». եւ այս անթիւ աւելորդութեամբ կրկնել թէ «եւ հարաւ զօրն Վասլի յաշխարհն Բուլղարաց»:

2.

Խմբագիրը ոչ միայն ներմուծած է յիշեալ տեղիքները Ասողնիկի Պատմութեան մէջ, այլ եւ խանգարած է Պատմութեան 969—986 տարիներու ժամանակագրութիւնը ետեւառաջութեամբ, յապաւումներով եւ յաւելուածներով: Խաթարուած են յատկապէս Գ. 20 եւ 22 գլուխները: Բնագիրը մերձաւորապէս վերականգնելու համար անհրաժեշտ է առաջնորդ ունենալ Բիւզանդական աղբիւրները: Սխալած է Ն. Ադոնց, երբ յեցած Ասողնիկի Գ. 22 գլուխին վրայ, փորձած է սրբագրել բիւզանդական աղբիւրները:

Այս տեղ նկատի պիտի առնեմ Գ. 20 եւ 22, պատմական տեսակէտէ:

## ՆԻԿԵՓՈՐՈՍ ՓՈԿԱՍ (963—969)

Ասողնիկ իր Պատմութեան այժմեան օրինակին մէջ շատ հարեւանցի յիշած է Նիկեփորոս Փոկասի (963—969) գործունէութեան մասին. կը յիշէ միայն. «Սա քաջապէս յաղթեաց Իսմայէլական զօրուն»: 966ին կը վախճանի Տարօնի Աշոտ իշխանը «եւ Տարօնոյ Հոռոմք տիրեցին»: Վարդ Փոկաս 968ին կ՚արշաւէ Ապահունիք. ի հիմանց կը քանդէ

Մանազկերտի պարիսպները. 969ին կը նուաճուի Անտիոքը: Պատմագիրը յիշատակութիւն չ'ըներ ամենեւին Բիւզանդիոնի Բուլգարաց եւ Ռուսներու հետ վարած քաղաքականութեան մասին: Այս լռութիւնը կը վերագրեմ խմբագրի գործած աւերումին: Գ. 22 (էջ 244) հատուածս. «Այլ ի նմին ամի (986) առաքեաց (Վասիլ Բ.) զնա (զՄետրապոլիտն Սեբաստիոյ) յաշխարհն Բուլղարացն խաղաղութիւն առնել. եւ նոքա (Թագաւորքն) խնդրեալ գքոյր Թագաւորին Վասլի ի հարսնութիւն ինքեանց. եւ տուեալ Թագաւորին կին մի ի ծառայից իւրոց ի կերպ քեռն իւրոյ առաքեաց ի ձեռն Մետրապոլտին...», ցոյց կու տայ թէ Ասողնիկ խօսած էր Նիկեփորի Բուլղար Պետրոս ցարին ուղարկած դեսպանութեան մասին: Հոս սկզբնական բնագիրը աղճատուած է խմբագրէն:

Բիւզանդական աղբիւրները կը պատմեն, թէ Բուլղար պատգամաւորներ Պետրոս ցարի կողմէն ներկայացան Նիկեփորոս Փոկաս կայսեր եւ խնդրեցին տուրքը, զոր յանձն առած էին վճարել նախորդ կայսերք: Նիկեփոր չարաչար վարուեցաւ անոնց հետ: Զանոնք ձեռնունայն արձակելէն ետքը Կալոկիւր պատրիկը Խրիմի Ռուսներուն ղրկեց, յորդորելու անոնց իշխանը Սվեատոսլաւը, որ արշաւէ Բուլղարիա: Իշխանը յօժարութեամբ յանձն առաւ առաջարկը եւ անյապաղ շարժեց իր նաւատորմիղը դէպի Բուլղարիա:

Իր քով մնաց Կալոկիւր· եւ հաճոյացաւ իշխանին· համոզեց զանիկա, որ Բուլգարիա նստի· եւ նպաստէ իրեն, որ կայսերական գահի ինքը տիրանայ։ Այս դաւաճանական ծրագիրները կ'իմանայ Կայսրը· եւ կը փութայ հաշտութիւն կնքել Բուլգարներու հետ ընդդէմ Ռուսներուն· խօսնակներ կ'ուղարկէ Նիկեփոր պատրիկը, կոչուած Երոտիկոս, եւ Փիլոթէոս Եւխայիտացւոց աթոռակալը (Լեւոն Սարկաւագ, Ե· 3, էջ 79) այս կը պատահի 969ին· Կայսրը կ'առաջարկէր Բուլգարներու Պետրոս ցարին նոյն իսկ խնամութիւն երկու արքունեաց, խնդրելով ցարին երկու դուստրները ի հարսնութիւն Ռոմանոս կայսեր երկու զաւակներու։ Դաշնագրութիւնը կնքուեցաւ։

Այս միջեցին Սվեատոսլաւ անցաւ Դանուբը 60·000ով· Բուլգարները 30·000ով բախեցան անոնց հետ եւ պարտուեցան։ Այս ձախողութիւնը պատճառ եղաւ Պետրոս ցարին մահուան· զոր լսելով կայսրը փութաց ցարին երկու որդիքը Բուլգարիա վերադարձնել, որոնք մինչեւ այն ժամանակ Կ· Պոլիս կը գտնուէին։

Կայսրը, որ մտադիր էր անձամբ արշաւել Բուլգարիա, հեռացնելու անկէ Ռուսները, սպանուեցաւ քիչ յետոյ։ Կայսր հռչակուեցաւ Յովհաննէս Զմշկիկ, զոր Ստ· Ասողնիկ Կիւր-Ժան կ'անուանէ (969 դեկտ· 10· հմմտ· Lebeau, ԺԴ·, էջ 84—103)։

*Այս տուեալներու վրայ յեցած կարելի է վերակազմել խաթարուած բնագիրը այսպէս․*

*«Այլ ի նմին ամի առաքեաց* զՆիկեփոր պատրիկ եւ զՓիլոթէոս զաթոռակալն Եւխայիտացւոց, *թագաւորն* Նիկեփոռ *յաշխարհն Բուլգարաց խաղաղութիւն առնել․ եւ նորա խնդրեալ* զերկուսին դստերս *թագաւորին* Պետրոսի *ի հարսնութիւն* երկուց որդւոցն Ռոմանոսի: *Եւ տուեալ թագաւորին* Բուլղարաց *ի ձեռն մետրապոլտին* |||| :»

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՉՄՇԿԻԿ (969, ԴԵԿՏ․ 10—976)

*Սվեատոսլաւ գրաւեց Պրեսլաւեց մայրաքաղաքը: Բորիս Բ․ ցարը, ինչպէս նաեւ թագաւորական ընտանիքը եւ ցարեղբայր Ռոմանոս գերի բռնուեցան: Յոյները չկրցան որ եւ է կերպով օգնել Բուլղարներու:*

*Զմշկիկ կայսր կարեւորագոյն համարեց նախ արեւելքէն պետութեան սպառնացող թշնամիները վանել* (970): *Վերադարձին բերաւ հետը Միջագետքէն անհանգստացնող Պաւղիկեան աղանդաւորները, զորոնք զետեղեց Փիլիպպուպոլսոյ շրջակայքը, թէ երկիրը մշակելու եւ թէ թումբ մը կազմելու Բուլկանեան վայրագ ժողովուրդներու դէմ*[1] :

[1] *Յովհ. Զմշկիկ պատերազմեցաւ Պաւղիկեան եւ նման վայրագ ժողովուրդներու դէմ եւ հաւաքեց զանոնք Ասիայէն իբրեւ տորուկ եւ Խալիբներէ եւ Հայերէ բնակուած երկիրներէն փոխադրեց Թրակիա: Ան պարտադրեց զանոնք, որ նստին Փիլիպպուպոլսի շրջակայքը, ոչ այնչափ զանոնք անքոյթ եւ ամուր քաղաքներէ հեռու պահելու նպատակով, որպէս զի ձեռ–*





Հրաման ապա ուղարկեց արեւելք փութանակի զօրամասեր անցընել արեւմուտք[2], գորոնք Վարդ Սկլերոսի հրամանատարութեան տակ Թրակիա նստեցուց: Այս բանակի մէջ էր հայկական գաւառներէն հանուած հետեւակագունդը, «սաղարք» կոչուած:

Նոյն 970 տարւոյն ապստամբեցաւ կայսեր դէմ Վարդ Փոկաս. կայսրը ուղարկեց անոր վրայ Վարդ Սկլերոսը. որ յաջողեցաւ սիրաշահիլ ապստամբը, զոր Կայսրը ապա աքսորից Քիոս կղզին: 971 գարնան մեկնեցաւ կայսրը դէպի ճակատ ընդդէմ Ռուսներու: Միջամուխ եղաւ Բուլգարիա. յաղթական յառաջացաւ. առաւ Պրեսլաւեց. գտաւ հոն Բորիս Բ. եւ իր ընտանիքը եղբօր հետ: Պատուեց գինքը ցար յորջորջանքով: Պատերազմը շարունակուեցաւ մինչեւ Ռուսներու պարտութիւնը: Բուլգարիա ենթարկուեցաւ Բիւզանդական իշխանութեան:

Կայսրը վերադարձաւ փառօք Կոստանդնուպոլիս, տանելով հետը Բորիս Բ. եւ ընտանիքը, եւ եղբայրն Ռոմանոս: Այն տեղ առաւ անոր գլուխէն ցարական թագը, մերկացուց ցարական հանդերձներէ, փոխարէն

նահաս չըլլան գրաւելու եւ բռնապետելու անոնց, որչափ դիտումով, որ անոնք Սիւթացւոց ապստամբութիւններու դէմ իբրեւ ապահովագոյն պահակներ կանգնին (Աննա Կոմնենուհի, Ալեքսիադ, ԺԴ., 8, 5. էջ 179—180, տպ. Leib, Պարիս 1945): Հմմտ. Lebeau, անդ, 106:

[2] Կեդրենոս, էջ 384. «Թղթովք գրելովք տայր փութանակի յարեւելից զզօրս յարեւմուտս անցուցանել»:

*տալով մագիստրոս տիտղոսը: Իսկ անոր եղբայրը Ռոմանոս ներքինացուեցաւ:*

*Հետեւելով պատմութեան այս ընթացքին՝ կը վերակազմեմ Գ. 20 գլուխի առաջին հատուածը այսպէս, իբրեւ շարունակութիւն էջ 183, տ. 23 հատուածին.*

*Վարդ Փոկաս կ՚ապստամբի. «ընդ որ պատերազմեալ յաղթողն Կիւռ-Ժան՝ յաղթեաց եւ էարկ զՎարդ ի բանտ ի կղզին» (Քիոս). շարունակութիւն էջ 201, տ. 8—13. «Յորժամը [...] խաղաղանայր թագաւորութիւն [Վասլին]* (իմացիր *Կիւր-Ժանի) կամեցաւ յազգէն Հայոց որ ընդ իւրով իշխանութեամբն՝ անցուցանել ի Մակեդոնիա ընդդէմ Բուլղարացն, զի շինեցեն զերկիրն: Որ եւ տարեալ բնակեցոյց գյոլովս յաշխարհն յայն»: Կը շարունակուի էջ 183, տ. 23. «Եւ ինքն գնաց յաշխարհն Բուլղարաց պատերազմել ընդ նոսա: Որոց զազգն Ռուզաց օգնական առեալ ելանեն ի մարտ ընդդէմ նորա. եւ ի ճակատելն ընդ միմեանս՝ զերկուս թեւս ճակատուն Յունաց վարէին Ռուզքն: Իսկ թագաւորն ամենայն հետեւակ զօրուն Հայաստանեօքն անշարժ մնացեալ ի միջոցի ճակատուն, որ քաջապէս նահատակեալ գունդ հետեւակացն, որ սաղարքն ասին՝ առաջի թագաւորին պատառեալ զվահանափակն որ ընդդէմ նոցա. ընդ թագաւորին ամենայն հեծելագունդ զօրօքն մտեալ եւ սուր ի գործ չահատակեալ՝ սրա—*

*խողխող զնոսա առնելով եւ ցիր եւ ցան վայրացն տուեալ՝ ի հնազանդութիւն նուաճեալ զազգն Բուլղարաց»: Կը շարունակուի էջ 244, ա. 14.*

|||| *զի էին նոքա երկու* (կարդա չորք) *եղբարք, որք Կոմսաձագքն կոչէին, անուն երիցուն Սամուէլ, յազգէս Հայոց, ի գաւառէն Դերջանայ, զոր ընդ գունդս սաղարացն տարեալ էր զնոսա Թագաւորն Վասիլ* (իմացիր *Կիւռ–Ժան*) *ի Մակեդոնիա պատերազմել ընդդէմ Բուլղարացն: Որոց ի դիպող ժամու ապստամբեալ ի Թագաւորէն Յունաց՝ գնացին առ Թագաւորն Բուլղարաց, [որ էր Կուրտ], եւ ըստ քաջութեան իւրեանց մեծացան յաչս նորա: Եւ ապա յետ այսորիկ Թագաւորն Յունաց Վասիլ (կարդա՛ Կիւռ–Ժան) ի պատերազմի կալաւ զԹագաւորն Բուլղարաց [զԿուրտ Ներքինին]:*

*Իսկ Կոմսաձագքն տիրեալ ի վերայ աշխարհին Բուլղարաց՝ ընդդէմ կացին խիստ մարտիւք՝ Թագաւորին Յունաց (Վասլի), զոր ըստ ժամանակին տեսացուք»:*

3·

*Երբ կը գրէ Խմբագիրը, Թէ Վասիլի քոյրը Բուլգարներու «Թագաւորաց» համար «ի հարսնութիւն» խնդրուած է, անշուշտ աչքի առաջ ունէր Բորիսն եւ անոր «կուրտ» եղբայրը: Այս «Թագաւորա՞ց» կը հայի «զի էին նոքա երկու եղբարք»: Ինձ կը Թուի Թէ*

պակաս մ'ունի բնագիրը եւ պէտք է իմանալ «. . . գի էին նոքա չորք եղբարք» կոմսաձագք, որոնք «գնացին առ Թագաւորն Բուլղարաց» առ Բորիս Բ., որ սակայն «կուրտ» չէր, Թէեւ խմբագիրը երկիցս այսպէս կ'որակէ: Տեղիքս «զկուրտ ներքինին» պէտք է կարդալ «զկուրտն, որ է ներքինի»:

Կոմսաձագերու գալուստն Դերջանէն եւ փախուստը պէտք է ենթադրել 970 տարւոյն, երբ Բուլղարներու ցարն էր Բորիս Բ.: Սա եւ իր եղբայրն, ինչպէս յիշեցինք վերը, եւ ինչպէս կ'ըսուի հոս «Թագաւորն Յունաց Կիւռ-Ժան (ո'չ Վասիլ) ի պատերազմի կալաւ զԹագաւորն Բուլղարաց» 971ին եւ տարաւ Կ. Պոլիս: Ասոնք կայսեր մահէն ետքը, Վասիլ Բ.ի օրով փորձեցին փախչիլ Բուլղարիա յուսով, թէ պիտի տիրանան գահին: Բայց Բորիս, որ յունական տարազ կը կրէր, հազիւ միջամուխ Բուլղարիոյ սահմանը՝ յոյն կարծուելով կը սպանուի Բուլղարէ մը. իսկ Ռոմանոս ներքինին կը հասնի բարեաւ Բուլղարիա եւ կ'ենթարկուի ինքնակամ տիրող իշխանութեան, որ Կոմսաձագերու ձեռքն էր: Ուստի «Կուրտն» կամ «ներքինին» Ռոմանոս երբեք Թագաւոր չէ եղած: Վասիլ Բ. կայսր արշաւեց Բուլղարիա եւ պարտուեցաւ 986ին: Ասողնիկ երբ կը գրէ, «զոր ըստ ժամանակին ասասցուք», կ'ուզէ ըսել, թէ ապա ժամանակագրական կարգով պիտի խօսի: Այժմեան

բնագրի մէջ անմիջապէս այս հատուածին յաջորդող գլխուն մէջ կը յիշէ Վասլի Ա· արշաւանքը։

Գ· 20 գլուխի առաջին երկու տողերը «Այլ յորժամ էր ի Բաղդատ Թագաւորն Վարդ (Սկլերոս) եւ խաղաղանայր Թագաւորութիւն Վասլին» անփոփոխ կը պատկանին Գ· 23ին իբրեւ սկզբնաւորութիւն (ջնջելով «եւ գկնի այսորիկ»)։ Այս Գ· 23ի վերջաւորութիւն պէտք է նկատել Գ· 24ի սկիզբը «եւ յայսմ ամի, որ էր ՆԼԵ Թուականին» (էջ 246, 1), վերականգնելով «Այս եղեւ ի ՆԼԵ Թուականին»։ Հոս «Հայոց» յայտնապէս խմբագրին յաւելուածն է, Ասողիկին անսովոր, որ կը գործած է լոկ «Թուական»։

4·

ԿՈՄՍԱՁԱԳՔ

Կեդրենոս կը գրէ, թէ Յովհ· Զմշկիկ կայսեր մեռնելէն (976) ետքը «ապստամբեցան Բուլգարները. եւ չորս եղբայրներ իրենց մէջ բաժնեցին պետութիւնը, Դաւիթ, Մովսէս, Ահարոն եւ Սամուէլ· որոնք որդիներն էին Բուլգարներու քով մեծ ճոխութիւն վայելող կոմսի մը < որուն անունն էր Նիկողայոս· իսկ անոնց մայրն էր Հռիփսիմէ >· այս պատճառաւ ալ անոնք կոմսաձագեր (κομητόπουλοι) կը կոչուէին։ Վասն զի Պետ–

րոս (ցարի) մեռնելէն ետքը անոր տոհմէն եղածները կոտորուեցան, իսկ անոր որդիք Բորիս եւ Ռոմանոս Կոստանդնուպոլիս տարուեցան, հոն Բորիս Չմշկիկէն մագիստրոս տիտղոսով պատուեցաւ. իսկ Ռոմանոս՝ Յովսէփ ներքինապետէն ներքինացուեցաւ....:

«Չորս եղբայրներէն Դաւիթ շուտ վախճանեցաւ. Մովսէս Սեռաս պաշտպանած ժամանակ սպանուեցաւ. իսկ Ահարոնը սպաննեց (իր եղբայրն) Սամուէլ, պատրուակ բերելով թէ յունամէտ է ան, աւելի ճիշդ միապետելու դիտումով, եւ անոր որդիները անճիտեց. միայն Յովհաննէս–Վլադիսլաւ, ազատեցաւ շնորհիւ Սամուէլի Ռոդոմիր որդւոյն. Սամուէլ մնաց առանձին» (Կեդր., էջ 435):

Եռանկլինի փակագծի մէջ առնուած Նիկողայոս եւ Հռիփսիմէ անունները յաւելուած են Միքայէլ Դեւոլի եպիսկոպոսին, որ Սկիլիցէս–Կեդրենոսի Վիեննայի ձեռագրին մէջ ներմուծած է ուրիշ բազմաթիւ կարեւոր լուսանցագրութիւններու շարքին[1]: Նոյնը կը հաստատէ Սամուէլի բուլղարերէն արձանագրութիւնը, որուն թարգմանութիւնն է.

---

[1] V. B. Prokič, Die Zusätze in der Handschrift des Johannes Skylitzes Cod. Vindobonensis hist. graec. LXXIV (Dissertation), München 1906.

ՅԱՆՈՒՆ ՀՕՐ ԵՒ ՈՐԴԻՈՅ ԵՒ ՍՐԲՈՅ ՀՈԳԻՈՅՆ. ԵՍ ՍԱՄՈՒԷԼ ԾԱՌԱՅ ԱՍՏՈՒԾՈՅ, ԱՐԱՐԻ ԶՅԻՇԱՏԱԿ ՀՕՐ ԻՄՈՅ, ՄՕՐ ԻՄՈՅ ԵՒ ԵՂԲՕՐ ԻՄՈՅ Ի ՎԵՐԱՅ ԽԱՉՔԱՐԻՍ: ԱՅՍ ԵՆ ԱՆՈՒԱՆՔ ՀԱՆԳՈՒՑԵԼՈՅՆ. ՆԻԿՈՂԱՅՈՍ ԾԱՌԱՅ ԱՍՏՈՒԾՈՅ. (ՀՌԻՓՍԻՄ)Է ԵՒ ԴԱՒԻԹ. ԳՐԵՑԱՒ ՅԱՄԻ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆ 6501. Ի Զ. ԻՆԴԻԿՏԻՈՆԻ (992—993)[2]:

*Նիկողայոս կոմսի մասին գիտենք միայն թէ էր ազդեցիկ եւ յարգուած անձնաւորութիւն մը Բուլգարներու քով: Եթէ ըստ Ասողնիկի անոր որդիները «յազգէն Հայոց» են, «ի գաւառէն Դերջանայ» եւ Սամուէլ իր արձանագրութեան մէջ եւ Միքայէլ եպիսկոպոս կը վկայեն թէ Նիկողայոսի կինը Հռիփսիմէ կը կոչուէր, անուն մը, որ հայկական է եւ Հայոց քով միայն գործածական, պիտի հետեւցնենք, թէ Նիկողայոս իբրեւ Կոմս ծառայած է Բիւզանդական բանակի մէջ, ապրած է Դերջանի շրջանի մէջ, ամուսնացած է Հռիփսիմէ հայուհիի հետ եւ ծաղկեցուցած է չորս կորովի զաւակներ, ամէնն ալ սուրբգրենական անուններով: Որովհետեւ այդ Կոմսաձագերը 970ին արեւելքէն արեւմուտք կը տարուին ծառայելու «սաղարքի», այսինքն հետեւակազօրին մէջ, որ Հայերէն կազմուած էր, պէտք է ենթադրենք թէ անոնք այս տարւոյն 18—25 տարեկան հասակի մէջ ըլլալու էին. ուստի ծնած 945—952ին մօտաւորապէս: Այս դէպքին Նիկողայոս 945էն*

[2] *Ադոնց, անդ, էջ 40:*

*քիչ յառաջ սկսած ըլլալու է իր պաշտօնավարութիւնը Դերջանի մէջ։*

*Այն պարագան, որ Դերջանցի Կոմսաձագերը «ի դիպող ժամու ապստամբեալ ի Թագաւորէն Յունաց՝ գնացին առ Թագաւորն Բուլղարաց»* (970), *մտածել կու տայ թէ անոնք չարժառիթ մ'ունէին այս քայլը առնելու համար. գիտէին թէ իրենց Հայրը բուլղար էր, ազնուական տունէ, յարգուած ժողովուրդէն, ինչպէս կը գրէ Կեդրենոս. թէեւ այս մասին կը լռէ Ասողնիկ, վերագրելով անոնց յաջողութիւնը Բուլգարիայի մէջ արիական չահատակութեանց. «ըստ քաջութեան իւրեանց մեծացան յաչս նորա» (Թագաւորին). եւ կը յաւելու. «իսկ կոմսաձագքն տիրեալ ի վերայ աշխարհին Բուլղարաց՝ ընդդէմ կացին խիստ մարտիւք՝ Թագաւորին Յունաց» Վասլի։ Պատմագիրը աչքի առջեւ ունի* 986—1003 *տարիները։*

*Չորս եղբայրներէն մէկը՝* Դաւիթ *վախճանած եղած է* 992/3*էն յառաջ, ըստ Արձանագրութեան։* Մովսէս, *Կեդրենոսի համաձայն, ինկած է Սեռեսի պաշտպանութեան ժամանակ* (999*ին. հմմտ.* Lebeau *անդ,* 194—195)*։ Իսկ* Ահարոն *սպանուեցաւ իր եղբօր Սամուէլի կողմէ եւ որդիքը կոտորուեցան բացի մէկէն, Յովհաննէս-Վլադիսլաւէ, զոր ազատեց Ռոդոմիր Թագաժառանգը։ Այս պատահած ըլլալու է* 1000 *թուականէն ոչ շատ վերջը։ Սամուէլ մնաց*

միապետ: Մատթէոս Ուռհայեցի յամին ՆԿ (1011/12) կը գրէ. «Զօրաժողով արար Թագաւորն Վասիլ եւ գնայր ի վերայ աշխարհին Բուլղարաց եւ յաղթեաց Թագաւորութեան նոցա եւ մաշեաց ի սուր սուսերի զբազում զաւառս մեծաւ բարկութեամբ. եւ յաւեր եւ ի գերութիւն մատնեաց զամենայն արեւմուտք եւ բնաջինջ եբարձ զամենայն Թագաւորութիւնս Բուլղարաց: Եւ դեղ մահու արբուցանէր Ալուսխանին (Զ. Ալխօսխանին), առն քաջի, Բուլղարաց Թագաւորին. եւ այսպիսի օրինակաւ հանէր զնա ի կենաց. առեալ զկին նորա եւ զորդիս արկանէր ի Կոստանդնուպոլիս» (էջ 46): Ասկէ Սամ. Անեցի (էջ 103), որ ունի տեղիքս. «կալաւ զարքայն Բուլղարաց զԿու(ր)տն, որ է Ալօսխան»: Առանց տարակուսի Սամուէլ Անեցւոյ քով «զԿուրտն» եկամուտ յաւելուած է: Բայց թէ Ուռհայեցի ի՞նչ աղբիւրէ առած է «Ալուսխան» անունը (որ ձեռագրաց մէջ աղճատուած է «Ալխօսման, Ալխօսխան, Ալօսխան» (Ուռհ. 40, 46), անբացատրելի է. ակնարկուած Թագաւորին իսկական անունն է «Սամուէլ». իսկ «Ալուսխան» անուանուած է անոր եղբօր՝ Ահարոնի Թոռնիկը, եւ Թոռան որդին «Սամուէլ Ալուսխան»: Յամենայն դէպս 1041էն ետքը տեղի ունեցած ըլլալու է անուններուս շփոթումը:

Սամուէլ ունեցաւ ուստր մը Ռոդոմիր-Ռոմանոս եւ երկու դուստր Միրոսլաւա եւ Կոսարա-Թէոդորա:

Միրոսլաւա ամուսինն է Գրիգոր Տարօնեցւոյ Աշոտ որդւոյն, որ 991/992ին գերի ինկած էր Սամուէլի ձեռքը եւ բանտարկուած (Ասողնիկ, Գ. 33, 34, էջ 261—262. Կեդրենոս, Բ. 449). ապա հանուած բանտէն Միրոսլաւայի թախանձանքով եւ ամուսնացած անոր հետ. Աշոտ իբրեւ նիզակակից ուղարկուեցաւ Դիւրաքիոն. բայց ապա մատնելով բերդաքաղաքը կայսեր, պատուեցաւ անկէ Մագիստրոս տիտղոսով (Կեդրենոս, էջ 451)։ Միրոսլաւայի անունը աւանդած է մեզի Միքայէլ Դեւոլի եպիսկոպոսը (Prokič էջ 29, 41, Թ. 14)։

5.

Կոմսաձագերու առաջին սերունդը այս վախճանը ունեցաւ։

Սամուէլ ցարին յաջորդն եղաւ որդին Ռոդոմիր (1014—1015). որուն մահէն ետքը ժառանգեց գահը Ահարոնի որդին Յովհաննէս-Վլադիսլաւ (1015—1018), որ ունեցաւ իր Մարիամ կնոջմէ հինգ մանչ եւ 6 աղջիկ զաւակներ։

Բուլգար նորագոյն պատմագիրը Վ. Ն. Զլատարսկի[1] այսպէս կազմած է Ահարոնեան տոհմածառը.

Ահարոն

Յովհաննէս — Վլադիսլաւ
կինը՝ Մարիամ

- 1. Գրիստափան
- 2. Ալուսիան
  - 3. Վասիլ
  - 4. Սամուէլ
  - 5. Գրիգոր[3]
    - Մարիամ կին Ար–
      դլմսեհի
  - 6. Դուստր
    - Կոստանդին
- Ահարոն[2]
  - Մարիամ
    - Թէոդոր
    - Բողոմիր
- Տրայեան
  - Մարիամ
    - Իրենէ
    - Մարիամ
    - Թէոդորա
    - Միքայէլ
    - Իւան
- Բաղամիր
  - Բողոմիր
- Եկատերինա
  - Մանուէլ
  - Մարիամ
- Բ—Զ. դստերք

*Այս տեղ նկատի պիտի առնեմ առաւելապէս Ալուսիանի դերդաստանը:*

1. Պրուսիան (*Պրեսեան, Ֆրուժին*) *հօրը մահէն ետքը իր երկու եղբայրներու* (*Ալուսիանի եւ Ահարոնի*) *հետ փորձեց շարունակել դիմադրութիւնը կայսերական բանակին դէմ, ալբանական լեռներու, յանուանէ Թմորի բարձունքէն. թէեւ իր մայրն Մարիամ անձնատուր եղած էր Վասիլ Բ. կայսեր իր երկու մանչերու եւ* 6 *դուստրներու հետ. ի վերջոյ անձնատուր եղան իրենք ալ: Կայսրը մարդասիրօրէն ընդունեցաւ զանոնք. բաշխեց Պրուսիանին մագիստրոս եւ Ալուսիանի եւ Ահարոնի պատրիկ տիտղոսները: Պրուսիան կարգուեցաւ ապա հրամանատար Բուկելլարիոն թեմին:*

2. Ալուսիան. *Բիւզանդական պատմագիրն Միքայէլ Պսելլոս եւ անկէ ազդուած Սկիւլիցէս–Կեդրենոս եւ Զոնարաս, Ալու–*

---

[1] В. Н. Златарски, История на Българската Държава презъ срѣднитѣ вѣкове. *Հատոր Բ., Սոֆիա* 1934, *էջ* 535: *Այս աշխատութենէն ինչ ինչ քաղուածքներ, հայերէն թարգմանութեամբ, տրամադրեց ինծի տիար Ն. Գասպարեան, որուն կը յայտնեմ խորին շնորհակալիքս:*

[2] *Ահարոն վեստ եւ կատեպան Վասպուրականի, մագիստրոս եւ կառավարիչ Վրաստանի եւ դուքս Եդեսիոյ: Իր մասին հմմտ.* M. Lascaris, Sceau de Radomir Aaron: Revue byzantino-slavica 3 (1931), *թարգմ. Հանդ. Ամս.* 1938, *էջ* 394—402:

*Իր որդին Թէոդոր կառավարիչ կարգուեցաւ Տարօնի թեմին. իսկ Ռադոմիր ստացած է պրոեդրոս եւ դուքս տիտղոսները:*

[3] *Ազգածառիս վրայ շղագիրներն իմ յաւելուածներս են (տե՛ս Թ. 5):*

սիանը ներկայացուցած են իբրեւ որդի Ահարոնի, որոնց հետեւած են նորագոյն պատմագիրները. բայց այժմ Միքայէլ Դեւոլի եպիսկոպոսի բացայայտ վկայութեամբ կը հաստատուի, թէ Ալուսիան երկրորդ որդին է Վլադիսլաւի եւ թոռն Ահարոնի (Հմմտ. Զլատարսկի, Բ., էջ 485—486)։

Նորանշան անունն է Ալուսիան (յն. Ἀλουσιάνος, Psellus, 63, Ἀλουσιανός. Յովհ. Կուրոպաղատ, Կեդրենոս Բ., էջ 678. Մատթ. Ուռհայեցի, էջ 195)։ «Ալօսիան» անունս ապա կրճատութեամբ վերածուած է Վասպուրականի մէջ «Ալուզ» (տես վարը)։ Ստուգաբանութիւնը յայտնի չէ։

Ալուսիան 1018/9ին Կ. Պոլիս էր իր մօրը եւ եղբայրներու ու քոյրերու հետ։ Վասիլ կայսեր քաղաքականութիւնն էր Բուլղար առաջնորդները գետեղել պետութեան արեւելեան ծայրագաւառները, Վասպուրական եւ Բարձր Հայք նահանգները, որպէս զի չփորձուին վերադառնալ Բուլղարիա։ Ալուսիան կ՚ուղարկուի Թէոդուպոլիս, իբրեւ ստրատեգոս Կարնոյ շրջանին։ Ինչ որ գիտենք իր կեանքէն, կը պարտինք Սկիւլիցէս–Կեդրենոսի։

Կեդրենոս այսպէս կը ներկայացնէ անոր պատմութիւնը. «Սեպտեմբեր ամսոյն, Ինդիկտոնի Թ. 6549 տարւոյ (1041)։ Ալուսեանոս պատրիկ եւ սպարապետ (ստրատեգոս) Թէոդուպոլսոյ, Ահարոնի երկրորդ որդին,

*յանկարծ փախաւ Կոստանդնուպոլսէն եւ գնաց Դելփանոսին հետեւեալ պատճառով։ Ան ստրատեգոսն էր Թէոդուպոլսոյ· ամբաստանուեցաւ իբրեւ անարդար. Յովհաննէս նախ քան պատճառը յայտնելը պահանջեց իրմէ* 50 *լիտր ոսկի եւ այն կալուածքը, զոր ունէր անոր կինը Քարսխանոնի մէջ։ Երբ անօգուտ մնացին իր առ Կայսր գրած թուղթերը՝ յուսահատ հագաւ հայկական զգեստներ, եւ ցոյց տալով թէ ինքը Վասիլ Թէոդորականի ծառան է եւ կ՚երթայ Թեսաղոնիկէ՝ կայսեր քով, փախաւ եւ հասաւ Ոստրորոն, ուր կը գտնուէր այն ժամանակ Դելփանոս իր բանակով»* (*էջ* 531[1]) : *Կը յայտնէ այնտեղ Բուլղարներուն իր ինքնութիւնը եւ կ՚ընդունուի խանդավառութեամբ իբրեւ թագաւոր։ Կը յանձնուի իրեն Թեսաղոնիկէի պաշտպանութիւնը. կը յաղթուի։ Երբ յունական բանակը Միքայէլ կայսեր հրամանատարութեան տակ կը յառաջանար, Ալուսեան վարանած՝ կ՚որոշէ անձնատուր ըլլալ Կայսեր, պայմանաւ որ երդմամբ խոստանայ իրեն կայսրը պատուով վարուիլ։ Բուլղարիա կը նուաճուի միւսանգամ կայսերական իշխանութեան տակ։ Կայսրը կը շնորհէ Ալուսիանին մագիստրոսութեան պատիւը* (*Կեդր.* 533, Lebeau, *անդ*, 163, 299—302) :

*Պատմութիւնը կը լռէ Ալուսիանի անդրագոյն գործունէութեան մասին։ Ալուսիան մինչեւ* 1040 *գործած է Թէոդուպոլիս* (*Կա-*

րին) իբրեւ ստրատեգոս. ամուսնացած է այն տեղ հայ իշխանուհիի մը հետ, որ ունէր ի Թարսխանոն ագարակ մը։ Ունեցած է երկու ուստր՝ Վասիլ եւ Սամուէլ եւ դուստր մը։

Միքայէլ Պսելլոս, որ մօտէն կը ճանչնար Ալուսիանը, կը գրէ թէ «ան ամէնէն աչքի զարնողն էր իր եղբայրներուն մէջէն, հաճելի բնաւորութեամբ, փայլուն մտքով եւ կարկառուն անձնաւորութեամբ»։ Իսկ Կեկաւմենոս կ'անուանէ զանիկա «բարեհռչակ ապշեցուցիչ զինուոր» (Strategicon, 22)։

3. Վասիլ դուքս Եդեսիոյ։ Մ. Ուռհայեցի յամին 1070 կը գրէ. Երբ Ալփ-Ասլան պաշարեց Ուռհան, «էր տուկն ի քաղաքն Ուռհա՝ Վասիլն, Ալօսխանին որդին Բուլղարաց թագաւորին», զոր կը դրուատէ իբրեւ «այր քաջ եւ պատերազմող» (էջ 195—196)։ Հաւանօրէն ինքն է 1059ին արձանագրութեան մը մէջ յիշուած «Վասիլ պատրիկ», որ գործած է Մերձ-դանուբեան կողմերը (В. Н. Зладарски, Една датирана приписка на гръцки отъ срѣдата на XI. вѣкъ. Byzantinoslavica 1929, էջ 27—30)։

4. Սամուէլ Ալուսիան վեստարք, պրոեդրոս եւ դուքս։ Սամուէլ, որ կը կրէ իր անուան կից «Ալուսիան» յորջորջանքը, Ռոմանոս Դ.ի օրով վեստարքի աստիճանով զինուորական պաշտօն ստանձնած էր Արմենիակոն թեմին մէջ, Սեւ ծովի հարաւային

ափին, Տրապիզոնի արեւմտեան կողմը, գլխաւոր քաղաք ունենալով Ամասիա: Ան մասնակցած է 1068ին կայսեր Թուրքերու դէմ մղած արշաւանքին. եւ երբ Մելիտինէի հրամանատարը դիտումնաւոր կերպով մերժած էր դիմադրել Թուրքերու յարձակումներուն եւ Ամորիոնի թալանումին, Ռոմանոս տուաւ անկէ գլխաւոր հրամանատարութիւնն եւ յանձնեց զայն Սամուէլի, որպէս իրեն հաւատարիմ անձի: Իր անունը մանաւորապէս փայլեցաւ, երբ զսպեց Ռոբերտ Կրեպինի, յունական վարձկան զօրքի Նորմանդ հրամանատարի ապստամբութիւնը (1069)[1] որուն ի վարձ Կայսրը զանիկա պրոեդրոս աստիճանի բարձրացուց եւ անուանեց դուքս (տուկ) կամ հրամանատար Արմենիական Թեմի հինգ արեւմտեան լեգէոններուն, ինչպէս նաեւ տեղւոյն վարձկան բանակին:

Ունինք իրմէ կնիք մը[2], որ վերտառութիւնս կը կրէ.

ՈՎ. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ. ՕԳՆԵԱ ՔՈՒՄ ԾԱՌԱՅԻՍ ՍԱՄՈՒԷԼԻ ԱԼՈՒՍԻԱՆ, ՊՐՈԵԴՐՈՍ ԵՒ ՏՈՒԿ:

Ան մնաց այս պաշտօնին մէջ մինչեւ 1071, երբ գահընկէց եղաւ Ռոմանոս Դ.:

---

[1] Յովհ. Կուրոպալատ, Պատմութիւն, Հրատ. կից Կեդրենոսի, Բ., էջ 678. «Արմէնիական Թեմի մէջ կը ձմերէր վեստարքն Սամուէլ Ալուսիանոս բուլղարը, եղբայրն Կայսեր (Ռոմանոս Դ.) կնոջ»:

В. Н. Златарски, Моливдовулъ на Самуила Алусанъ. Изв. на Българск. Археолог. Институтъ I (1921) էջ 86—89, 97—98:

5. Գրիգոր դուքս։ *Բիւզանդական աղբիւրները չեն յիշատակած Ապուսախանի այս երրորդ որդին, ինչպէս չեն յիշած նաեւ Վասիլի անունը։ Անոր չեն անդրադարձած նաեւ նորագոյն պատմագէտները։ Մեր աղբիւրն է առ այս Թոմաս Արծրունեաց Պատմութեան կցուած Յիշատակարանը, որ* 1303*էն է։ Այս տեղ յիշատակագիրը խօսելով Արծրունի Աբդլմսեհ պրոտո-կուրապաղատի մասին կը գրէ թէ Աբդլմսեհ Ամիւկի եւ Աղթամարի տէրը կնութեան առաւ Գրիգոր տուկի դուստրն եւ Ալուզ իշխանաց իշխանի թոռը Մարիամ։ Այս «Ալուզը» ոչ այլ ոք է, բայց եթէ Ապուսախան, ուստի Գրիգոր կ՚ըլլայ Ապուսախանի որդին։*

*Յիշատակագրին համաձայն Աբդլմսեհ կը սերէր Վասպուրականի Սենեքերիմ թագաւորի արիւնէն։ Երբ գաղթեց Արծրունեաց թագաւորն Սենեքերիմ* (1021) *«յերկիրն Յունաց», մնաց այն տեղ «մեծ իշխանն անուանեալն* Խեդենիկ, *ազգակից արքային Սենեքերիմայ եւ թագաւորազն ցեղիցն Արծրունեաց»։*

*Խեդենիկի սերունդն է.* 1. Թոռնիկ *Ա. իշխան. տէր Դաւիթ Ա., տէր Ստեփաննոս Ա., տէր Գրիգոր.*

2. Թադէոս.

3. Թոռնիկ Բ. *«մեծ իշխան եւ սուրբ մարտիրոս», որ «յաւուր մեծի տօնի ծննդեան Տեառն եւ Մկրտութեանն արժանի*

*եղեւ առնուլ զպսակ մարտիրոսութեան բազում արամբք ընտրելովք ի գաւառին Մոկաց ի գիւղն Ատիճանս»* (էջ 309) :

4· Աբդլմսեհ *պրոտոկուրապաղատ* : *«Ի սորա ժամանակս ելին արխական ազգն Փռանգաց եւ ազատեցին զսուրբ քաղաքն Երուսաղէմի ի ձեռաց այլազգեաց եւ զայլ եւս բազում աշխարհս ի թուին ՇԽԶ»* (1097) :

*«Սա էր տէր անմատոյց ամրոցացն Ազթամարի եւ Ամիւկի . . . ամենիմաստ պրոտուկուրապաղատ . . . որ առեալ իւր ամուսին զդուստրն Գրիգորի արեւելեան տուկի — զթոռն մեծաչուք եւ տիեզերակալ իշխանաց իշխանին Ալուզի — որ (Գրիգոր) էր տէր եւ իշխեցող գաւառացն Ծաղկոտան եւ Կոկովտի եւ մեծ աւանին Անգեղ[տանն] . . . իսկ սուրբ որոջն Քրիստոսի անուամբ Մարիամ կոչեցեալ . . . որ եւ տիկնաց տիկին էր ազգաւ . . .»* (էջ 309—311) :

*Այստեղ ունինք Ալուզ=Ալուսիան իշխանաց իշխանը, որուն որդին է Գրիգոր տուկ եւ թոռնիկն Մարիամ տիկնաց տիկին : Ժամանակն է* 1097*էն յառաջ եւ վերջը : Գրիգոր կը ներկայացուի «արեւելեան տուկ» այն է δούξ (հայց. δοῦκα) τῆς ἕω. Իր իշխանութիւնը կ'ընդգրկէր Այրարատ նահանգին Ծաղկոտն եւ Կոգովիտ գաւառները. Անգղ մեծ աւանն եւ ամրոցը, որ կը պատկանէր Ծաղկոտն գաւառին, եւ հաւանօրէն տուկին*

նստոյն էր (հմմտ. Հ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 246—250 եւ 302)։

Հետեւաբար անուշադրութեան պէտք է վերագրել Գրիգոր տուկի նոյնացումը Գրիգոր Մագիստրոսի հետ. որով Ալուզ համարուած է Մագիստրոսի մայրը եւ Վասակ Հոլոմի կինը, իսկ Մարիամ՝ Մագիստրոսի դուստրը (Հ. Ղ. Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 12, Ազգածառ եւ 107. իրեն հետեւած է Հ. Աճառեան, Անձնանունների Բառարան, Ա. 84, 1. Գ. 253, 21. Թէեւ անդ, Ա. 84, 2 եւ Գ. 253, 22 կը զանազանէ։ Ալիշան, Այրարատ, էջ 495ր վարանքի մէջ է)։

Արդլմսեհի եւ Մարիամի ամուսնութենէն ընձիւղեցան «ուստերք եւթն եւ դստերք հինգ»։ Երիցագոյնն է Դաւիթ, որ ապա կաթողիկոսացաւ, եւ կրսերն Ստեփանոս (Բ.) «կոչեցեալ ըստ հայրենի ազգին եւ ըստ մայրենի անուանակոչութեանն՝ սրբանեալ մայր իւր տիկնաց տիկինն կոչեաց զնա յանուն հաւուն իւրոյ Ալուզ. եւ ըստ յառաջադիմութեանն իւրոյ՝ ի սուրբ Թագաւորացն պատիւ եւ անուն մեծութեան ընկալեալ... եւ մեծ իշխանն Ալուզ օրհնեցաւ յԱստուծոյ եւ ի հօրէն իւրմէ Արդլմսեհէ»։ «Եւ մեծ եւ ամենիմաստն Արդլմսեհ Կուրապաղատն բաժանեաց զհայրենիսն իւր եւ ետ ի ձեռն որդւոյ իւրոյ Ալուզի ...զանառիկ ամրոցն Ամիւկ. զի նա կարող էր ի դիմի ունել անօրէն ազգացն Իսմայէլացւոց»։

*Արդըմուհ կը վախճանի* 1121/22*ին եւ կը թաղուի Աղթամար ի դուռն Ս. Խաչին. Երկու տարի ետքը կը մեռնի* (1123/24) *Մարիամ եւ «եդաւ ի նոյն տապանի»* (*էջ* 314—315):

*Ստեփանոս Ալուզի յիշատակութիւնը Կ'ըլլայ* 1161*ին գրուած եւ շատ գէշ պահուած Յիշատակարաններու մէջ. «Յամի վեցհարիւ(ր)երորդի եւ տասն(ե)րորդի թուականութեանս Հայոց (ե)ս տէր Վահան սուրբ Խաչի եպիսկոպոս (ցան)գացող եղեալ (ս)տացա զսուրբ աւ(ետար)ա(նս) ի տէր Ստեփանոսէ որդւոյ Կուրապաղատին (եւ) եղբաւր տեառն Դաւթի Հայոց Կաթողիկո(սին): Արդ աղաչեմ... զտէր Ստեփանոս յաղաւթս ձեր յիշեսջիք եւ զՔրիստոսատու(ր)»* (*Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ* 380—381):

*Ստեփանոսի «լուսածաղիկ» որդին է* Խեղենիկ *Բ.: Սա իր դուստրը կին կու տայ Սեֆեդին արքայունի. եւ օժիտ կը բաշխէ Աղթամարի կէսը: Ծերութեան հասակին կղզւոյն միւս կէսն ալ կը վաճառէ իր փեսային: Ունինք իրմէ արձանագրութիւնս Հոռոմոսի եկեղեցւոյ պատին վրայ.*

ԵՍ ԽԷՏԷՆԵԿՍ ՈՐԴԻ ԱԼՈՒԶԻ ԵՒ ԱՄՈՒՍԻՆ ԻՄ ՄԱՐՋԱՆ ՏՈՒԱՔ Ի ՍՈՒՐԲ ՈՒԽՏՆ ԶԹԷԶԱՆՈ ԾԱՄԲՆ··· ՈՐ ԻՇԽԱՆՆ ՄԵԶ ԷՐ ՏՈՒԵԼ· ՏԷՐ ԲԱՐՍԵՂ ԵՒ ԱՅԼ ԵՂԲԱՐՑՍ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ԶՏՕՆ ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏԻՆ··· ՈՂԴ:

(*Կոստանեանց, Վիմական տարեգիր, էջ* 88): *Տարին ՈՂԴ կարդա՛ ՈԼԴ* (1185):

## ԼԸ.

# ՋՐՈՅՑ ՊՂՆՁԷ ՔԱՂԱՔԻ

*Գրիգորիս Աղթամարցի կը գրէ թէ ի՛նքն եղած է Պղնձէ քաղաքի պատմութեան լուսածողը, այսինքն Պղնձէ քաղաքի Ջրոյցը, զոր թարգմանած էին նախնիք արաբերէնէ, ինքը առած վերամշակած եւ նոր կաֆանեբով ճոխացուցած ի լոյս ընծայեած է: Այս նոր հրատարակութեան առաջին օրինակը, Մարգարէ վարդապետ կը վկայէ, թէ այն օրինակը, զոր ունէր Աղթամարցին, հնացած եւ մաշած էր, Ողբերն եւ Կաֆաները, որոնք կային հոն, պակասաւոր էին, ինկած էին բառեր եւ տողեր, զորոնք լրացուց Աղթամարցին. ասկէ կրնանք հետեւցնել թէ նաեւ բնագիրը, որ թարգմանուած էր ռամկօրէն, եւ այն գաւառական բարբառով, կարօտ էր սրբագրութեան եւ բարեփոխութեան:*

*Ջրոյցին այս վերամշակուած բնագիրը հրապարակ ելաւ* 1526*ին «Պատմութիւն Պղնձէ քաղաքի» վերնագրի եւ «խրատ հոգէշահ յօգուտ իմաստնոց» ենթագրի տակ. եւ գտաւ ընդունելութիւն հայ ժողովուրդի*

քով․ անեցան ձեռագիր օրինակները ԺԶ— ԺԸ դարերուն․ եւ տպագիր օրինակները աւելի քան 10 տպագրութեամբ ԺԸ—Ի դարերուն ։

Այսպէս ողողեց Պատմութիւնը գրական շուկան․ իսկ Պղնձէ քաղաքի Զրոյցը անհետացաւ հրապարակէն հետակորոյս ։

Հայ գրականութեան համար յարգելի են թէ Զրոյցն ե՛ւ թէ Պատմութիւնը․ մինչ Պատմութիւնը ԺԶ․ դարու ռամկօրէն հայերէնը կ՚ընծայէ մեզի, Զրոյցը կը խոստանար մեզ հնագոյն ռամկօրէնը ըմբոշխնել ։

Իրաց այս վիճակի մէջ «գեղեցիկ գիւտ» պէտք էր համարիլ, եթէ յաջողէինք երեւան հանել Զրոյցս փոշեգգած կամ ծածկաթագոյց գրադարաններու խորշերու մէջէն ։

Ձեռագիրը ։ Երբ կը ցանկէի Հռոմի Հայոց Հիւրանոցի հայերէն ձեռագիրներն ի Ս․ Վլաս, Թ․ 33/24 ձեռագրին մէջ ընդ առաջ եկաւ Պղնձէ քաղաքին զրոյցը իր գողտրիկ զաւտատարբրառով ։

Ձեռագիրս, գրուած անարուեստ բոլորգրով, չունի յիշատակարան, վասն զի վերջէն թուղթեր ինկած են․ այս պատճառով ալ անյայտ են գրչին անունը, գրութեան տեղն եւ տարին ։ Իմ ցուցակիս մէջ ժամանակը նշանակած եմ ԺԴ․ դար ։ Այն պարագան որ Ֆրիկի «Յորժամ մահն մատենայ․․» տաղն վերնագիր կը կրէ․ «Ոտանաւոր ասացեալ է Ֆրիկն, որդի Թագվորշին, եղբայր–

որդի Դոստոնոյի ի վերայ իւր մեղացն, ի վարս բանայսիրայց» (Թղ· 65բ), կրնանք ենթադրել թէ կա՛մ գրիչս եւ կամ անոր գաղափար-օրինակի գրիչը ժամանակով մերձաւոր եղած է Ֆրիկին (ԺԴ· դարու առաջին տասնեակի՞ն) :

Գրիչը անվարժ եղած է ռամկօրէն գրուածներու օրինակութեան, այս պատճառաւ ալ սխալաշատ են այն հատուածները, որոնք ռամկօրէն են· մինչ գրաբար հատուածներու մէջ աւելի յաջողակ է :

Բովանդակութիւնն է ·

1· Զրոյց Պղնձէ քաղաքի (Թղ· 3ա—15բ) :

2· Խօսք Անդամալուծին ընդ Քրիստոսի (15բ—22ա) :

3· Պատմութիւն Մարխայ վաճառականին (28բ—33ա) :

4· Գիր հանհանելուկի (Հարցմունք աղջկան ընդ մանկան· 33ա—40բ) :

5· Վարք Յովհաննու կամաւոր աղքատի (40բ—48ա) :

6· Պատմութիւն Աղեքսիանոսի կամաւոր աղքատի (48ա—65ա) :

7· Իմաստութիւն մեծ Թագաւորին Զարմազանայ եւ որդւոյ նորին Ֆարմանի Ասմանին վարուցն (48բ—65ա) :

8· Ոտանաւոր Ֆրիկի (65բ—73բ) :

9· Վիճակախաղք (Թղ· 74ա—80բ) :

Առաջին հատուածը վերնագիր կը կրէ․ «Զրուց եւ խաւսք առաջի թագաւորացն եւ իշխանացն, զոր թարքմանեցին Դաւիթ կուրապաղատին ի հայ լեզու ի տաճիկ լիզվէ»։

Այս վերնագիրը կը համարիմ ընդհանուր խորագիր գրոյցներու շարքի մը, որոնք կը պարունակեն «առաջի թագաւորացն եւ իշխանացն գրոյցքն եւ խօսքն» սահմանուած պատմելու եւ կարդալու թագաւորաց եւ իշխանաց առջեւ։ Այս գրոյցները «թարգմանեցին» այլ եւ այլ թարգմանիչներ «ի հայ լեզու ի տաճիկ լեզուէ» ի խնդրոյ կամ ի հաճոյս «Դաւթի Կուրապաղատի»։

Թարգմանիչներու անունը, թարգմանութեան տեղն եւ տարին չեն յիշուած։ Նկատմամբ տարւոյն կրնանք փաստաբար ըսել թէ 1000, մարտ 31էն յառաջ պէտք է թարգմանուած ըլլան, հաւանօրէն ընդ մէջ 950—1000 շրջանի, վասն զի Դաւիթ Կուրապաղատ վախճանած է 1000, մարտ 31, զատկի օրը, խոր ծերութեան մէջ։ Անոր գործունէութեան տարիները ծանօթ են 985էն ի վեր։ Թարգմանիչները, որոնք թարգմանեցին այդ գրոյցները արաբերէնէ աշխարհաբար հայերէնով, ընտրեցին անշուշտ այնպիսի գաւառական բարբառ մը, որ ընտանի էր Կուրապաղատին, այսինքն Տայոց նահանգի բարբառով, ուստի իրենք ալ Տայեցի ըլլալու են։

Դաւիթ Կուրապաղատ պատմութեան

մէջ առաջին անգամ երեւան կու գայ 985ին : Անոր նկարագիրը տուած է պատմագէտ ժամանակակից մը, Ստեփանոս Ասողնիկ · «էր այրն հեզ եւ հանդարտ · առաւել քան զամենայն թագաւորս որ ի ժամանակս յայս : Եւ եղեւ նա պատճառ խաղաղութեան եւ շինութեան Արեւելեայց, մանաւանդ Հայոց եւ Վրաց · զի զգոռ պատերազմաց դադարեցոյց նա, յաղթող եղեալ ամենայն չուրջանակի ազգաց, եւ ամենայն թագաւորք կամաւ հնազանդեցան նմա : Սա լցեալ աւուրք, ծերացեալ ժամանակօք՝ վախճանեցաւ յաւուր մեծի փրկական զատկին, ի ՆԽԹ · թուականին» (էջ 275) :

Այս «Զրոյցք եւ խօսք առաջի թագաւորացն եւ իշխանացն» չեն կրնար յարաբերել Ժողովածոյքիս 2, 3, 5, 6, 8, 9 որոնք իրենց նկարագրով քրիստոնէական գրուածքներ են, 5—6 թարգմանուած են յունարէնէ եւ 2, 3, 9 հաւանօրէն հայ գրչէ, ինչպէս հաւաստեաւ Ֆրիկի տաղերը : Բայց 1, 4, 7 ուղղակի կամ միջնորդաբար արաբերէնէ թարգմանուած զրոյցներ են, հիւսուած վասն «առաջի թագաւորացն եւ իշխանացն» : Այս Զրոյցներու չարքէն են նաեւ Աբդլ-Ճաֆարի, Փիր Փահրուլի պատմութիւնները, որոնք պահուած են Տաղարաններու մէջ : Զրոյցներ, որոնք մեծաւ մասամբ Հնդկական են, եւ Պարսիկներու միջնորդութեամբ գրաւոր կամ բերանացի ան-

*ցած Արաբներու. անոնցմէ ոմանք մուտք գտած են ապա Հազար ու մէկ գիշերներու հաւաքածոյքին մէջ:*

## 1. ԶՐՈՅՑ ՊՂՆՁԷ ՔԱՂԱՔԻ

*Զրոյցս, որ Հայոց Հիւրանոցի Թ. 33ի մէջ մասնաւոր վերնագիր չէր կրեր, Գրի-գորիս Աղթամարցի կոչած է «Պատմութիւն Պղնձէ քաղաքի». հաւանական է, որ այս վերնագիրը գտած էր Աղթամարցին իր ունե-ցած հին օրինակի մէջ. վասն զի այսպէս «Պատմութիւն» կոչուած են նաեւ Աբդլ-Ճա-փարի եւ Փահլուլի զրոյցները: Ես պատշաճ կը համարիմ այս տեղ «Զրոյց» կոչել, զա-նազանելու համար հին բնագիրը Աղթա-մարցւոյ վերամշակած նոր բնագրէն:*

*Թ. 33ի բնագիրը համեմատելով Աղթա-մարցւոյ բնագրին հետ կը տեսնուի թէ Աղ-թամարցւոյ ունեցած հին բնագիրը աւելի լիակատար էր քան այն բնագիրը, զոր կը ներկայացնէ Թ. 33: Վերջնոյս անանուն գրի՞չը համառօտած է Զրոյցին մուտքը:*

*Երկու բնագիրներու համեմատու-թիւնն է.*

| | |
|---|---|
| Պատմութիւն Պղնձէ քա-ղաքին զոր թարգմանեալ է ի յարապ լեզուէ ի հայ լեզու:... | Զրուցք եւ խօսք... զոր թարգմանեցին... ի հայ լեզու ի տաճիկ լե-զուէ: |
| *Կայր ի Բաղդադ քա-ղաք խալիֆայ մի, որում էր Աբդլ Մելիք (անուն):* | *Կայր խալիֆայ մի ի Պաղտատ քաղաք եւ ա-սէին անուն նորա Աւտուլ-* |

Որ մի իջաւ ի մէդան. ժողովեաց զիւր մեծամեծքն, էհարց վասն Սողոմոն արքային, թէ ո՞րպէս առնէր հրաման ի վերայ դիւացն:

Յառաջ եկաւ ամիրա մի եւ ասաց. Հզօր եւ մեծ խալիֆայ, տեսի այր մի որդի մեծ վաճառականի. ասաց թէ Ես գնացի ի Սելեւկեայ կղզին. ի ծովին մոլորեցաք քառասուն օր. յետոյ եկաք ի լեառն մի բարձր, որ ամենեւին ոչ ճանաչէաք զտեղին. տեսաք մարդիկ սեւ, այլադէմ, բարեւ տուին եւ տարան ի տունս իւրեանց, կացաք անդ երեք օր, ի ծովն յորս գնացին. եւ տարան զմեզ ի հետ. արկին զգործիսն ի ջուրն եւ բազում ձուկն բռնեցին. եւ ի հետ ձկանցն բերին կուժ մի արճճով մատնէհարած Սողոմոնի մատնէհարով. բացին զկուժն, ելաւ սեւ մուխ, բարձրացաւ ի յօդս, եղեւ կերպարան դիշատեսիլ մարդոյ. աղաղակեաց եւ ասէ. Սողոմոն, Սողոմոն, որդի Դաւթի մարգարէին, մեղայ, այլ չգործեմ զինչ Ակիղ: Որ մի ելաւ ըստ սովորութիւն իւրոյ եւ խաղար ի մոյտանն:

Եւ երեկ մարդ մի եւ ասեն զանուն նորա Դալլիֆ. էրեկ եւ ծունր էած Խալիֆային եւ ասէ. Է՜ հզօր խալիֆայ, քաղաք մի կայ ի հիւսուսոյ դէհն, անուն նորա Պղնձէ քաղաք. մօտ ի ան քաղաքն են այն դեւքն, որ Սողոմոն ի կժերն էած եւ արճճով գրերան կալաւ եւ մատնէհրեց:

դործեցի, կամ ի հրամանս քո: Յայն ժամ ատացին այն մարդիկն թէ գիտաց դեւն թէ Սողոմոն դեռ կենդանի է:

Յայնժամ ասէ խալիփայն. Ոչ հանգչիմ սիրտ իմ մինչեւ տեսանեմ յայն կժերուն, եւ ապա հաւատամ այտ բանիդ: Եւ հրամայեաց խալիփայն Դալիպին որդայն Սալեհայ, թէ գնայ առ Ամիր Մուսէն յԱրեւմտից տէրն, որ երթաք երկուստ ի շուռ դաք մինչեւ գտանէք ի յայն կժերուն եւ ինձ հաստատուն գրուց տաք, թէ ինչ կայ ի ծովու կամ ի ցամաքի:

Եւ ետ խալիփայն շատ գանձ Դալիպին, եւ պատուական ակունք, արաղի ձիանք եւ ազէկ ծառայք: Գնաց Դալիպն առ ամիր Մուսէն:...

Ապա եկաւ Ամիր Մուսէն շատ հեծելով եւ գնաց ի Մըր: Սուլտանն շատ հարկիս արար նոցա: Եկան անտի գնացին յաշխարհն յԱգնոց առ թագաւոր նոցա. եւ կին էր թագաւորն: Կարդաց թագաւորն զհրաման խալիփան զԱմիր Մուսին եւ ասէ. Եկ գնա գիտ զան դեւքն որ Սողոմոն զնդանել է:

Ասէ Ամիր Մուսին. Ոչ գիտեմ զճանապարհն եւ ոչ կարդաց(ել) եմ գրով:

Ասէ խալիփան. Հալեւոր մի կայ ի քաղաքս. նա գիտէ զճանապարհն. հետ քեզ առ եւ գնա:

ֆին. եւ կոչեաց զինչ ի յիւր յաշխարհն հին մարդ կայր եւ շատաշուրջ վաճառական:

Գտան ալեւոր մարդ մի, որ գիտէր զծով եւ զցամաք եւ զանբնակ աշխարհս ամենայն էր: Յայնժամ ասաց Թագաւորն. Ով ծեր սիրելի, գիտե՞ս զայն տեղն, որ Սողոմոն բարկացաւ (եւ) ի պղնձէ կուժն էած եւ արճճով մատնէհարեաց եւ ի ծովն ձգեաց:

Ասաց Ալեւորն. Գիտեմ զայն տեղն:

Ասաց Թագաւորն, Թէ Պիտի որ տանիս զխալիֆայի ամիրայն յայն տեղին:

Ասաց Ալեւորն. Հրաման քո եղիցի. եւ Աստուած զբաքին առաջնորդէ: Բայց դժուարին է եւ հեռի. քառասուն օր անջուր պիտի գնան. երեք տարի գնան եւ գան. շատ զարմանք կայ ի ճանապարհին:

Յայնժամ ասաց Թագաւորն ընդ Ամիր Մուսին, Թէ զայդ գիտուն ծերդ, որ ի յաշխարհի ոչ կայ, ի քո հրամանքդ եմ տուել:

Զրոյցիս արաբերէն սկզբնագիրը գտաւ Henri Laurentie [1] Հազար ու մէկ գիշերներու մէջ [2]:

Չեմ ուզեր այս տեղ անդրադոյն քննութեանց եւ համեմատութեանց մէջ մտնել: Ստորեւ պիտի տամ Զրոյցս ամբողջութեամբ:

2. Գիր հանհանելուկի: Այլ ձեռագիրներ պէսպէս վերնագիրներ կը կրեն. «Պատմութիւն աղքատ թագաւորի»: «Պատմութիւն գեղեցիկ վասն առ(ա)կի իմաստութեան», «Պատմ. եւ առակաբան». «Պատմ. վասն Մանկանն եւ Աղջկան. եւ հարցաքննութիւն ընդ միմեանս եւ միաբանութիւն նոցա», եւ այլն:

Կը սկսի. «Այր մի էր մեծատուն իշխան ի քաղաքի մի...» կամ «Կայր թագաւոր մի չարկամ զօրացաւ ի վերայ աշխարհին...»:

Հռոմի Հայոց Հիւրանոցի Թ. 33 ունի վերնագիրն եւ սկիզբն. «Գիր հանհանելուկի: Թագաւոր մի կար եւ ունէր դուստր մի գեղեցիկ յոյժ եւ ասէր հանհանելուկ ընդ կորճերն. եւ որ չի տար պատասխանի, հա-

[1] La version arménienne du conte de la Ville d'Airain: Revue des Etudes arméniennes 1 (1921) 297—302.

[2] Gaudefroy-Demombynes, Les cent et une nuits, traduites de l'arabe, Paris 1911, էջ 284 եւ շար.: Տես եւ ծանօթութիւնք, էջ 329 շար.: Հմմտ. նաեւ Հազար ու մէկ գիշերներ, արաբական վէպեր. Թարգմանեց Մ. Մ. Հատոր Ա. Զմիւռնիա 1870, էջ 180—183:

տանէին գլուխն հրամանաւ Թագաւորին... եւ լուեալ զբան զայս որդի մի Թագաւորի (ջնջուած եւ գրուած իշխանի) ի հեռաստանէ եւ էր իմաստասէր յոյժ եւ ցանկայր տեսանել զաղջիկն զայն...»:

Դուրս ձգուած է գրոյցիս առաջին մասը, ուր կը պատմուէր կորիճ իշխանի Թագաւորական ծագումն եւ անկումը եւ իր արկածախնդիր ձեռնարկները:

Ձեռագիրք. Հռոմ, Հիւրանոց Հայոց, Թ. 33, Թղ. 33ա: Վիեննա, 671, 143ա: 976, 209ա (1614): 977, 55ա: Վենետիկ 246, 151ա (Ցուցակ 675): 256, 104բ (Ցուցակ 766): 283, 554բ (Ցուցակ 996): Էջմիածին 33, 170բ: Երեւան, Թանգարան, 395, 210բ (1650): 824, 25ա (1687): 855: 1010, 123ա (ԺԸ): Երուսաղէմ, 726 (1678): Զմմառ, 404, 8ա (1642): Անտոնեանց, 77, 236ա: 92, 53բ: 110, 1ա: 125, 198բ: Հալէպ. Բ. 28, 380ա (Ցուց. 87):

Հրտ. Գիրք պատմութեան որ կոչի Պղնձէ քաղաք, Կ. Պոլիս 1749, էջ 135—163:

Այս գրոյցի հիման վրայ յօրինած է F. Schiller իր Turandot, Prinzessin von China. Ein tragikomisches Mährchen nach Gozzi [3]. Schillers sämmtliche Werke, Stuttgart 1840, S. 582—608:

3. Իմաստութիւն մեծ թագաւորին

[3] Gasparo Gozzi, Opere, Padova, 1818—1820 հրատարակուած 16 հատորով:

Զարմազանայ եւ որդւոյ նորին Փարմանի Ասմանինն վարուցն, ծննդեան եւ մահուանն:

*Եղեւ մեծ թագաւոր մի յԱսորեստան,*
*Անուն թագաւորին էր Զարմանազան.*
*Այնէր շատ քաղաքաց հուքմ եւ հրաման,*
*Ունէր անթիւ հեծել եւ քաջ պահլուան...*

*Ձեռագիրք.* *Հռոմ*, *Հիւրանոց Հայոց*, *Թ.* 33/24, *Թղ.* 48*բ*—65*ա*: *Վիեննա*, 671, 96*ա* (1668): 976, 36*ա* (1614): *Պարիս*, 307, 43*բ*: *Վենետիկ*, 246, 161, 176*բ*. (*Ժէ. ցուց. Բ.* 676): 234 (1564): 325 (1590): 1330 (1563). *Հալէպ*, 139, 143*ա* (*Ցուց.* 242): *Երեւան*, *Պետ. Մատ.* 3595, 5*ա* (*ԺԵ*): 5306, 33*ա* (*ԺԷ*): 6451, 146*ա* (1708): 7050, 1*ա* (1646): 7709, 35*ա*: 7726, 1*ա* (*ԺԷ*): 8219, 99*ա* (*ԺԹ*): 8463, 165*ա* (1707): 8605, 1*ա* (1667):

*Հրտ. Գրքուկս այս որ ասի Հանելուկ, զոր արարեալ է տեառն Ներսէսի Կլայեցւոյ. Կ. Պոլիս* 1724, *էջ* 33—109: *Անահիտ*, 1904—1905 *հայ. բնագիրն եւ գաղղ. թարգմ.: Գաղղ. թարգմ. նաեւ ի թերթին* Revue des Traditions populaires, 1906, p. 407—500: *Երեւան*, 1957:

*Զրոյցս հաւանօրէն արձակ թարգմանութիւն մըն էր «ի տաճիկ լեզուէ», որ ապա հայ քերթողէ մը, թերեւս Փրիկէ վերածուած է ոտանաւորի:*

*Ինձ կը թուի, թէ թագուհւոյն ողբը իր*

*անդաւակութեան համար, ներշնչուած է Ալեքսիանոս կամաւոր աղքատի մօր ողբէն.*

*Աստ է ինչ իւր մօրն շատ բաներ ողբով,*
*Թէ զինչ ծառ կայ տնկած դարդարին պտղով:*
*Եւ զինչ բոյս կայ դալար երեւին ծաղկով,*
*Ես մէն ծառ չորացած՝ թագաւոր թախտով:*
*Հայիմ ես յանասունք ծնունդ յաճումն է,*
*Զթռչունս երկնից գիտեմ անթիւ երամ է.*
*Տեսնում ես զգազանս եւ յաւելումն է.*
*Դառնում եւ յիս հայիմ կեանքս հարամ է:*

*«Եւ էր կին նորա ամուլ եւ անդաւակ... լայր եւ ողբայր եւ հառաչէր ընդդէմ Աստուծոյ... խնդրեմ զորդի յԱստուծոյ. այլ* տեսանեմ զի տուեալ է Աստուած անասնոց ծնունդ, այլ ծառոց եւ տնկոց պտղաբերութիւն. *եւ զիս միայն է զրկել...* (*անդ, թիւ* 33, *թղ.* 41*ա*: *Վարք Հարանց, Ա.* 139):

4. Յառաջին թագաւորացն է Աբդլ Ճափարին եւ Ճէմիլային պատմութիւն:

*Եւ եղեւ ի ժամանակի* ի *Պաղտատ քաղաք*ի *ծեծեան յաղթող թագաւոր մի. եւ որդի ոչ ունէր: Բազում անգամ աղաչեաց զԱստուած ախտիւք եւ բազում ինչս բաշխէր աղքատաց եւ կարօտելոց, միթէ ողորմի նմա եւ զաւակ տացէ նմա...:*

Վ.ջ. *Հայրն մի տարի եւ կէս ապրեցաւ եւ մեռաւ. եւ նստաւ յաթոռ թագաւորութեան Աբդլ–Ճափարն, խելօք եւ իմաստու-*

թեամբ վարէր զթագաւորութիւն ուրախ եւ մուրատով մինչեւ ի մահուն օրն»:

Նախորդին նմանակ, խառն կաֆանեռով գրոյց մը:

Ձեռագիր· Վիեննա, Թ· 671, 128ա—135բ:

5· Պատմութիւն Փիր Փահլուլին: Յանուն Աստուծոյ ողորմածին· եւ յիշումն առաջին ժամանակաց· զոր են ի գրաւսանս մարդկան· որ է փոխած ի տաճիկ լեզուէ ի հայ տփթար այսպէս· զոր արարաք սկիզբն Փահլուլ թագաւորին պատմութեանս:

Որ (սա) էր այր իմաստուն եւ առաքինի· կին եւ որդի ոչ ունէր· եւ ասէին զնմանէ թագաւոր արեւելեան աշխարհին..:

Վջ· Ով սատ բարի գործեր է, նա յանդէն զայն գտնէր· եւ ապա դարձոյց զխալիփայն եւ հաւատաց յամենասուրբ Երրորդութիւնն...:

Ձեռագիր· Տիւբինգէն· 70, 392ա—95բ (1432· Յուց· 109):

Նոյնը այլ խմբագրութեամբ· «Վարք եւ պատմութիւն Փահլուլ թագաւորին, որ անարգեաց զփառս աշխարհի: — Սա էր մեծ թագաւոր եւ տէր Արեւելեան աշխարհին· էր իմաստուն եւ առաքինի· սիրէր զաղքատութիւն եւ ատէր զմեծութիւն· ատէր զայս կեանքս եւ հոգայր զմահուն օրն...:

*Վջ· Եւ ապա ամաչեց խալիֆան. եթող զհամբերելն եւ ելաւ նստաւ յաթոռն եւ ասէ· Փառք Աստուծոյ որ այսպէս գիտութեամբ պատուէ զսիրելիս իւր եւ տայ իմաստութիւն ում եւ կամի... աւրհնեալ է Աստուած· ամէն :*

*Ձեռագիրք· Վիեննա*, *Թ·* 671, 135*բ*—143*ա* : *Էջմիածին*, 512, 280*ա* (*ԺԷ·*) : 1495, 4*ա* (1684) : *Երեւան*, *Թանգ·* 649, 126*բ* (1652) :

*Հրտ· Գիրք պատմութեան որ կոչի Գղնձէ քաղաք· Կ· Պոլիս* 1749, *էջ* 61—76 :

⁂

# ԶՐՈՅՑՔ ԵՒ ԽԱՒՍՔ ԱՌԱՋԻ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ԵՒ ԻՄԱՍՆԱՑՆ, ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵՑԻՆ ԴԱՒԻԹ ԿՈՒՐԱՊԱՂԱՏԻՆ Ի ՀԱՅԼԵԶՈՒ Ի ՏԱՃԻԿ ԼԵԶՈՒԷ

## ՅԱՆՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ՈՂՈՐՄԱԾԻՆ

1. *Կայր խալիֆա մի ի Պաղտատ քաղաք, եւ ասէին անուն նորա Աւտալ Ազիզ: Աւր մի ելաւ ըստ սովորութեան իւրոյ եւ խաղար ի մոյտանն: Եւ երեկ մարդ մի, եւ ասեն զանուն նորա Դալիֆ. երեկ եւ ծունր էած խալիֆային եւ ասէ. Է՛ հզաւր խալիֆա, քաղաք մի կայ ի հիւսուսոյ դէհն, անուն նորա Պղնծէ քաղաք. մաւտ ի ան քաղաքն են ան դեւքն, որ Սողոմոն ի կժերն էած եւ արճիճով զբերան կալաւ եւ մատնէհրեց:*

2. *Կոչեց խալիֆան զԱմիր Մուսին եւ ասէ. Եկ գնա՛, գի՛տ զան դեւքն, որ Սողոմոն զնդանել է:*

*Ասէ Ամիր Մուսին. Ոչ գիտեմ զճանապարհն եւ ոչ կարդացել եմ գրով:*

*Ասէ խալիֆան. Հալեւոր մի կայ ի քաղաքս. նա գիտէ զճանապարհն. հետ քեզ առ եւ գնա՛:*

Խորագիր· *զրուց· լեզվէ:*
2 *ավտուլ:*
15 *կարդաց:*

*Կոչեաց խալիֆան զՀալեւորն եւ ասէ. Արեկ գնա՛ հետ Ամիր Մուսիին ի Պղնձի քաղաքն, զի դու գիտես զճանապարհն:*

*Ասէ. Քո հրամանք է:*

3. *Ասէ Ամիր Մուսին ընդ Հալեւորն. Ի՞նչ պիտի հետ մեզ ի ճանապարհս:*

*Ասէ Հալեւորն. Պիտի հետ մեզ հազար ուղտ, որ զջուրն տանի. հազար ուղտ, որ լապրանք տանի. զի պիտի որ ի չորս աշխարհ մտանենք. եւ է անջրդի եւ զարտակ ի մարդուէ, ու քառասուն աւուր ճանապարհ է. սաստիկ հողմն լինի. թէ ի տիկերն լնունք ջուր, նայ ցամաքի:*

*Ասէ Ամիր Մուսին. Ապա ի՞նչ անենք:*

*Ասէ Հալեւորն. Ա՛ռ ի հետ մեզ հազար փուկս կուժ, որ ջուրն չցամաքի:*

*Ասէ Ամիր Մուսին. Աղէկ ասցիր:*

*Եւ խրկեցին ի Մսր եւ բերին կժեր շատ: Ելան առաջ եւ առին ի հետ երկու հազար ձիաւոր խուրանց ամէն սլէհովն. եւ գնացին ի ճանապարհ բաղում. եւ մտին աւեր աշխարհք եւ ելան մտին ի չէն աշխարհք: Եւ աւր մի եւ գիշեր ի լեառն եւ ի դաշտ այլ գնացին:*

4. *Եւ Հալեւորն երթայր առաջ եւ զատեղքն նշան ունէր. նա յանկարծակի ամպ ելաւ եւ ծածկեաց զատեղքն, եւ զճանապարհն կորուս Հալեւորն. եւ ասէ ցԱմիր*

41 *ըաստեղն:*

Մուսին· Ջճանապարհս չեմ գիտենում, կորուսի· վասն այսորիկ կորուսի, որ ամպն ծածկեաց զերկինքն եւ զաստեղքն:

Ասէ Ամիր Մուսին, թէ Ապա ո՞ր երկիր ենք:

Ասէ Հալեւորն· Ջեմ ծանաւթ երկրիս այս:

Ասէ Ամիր Մուսին· Արեկ դառնանք յետ:

Ասէ Հալեւորն· Ջկարենք դառնալ յետ:

Ասէ Ամիր Մուսին· Գնա՛ Աստուծոյ անուան ի վերայ:

5· Գնացին զողջ գիշերն մինչուր լուսացաւ· կէս աւր ալ գնացին եւ ելան ի դուր դաշտ մի· նայ ծուխ մի կու երեւնար· եւ տեսան բարձր կուպայ մի· թվէր թէ երկինքն կու հասնի: Գնացին եւ մաւտեցան ի կուպան եւ տեսան ի մէջ կուպային բլուր մի մեծ· եւ շէնքն ամէն պատվական ակունք էր եւ ատպատերն զմրուխթ· եւ ի չուրջն եաղուխթ չարած կարմիր ոսկով· եւ դուռն անհաս դեղեցիկ· եւ մեծութիւն կուպային չորս հազար ուղտաքայլ էր· եւ ան դերդ մուխ կու երեւնար· նայ շինած էր արճիճէ կուպայ մի այլ: Ոնց որ տեսաւ Ամիր Մուսին՝ զարմացաւ ընդ ադվորութիւն կուպային· եւ էր ան կուպան

48 զաստխն:
52 յարեկ:
60 մոտեցան:
61 տեսան փոխ· տեսան:
64 կամիր:
66 ուղտայքայլ:

անտէր եւ անմարդ. եւ բուն ճիչէր ի վերայ պարապացն։

6. Կանգնեցաւ Ամիր Մուսին եւ ելաց եւ ասէ.

Ոչ ով չունի իշխանութիւն
  բայց մի Աստուած յաւիտենից.
Աշխարհիս մեծութիւն անցաւոր է,
  աստուծոյ մեծութիւն անանցաւոր է։
Ասէ Ամիր Մուսին.

Աւաղ գեղեցիկ կուպայ,
  ո՞ւր են քո բնակիչքն.
Կամ ո՞ւր են, որ զքեզ շինեցին,
  զի կենդանի ի քէն ոչ երեւին,
  թվի չեն ծնել։

Ասէ Ամիր Մուսին կափայ զայս, թէ
Գնաց ժամանակ սոցա
  զինչ զերազ մթան գիշերի.
Այլ դառնալու չէ ճարակ
  վայելել զոր հեղ մի թողին.
Աւաղ թող կարնա(ն)ք գիտել,
  թէ բարի գործով գնացին.
Կամ թէ հարվածովք անցան,
  որ չի մնաց առ մարդ մի հողին։

Հետ այս Կափայիս էլաց Ամիր Մուսին եւ ասէ.

72 կանկեցաւ։
77 անանցնաւոր։
79 ավախ։
83 չէն։

*Ո՞ւր են տէրքն եւ ծառայքն,*
*ո՞ւր են հայրքն եւ եղբայրքն,*
*Ո՞ւր են որ զայս չինեցին,*
*զայս անդին վայելչութիւնս.*
*Որպէս ծաղիկ խոտոյ*
*թառամեցան եւ պակասեցան:*

7. *Ասէ Ամիր Մուսին. Թող երթանք յառաջ եւ մտնուք այս կուպաս եւ տեսնուք զիւր աղվորութիւնն:*

*Ասէ Հալեւորն. Քո հրամանք է. զիտե՞ս որ զինչ գրած է. լինի կարդաս եւ հանապազ զովես զԱստուած:*

*Ասէ Հալեւորն. Ո՛վ Ամիրայ. խնամ՛ եւ զոհացիր ի յԱստուծոյ, զի ուրախութիւն մեծ է, որ ազատեաց զմեզ ի մեծ որոգայթէ եւ ի դժար ճանապարհէ եւ եբեր ի բարի ճանապարհս:*

8. *Եւ ասէ Հալեւորն. Գիտացիր, Ամիրայ, զի իմ հայրն վաճառական էր. եւ տեսել էր բազում աշխարհ եւ անցել էր տեղիք մի եւ մոլորել էր, որպէս եւ մենք մոլորեցաք եւ եկաք յայս տեղի եւ յայսկից ինչվի Պղնձէ քաղաքն մէկ ամառ ճանապարհ է: Երթանք ի հետ ծովեզերին եւ բաժնիք ի ծովեզրէն եւ երթանք ի հետ լերանց. անդ կան ծառք պլտղարերք գեղեցիկ տեսուք:*

9. *Ասէ Ամիր Մուսին. Աստուած զքեզ ա–*

120 *պտղաբերք:*

ւետեսուք տանէ․ յառաջ ի յայս կուպաս մտնենք։ Եւ գնացին մտան ի կուպան եւ տեսան զգուլին ի բաց, յառաջի դրանէն մինչ ի մեկալ դուռն կայր ապրիգմիկ մի։ Հայեցան եւ տեսին չէնքն․ նայ ի վերայ գրած էր, որ Ամիր Մուսին չի կարաց կարդալ։

Եւ սաէ Ամիր Մուսին․ Ո՞վ կարէ կարդալ զայս գիրս։

Սաէ Հալեւորն․ Ես գիտեմ վեց ցեղ գիր գրել եւ կարդալ։ Երեկ Հալեւորն եւ կարդաց։ Եւ էր գրած յունէրէն գրով․ նա մեկնեց յունէրէն ի տաճիկ լեզու․ եւ այսպէս էր գրած․

Մարդ որ յայս տեղս գայ,
  Թող լան զմեզ ու ինքն խրատի․
Որ ամենայն ընչից
  մնացել են զարտով ի լի,
Թէ չէ թող զնա տեսնու
  իրք զարմանալի։
Յայն ժամ Աստուծոյ փառք տայ
  եւ միշտ կենդանի։

10․ Լսեց Ամիր Մուսին եւ ելաց զառնապէս եւ սաէ․

Ո՞ւր են իրենց տէրքն․
  զի մեզ կու յայտնէ․
Որ մենք այլ ենք գնալու հետ զացայ։
 Գրած էր Թէ

123 մտենք։ 122 ււետասուք։
125 ապրիգմիկ = ապարէ՞զ

Մահն բաժնեց զմեզ ի այս մեծութենէն,
Եւ անդադար ժողովէաք զդանձն,
եւ հանկիստ ոչ ունէաք·
Մինչեւ անցաք յաշխարհէս,
ու ի հող մտաք·
Եւ յետոյ համարս տալոց ենք Աստուծոյ,
զոր ինչ եւ գործեցաք:

Եւ Ամիր Մուսին ելաց դառնապէս եւ ասէ· Օրհնեալ է Աստուած, որ կայ եւ մնայ յաւիտեան:

11 · Ծինուածին եւ դեղագործին նման ոչ կար· եւ կար գրած յերկու դուռն գիր: Ասէ Ամիր Մուսին ցՀալեւորն· Արեկ կարդա: Եւ այս էր գրած·

Տեսէք թէ քանի մեծութիւն ունէաք
եւ քանի կերաք եւ խմեցաք·
Եւ յետոյ կերակուր որդանց եղանք·
ամէնտ հետ մեզ էք գալու·
Դուք խնդրեցէք յԱստուծոյ զայն կեանքն
զի այս կեանքս անցաւոր է:
Քանի Ադամայ որդիք են եկել
յայս կեանքս ու տեսել,
Ու զերդ զանաստուն անբան կենդանիք
են աստ մոլորել·
Ան որ իմաստուն է լեալ,
հեշտ է նա զայս կեանքս իմացել·
Ու զերծ կացել յայս կենացս,
ու յանտէնն զիւր տուն է շինել:

167 կենքս: 174 յիմացել:

*Ամիր Մուսին չատ էլաց եւ տրմեցաւ։ Եւ տեսաք եւ զարմացաք եւ լսեցաք իրք զարմանալի· զի չարժէ աշխարհս ոչինչ· աղքատութիւն լաւ է քան զմեծութիւն· եւ ասէ· Օրհնեալ Աստուած։*

12· *Եւ տեսաւ Ամիր Մուսին զկուպան դատարկ ի մարդվէ· եւ կայր ի մէջն կուպայ մի այլ եւ բարձր երեւնար մինչեւ յաւդն· երեք հազար գերեզման մարմարիոն ի չուրջ կային։ Եւ կար գերեզման մի մեծ եւ գրած ի վերայ գիր եւ ոսկի ի գիրն լցած։ Ասէ Ամիր Մուսին ցԱլեւորն· Արեկ կարդա։ Եւ այս էր գրած·*

*Հաչվէ թէ քանի՞ բարի*
*յայս անուն կեանքս վայլեցեր·*
*Ու կամ թէ քանի՛ քաղաք ու բերդեր*
*յայլոց խլեցեր։*
*Հիմիկ ես խաւար մտաւք*
*ու որդունքն այլ գան ի քեզ·*
*Ինչեր ունիս պացխուն տալու*
*որ այս կեանքս զրկեցեր։*

13· *Յորժամ լսեց Ամիր Մուսին՝ էլաց դառնապէս եւ մտաւ ի կուպա մի այլ, որ ունէր ութ դուռն· չորս դուռն յուտ էր եւ չորս դուռն սանտալ յուտ, ոսկի բեւեռուք եւ սանտալն արծաթի։*

179 *չաջէ*։ 187 *լցայ*։
190 *հաչփէ*։ 192 *բերթեր*։
194 *մտուք*, կարդա՞լ *մտել*։

Առաջին դուռն այսպէս էր գրած ·
Եկն ինձ մահ եւ ոչ կարացի դերծանել
  կամ ճարակ գտանել ·
Եւ ոչ բազում հեծել իմ
  աւգնեցին ինձ ·
Ոչ ազգականք իմ աւգնեցին ինձ ·
Ի ամենայն մեծութենէս տարան զիս
  չալկող եւ փորող մի ·
Եւ ամենայն մեծութիւնս իմ
  այլոց եղեւ ·
Թող ի աշխարհս զոք չի խաբէք ,
Տեսէք թէ մարդ ինչ կարէ առնել
Երբ արարչին հրամանքն կու հանին
Յայս տանորիս ինչ չահ կայ
Երբ մահուն աւրն գալոց է ,
Որ զաղէկ ու զգէշն կու տանի ·
Զան մարդն վայ՛ , որ ի մեղս մեռանի
  եւ զմեղքն սիրէ ։

14 · Երբ մտաւ ի կուպայ մի այլ եւ կայր գերեզման մի այլ եւ կար պնակիտ մի երկաթի · երեկ հալեւորն եւ կարդաց · եւ գրած էր այսպէս ·

Յանուն Աստուծոյ անմահին ·
Ով որ գայ ի այս տեղս , նա իմանայ ,
  Թէ ինչ ցեղ է ժամանակիս գնացքն ·
Մի ապաւինիք յաշխարհս
  եւ մի իւր ազվորութիւնս ·

215 եփ ։
227 գնացղն ։

Զի խաբող է եւ անցաւոր
  իբրեւ զերազ գիշերոյ:

Եւ գրած էր այսպէս·

Ես էի մեծ թագաւոր,
  տէր ամէնի որ կու հայիք·
Եւ կար ինձ բազում բերթ ու քաղաք
  որ գնելու չէ ինձ կարիք·
Ադամայ որդիք, դուք մի խաբիք:

15· Ցերրորդ դուռն այսպէս էր գրած·

Արարիչն արարածոց դուք յուսացիք,
Որ զալոցն է երկրորդ անգամ
  եւ դատելոց զինչ կայ հողիք:
Ես հերիք ձեզ աւրինակ,
  դուք մի յանչահ կեանքս խաբիք·
Լաւ որ յանդէնն չինէք
  ժառանգութիւն եւ հայրենիք:

(Եւ գրած էր) թէ

Ես տէր էի ԺՌ քաղաքի պարապաւորայ·
Եւ ունէի ԾՌ թագի ձի եւ Ռ թրաւոր
  եւ գանձ անչափ եւ անհամար,
Որ ոչ ունէի կարիք տատնուորէս,
  բայց միայն կեանք·
Եւ ապրեցայ ՃԾ տարի
  կենաւք բարի ուրախութեամբ,
Եւ թվէր ինձ թէ մահ ոչ կայ
  մինչեւ յաւիտեան:

243, 305 կենքս:

*Երբ երեկ աւր մահուն, ապայ իմացայ,*
*որ ոչ խնայէ յերիտասարդ եւ ի ողայ,*
*Եւ ոչ աղքատ եւ ոչ ի մեծութիւն.*
*Երբ մահն երեկ, ասցի*
*թէ բերէք զիմ հազար թրաւորն.*
*Ասցի թէ կարէ՞ք թափել թէ ոչ,*
*նայ ասցին թէ պահ մի*
*չի կարեմք աւգնել քեզ,*
*Ցետոյ մեռայ. ինձ անուն ասեն Քոչէս:*

16. (*Գրած էր թէ*)

*Մեռած թէ հազար եմ:*
*Ես տէր էի զինչ որ կու հայիք.*
*դէռ կու զրկէաք զաշխարհս,*
*ինչուր մահն առաց թէ հերիք.*
*լուք թէ հայիք ի յիս,*
*աւրինակ եմ որ խրատիք:*

*Եւ ի ներքի դէհն գրած էր այս կափառ.*

*Զինչ զանձ ու կումաշ կայ ինձ,*
*որ ի մէկ տեղի ժողովեր,*
*Զի կարցին ինձ աւրիկ մի աւգնել,*
*զի կենաց ճարիկն էր հատել:*

*Երբ լսեց Ամիր Մուսին խիստ էլաց եւ աղաւաղեաց զաշխարհս:*

17. *Եկին ի վեցերորդ դուռն. եւ էր գրած այսպէս.*

266 *հազար* կարդա՚լ *հզաւր*:
278 *ապականեաց*:

Է՛ Ադամայ որդիք
  Հանցկուն է՞ր էք անգիտացել,
Զանմխիթար գալիքն
  ու զմահուն աւրն մոռացել.
Տեսէք թէ քանի մարդիք
  յԱդամայ ի վեր գնացել,
Ամէն հողում եղան,
  դուք է՞ր էք զահն մոռացել:
Եօթներորդ դուռն գրած էր այսպէս.
Աստնվորիս որդորն
  ի երազ գիշեր նման է.
Ձի խիստ կու խաբէ այս կեանքս.
Վա՜յ նարայ որ խիստ կու սիրէ.
Էյնիկ ան մարդուն ասեմ,
Որ անտէնն իր տուն կու շինէ.
Որ երբ Աստուծոյ յառջեւ գնա տարլին,
  նայ ինքն չամաչէ:

18. Ութերորդ դուռն այսպէս էր գրած.
Է՞ր չէք ի խրատ խրատիլ մարդիք.
Թէ մահուն աւրն գալոց է,
մոռնաք զանդիման դատողն,
որ զամէն մարդ ի հաւն կու դիտէ.
արդար դատաւոր է նա,
որ պեղծ մարդուն մեծ աւր կու պահէ.
Հատուամն չունի տանջանք,
լուկ անանց հուրն կու էրէ,
եւ ես որ կու սիրէի զայն կեանքս,
ուսկայ կամ հողացել

289 աստնորիս:

*եւ կերակուր որդանց եղել։*
*Աս տուն մեծ է եւ թագաւորական,*
*եղեւ ամենայն ինչ ունայն.*
*Մարդ որ լսէ, թող պատրաստ կենայ*
*յամէ չարէ.*
*Այլ զայն ի միտ ածէք,*
*որ համարս տալոց էք առաջի Աստուծոյ։*

19. *Եւ տեսան սեղան մի եադութ դեղին. եւ ոսկին կանանչ զմրութ. եւ էր իր բոլորութիւն հինգհարիւր թիզ. եւ ի չուրթն գրած է այսպէս.*

*Զինչ կայ գեղեցիկ շինուած*
*մահն զայ զամէն աւիրէ.*
*Թէ չէ դու հայեց ի դա,*
*Թէ շինողդ իրեն տամուկ (°) է.*
*նոյնպէս ամեցո զաշխարհս,*
*ու աղէկ զինք դու ձեւէ.*
*Ու երկնաւորին տուր փառս,*
*որ ամէն հոգւոց կու տիրէ։*

*Եւ այս սեղանս թագաւորական է եւ արվեստաւք բերած է ի կուպաս. եւ գրած էր ի սեղանն, թէ*

*Հազար միակնի թագաւոր են կերել յիս*
*եւ ճաշակել.*
*զերդ զայն որ երկու աչք ունէին.*
*յետոյ մտան ի գերեզման։*

328 *թագաւական։*
328 *Ազթ. Այս սեղանս Զմրութ թագաւորին է. հազար թագաւոր կերակրել է ի վերայ սորա։*
333 *զարդ։*

*Եւ Ամիր Մուսին երետ զամէն գրել. եւ կաւ Հալեւորն զԱմիր Մուսին եւ սկսան գրել ինչուր վի կէս աւր:*

20. *Գնացին չատ աւեր աշխարհ եւ տեսան մեծ լեառն մի. եւ ան լեառն մեծ իրք մն կանկնած եւ էր ինքն զարմանալի. կանչէր եւ ասէր. Փառք Աստուծոյ բարձելոյն, որ զայս չարս ի վերայ ինձ արար:*

*Ասէ Ամիր Մուսին. Մէկ հարցէք, որ ասէ զիւր պատճառ:*

*Ասէ Հալեւորն. Ես կու վախենամ:*

*Ասէ Ամիր Մուսին. Ոտքն ու ձեռն կապած է. ի՞նչ կարէ անել:*

*Եւ մաւտ գնաց Հալեւորն եւ ասէ. Ի՞նչ մարդ ես. կամ ո՞վ է դնտանել զքեզ ի հաւտ:*

*Պատասխանի ետ եւ ասէ. Ես քաջ եմ:*

*Ասէ ցնա Հալեւորն. Զքեզ ո՞վ է զընտանել:*

21. *Ասէ քաջն. Իմ զրոյցն արմացք է. մէկ մն կար եւ ասեն անուն նորա Աւտուլ Ալիզ, եւ ունէր կուռք մի. եւ իրեն նշանքն կարմիր եաղութ էր. եւ ես պահնորդ էի այն կռոցն, եւ ունէր հեծել հազար հազարաց եւ քաջք բազումք. եւ քաջքն ամէն յիմ հրամանքն էին: Եւ ունէր դուստր մի մեր Թագաւորն զեղեցիկ: Եւ Սողոմոն ելչի խրկեց,*

353 *Ադթ. Ասաց Քաջն. Կայր Թագաւոր մի Աբդլազիզ անուն. ինձ քրոջ որդի էր. եւ ունէր երկու կուռք, կարմիր ադութ եւ սպիտակ:*

թէ Տուր ինձ զդուստրդ ի կնութիւն. եւ կոտորէ զկուռքն եւ հաւատա իմ Աստուածն. ոչ կայ այլ աստուած քան զնա, որ արար զերկինս եւ զերկիր: Թէ լսես՝ ապրիս, թէ չէ պատրաստ կաց ի կռիւ:

Ասէ թագաւորն ընդ իւր իշխանքն, թէ Հասկցիք թէ Սողոմոն ի՞նչ գրել է. թէ կոտորէ զկուռքս եւ տուր զքո զուստր ինձ ի կնութիւն եւ հաւատա յիմ Աստուած:

Ասցին իշխանքն, թէ նա քեզ ի՞նչ կարէ առնել. թէ գայ՝ մենք կռվինք:

Ես խումար էի. մտայ ի կուռքն եւ ի խաւսք հանի. ասցի թէ Մենք առնուք զնորա կարողութիւն եւ տանք մեր հեծելիս:

Յորժամ լսեց զայս թագաւորն, ուրախացաւ եւ զելչին ծեծեց եւ արար պեղծ պատասխանի. Ասա՛. թէ դու (առ) իս ոչ գաս, ես առ քեզ գամ:

Գնաց եւ ասաց Սողոմոնին:

22. Եւ Սողոմոն թագաւորն աջողցաւ եւ երեր քաջք եւ մարմնաւորք անչափ. զզանձն երաց եւ զամէն հոռքեց: Եւ Սողոմոն աջողցաւ ի մէկայլ դէհէն եւ զազանաց հրամայեաց, որ երկու բաժին եղան. կէսն ի աջ եւ կէսն ի ձախ. եւ թռչնոցն հրամայեաց, որ ի աւդիցն ի վար կռվէին: Եւ նստաւ Սողոմոն

362 ասվածն:
365 Ադթ. պատրաստես զքեզ ի պատերազմ:
372 խումար. Ադթ. ես անբախտ էի եւ ախմար եւ չփացած:

եաղութ թախտն եւ վէզիրին հրամայեաց Դէմէտխանին, թէ Դու ձախ դէհն կաց, եւ Քարխմատինի՝ աջ դէհն. մարմնաւորք եւ քաջքն յառջեւնուն:

Եւ թագաւորն մեր եկաւ իւր հեծելովն: Առաջին մենք դիպաք յի(ր)ար. եւ մեր կոխն է կրակ եւ թինք չար:

Դէմէտխանն կանչեց. նայ ինձ թվեցաւ, թէ անդունդք պատառեցաւ ի նորայ ահեղ ձայնէն. եւ թռչունք կովէին ի աւդիցն ի վայր եւ գազանքն ի գետնէն:

Եւ ես իմ զաւրաւքն փախայ: Դէմէտխանն ի հետ արար. երեք աւր ինչուր հասաւ: Ես ընկայ եւ թալցայ որպէս մեռել. զիս կալաւ եւ հոր ավլին փորել. զիս ի ներս դրին եւ մանէհրեցին քարն եւ երկաթն եւ ի պղինձն: Այս է իմ հանդիստն մինչ ի գալուստն Քրիստոսի կամ ի մեծ չարչարանքն: Եւ այս էր իմ զրոյցն:

23. Ասէ Ամիր Մուսին, թէ Հարցէք իւր կերակուր ի՞նչ է:

Ասաց թէ մենք ոչ ուտենք եւ ոչ խմենք:

Ասէ Ամիր Մուսին. Աւրհնեալ է Աստուած, որ կայ եւ մնայ յաւիտեան:

Ասէ Հալեւորն. Երեք բան հարցնենք, ասա՛ մեզ:

Ասէ. Քանի կամիս հարց:

387 համայեաց:
399 ինչաւր:

Ասէ Հալեւորն· Առ ձե՞ղ են ան ղեւքն, որ Սողոմոն ի պղնձի կուժերն էած։

Ասէ Բաջն, թէ Հայեաց ի ծովն, որ կուռ կուռ կ'այնէ· հետ լերինն մարդիք են բնակել։

Ասէ Հալեւորն· Ընդ ո՞ր երթանք ի Պղնձէ քաղաքն։

Ասէ Բաջն, թէ ի հիւսուսոյ դէհն· այլ ճար չի կայ քանց ընդ այն։

24· Եւ սկսաւ գնալ· եւ գնացին բազում աւրեր աշխարհ· եւ հասան ի մեծ լեառն մի եւ էրեւցաւ քաղաքն սեւադոյն· եւ երկու տեղ էրեւնար որպէս բոց։

Ասէ Ամիր Մուսին ընդ Հալեւորն, թէ Այն սեւն ի՞նչ է։

Ասէ Հալեւորն· Պղնձի քաղաքն է· ու գրած ունիմ, որ իւր պարիսպն սեւ քար է եւ երկու պղնձի պուռճն ի վերայ դրան կայ, յորժամ արեգակն ցաթէ եւ փայլէ՝ Պղնձի քաղաքն վասն այնոր ասեն։

Եւ սկսան գնալ եւ մաւտեցան եւ տեսան խիստ գեղեցիկ։ Եւ էր բարձրութիւն պարսպին վաթսուն կանկուն, եւ դուռն յխուռն· եւ թվէր թէ միակտոր էր պարիսպն։

25· Ասէ Ամիր Մուսին· Զեմ տեսնուլ զայս քաղաքիս դուռն։

417 Ագթ· Կուրկուրիա լեռան մօտ է։
437 միակտոր . Ագթ . միափերթ։
439 զայս։

Ասէ Հալեւորն. Գրած ունիմ, որ յիսուներորդ դուռն է. տլրամով պիտի բանալ:

Ասէ Ամիր Մուսին. Ապա ինչ անենք:

Ասէ Հալեւորն. Երկու այր հանկիր եւ թապիր արա, թէ ինչ ցեղ մտնենք: Իջան եւ թապիրեցին. եւ հեծուցին երեք ձիաւոր եւ քաղքովն ի չուրջ եկին. եւ ցած տեղ չի գտան քանց դայն, որ իջել էին: Եւ Հալեւորն խառ զԱմիր Մուսին եւ զԴալիւն եւ ելան ի լեառն մի, որ մօտ էր ի քաղաքն. եւ տեսան մարմարիոն սալեր եւ ի վեր սալերուն ազվոր բան էր գրած:

26. Ասէ Ամիր Մուսին ընդ Հալեւորն. Արեկ կարդա. եւ գրած էր այսպէս.

Ո՜ Ադամայ որդիք, դուք մի խաբիք,
Բերէք զխելքնիտ ի վերայ,
Եւ աղէկ մտաւք իմացիք,
Քակտի ձեր ամէն մարմինտ.
Եւ անդէն հուրն կու մնայ.
Ունինք դուք պատասխան տալու,
ձեր գործոյտ, որ մէկ չի մնայ:
Ո՜ Ադամայ որդիք,
զԱստուած էր հանց խիստ մոռացաք,
Ամէն այր նոր մեղք գործենք,
վի բարուն խիստ կու հեռենանք.
Դարձիք ի պեղծ գործոյտ,
որ անդէն հրոյն չլինենանք.

27. Այնժամ եկին ի հեծելն ու ասցին, ի՞նչ ցեղ մտնենք ի քաղաքս եւ տեսնունք

գիւր գեղեցիկ չէնքս· զի ինձ հանց ագվոր թվի, որ այլ չկայ ի վերայ աշխարհի· թէ մտենք, շատ գանձ տանինք մեր Խալիֆային:

Ասէ Ամիր Մուսին· Զուգեցէք սանդուխ մի· զի կային ի հեծելն որ հունութիւն գիտէին· ու դարբնութեամբ զուգեցին սանդուխ եւ դրին ի պարիսպն ի վեր:

Ասէ Ամիր Մուսին· Ով ելնէ ի վեր:

Ասէ մէկ մի հեծելէն· Ես ելնեմ եւ բանամ:

Ասէ Ամիր Մուսին· Ել Աստուծոյ անուան ի վերայ: Եւ ելաւ ի պարիսպին վերայ, ծափ էզարկ եւ ասէ· Ծապաշ, չապաշ· եւ ընկաւ ի քաղաքն ի վար:

Ասաց Ամիր Մուսին· Այս խելաւքի բան է: Եւ էլան եօթն հոգի եւ ամէնն զան բանն ասացին եւ ընկան ի քաղաքն ի վար եւ մեռան:

28· Ասէ Դալլին· Չէ կարէ այլ մարդ ելնել քուէլ ես:

Ասէ Ամիր Մուսին· Չկայ այլ մարդ խելաւք քան զքեզ, թէ դու այլ գերդ գնաքս լինիս, մեր ճարն թողուլն է ու յետ դառնալ:

Ասաց Դալլին· Յանուն Աստուծոյ· եւ ելաւ ի վեր եւ զափն յիրար էզարկ:

Եւ ասաց Ամիր Մուսին· Ահա կորաւ հետ նացա:

Դալլին յառն էկաց եւ ասէ· Ով Ամիրայ,

մի վախել, զի փրկեաց զմեզ Աստուած ի մեծ որոգայթէ:

Ասէ Ամիր Մուսին. Ի՞նչ տեսար:

Ասէ. Տեսայ տասն տասն աղջիկնի գեղեցիկ. ասէին. Արեկ առ մեզ: Ես կամէի գնալ, նայ ինձ թվեցաւ, թէ ծով էր ինչուր իրենց մաւտ. նայ յիշեցի զանուն Աստուծոյ եւ աներեւոյթ եղան: Մեր կարճերս ուսկայն ի պարապին տակն մեռան:

29. Ասաց Դալիւն. Յանուն Աստուծոյ. եւ իջաւ ի քաղաքն եւ գնաց ի յայն տեղն, որ պղնծի պռճերն էին. եւ ունէր պղնծի դռվի ի նմանութիւն ոսկոյ. եւ փակն չէրեւէր. եւ կար ի մէջն պղնծի ձիաւոր մի եւ ի ձեռն գրած էր, թէ Զբեւեոս որ ի վերայ պորտուս է, ի ժուռ ած տասնեւերկու հետ՝ նայ դովին բացվի: Ի ժուռ էած եւ էրաց զդուռն. եւ տեսան զմարդիքն մեռած:

Ասէ Ամիր Մուսին. Այս լինի թէ զօրնայներն տեսան եւ զտան զրանալիքն. ոնց առին, զէտ զհող փչրեցան:

Ասէ Ամիր Մուսին, թէ կէան հեծելին մտեն ի քաղաքս, եւ կէան ի դուռն կենայ: Եւ ինքն հեծաւ եւ վոզիրն եւ կէս հեծելն մտան ի քաղաքն: Զքաղաքն խիստ գեղեցիկ տեսան. զշուկան՝ կարմիր եւ կանանչ տախ-

506 գալ:
510 մեռած:
517 պաւրտուս:
521 զօրնայներն այն է զօնապաններ:

տակով զուգած · եւ կումաչն փռած · եւ տէրքն մեռած ։ Եւ զարմացան յիւր աղվորութիւնն ։

30 · Եւ չուկանին պատուական էին եւ ամէն մարդիկքն մեռած · լացին եւ արտմեցան · եւ տեսան զգանծն կուտած եւ դուլին ի բաց · եւ ջուրն վազէր ի վերայ պաղչանոյն ի բուքայէն ի վար · եւ մրգարերքն մրգերով · եւ ամէն ծաղկունքն զարդարել ։

Եւ մտան ի յայն չուկայն, որ բախըլնին կային · եւ տեսան զկէչէլովին ի կախ եւ մարդիկքն նստած եւ մեռած · եւ ակունք եւ ոսկի եւ մարգարիտ կուտած · ոչ ծախս կար եւ ոչ գնաւղ ։ Եւ տեսան զայն չուկան, որ ջուհարիքն էր փռած եւ զայն պատուական ակունք՝ անտէր ։ Եւ տեսան զայն ողորմի տեսիլն եւ շատ լացին ։

Եւ ասաց Կաֆայ զայս ·
Աւաղ զքեզ, աղվոր քաղաք
որ չի կայ ի քեզ կենդանի ·
Ամէնն են ի հող դարձել,
տէր չի կայ, խանութնիս ի լի ·
Մակար թէ չէաք տեսել,
իրք զարմանալի ։
Վա՛յ թէ մենք ալ հանց լինինք,
զերդ առքս ողորմ ու լալի ։

535 բրքա՞յ ։
537 մտայն ։
555 չէ աչ ։

31· Եւ գնացին տեսան զԹագաւորին դարպասնուն դուռին ի բաց եւ մարդիքն մեռած· եւ ապարնին կախած՝ հալեւորք եւ կորճերք· եւ այլք ի վերայ բարձերու նստած եւ մեռած: Ամէն ի քուն թվէր մեզ: Եւ ասաց Ամիր Մուսին կաֆայ գայս·

Էկէք նոր արմացք տեսէք,
սուք ասաք մենք անմխիթար·
Մակար թէ չէաք եկել
ու տեսել հնցեղ դէչ ու չար·
Բայց փառք արարչին ասեմ,
որ ինքն է Աստուած բարերար,
Որ զմեզ յարութեան աւրն
չի ձգէ ի հուր վ՛ ի խաւար:

32· Եւ տեսան զԹագաւորին զոմնուն չէնքն, որ նաշխած էր կարմիր ոսկով եւ ի չէմերուն վերայ գրած էր կաֆայ այսպէս·

Գեղեցիկ դովունք եւ Թագվորական,
Շինել չկարէ մարդ զդա, ոչ ոսկի նման,
Դուք վա՛յ չինաւղացս տուք,
որ չվայլեցաք զինքս մխարան,
Գնացաք ու տեղիս թողաք,
մեր ամէն ոսկերք հողացան:

Երբ լսեց Ամիր Մուսին՝ Թալցաւ· ջուր լցին ի վերայ եւ հոգի ածին:

33· Եւ մտան ի դարպաս մ'այլ· եւ կայր չորս սանտուխտ· եւ սանտուխտին սիւներն

568 հնրդ:

ոսկի· եւ չորս սիւն այլ կար դարպասին ոսկի եւ սիւնագլխերն կարմիր եաղութ, եւ նաշխած կանաչ զմրուխտով եւ կար ի վերայ նորա տախտակ մի ոսկի եւ պատվական ակներով զարդարած: Եւ կար ի վերայ տախտակին դեղին եաղութ աթոռ մի· եւ կար ի վերայ աթոռին թագուհի մի յոյժ գեղեցիկ, զերդ կենդանի· եւ կար ի գլուխն թագ մի, որ գին ոչ կար· եւ մազն ամէն մարգրտով եւ ակներով շարած· եւ կար ի վիզն շարոց մի մարգարիտ, որ ամէն հատ աժէր հազար կարմիր· եւ ակն անհամար, որ ոչ կարէին հայել ի լուսոյն, որպէս արեգակն փայլէին: Եւ ունէր ի հագուստն բեհեզս եւ ծիրանիս· եւ աչվլին զերդ ծով էրեւենար որպէս կենդանոյ:

34· Ոնց որ տեսաւ Ամիր Մուսին ընդ ազվորութեան եւ ընդ ձեռաց փափկութեան, ծունր էած, զիտաց թէ կենդանի է: Երբ զբարեւն չէառնա՝ տրտմեցաւ Ամիր Մուսին:

Ասէ Դալիֆն· Ո՛վ թագաւոր, թագուհիս մեռած է:

Ասէ Ամիր Մուսին· Զե՞ս ի տեսնուլ, որ ի մեզ կու հայի:

Ասէ Դալիւն· Զաչքն հանել են եւ տեղն սնտիկ է դրած եւ զաչքն ի տեղն դրին· քանի քամի ելնէ, զաչքն շարժէ:

Ասէ Ամիր Մուսին կափայ զայս·

604 Եփ:

Անգին ու աննման գուհար,
ա՛մ դու է՞ր ես անպիտացել·
Զինչ գքեզ ազվոր
հողեղէն մարդ չէ տեսել·
Աւաղ տամ հազար բերան,
քո քաղքիս, որ չես վայելել·
Ես փառք Աստուծոյ տայի,
Թէ ընդ իս պահիկ մի խաւսիս:

35. Եւ կար առաջի Թագուհոյն երկու մարդ կանկնած, մէկն սեւ ու մէկն սպիտակ. սեւն ունէր Թուր քաշած եւ սպիտակն ունէր գուրզ ի ձեռնին. եւ կար ի Թագուհուն գիրկն պնակիտ մի ոսկի, կարմիր լաճվարդով գրած:

Աստ Ամիր Մուսին ընդ Հալեւորն. Արեկ կարդա՛:

Եւ գրած էր այսպէս.

Ցանուն Աստուծոյ: Ես էի տասն տարեկան երբ մեռայ. քանզի մահն ի Թագաւորէն ոչ վախենայ, ոչ աղքատին խկլի խղճայ եւ ոչ տղային կու ողորմի, ոչ ի ծեր խնայէ, յԱդամայ ինչվի այսաւր: Ո՞վ են նոքա, կամ ուր է Աղեքսանդր, որ տիրեց զչորեքանկին աշխարհս. եւ երեկ ի յայս քաղաքիս վերայ. եւ ոչ կարաց առնուլ: Դուք որ կենդանիքդ էք, մի Թողուք զձեր իրքս այլոց,

623 կանկած:
625 գուրզ. Աղթ. բլթակ:
636 աղէկսանտր:

որպէս եւ մենք թողաք: Ես եմ Նիրմոտ թագաւորին դուստրն· եւ մեր պուռճերն ոսկով ի լի էր· եւ հորերս արծաթով· եւ շատ ոսկոյ քան կայ մեր աշխարհն· եւ մարգարիտն ի մեր ծովէս կու ելնէ: Վասն այս շատ գանձուցս զայս ամուր քաղաքս շինեցաք· որ ոչ կարէր աւտարական մտանէր: Մեռաւ հայրն իմ եւ ես էի հինգ տարեկան· կալայ զաթոռ հաւր իմոյ եւ ժառանգեցի եօթն տարի եւ մեռայ:

36· Եւ գրած էր կաֆայ այսպէս·

Ո՞ւր են թագաւորք երկրի,
որ առաջ զանվանքն յիշեցի·
Եւ կամ քանի քաղաք,եւ բերդեր
յերկիր շինեցին·
ինչ մահն ի վերայ երեկ
նայ ամէնըն զարտակ գնացին·
իւրեանց անիհուն զանծէն
լուկ իւրեանց հետ փող մն չաւին:

Եւ գրած էր այսպէս, թէ Ութ տարի մեր երկիրս անձրեւ չերեկ ու կանանչնին հատաւ· ղոսկին պարապար հացի տայաք եւ ոչ գտանէաք· եւ մարդ զմարդ ուտէր, ուժովն՝ զանուժ, պարոն՝ զծառայն, աղքատն՝ զաղքատն: Երբ գիտացին, որ բարկութիւն Աս–

640 Ներմոտ . Աղթ . Զմրութ:
642 իլնի էր:
648 իմում:
652 իշեցի:

տուծոյ էր, ես գրել տվլի զայս բաներս եւ զմեր հոգեստանս յԱստուած յանձնեցաք:

Եւ գրած էր այս կաֆաս·
Խրատ մ' կամիմ տալ քեզ
Թէ հաղար եմ խիստ տիմար·
Գիտեմ որ մեռնիլ կամիս,
որ չի կայ քեզ աշխարհի ճար·
Զախրուդ քո ղուրդ պահէ,
հետ ի քո աղդիտ վի ուտար·
Ի պաս վի աղաւթք կացիր,
: մուտով դս դքյդսբ ֆ դղոհոտա մն

37· Եւ այս էր քաղաքս իմաստասիրաց՝ շինած Յունաց հրամանաւն եւ տլրամոփն· եւ զինչ այս քաղաքս ամուր քաղաք չի կայ ի աշխարհիս վրայ: Բայց աղաչեմ զձեզ, ով մտանէք Աստուծոյ հրամանաւ, զանձ եւ կումաչ շատ, առէք որչափ եւ կարէք, բայց զայս իրքս, որ իմ վերայ է՝ մի առնուք, վասն սիրոյն Քրիստոսի: Այսչափ իրքս է իմ բաժին, որ առել եմ· ով որ գայ եւ տեսանէ զիս եւ ճանաչէ, որ ես Թաղուհի եմ, երդմեցուցանեմ զձեզ Աստուած, որ չառնուք ի մարմնուս իրք մի:

38· Ասաց Ամիր Մուսին հեծելին, թէ բարձէք անչաք, որ կարէք այս պատուական զանձէս:

666 անծնեցաք:
673 աւքիտ:
685 ճանաջէ:

Ասէ Դոլխն ընդ Ամիր Մուսին. Կամի՞ս զայս ակունքս թողուլ, որ վերայ թագուհուս է, քան զայս պատուական իրք այլ չկայ ի յայս կուպաս. առնուք, խալիֆային տանինք:

Ասէ Ամիր Մուսին. Երդումն է գրել. այս ամէն ակներովս ու զանձովս չենք կիշտանալ, ոչ առավ ալ չենք կիշտանալ. թէ հազար ակունքս պատվական է՝ մեծ խեղճ է մեզ:

Ասէ Դոլխն. Աստուած զինքս կենդանոյ է հրամել. զարտ պատանք մի հերիք է. թէ դու չես ի առնուլ, ես կ՚առնում:

Ասէ Ամիր Մուսին. Ես անպարտ եմ արենէն զորա:

39. Յառաջ տարաւ Դոլխն զձեռն ի թագուհին. զերդ որ բռնեց, ան այլխակ մարդն, որ զպլէթկին ունէր, էզարկ ի վերայ թիկնացն. եւ սեւ մարդն որ զթուրն ունէր՝ էզարկ ու զգլուխն թռուց:

Ամիր Մուսին փախաւ եւ զարմացաւ ընդ տեսիլն. ասաց՝ թող Աստուծոյ աջողէ քո ոլրամիտ եւ այս պահնորդներուս, եւ ոչ ողորմի զորա, որ այս ամէն զանձովս չի կիշտացաւ. ու այս ոչինչ իրքս ամահցաւ, որ չէր պատիհ: Եւ ասաց կաֆայ զայս:

Խրատ մի ալլի ես քեզ,
Է՞ր չարեր, այ՛ իմ սիրելի,
Գիտես որ տացի ես քեզ,
Մի հաւնիր զու տա թագուհիս.

Ով որ չողորմի դմա,
նա նման է սատանայի·
Ով շատ ժողովել ջանայ,
յամէնէն շուտով կու թափի:

40· Եւ ասէ Ամիր Մուսին· Բարձէք ի գանձէտ որչափ կարէք: Եւ բարձին շատ պատվական ակունք եւ ոսկի:

Եւ էլան ի քաղաքէն եւ փակեցին զդուռն եւ գնացին ծովեզերումն շատ աւրեր եւ քառա– սուն լինցաւ: Եւ տեսան բլուր մի, եւ ի բլուրին տակն սեւ մարդիք զմեծամեծք, որոց որ զհեծելն տեսան՝ փախան· եւ կայր քարայր մի եւ ի ներս սեւ մարդիք· եւ ի յան տեղն իջաւ:

Ամիր Մուսին ասէ ցհալեւորն· Այս են սեւ մարդիքն, որ քաջն ասաց: Եւ զայլն սեւ մարդիքն մտիկ դնէին հեծելին:

Ասէ Ամիր Մուսին ցԱլեւորն· Կարես՞ զրուցել սա սեւ մարդկացս հետ:

Եւ Հալեւորն ձայնեց եւ հասկըցուց: Եւ կոչեաց զՍեւերուն թագաւորն եւ նստուց եւ կերան եւ խմեցին:

Ասէ Ամիր Մուսին ցՀալեւորն, թէ Հարց թէ մարմնաւո՞րք են թէ անմարմին:

Ասէ Սեւերուն թագաւորն, թէ Մարմնա– ւորք ենք, Յակոբայ յորդոցէն ենք եւ բնա– կել ենք ի յայս լեառս մեր տնաւք եւ տղայաւքս:

739 հեց փոխ· հետ·:

41․ Ասէ Հալեւորն․ ի՞նչ հաւատ պաշտես։

Ասէ Թագաւորն, թէ Երեւեցաւ ի ծովեզերն կենդանակերպ մի լուսատու կերպարանաւք, եւ մեզ ասաց, թէ Լսեցէք, Յակոբայ որդիք, եւ հաւատացէք յարարիչն երկնի եւ երկրի․ զի նա միայն է Աստուած կենդանի․ եւ ասաց․ Ադաւթեցէք յամէն աւր։ Եւ զմեզ յաստուածպաշտութեան սահմանեց եւ յամէն աւր հինգ հետ աղաւթս մատուցանեմք եւ փառաբանենք զանմահ Թագաւորն, որ է աւրհնեալ յաւիտեանս․ ամէն։

42․ Էհարց Հալեւորն ընդ սեւն, թէ ան կժերն, որ Սողոմոն գնտանեց զդեւքն վի ծովն ձգեց, առ ձե՞զ է, թէ ոչ։

Ասաց թէ հա՛յ, առ մեզ է։ Եւ Թամաչայի համար բերին որսորդերն․ այլվի տարան, որ ի տեղն դնեն։

Ապա հրամայեաց Սեւերուն Թագաւորն, թէ Գնացէք բերէք ԺԲ կուժ առաջի Թագաւորին։

Ասաց Ամիր Մուսին․ Աւրհնեալ է Աստուած, որ զամենայն խնդրուածս մեր ի բարին կատարեաց։ Եւ էառ Ամիր Մուսին զկուժերն յուսկի սնտուկն իդիր եւ մատնէհարեց։ Եւ էկաց մաւտ ի Սեւերն ժի աւր եւ մեծ ուրախութիւն արարին։

754 կենդանայկերպ մի լուսայտու։
755 Ադթ․ Արիրայի փո]խ․ Յակորայ։
760 Ադթ․ եւ թն անդամ։

43· Եւ Ամիր Մուսին շատ ոսկի եւ ձիան երետ Սեւերուն Թագաւորին· նա ոչ էառ· շատ չնաւխկլեցաւ: Եւ ասաց թէ մենք ոչ ծախենք եւ ոչ գնենք, եւ ոչ ձի նստինք մեր սահմանս: Աւէ որ որս կ՚անենք ու զմիսն կ՚ուտենք եւ զկաշին մաշենք եւ զԱստուած աւրհնենք: Եւ ապա մէկ մէկի չնաւխկլեցան եւ բարեւեցին զիրար:

Եւ Սեւերուն Թագաւորն խիստ աղէկ կորըճեր երետ ի հետ Ամիր Մուսին եւ տարան կարճ ճանբով· եւ ապա դարձան ի ետ:

43· Եւ հասաւ Ամիր Մուսին յերկիրն Ականալցիոց Թագաւորին· եւ Թագաւորն պատվեաց զնոսա: Եւ Ամիր Մուսին շատ պատուական ակունք եւ մարգարիտ ղրկեց Թագաւորին· նա չէառ: Ասաց թէ պիտի ան կժերուն տաս ինծ, որ տեսանեմ: Եւ բերին երկու կուժ առաջի Թագաւորին: Եւ Թագաւորն զԱմիր Մուսին զիլայեց:

Եւ գնացին ի Մար· եւ Մարայ տէրն ուրախացաւ: Եւ ուրախութեամբ գնացին ի Պաղտատ, մաւտ ի Խալիֆան: Եւ խալիֆան ուրախացաւ եւ բաշխիշնի արար վասն նոցա գալուն: Եւ գնալ եւ գալ էր երեք տարի:

44· Եւ Ամիր Մուսին ապա ղրուց էրետ ամէնն եւ գրերն երետ խալիֆային, որ կարդաց զկուպային գիրն ու զՊղնձի քաղաքին ու զԹագուհոյն: Եւ նվաղեցաւ խալիֆան ի Թա-

790 Ալթ. յերկիրն կանանց:

զուհոյն խղճոյն։ Եւ ասաց, թէ լաւ էր թէ ես ալ եկել էի եւ տեսել։ Եւ բերին զգանձն առաջի խալիֆային եւ զկուժերն։ Եւ բանալ էրետ ի կժերուն մէկն. նայ ելաւ սեւ ծուխ եւ բարձրացաւ եւ եղեւ կերպարան զագրալի. աղաղակեաց եւ ասէ. Սողոմոն, Սողոմոն, որդի Դաւթի մարգարէի, այլ չգործենք զինչ գործեցաք. եւ քո հրամանքտ կենանք։

Մտիկ եղիր խալիֆան եւ մեծ զարմանք կալաւ զնոսա։ Ապա հրամեաց խալիֆան որ բերին զգանձն եւ զկումաշն, որ բերել էին։ Տեսաւ խալիֆան եւ ասաց կաֆույ ղայս։

Աւաղ տամ հազար բերան,
քո տիրոջն, ում որ դուն էիր.
Որ այս անիհուն գանձէս
զեմ գնաց ինքն մերկիկ.
Այլ ես աղաչեմ զԱստուած,
որ տայ ինծի սատ թոպիր,
Որ հաւս տամ վի անդ առնում
ու չթողում այսպէս յերկիր։

45. Կանչեցուց խալիֆան իւր ամէն աշխարհն որ զինչ աղքատ կային եկին. եւ բաշխեաց զգանձն իւր տիրոջն հոգոյն համար։ Եւ զիւր դրամն ալ բաժնեց եւ զերիքն ազատեց եւ զնտանվորքն էհան եւ զամենայն (ան)իրաւութքն էբարձ յաշխարհէ։

818 աւախ։
824 տամի։
825 չթողումի։

Այլ խալիֆայ եղեր իւր տեղն եւ ինքն ի 830
սենեակ մտաւ եւ աղաւթեց եւ եօթն տարի
այլ ապրեցաւ եւ մեռաւ:

Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս· ամէն:

---

## ԼԹ.

## ՄԻՆԱՍ ԱՄԴԵՑԻ,
## ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՅՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

(ԾՆ. ԻԲՐ 1630 — † 1704)

Մինաս իր կենսագրութեան համար ինքը թողած է մեզի ատաղձներ· իր Օրագրութիւններու եւ իր Յիշատակագրութիւններու մէջ: Օրագրութիւնները (1680–1704) պահուած են Երուսաղէմ Յակոբեանց վանքի Մատենադարանին մէջ (Թ. 1316), Յիշատակարանները իր սեպհական ձեռագիրներու մէջ, մեզի մատչելի Զնքուշի, Երուսաղէմի եւ Երեւանի Մատենադարաններու ձեռագրաց ցուցակներէն:

Մինասի կեանքի առաջին կենսագիրն եղած է Տ. Սաւալանեանց 1872ին իր Պատմութիւն Երուսաղէմի աշխատութեան մէջ, գրուած գրաբար եւ հրատարակուած 1931ին աշխարհաբար երկու հատորներու մէջ հետեւեալ ճակատով· Տիգրան Հ. Թ. Սաւալանեանց Պատմութիւն Երուսաղէմի· գրաբար բնագրէն աշխարհաբարի վերածեց Մեսրոպ եպիսկոպոս Նշանեան, Ա. եւ Բ. հատոր Երուսաղէմ 1931 (Ա. հատոր էջ 645–662):

Մ· Ամդեցւոյ մասին խօսած են նաեւ·

Հ· Մ· Չամչեան, Պատմութիւն Հայոց, Հտ· Գ· Վենետիկ, 1784, էջ 733–747:

Աստուածատուր եպիսկոպոս Տ· Յովհաննէսեանց, Ժամանակագրական պատմութիւն Ս· Երուսաղէմի 1890, Հատոր Ա· էջ 415–432:

Լէօ, Հայկական տպագրութիւն, Հտ· Ա· Թիֆլիս 1901, էջ 285–88:

Մկրտիչ եպ· Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, Երուսաղէմ 1929, էջ 286–87:

Հ· Աճառեան, Բառարան Հայոց անձնանունների· Երեւան 1946, Հտ· Գ· էջ 344–45:

Արշակ Ալպօյաճեան, Պատմութիւն Եւդոկիոյ, Գահիրէ 1952, էջ 646:

## ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳԻԾԵՐ

Մինաս ծնած է Ամիդ, (Համիթ, Յամիթ, Տիգրանակերտ), իբր 1630ին, ծնողաց անուններն են Առաքել եւ Հոփիսիմէ· կը յիշուի նաեւ հանին Պահրէ: Կ'երեւայ թէ մայրը Հոփիսիմէ վաղամեռիկ վախճանած է:

Տնքուչի Միրահայեաց Աստուածածին վանքին պատմիչը Մովսէս կը գրէ թէ Մինաս «ի տղայութեան բերեալ եւ որդեգիր էր տուեալ ումեմն Տէնքուչցի Խաչատուրի, որ եւ նա ըստ համեստ բնութեան սնուցեալ էր

առընթեր ուսուցչին խլրոյ Մարկոս եպիսկոպոսին»[1]:

Այս պատճառով ալ երգած է Մինաս 1655ին «Ի Մարկոս վարդապետն» գովասանական տաղին մէջ.

Իմ քաղաքս է Տիգրանակերտ,
զոր այժմ ասեն նըմա Համիթ,
իսկի չտեսաք դքո բարիդ,
Շէնքուշ է մեղ բարեաց առիթ:

Մինաս առ ոտս Մարկոս եպիսկոպոսի ուսաւ եւ արժանի եղաւ ստանալ թէ քահանայական ձեռնադրութիւն, եւ թէ վարդապետական գաւազան. այս կը պատահի 1655ին, ինչպէս ցոյց կու տայ Մինասի վարդապետական կնիքը[2]:

Մինաս այս առթիւ գրեց իր ուսուցչին գովքը երկար տաղաչափականով մը:

Շէնքուշի անձուկ շրջանակէն դուրս ելաւ Մինաս 1656ին. գնաց Ուռհա, քարոզեց եւ վերադարձաւ: Ուռհայեցիները ասպնջականած էին երիտասարդ, նորահաս վարդապետը յարգանքով եւ սիրով, որուն համար արտայայտած է Մինաս իր շնորհակալութիւնը տաղաչափուած «Թղթով» մը 1657ին:

1663/4ին կ'երեւայ թէ Մինաս Եւդոկիա փոխադրուած է. կը գրէ. «Ես Մինաս վար—

[1] Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ. 458—9:
[2] Երուսաղէմ. Թ. 453. Բաղարեան, Ցուցակ, Դ. էջ 164:

վարդապետ Համթեցի Նուաստս ի բեմբականաց ... ի գալն իմ յԵւդոկիա, հանդիպեցաք աւագակաց, որք զամենայն ինչս եւ զգրեանս իմ կողոպտեցին եւ այս Համառօտ աստուա—ծաշունչս, զոր շնորհեալ էր ինձ վարդա—պետն իմ Մարկոս եւ իմ զայս գիրքս անձին իմում խորդ վարկանելով շնորհեցի ի դուռն Ս. Աստուածածնի վանացն ... գրեցաւ յիշա—տակարանս ի Թվին Հայոց ՌՃԺԳ ամին» (1664)[3]:

1666ին Մինաս Երուսաղէմ կ'երթայ եւ ուրիշ երկու նուիրեալներու հետ եպիսկոպոս կ'օծուի Եղիազար հակաթոռ կաթողիկոսէն[4]:

1674ին Մինաս վարդապետ կը խնդրէ յիշել «զմարմնաւոր ծնօղսն իմ հայր իմ մահտեսի Աւաքելն, որ միով ամաւ յառաջ փոխեցաւ առ Քրիստոս» (ուստի 1673ին):

Անտարակոյս իր հօրը մահը բերած էր զինքը Շէնքուշի «նախակրթեալ դասատուն մեր»: Եւ վասն զի իր դարանին մէջ կը պակսէր Ղուկասու Մեկնութիւնը, «յոյժ ցանկայի առ ի ստանալ զայն: Եւ զի յառա—ջագոյն տեսեալ էի զգիրքս զայս առ բարու—նին իմ Տէր Մարկոս վարդապետ՝ հարկեցայ ի սիրոյ սրտիս մեծաւ թախանձանօք խնդրել զանկողոպտելի զանձս ի վարդապետէն իմ—մէ: Իսկ նա որ ունէր ընիկ զմեզ ծրարեալ ի վարշամակ սիրոյ իւրում որպէս զհայր հո—

[3] Թորոս Աղբար, Բ, 463–64:
[4] Անդ, էջ 485—86:

դեւոր, խառնեալ եւ այժմս զառաւելագոյնն կատարելով զբաղձանս վրիպակիս տալ զգիրքս զայս մեզ օժիտս եւ յիշատակ հոգւոյ իւրոյ այսու պայմանաւ զի առցուք ի ձեռս եւ քարոզեսցուք զբանս կենսունակ ի լսելիս քրիստոսիրաց անձանց :

«Արդ եղեւ մեզ գալ ի յԵդեսիա քաղաք[ի] եւ խուզեալ զհամարս եւ զգլուխս սուրբ Աւետարանիս, ոչ հեշտացաւ ոգի իմ ի տեսանել զկրկին անկածան թղթոցն ո՛չ բարուք գրեալ ըստ առաջնոյ ծրին : Վասն որոյ հարկ անձին կալայ քանդել եւ կրկին տալ գրել գայս ումեմն քահանայի Ովաննիսի Եդեսիացո, որպէս տեսանես զնոր գրեալ թուղթքն.. ի քաղաքս Ուրհա ի թվականիս յաբեթականի ՌՃԻԳ (1674) ի հայրապ. Ս. Երուսաղէմի տէր Եղիազար կաթողիկոսի եւ ի կաթողիկոսութեան Ս. Էջմիածնի տէր Յակոբ Հայրապետի» [5] :

Այս 1674 տարւոյն հետը առած էր Մինաս նաեւ Սարգիս Սահէթչին, որ 1672ին Եւդոկիայի Ս. Աստուածածին վանքի մէջ աշակերտած էր իրեն, 1673ին աբեղայ ձեռնադրած[6] :

1666–1691 · Ժամանակակիցները կը վկայեն թէ Մինաս 24 տարի պաշտօնավարած է

[5] Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Երուսաղէմի. Ա. էջ 318:

[6] Հ. Գ. Գալէմքեարեան, Կենսագրութիւններ երկու հայ պատրիարքներու եւ տասն եպիսկոպոսներու. Վիեննա 1915, էջ 65–67:

Եղիազար կաթողիկոսի եկեղեցական վարչութեան մէջ, Երուսաղէմ եւ Էջմիածին։ Միքայէլ, Բարղամ դպիրի որդի, կը գրէ 1678-ին Գրիգոր Տաթեւացւոյ Առակաց Մեկնութեան յիշատակարանին մէջ ի մասին Մինասի․ Եղիազար կաթողիկոսի «սիրելի եւ սպասաւոր եւ պաշտօնեայ ծառայեալ մինչ ցարդ ամս ԻԲ․ ղոլով եւ գործակալ ամենայնի, Ս․ Էջմիածնայ եւ Ս․ Երուսաղէմայ, եւ ամենայն իրագործութեան ամենայն Հայոց Մինաս վարդապետն ստացող սորին» (Էջմիածին, Թ․ 1149)։

Եղիազար կաթողիկոս դրած էր երիտասարդին մէջ մարդը, որուն պէտք ունէր։ Երբ պիտի երթար Էջմիածին, առաւ հետը Ամդեցին ալ եւ անոր յանձնեց բռնել Օրագրութիւն։

1678ին Միքայէլ դպիր կ՛օրինակէ Մինասի համար Ներսէս — Յովհաննէսի Մատթէի Մեկնութիւնը։ (Վենետիկ)։

Նոյն 1678 տարւոյն օրինակել տուած է Միքայէլի, որդւոյ Բարաղամի, Ներսէս Լամբրոնացւոյ ԺԲ մարգարէից մեկնութիւնը։ Գրիչը կը գրէ Յիշատակարանին մէջ․ «Մինաս վարդապետս Յամթեցի, վարժեալ աստուածային օրինօք եւ կատարեալ տեսական եւ արդիւնական․․․ վարդապետութեամբ․․․ եւ գրասիրութեամբ ճոխացեալ աշխարհայնովս ասեմ եւ գերաշխարհայնովն բարգաւաճեալ ․․․ որ փափագանօք ցանկացեալ ընդ

յոլովից գրոց որ ստացաւ եւ զհամեղարան Մեկնութիւնս Բժանից մարգարէից սրբոց. եւ ետ զարդարել ոսկւով սրբով եւ երանգազեղ գունօք՝ ըստ այլոց գրոց իւրոց։ ...ի ժամանակս կաթողիկոսութեանն սուրբ Էջմիածնայ երիցս երանեալ տեառն Եղիազարու... որոյ սիրելի եւ սպասաւոր եւ պաշտօնեայ ծառայեալ մինչ ցարդ՝ ամս ԻԲ. գոլով եւ ամենայնի սուրբ Էջմիածնայ եւ սուրբ Երուսաղիմայ եւ ամենայն իրագործութեան ամենայն Հայոց Մինաս վարդապետ ստացող մատենիս» (Էջմիածին, Թ. 1149)։

1679. Մովսէս, Տնքուչի վանքին պատմիչը կը գրէ. «Ի ՌՃԻԸ եղեւ գրաւ կենաց Մարկոս վարդապետին եւ ի սոյն թվին յաջորդեաց զաթոռն ձեռնասուն աշակերտն իւր Մինաս վարդապետ Յամթեցի.. յետոյ գնացեալ ի Ս. Էջմիածին... յետոյ ժառանգեալ զաթոռն Կոստանդինու եւ Ս. Երուսաղէմի պատրիարքութեան։ Ի յայնմ ժամանակի տարեալ ի Ս. Սաղիմ զեղբօրորդին իւր Յովհաննէսն Տնքուչեցի եւ տայ նմա գաւազան ծայրագոյն վարդապետութեան. եւ առաքէ փոխան իւր ի վանքն Տնքուչու Յովհաննէս վարդապետն եկեալ կառավարէ զաթոռն»[7]։

1681 ապրիլ 17ին ոտքի կ'ելլէ Եղիազար կաթողիկոս ամենայն Հայոց Երուսաղէմէ երթալու համար Էջմիածին։ Անոր հետե-

[7] Թորոս Աղբար, Բ. էջ 458–59։

ւորդներուն մէջ էր Մինաս Ամդեցի։ Նաֆանաւ կը մտնեն եւ կը հասնին Զմիւռնիա (յունիս 7)։ Անկէ կը մեկնին սեպտեմբեր 22ին ցամաքային ուղեւորութեամբ դէպի Պրուսա. Հոս դադար կ'առնէ ժամանակ մը։ 1682 մարտ 1ին ճանապարհ կ'ելլեն եւ կը հասնին էջմիածին։

1682 նոյեմբեր 7ին Մինաս նուիրակ կը կարգուի Թոխաթի վրայ. կը հասնի հոն 1683 փետր. 6ին եւ կը պաշտօնավարէ մինչեւ 1684 յունուար 17. ապա կ'երթայ Զնքուշ եւ շրջակայքը կը հովուէ։

1683ին Մինաս մագաղաթեայ եւ նկարազարդ Աստուածաշունչ մը էջմիածնին կը նուիրէ (Թ. 203)։

Նոյն տարին կը պատուիրէ Միքայէլ դրչին, օրինակել իրեն համար Բարսեղ Կեսարացւոյ Հարցողաց, Պահոց եւ Վեցօրէից գիրքերը (Երուսաղէմ, Թ. 477) եւ կը ստանայ հինօրեայ ձեռագիր մը (Աստուածաշունչի մասեր (անդ, Թ. 477)։

1687 Մկրտում Ջուղայեցի «Հրամանաւ ստացողի սորին տէր Մինաս աստուածաբանի եւ մեծ րաբունւոյ Ամթեցւոյ. արհեպիսկոպոսի եւ վերատեսչի Եւդոկիա քաղաքի. եւ սիրեցեալ բարեկամի եւ գործակալի տեառն Եղիազարու եւ քաջ գիտապետի ամենայն Հայոց» կ'օրինակէ Միքայէլ Ասորւոյ, Սամուէլ Անեցւոյ եւ Մ. Խորենացւոյ պատմագիրները, ի մէկ տուփ, զոր կը նուիրէ

տպա Էջմիածնի Գրադարանին, (պահուած հոն 1483 համարի տակ):

1687. Մկրտում Ջուղայեցւոյ օրինակել կու տայ Մինաս Սարգիս գիրքը Թոխատ «ի ՌՃ եւ Զ ամին ի յունուարի Ժ. ի հինգերորդ ամի առաջնորդութեան իւրոյ նահանգիս Թոխաթու: (Էջմիածին, Թ. 1370):

1687 Մինաս Եւդոկիակերտի արհեպիսկոպոս գրել կու տայ նոյն Միքայէլ դրչին Հայոց Կանոնագիրքն եւ Դատաստանագիրքը մէկ հատորի մէջ[8]:

1690 Ե. երթ Մինասի Էջմիածին. կը վերադառնայ անկէ յուլիս 2ին, երկար ուղեւորութեամբ կը հասնի Կ. Պոլիս 14 Դեկտեմբերին:

1691. Մինաս կը պատուիրէ Միքայէլ դրչին գրել իրեն համար Գրիգոր Նարեկացւոյ Ողբերգութիւնքը. օրինակութիւնը կ'աւարտի հետեւեալ յիշատակարանով. «Աստուած ետ կարողութիւն հասանել յաւարտ սափերիս սրբոյ եւ ի ծրագրել եւ դյիշատակս բարեգործի եւ աստուածարելոյ անձին եւ յԱստուած խրախուսելոյ Մինասայ վարդապետիս Ամթեցւոյ աստուածարան վարդապետի եւ ճշմարիտ քարոզի. որ ըստ դրաւէր բարուցն իւրոց բարեւէր կամօք ըղձացեալ եւ յօժարութեամբ սրտին բաղձացեալ եւ մեծաւ փափագանօք ցանկացեալ բազմադէմ պաղատանս...:

[8] Թորոս Աղբար, Բ. էջ 469—70:

«Եւ արդ ստացեալ զատ Մինաս վարդապետն ի յիշատակ յոգւոյն իւրոյ . . . ի ժամանակս կաթողիկոսութեան սրբոյ էջմիածնի երկիցս երանեալ տեառն Եղիազարի, յորմէ եւ խնդրեցին ամենայն մեծամեծքն Հայոց, զսիրելի սպասաւոր պաշտօնեայ իւր զՄինաս վարդապետս ի հայրապետութիւն սրբոյ քաղաքին Երուսաղիմայ, զի հասեալ օգնեսցէ յարարարդեալ պարտուց Գլխադրի սրբոյն Յակոբայ, որ եւ լուեալ զհեծին աղաչանաց նոցա եւ հրամայեաց գնալ յառաջնորդութիւն սրբոյ քաղաքին եւ յօգնութիւն պարտուց սրբոյ Աթոռոյն : Եւ մինչդեռ էր Մինաս վարդապետս ի Կ. Պօլիս ի գործառնութիւնն սրբոյն Երուսաղեմայ, հանդեաւ ի Քրիստոս հայրն հանուրց Եղիազար կաթողիկոսն ի սուրբն էջմիածին, ի թուականին Հայոց ՌՃԽ ամին (1691, օգոստոս 8) :

«Եւ եղեւ գրչութիւն գրոյս յառաջնորդութեան նահանգիս Նէօյկեսարիոյ սոյն տեառն Մինասայ արքեպիսկոպոսի Եւդոկիակերտիս, ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեացս սրբոյն Սարգսի եւ սրբոյն Ստեփաննոսի : Արդ սկսայ ի ծրել զմատեանս . . . եւ հասի ի վրաւ սորա ի խնդրոյ մեծի րաբունապետին Մինասայ, որ ըստ յոլովից գրոց վասն իւրն ստացելոց ի յանարժանութենէ իմմէ Միքայէլ գրչէ (եւ ծաղկողէ) եւ յայլոց բազմաց ստացու եւ զգիրս զայս. եւ ես զարդարել ոսկւով, որպէս եւ զայլ՝ գրեանն

իւր, ի վայելումն անձին իւրոյ...: Եւ եղեւ աւարտումն գրոյս ի Թուականին Հայոց ՌՃԽԱ (1692) ամին, յամսեան յունիսի լըր-ման, որ եւ էրն իսկ Մինաս վարդապետն ի սուրբ քաղաքն Երուսաղէմ» (Երուսաղէմ Թ. 2010, Թղ. 299):

Թուղթ 15ր կրկին կամարաձեւոց տակ երկու վեղարակիր վարդապետներ յառին, միոյն լուսանցքին վրայ գրուած է «Գրիգոր Նարեկացի մաղթանացս ստացող». միւսին՝ «Համթեցի Մինաս վարդապետ տառիս ստա-ցող[9]»:

1692 յունիս 30ին Մինաս Երուսաղէմ էր: Նոյն տարուոյ յուլիսէն մինչեւ 1698 կը լռեն յիշատակարանները:

Սաւալանեանց կը յիշէ Օրագրութենէն առնելով 1693 տարուան ժանտախտը. եւ 1694ին ներքին կռիւներ պահակալութեան մասին (Պատմ. Երուսաղէմի, էջ 648):

1695ին Մինաս Պատրիարք լեռնակող-մեան լատինաց վանքին 62 կտոր պղինձ եւ մետաքսահիւս քիրմանի գորգ մը կ'ընծայէ (7 մարտ 1695): Սաւալանեանց, էջ 648:

1696ին, ապրիլ 4ին կը մեկնի Մինաս Արեւելք. կը հասնի Յովհաննավանք. հոն կը գտնէ Նահապետ կաթողիկոսը: Անոր հետ կ'երթայ Էջմիածին: Նոյն տարւոյ սեպտ. 8ին գահընկէց կ'ըլլայ Նահապետ կաթողի-

---

[9] Երուսաղէմ Ս. Յակոբեանց Ձեռագրաց Թիւ 2010, Ցուցակ Ս. Խարայեան Կաթողիկոսի:

կոս: Նոյեմբեր 1ին կը հասնի Նորընտիր Ստեփանոս, զոր կաթողիկոս կ'օծէ յաջորդ օրը կիրակի Մինաս Ամդեցին[10]:

1696 դեկտեմբեր Իգնատիոս վարդապետ Եւդոկիացի կը նուիրէ Ճաշակնոց մը Երուսաղէմի Ս. Յակոբայ եկեղեցւոյ «ի ժամանակս առաջնորդութեան մեծի քաղաքիս Երուսաղէմայ Մինասայ Ամթեցւոյ աստուածաբան վարդապետի, յաջորդութեան նահանգիս Նէոկեսարիոյ նոյնոյ տեառն Մինասայ Ամթեցւոյ արքեպ. Եւդոկիակերտի»: Երուսաղէմ, Թ. 201. Յուց. Բ. 186:

1697. դեռ էջմիածին էր Մինաս, օր մը, կը մտնէ գրատուն. կ'իջեցնէ հատոր մը, Ներսէս Լամբրոնացւոյ Պատարագի մեկնութիւնը, որ Ծնքուշի վանքէն փախցուած էր. այս առիթ կու տայ իրեն արձանագրելու ձեռագրին մէջ յիշատակարանս. «Արդ ես վերջինս յեկեղեցւոյ եւ տրուպս ի բեմբասացականաց Մինաս վարդապետս տիգրանակերտցի (տեսի) զգիրքս Ս. էջմիածին, զոր գողացեալ էին ի վանաց Ծնդուշայ ի Նախակրթեալ աթոռոյ իմոյ...: Եւ զի ծանր թուեցաւ ինձ հեռանալն գրոցս ի մեր վանուց... ետու ի տեղի գրոցս մի պատուական գիրք Կոչումն ընծայութեան եւ զճառից գիրք, երկուսն ի մի տուփ. եւ առի զայս խորհրդի մեկնիչս... եւ առաքեցի ի վանքն Ս. Աստուածածին որ

[10] Վ. Յակոբեան, Մանր ժամանակագր. Բ, 1950, էջ 423:

ի Շնքուշ․․․։ Գրեցաւ ի Թվ. Հայոց ՌՃԽԶ, յունիսի 10 իմով ձեռամբ Մինաս վարդապետիս ի դուռն Ս. Էջմիածնի ի կաթողիկոսութեան տեառն Նահապետի» (Թորոս Աղբար Բ. 485)։

1698 Երեւանի Թանգարանի Թ. 579, էջ 582 ունի յիշատակագրութիւնս, որ Մինաս Ամդեցւոյ գրչէն է. «Արդ ի ՌՃԽԷ[11] Թուականիս Հայոց ես պիտակ Մինաս վարդապետս, որ եմ աշակերտ[12] տեառն լուսաւորեալ հոգի սրբազան Եղիազար կաթողիկոսի[13] ամենայն Հայոց։ Ես ի յԱրեւելից տանէն չուեալ հասի ի Կ. Պօլիս (1698 հոկտ. 24ին) ըստ խնդրոյ ամենայն քաղաքացւոց արդիւ եւ մահսարով վասն առաջնորդութեան գործառնութեան ընտրեալ զանարժանութիւնս մեր որպէս որ յառաջագոյն խնդրեալ էին եւ մեք եւս վասն այն գործառնութեանս կայաք (յ)ոմանց եկամտից արանց բազում նեղութիւնս կրեցաք յայսմ ամի։ Յետ որոյ կրկին հրաւիրեցաք առաջնորդ ի սուրբ Երուսաղէմի. եւ տուացայ զայս Քարոզգիրքս եւ ետու գրել ձեռամբ ումեմն քարտուղարի որ էր տեղեաւ Ըստամպօլցի, անուամբ Խաչատուր կոչեցեալ եւ մականուամբ Զօլախ տափ։ Եւ այժմ

[11] Թուականը քերուած եւ գրուած «ՌՃԺԷ»։ Ըստ Օրագրութեան՝ 23 հոկտ. 1698։

[12] «Աշակերտ» պէտք է իմանալ՝ եպիսկոպոսէ ձեռնադրուած քահանայ, հայրապետէ օծուած եպիսկոպոս։

[13] «Եղիազար Կաթողիկոսի» ջնջուած եւ «Մարկոս վարդապետի» գրուած։

*եղեւ զրաւ տորին եւ կատարեցաւ Քարոզ-գիրքս այս»:*

*Ինձ կը թուի թէ Մինաս մինչեւ* 1699 *պահած էր Եւդոկիայի թեմին առաջնորդութիւնը: Այժմ երբ հրաւիրուեցաւ Երուսաղէմի պատրիարքութեան աթոռին, պէտք է հրաժարուէր Եւդոկիայի աթոռէն: Եւ որովհետեւ այս միջոցին, երեք տարիէ ի վեր, գրաւած էր պատրիարքական գահը Գալուստ Կայծակ Ամասիացին, առաջարկեց անոր Եւդոկիայի աթոռը: Տեղի տուաւ Ամասիացին. ինչպէս կը խոստովանի իր երգիծականին մէջ:*

*Մինաս Կոստանդնուպոլիս դեգերեցաւ երեք տարի* (1698 *հոկտ.* 24 — 1701 *սեպտ.* 1) : *Ժամանակակից մը Պետրոս անուն*, վասն յետին ժամանակաց ազգիս մերոյ հակառակութեան *աշխատութեան մէջ կը նկարագրէ Մինասի կենցաղականը այսպէս.*

*«Արդ Մինաս աստուածաբանութեան վարդապետն, որ փոխանորդ էր կաթողիկոսի եւ ծեր գոլով երեք ամ շրջեցաւ ի մէջ Ստամպօլու ամենեւին ի ձի ոչ նստաւ, այլ հետ յոտս շրջէր անձրեւաթած եւ ձիւնաթաթախ լինելով, որ եւ տեսողացն յայտնի*[14]*»:*

*Այս զրկումները ոչ թէ առողջապահական հրահանգներ էին, այլ կրօնաւորական աղքատութեան մեռուցումներ:*

---

14 *Վիեննա Թ.* 1053, *Թղ.* 29*ա:*

1699· *Ստեփանոս Ռոշքա իր ժամանակագրութեան մէջ կ՚արձանագրէ· «Մինաս վարդապետ Թօխաթեցի արքեպիսկոպոս, առաջնորդ Երուսաղէմայ, եկեալ ի Կոստանդինուպոլիս՝ գրեաց գիր դաւանութեան առ Իննովկենտիոս· որոյ թղթոյ օրինակ է առ իս*[15]»:

1699· «*Սա եկեալ էջմիածնէ զՏրապիզօնաւ ի Պօլիս· գնաց ընտրութեամբ ազգին յէտրէնէ եւ անդ խիլայեցաւ պատրիարքական իշխանութեամբ ՌՃԽԸ, յերկուսն յունուարի*» (*ըստ իւր Օրագրութեան: Երուսաղէմ·* Թ· 462, *Ցուց·* Դ· *էջ* 186:

1702, *մայիս* 5*էն յառաջ* «*ես Տէր Մինաս արքեպիսկոպոս եւ պատրիարք Ս· Երուսաղէմի*» *կը ստորագրէր ի Կ· Պօլիս, եւ կը յանձնէր տպագրութեան իր գտած Նարեկեան կտորները:*

*Աւետիք, որ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութիւնը կորզեց· կ՚ուզէր նաեւ Երուսաղէմի աթոռն ձեռքի տակ ունենալ եւ յաջողեցաւ* (1702, *օգ·*):

1701· *Աւետիք Եւդոկիացի կը հասնի Կ· Պօլիս, այն տեղ գտաւ Շէխ իսլամ Ֆէյզուլահ էֆէնտին, իր պաշտպանը: Գրաւեց Կ· Պոլսոյ պատրիարքական աթոռը* (1702—1703)· *փորձեց կորզել նաեւ Երուսաղէմի աթոռը եւ յաջողեցաւ* (1702, *օգոստ·*):

---

15 *Վիեննա,* Թ· 266, *յունի* 1699:

*Ա· Տէր–Յովհաննէսեան կը գրէ· «Մէ–ֆէր* 1701 (*յուլիս*)։ *Յետ միաւորելոյ Աւետիք վարդապետի զիշխանութիւն երկուց պատրիարքական Աթոռոց, էառ հրովարտակ եւ ոստիկանս արքունուստ եւ կարգեաց զԿարապետ ոմն անուն փոխանորդ ի դիմաց իւրոց, եւ առաքեաց զնոսա յԵրուսաղէմ, գրեալ գիր առ Մինաս պապա տեղակալ, զի ի հասանել նոցին անդր*, կալեալ զՄինաս վարդապետ՝ միայն հանդերձիւ, *զոր զգեցեալն* էր, դիցեն շղթայիւք ի բանդի եւ մի թողցեն առնուլ ինչ յԱթոռոյ· *եւ ճշդութեամբ տեսցեն ընդ նմա զհաշիւն*»։ (*Ժամանակ· Պատմութիւն, էջ* 420)։

*Աւետիք «գտէր Մինաս տիեզերաց վարդապետն Համթեցի, որ չատ աւուրբք գոլով եւ ծերունի ի ժամանակիս եւ էր հաստատեալ պատրիարգ սրբոյ Երուսաղէմի ի տեառնէ Եղիազար կաթողիկոսէն, արդ ոչ խնայելով յալիս նորա եւ իջուցեալ զնա յաթոռոյն եդին ի բանտի արկեալ զշղթայս ի պարանոցն եւ յոտսն զբազում յաւուրբք տանջեալ խեղդէին զգլուխս պահանջելով ի նմանէ· զի առեալ ի նմանէ չաստուածոյն իւրեանց մատուցեն։ Նաեւ գտէր Սուքիաս վարդապետն աստուածաբան, որ է աշակերտ տեառն Եղիազարու հայրապետին, որք սոքա երկոքեանս թուի ինձ թէ իբրեւ յուսապայծառ ջահս երեւէին ի մէջ ազգիս մերոյ· քանզի յաւուրս յայսոսիկ սոքա են*

գերապատիւք ի տունս Ցունաց, Թողում աստ զտունս յԱրեւելից[16]»:

1703 օգոստ․ 3ին Մուստաֆա Բ. իր գահը կու տայ իր եղբօր Ահմէտ Գ.ին: Նոյն օրը գլխատուեցաւ Մուֆթին: Աւետիք շըղթայակապ տարուած է Եօթնեկլի Կլայ:

Այնուհետեւ «նորոգեցան, կ՚ըսէ պատմիչը, երկու պատրիարքութիւնքն, գերագահ աթոռոյն ի վերայ տեառն Մինասայ եւ տեառն Գալստի աստուածաբան վարդապետացն, հոգաբարձութեամբ եւ կամակցութեամբն Կոստանդինուպօլսոյ մեծամեծացն եւ տօլվաթաւորացն» (Վիեննա Թ. 1053):

Գալուստ Կայծակ իր «Քարտէս պատմաբանական ազգիս» երգիծականին մէջ նկարագրած է ժամանակը·

Գալուստ Ամասեան,
Կայծակ կոչի մականուան
եկեալ քաղաքն Բիւզանդեան,
Անդրիեան քարոզէր ժողովրդեան·

Նա կացուցին առ ատեան,
արարին վեհ սուրբ տանն այն·
...ոմն Մինաս սիրուն ճան
խոճայ զէնկին սրբազան,
եկն ի դրունս արքունեան,
պարծեցաւ՝ ունիմ չատ բան:

16 Վիեննա, Թ. 1053· Թղ·26բ:

Բազում փող մըրխեալ ունայն
առաւել պետութեանն յինքեան...

(Ա)պարեցաւ, եղեւ ունայն,
զի Կայծակն էր բարեկամ
ելեալ էջմիածնայ տան
եկեալ ի Բիւզանդեան
Գալըստին հետ հաշտութեան
լինել հայր, որդի եւ ճան.

Ոմանք անօրէնք անբան
չթողին լինել միաբան,
անէծ յերկնից ընկալեան,
եղեն փոշի 'ւ անպիտան:
Աւետիք ումն եարան,
Թիւր... եւ անպիտան...:

Բերլին Պետ. Մատենադարան cod. arm. 195, թղ. 269. տեղ տեղ դժուարընթեռնլի:

1704. Ծերունի պատրիարքը թէպէտ բանտարկութեան եօթը օրերու կրած անտանելի չարչարանքները համբերութեամբ տարաւ, բայց մարմնոյ ոյժերը չբաւեցին դիմանալ երկար:

Մինաս պատրիարք վախճանեցաւ 1704, նոյեմբեր 24ին:

Երուսաղէմ Թ. 2298 ձեռնագրութեան Մաշտոցի մէջ թղ. 11ա արձանագրուած է. «Մաշտոցս այս տեառն Մինաս վարդապետին է. ի ՌՃԾԳին նոյեմբեր ամսոյ. ԻԴ. փոխե–

*ցաւ առ Քրիստոս եւ եա յիշատակ ի դուռն սուրբ Յակոբայ ի սուրբ քաղաքին յԵրուսաղէմ, վինձակ ամենայն Հայոց»:*

*Նոյն Մատենադարանի Թ· 462 ցուց· Դ·, 186, կ՚ըսուի· «Մինաս վարդապետ Յամթեցի··· վախճանի ի Թվին ՌՃԾԳ· Նոյեմբեր ԻԴ»:*

*Տէր–Յովհաննեսեան ունի «ի 14 Նոյեմբեր ամսոյ յաւուր ուրբաթու» էջ 429: 1704ի նոյեմբեր ամիսը ունեցած է ուրբաթ 3, 10, 17, 24 օրերուն:*

*Թաղուած է Երուսաղէմ Ս· Փրկչի վանքի գաւիթին մէջ·*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ ՄԻՆԱՍԱՅ ԱՄԹԵՑՈՅ, ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ՍՐԲՈՅ ԱԹՈՌՈՅՍ ԱՌԱՋՆՈՐԴԻ, ՈՐ ՓՈԽԵՑԱՒ Ի ԿԵԱՆՍ ՎԵՐԻՆ ՌՃԾԳ:

ՄԻՆԱՍ ԱՄԴԵՑԻՈՅ ԳՐԱԿԱՆ ՄՆԱՑՈՐԴՆԵՐԸ

1. Օրագրութիւն 1680—1704. *Հաւանօրէն Եղիազարի յանձնառութեամբ ձեռնարկած էր Մինաս այս Օրագրութեան: Հաւատարմութեամբ եւ հաստատամտութեամբ շարունակած է մինչեւ* 1704, *մայիս* 24: *Ձեռագիրը կը պահուի այժմ Երուսաղէմ Յակոբեանց վանքի Մատենադարանը* 1316 *համարի տակ:*

2. Թուղթ առ Ճուապխան. 1702, *կը սկսի, Յիսուսի Քրիստոսի ծառայ՝ տէր Մինաս վարդապետ, որ եւ շնորհօք Ս. Հոգւոյն Աստուծոյ պատրիարգ սուրբ Երուսաղէմի եւ սպասաւոր աստուածահաստ սուրբ տնօրինականացս Քրիստոսի Աստուծոյ եւ փոխանորդ սրբազան առաքելոյ Յակոբայ տեառն եղբօր... վջ.* 115*բ. Գրեցաւ ՌՃԾԱ թուոջ ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, առ դրան սրբոյն Յակոբայ աթոռին ամենայն Հայոց, յունուար ամսոյ ԺԶ:*

*Վենետիկ, Մխիթ. Թ.* 31 (*ցուց. Բ. էջ* 1240):

3. Մինասայ վարդապետի Ամդեցւոյ Ազգաբանութիւն թագաւորաց Հայոց սկսեալ ի նախահօրէն:

*Ադամ ծնաւ զՍէթ··· ցամն ՊԷ* (1358)։
= *էջմ·* 1663, *էջ* 1—55։

Յբ· Կարգ կայսերաց։

*Այսորքիկ կարգ կայսերաց թագաւորաց Հռոմայեց, զոր կամեցայ ժողովել ի մի զկնի միոյ պատմել զսակաւ ի բազմաց։···*

= *էջմիածին·* 1663, 55*ա*։ *Թ·* 579, *էջ* 693—722 (1672)։

*Առաջին տպագրութիւն է· Մինաս վարդապետի Համդեցւոյ Ազգաբանութիւն Թագաւորացն Հայոց յորդւոց յորդիս, համառօտեալ ի Մովսիսէ Խորենացւոյ։ Ա· Հատոր Ազգաբանութեան Թագաւորացն··· էջ* 3–58։ (*Բ·*) *Կարգ եւ պատմութիւն կայսերացն Հռոմայեցւոց··· զորս ի պատմագրացն կարգի գտանել Մինաս Վ· Համթեցի· էջ* 61–163։ *Էջ* 164· *Ի ՌՃԽԷ թուին չարագրեցաւ կարգ թագաւորացն եւ անցք աշխարհիս Հայոց ի Մինաս Վ· Համթեցւոյ· էջ* 165–178։ *Կոստանդնուպօլիս* 1784։

*Բ· տպ· Վաղարշապատ*, 1870 (*Ա· էջ* 1–52· *Բ·* 53–143 *Հռոմայեցւոց եւ Յունաց*)։

*Հ· Աճառեան*, *Հայերէն նոր բառեր Մ· Համդեցւոյ մէջ· Բազմավէպ*, 1917, *էջ* 314–316։

*Այս գրուածքը Հ· Մ· Զամչեան հարեւանցիկ միայն յիշած է· «Այս այն Մինաս վարդապետ է, որ արար զքաղուած ինչ Թագաւորացն Հայոց եւ Կայսերաց»· (Պատմ·*

Գ. 748)։ Իսկ ԳՐԻՉ (Մ. Պօլատեան) գրուածքիս երկրորդ հրատարակութեան առթիւ գրախօսելով գնահատած է զայն այսպէս. գիրքս «Մինաս Համթեցու Ազգաբանութիւն Հայոց անունն է կրում, բայց բացի Հայ պատմական անունի, չոր ու ցամաք ցանկից, որ գրքուկի միայն երրորդ մասն է բռնում, վեր ի վերոյ կերպով խօսում է նաև հռոմէական եւ բուզանդական կայսրների վրայ։ Ընդհանրապէս սուր ու խակ գործ է մի դարու վերջին տարիներին վերաբերեալ այս աշխատութիւնը եւ միայնակամայն զուրկ արժանաւորութիւններից»։ Փորձ Գ. 1878, Թ. 4, էջ 407։

Բայց բոլորովին այլ կին տուաւ անոր Լէօ. «Որքան էլ համառօտ լինի այդ աշխատութիւնը զուրկ ինքնուրոյնութիւնից, նոյնիսկ սխալներով լիքը, բայց մենք չը պիտի աւելորդ եւ անօգուտ գործ համարենք նրան, նկատի առնելով զարձեալ ժամանակը։ Այդպիսի միջավայրում, ի հարկէ, կարեւորութիւն պիտի ստանան եւ Մինաս Համդեցու ողճուկ կարկատանքը» (Լէօ, Հայկական տպագրութիւն, Ա. 1901. Թիֆլիս էջ 284–7)։

Մինաս իր այս աշխատութիւնը կ'անուանէ Ազգաբանութիւն Թագաւորաց Հայոց... համառօտեալ որպէս զԳաւազանագիրք...» (էջ 1). եւ վերջաւորութեան «կատարումն սոր գաւազանի ազգաբանութեան Թագաւորացն Հայոց համառօտ ծաղ-

*կաքաղ արարեալ եւ ի բուն պատմութեանցն հանեալ»* (*էջ* 51–52)։ *Մեր հեղինակը, թէպէտ յանուանէ չի յիշեր իր աղբիւրները բայց կը մատնեն «գաւազանագիրք», «գաւազան» բառերը, թէ ձեռքի տակ ունեցած է Ֆրա ծաղկաքաղուած թէ Հայոց եւ թէ Հռոմայեց-Պապերու պատմութիւնը, զոր թարգմանած է Ներսէս Պալիանենց, առ ընթեր աւելցնելով Հայոց պատմութիւնը։ Այս գրուածքէն փոխանուած է «գիրք գաւազանաց», ասկէ ծաղկաքաղուած թէ Հայոց եւ թէ Հռոմայեցւոց թագաւորներու եւ կայսրներու գաւազանները։ Ապա մուծուած է գրական եւ անգիր պատմութիւնները այնտեղ։*

*Կը յիշեմ Վաղէսը, որ հալածած է եկեղեցին, Ներսէս որ անոր որդին մեռցուցած է այս պատճառաւ Ս. Ներսէսը աքսորած անջուր կղզի մը. եւ թէ ինչպէս կայսրը գոթերէն այրուած է։ Հոս աչքի առաջ ունի գրաւոր աղբիւրներ. Խորենացի, Մարտինոս, Յայսմաւուրք* (*Վարք Ամբրոսիոսի. 7 դեկտեմբերի*)*. այս վերջինէն բառ առ բառ առած է «եղեւ փախել նմա եւ* մտեալ ի մարագ յարդի թագչել···» *այրեցին։*

ՁԱՓԱԿԱՆ ԳՐՈՒԱԾՔՆԵՐ

Ա. Ի Մարկոս վարդապետն է ասացեալ գովեստ բանի ի Մինասէ

*Ի յանեղէն անճառ լուսոյ,*
*անհաս էէն Հօր միայնոյ...*

128 *տուն.*

Բ. 1. Աւրհնութիւն յետ քարոզիցն:

*Յայժմ ժամանեալ աւարտ ի բան*
*առնու լրրումն կատարման...*

2. Աստուածածնի.

*Աստուածածինըն Մարիամ, մորենի*
*անկիզական...*

3. Խաչի.

*Աւրհնեալ սուրբ խաչըն փրկա-*
*կան...*

Յեկեղեցւոյ.

*Աւրհնեալ տաճարս երկնական...* 4

4. Կաթողիկոսի.

*Այլ եւ զգլուխն արհիական...* 4

5. Եպիսկոպոսի:

*Այլ եւ զխառղ այսըմ գահեան...* 3

6. Վարդապետաց.

*Նաեւ զխումբըն սըրբազան...* 4

63 *տուն.*

7· Համշիրակաց :

*Եւ զհամշիրակս եղբայրական . . .* 3

8· Քահանայից·

*Եւ զքահանայքըդ միաբան . . .* 3

9· Սարկաւագաց :

*Զսարկաւագս դասք [յ]ամենայն* 2

Գ· Վարդապետաց գովասանք

*Նախ եւ առաջ Տէրն ամենի,*
*Յերկնից ի յերկիր խոնարհի . . .*
41 *տուն*·

41 *տուն*·

Դ· Յակոբ կաթողիկոսի ծառայ Մինաս

*Յակոբ Հայոց կաթողիկոս . . .*

28 *տուն*·

Ե· Աւրհնութեան թուղթ Մայրաքաղաքին Ուրհայի :

*Հոմերական տաղիւ չափի . . .*

վջ· *Սակաւ գրեալս աւարտ լինի,*
*Թվին հազար հարիւր եւ վեցի,*
*յաւուր տօնի Մանկանց Բեթղահէմի:*

*Այս տաղերը երեւան եկան ձեռագիրի մը մէջ, զոր 1957ին բերած էր գերմանացի վաճառորդ մը Վիեննա, Մխիթարեան վանքը ծախու 600 մարքի : Գինը ծանր երեւցած է եւ չէ առնուած :*

Ձեռագիրի նկարագիրն է՝ թուղթ 278, մեծութիւն 15 × 10·5, նիւթ՝ թուղթ, կազմ՝ կաշեպատ տախտակ. պահպանակ սկիզբն եւ վերջը մագաղաթ լատիներէն գրութեամբ: Հանգամանքը լաւ, գիր՝ նոտր. զարդագիրք տեղ տեղ: Ծաղկագիրք՝ կարմիր: Ժամանակ 1680. տեղի՝ Հէճին գղեակ. գրիչ՝ Յովհաննէս:

Բովանդակութիւն՝ 1ա—բ «Ցանկ է վկայութեանց»: 2ա—37բ. Ծարադրականութիւն ականց ի բազում աստուածաշունչ գրոց՝ Ա—Ք գլուխներով. կը պակսի Ք.:

41բ—43բ. տաճկերէն տաղ Ս. Երուսաղէմի, Եալ վարըրըղ օ՛լ ալլահայ · · ·

44ա. Գլխոյ պսակ թագըդ պարծանաց. տուները՝ Գալուստի է:

49ա—72ա. Մինաս Ամդացւոյ տաղերը:
72ա—83բ. Նախերգանք կարգաւ:

85ա—98բ. Աւրհնութիւն յետ քարոզից · ·

99ա—127. Աստքել վարդապետի տաղ. Աւրհնեալ է հայր · · ·

134—169. Ասացուածք խոհեմականք հնոց իմաստասիրաց .

169. Վարք պատմութեան սրբոց հարցն.

258. Այս է աշխարհացոյց աշխարհի. նախ քան զամենայն խնդրեսցուք · · · :

1·

## ՅԱԿՈԲ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻՆ ԾԱՌԱՅ ՄԻՆԱՍ*

*Յակոբ Հայոց Կաթողիկոս*
*Մեծ պատրիարգ Էջմիածնին*
*Լուսաւորչի նման փայլեալ*
*Պարսկաստանայ մինչ ի Լեհին:*

*Արժանի շնորհաց Հոգւոյն*
*իմաստութեամբ բանիւ լցեալ*
*եւ ի բոլոր աշխարհս սփռեալ*
*խրատ տալոյ Հայոց ազգիս:*

*Կրկին եղեր լուսաւորիչ*
*չատուիղէ Լուսաւորչին*
*զմանկունս լուսաւորեալ*
*պայծառ լուսովըն աստուածային:*

*Ուսուցանես զամենեսին*
*քաղցր բանիւդ աստուածային*
*եւ ոտոգես զախեղերս*
*յարեւելից 'ւ արեւմտին:*

*Բաղձմամբ տեսոտ եմք ցանկալի*
*փափաքմամբ ամենայն սրտի*
*ըզմայլի աչքըն տեսողաց*
*իբր ի մօտոյ հեռաստանի:*

---

* Տաղիս տնակալերը հիւսուած են վերնագրիս գրերով:

Կաթողիկոս եւ հայրապետ
վարդապետաց վարդապետին
Լուսաւորչի ես նմանեալ
պարթեւազինըն Գրիգորի ։

Առաքելոց նմանեցար
որպէս Ներսէս Շնորհալին
սուրբ Սահակայ ես նմանեալ
եւ Մեսրոպայ վարդապետին ։

Թաթէոսի ես նմանեալ
Տեառն Յիսուսի աշակերտին
նորա վիճակն է Հայաստան
առողջարար մեծ արքային ։

Ուղիղ քանոն աշակերտաց
ի քեզ բերես զամենեսին
որպէս Մովսէս մեծ մարգարէն
օրէնս բերեալ յԻսրայէլին ։

Իմաստամբ ակամբ ես զարդարեալ
հայրապետաց դու ի միջին
որպէս Յոհան Ոսկեբերանն
Աստուածաբանն Գրիգորին ։

Ղամպար փայլեալ դու յարեւելս
եկեալ հասեալ յարեւմըտին
չըքեղ պահեալ զհաւատացեալս
ի կիզմանէ շող յարեւին ։

Ի Հոգւոյն սըրբ(ը)ւոյ ընտրեալ
հովուել ըղձօտ Հայոց ազգին
առաջնորդ բանաւորաց
եւ քարոզ եղեալ բանին :

Կոյս եւ մաքուր սուրբ եւ անբիծ
նըման սըրբոյն Յովհաննէսին
քաղցրաբարբառ բարի համբաւ
հայրապետաց վերին դասին :

Ուղղափառ դաւանութեամբ
նըմանեցար հայրապետին
որպէս Բարսեղ ի Կեսարիա
դու փայլեցար յարեւմըտին :

Սուրբ եւ մաքուր անուն բարի
ժիր ես դու քաջ եւ նաղելի
բարունեաց բարուն բարի
հետեւեցար Տեառն Յիսուսի :

Ի մէջ պաշտաց երեւեցար
որպէս ծաղիկ համասփիւռին
անուշահոտ բուրեաց յաշխարհս
լըցոյց ըղձիմս զամենեսին :

Նոր տունկ բուսեալ ի մէջ պարտիզին
որպէս շուշան ծաղիկ դրախտին
ըռէհան եւ մանուշակ նըմին
բուրեալ զհոտ քան ըզվարդին :

Ծառ պտղաբեր եւ քաղցրահամ
տաս զու պտուղ յամենայն ժամ
եւ կերակրես զամենեսեան
ուտեն ըմպեն եւ լիանան :

Առաքելոց ես նըմանեալ
մարգարէից հետեւեալ
սուրբ եւ մաքուր Հոգով սրբեալ
բան զՅովհաննէս սրբարանեալ

Խաչ լուսոյ ի քեզ ծագեալ
եւ զհոգին քո զարդարեալ
արեւ նըման ճառագայթեալ
՚ւ ի մէջ սրբոց պայծառացեալ :

Առաքելոց ի քեզ հասեալ
հաստատուն հաւատ եւ յոյս եղեալ
հովիւ զքեզ հօտին եղեալ
՚ւ ի մէջ մարդկան վեհ երեւեալ :

Յորժամ զհամբաւս քո լսեմք
ըզարմանեալ սիրտս ուրախ առնեմք
պայծառ մըտօք ըզքեզ յիշեմք
յամէն ցաւոցս ազատիմք :

Մեղուցելոյս զու ճար արա
եւ ի յայսօրըն զու փրկեա
հոգիս մեղաց ահէն զատայ
քեզ նայելով զուարճանայ :

Իսկ դու գլուխ հայրապետաց
եւ ուսուցիչ տիեզերաց
պարծանք եղեր Հայոց ազգաց
եւ առաջնորդ ես անուանած։

Նոյն դու ողորմած եւ հիւրընկալ
առատաձեռ շնորհօք լցեալ
զքաղցեալս ի հաց դու մեծարեալ
եւ զծարաւիսըն արբուցեալ։

Ամենեքեանքս զքեզ աղաչեմք
եւ յօգնութիւն ի քէն խնդրեմք
մեզ դեղ տալոյ ի քէն հայցեմք
եւ միաբան զքեզ աղերսեմք։

Սաստեա բանիւ զմեղուցեալս
եւ դու կոչեա զհեռացեալս
խնդրեա եւ գիտ ըզկորուսեալս
մխիթարեա ըզվշտագնեալս։

Սիրտ իմ առ քեզ աղաղակէ
եւ թողութիւն ի քէն խնդրէ
դու ողորմեա եւ խնայէ
եւ թողութիւն մեզի շնորհէ։

2.

## Ի ՄԱՐԿՈՍ ՎԱՐԴԱՊԵՏՆ Է ԱՍԱՑԵԱԼ ԳՈՎԵՍՏ ԲԱՆԻ Ի ՄԻՆԱՍԷ*

*Ի Անեղին անճառ լուսոյ*
*անհաս է էն Հօր միայնոյ*
*ի ծոցածին ծագման Որդւոյ*
*անհատաբար բղխման Հոգւոյ:*

*Մի բնութիւն եռայանձն էակ*
*բարձրեալ անհաս եւ անդիտակ*
*որով եղեալքս եղեն ի կարգ*
*բանիւն իւրով փութ եւ արագ:*

*Ամենայնիւ բովանդակեալ*
*գերապայծառ լուսազարդեալ*
*դիմանալի դասս կարգեալ*
*աւրհնաբանիչս իւր հաստատեալ:*

*Բամք ամենից դոյք էանս*
*դիտամամբ իւրով բոլոր լրանս*
*ամէնիմաստ բանիւ նորա*
*բնութին պակաս իր ոչ մնա:*

* Վերնագրիս գրերով հիւսուած են տաղիս 36 տներու սկզբնագրերը:

Կրկին զերկինս նա հաստատեալ
Լրջեւ զհրեշտակս արարեալ
վերջի նուագի զմարան յօրինեալ
զօրաց խորոց վեհ երեւեալ :

Որ ի լուսոյ լոյս ներգործէ
եկեալ զաեալ եւ զմեզ կանգնէ
մահմուամբ զմահ կորուսանէ
ընդ աջմէ Հօր զմեզ զատէ :

Սաղիմ ձինանայ լուսաւոր
թագաւորք զուամարեալ հազարաւոր
հընչի շընորհըն ահաւոր
սփոփի ոլորտըս ընդհանուր :

Վեհագունից եղեալ որ անդ
ժառանգեցին սիրեցեալ զարդ
ի յարմատոս նոցին մեզ զարդ
բաղբաջեցար որդէս զվարդ :

Անուշահոտ բուրում մեզ տա
իմաստութեամբըն ճոխանա
ի Քրիստոսէ յայտնեալ ընծա
նըման խորհին սուրբ Եփրեմա :

Բամեալ զասուցն սրբազան
յուսերամից համանըման
Տէր վարդապետ աստուածաբան
բաղցրայուսոյց համեղահամ :

Դու յԱզգինայ վտակ քաղեալ
խրադատահոս մանուայգըմա [1]
պաուքեալ երկիրս քեւ զօղանա
Տէր այս անուն գետ Եփրատա :

Աղբիւրաբար բանից բղխման
ծիծաղածաւալ քաղցրահոսան
սաստանող զհոգիս մարդկան
տէր վարդապետ ճշմարտաբան :

Պարունակող մաքուր սուրբ անձ
կենաց բանինըն գերապանծ
բաշխեա ըղձերդ անսպառ զանձ
տէր վարդապետ դու աննախանձ :

Տեառն տաճար ըզքեզ կազմէ
ձեռըն փրկչին զքեզ օրհնէ
քաղաք ի վերայ լերին շինէ
զտէր այս անուն բարձր ի յերկրէ :

Նոյն դու պարիսպ ես ամրութեան
զօղեալ յօգնոց պատերազմարան
ի քեզ դիմելոց պահապան
տէր վարդապետ դեղ փրկութեան :

Երեւիս յակն յարեւոյ
ճառագայթեալ ճաճանչ լուսոյ
զամենայն տեղ լոյս քո լինի
մեր վարդապետ սինըղ լուսոյ :

---

[1] այսպէս· մանուածագըմա՞ :

Աստ մայր Սիոն քեւ բախանս
յարագուարճ պայծառանս
բղխմամբ բանից քո լիանս
տէր վարդապետ տեառն վըկա :

Սուրբ ըղբերանդ յորժամ բանաս
նըստեալ ի դահ եւ ճառես դաս
բանիւդ առատ ես եւ անհաս
տէր վարդապետ հաստատ մընաս :

Արթուն մըտօք բանիւ դուարթ
չնորհադարդեալ բերես ի յայտ
մարգարտաշար ոսկիադարդ
տէր վարդապետ չնորհիւ առատ :

Ցուցար մեզ լոյս ի յաշտանակ
ոսկիաձոյլըն ճախարակ
եօթնաջահեան եւ լուսայարկ
բարունապետ Հայոց ճրագ :

Եւ սեռս ազանց միայն դըտար
չնաշխարհիկ երջանկացար
հնազանդ դու տեառն երեւցար
այս անուն անուամբ դու յատկացար :

Աստ սիւն կանգնեալ յեկեղեցւոյ
պարծանք մերոյս սուրբ հաւատոյ
նոցա որ են ներհակ բարեոյ
տէր վարդապետ դու ահարկու :

Լուսոյն հաւատոյ ես դու տուիչ
ջանիւ եղեւ մեզի այտնիչ
մրթնեալ հոգւոյ լուսաւորիչ
տէր այս անուն հոգւոյ նորոգիչ :

Գլուխըս ոսկւոյ սոփերայէ
ջինջ եւ մաքուր ի հալոցէ
արծաթաձոյլ ձեւըդ փայլէ
տէր վարդապետ բան քո սուրբ է :

Ոսկերերան յայտնեալ յետոյ
ռետին իջեալ մեզ ի վերոյ
գեղ ողջութեանց ախտացելոց
տէր վարդապետ բժիշկ հոգւոյ :

Վարդապետ կենաց հոգւո
տախկիմ սրբատէ գքեղ գովելո
դու գովութեան դիր ի վերոյ
տէր վարդապետ յակըդ լուսո :

Երեւեցար ծաղիկ գունով
վարդ եւ շուշան մանուշակով
գքիմս մեր լըցեր անուշ հոտով
տէր վարդապետ լըցեալ հոգւով :

Միրտ իմ եռանդն չարժեալ բաղձա
տարբմամբ սիրով քո յոյժ ըղձա
ներփողելո գքեղ տենջա
վասն այն լեզուս վըստահանա :

Տիպ տիրական յուսանրման
բարունապետղ հրաշագան
քաջ իմաստուն եւ վիպասան
քերթող բայլի եւ ճարտասան :

Բաղկացեալ նիւթից քոյլ
ցայթեալ լուսով սրովբէ մարմնի
հոգւո մասամբրդ եակի
երեւեցար երանելի :

Անմարմնական թեւօք սլանաս
ւխնեալ ի սէր վերին անհաս
մաքուր մտօք վերանաս
զանձառելին տեսու մեզ դաս :

Նրմա որ քեզ յօրինեալ է
փառք գոհութիւն յամենայնէ
իմանալեաց եւ ըզգայէ
տարրականաց եւ անտարրէ :

Ի նուաստէ ընկեալ աղերս
քեզ ոչ է ճահ անպետ բաներս
գլուխ բանիս դու լիսեալ ես
ի վերջ բանիս ծառայդ քո տես :

Ի տարադրելոյս յամենայնէ
իբր զԼՈՄԱՅորն[1] ընդունէ
եւ գթիւ ամիս իմ այսքան է
յորժամ տեսցես զծառայդ յիշէ :

---

[1] $30 + 600 + 200 + 1 + 300 + 551 = 1682$

Մեղօք լցեալ եւ եղկելոյս
Ի տէրդ աղերս ի Նուաստոյս
Նայիս ոչինչ իմ Այս շնորհոյս
Սուրբ հոգին է բացող լեզոյս ։

Երրեակ տասամբ երկ երրակիւ [1]
միջոց բանիս այր եւ բենիւ
ւիւսիւք շինեալ խոշոր բանիւ
եւ ուղիղ սիղւիբայիւ ։

36 տուն․

⁂

Իմ քաղաքս է Տիգրանակերտ
զոր այժմ ասեն Նըմա Համիթ
իսկի չ՚տեսաք ըղքս բարիդ
Ծէնքուշ է մեզ բարեաց առիթ ։

Ձի բարունույն եմ վարդապետ
Տէր Մարկոսեան եմ աշակերտ
Աստուածածին սուրբ Կարապետ
նոքա իսկ են ինձի վարպետ ։

Այլ եւ զպատճառ մերոյ բանիս
ասել կամիմ ի յատենիս
եթէ վասն էր ի չար ժամիս
մրափ ի լուծ այս մեծ կարգիս ։

Որ փոքրութեան ժամանանակէն
ուխտ ունէաք որդիօրէն
ընդ վարդապետին բարոյօրէն
որ Տէր այս անուն ասեն իւրէն ։

[1] 3 × 10 + 2 × 3 = 36 տուն ։

Կրթիլ ուսումն ճշմարտօրէն
ի գիտութեան սատուածօրէն
ինքն մեկնումն բարունօրէն
ինձ ուսուցող ուղղաօրէն :

Վասն այն սուրբ հայրըս բարութեան
առիթըն մեր կենդանութեան
մանաւանդ ապըննանական
այսքան ամացս ղարխպութեան :

Եւ զարին յոյժ լաւութեան
չկարիմ ճառել 'ւ ասել ըզբան
թէ հոգեկան թէ մարմնական
արար ի վեր քան ըզարժան :

Որ եւ գնուաստս եւ ըզանբան
ինքն ընդունեաց իբր բանական
եղեր զմեզ ի կարգ մարդկան
որ ոչ էի նըման մարդկան :

Թ·է պէտ չէի այսմիկ արժան
այլ ինքըն իւր բարի բնութեան
արար ընդ մեզ բան բարութեան
հասոյց ի վեհ այս աստիճան :

Նա որ ի տուրան ողորմութեան
առատանայ անսպասական
եւ պարգեւէ միշտ անխափան
բարի առնել որդւոցս մարդկան :

Ըղփոխարէնըն տայ սորայն
ի յիւր առատ ողորմութեան
սատ ըղհարիւրն ընդ հազարեան
եւ անդ ըղփառսն անդրաւական :

Այս էր պատճառ մերոյ բանիս
որ ծանուցաք ի յառենիս
եւ ոչ փառաց կամ մեծ պատուիս
մի կամեսցի զայս տէր ընդ իս :

Զի տղայութեան ժամանակիս
չէի արժան այս մեծ կարգիս
բայց պատահման ժամանակիս
հանդիպեցաք այս մեծ բանիս :

Խնդրեմ ի ձէնջ եղբայրք ամէն
մի ձանձրանայք ի մեր բանէն
խելս է ցընոր չժողովօրէն
միտս է մոլոր խորոց բանէն :

Զի սատ ի վեր ժամանակէն
մեզ ոչ է պարտ գործ մարմնեղէն
բուռն հարաք գքղանցէ փրկչէն
միթէ տացէ ի նըշխարէն :

Արդ որ նստեալ կայք համօրէն
ունկընդրութիւն եղբայրօրէն
տացէ ձեզ տէր ըղփոխարէն
զառատ պարգեւսն առատօրէն :

Արդ աղաչեմ զհայրդ բարի
զերախտաւոր խմումս անձի
լցուցանող ես պակասի
անյիշաչար լինիս ինձի :

Վերստահեցայ ես ի մտի
Ըրբեալ դիմօք չպատկառելի
յերես անկեալ քոյին ոտի
զքեզ աղաչեմ աղերսալի :

Հայր իմ գըթած եւ բարերար
անոխակալ 'ւ անյիշաչար
անկայ ի խորըս անհընար
ձեռընտուութեամբ առնես ինձ ճար :

Դարձեալ ըզքեզ տէր աղաչեմ
եւ թողութիւն ի քէն խընդրեմ
յորժամ առից հրաման ի քէն
ուրախ դիմօք ըզքեզ գովեմ :

Տէր վարդապետ դու քաղցրաձայն
երգող միշտ տաղ եւ շարական
մարտիրոսաց այն պատուական
միշտ մեծարող դու անխափան :

Տէր վարդապետ այս աշխարհի
կոչեալ անուամբ Քրիստոսի
լուսաւորեա զեկեղեցի
նըման արփւոյն արուսեկի :

Տէր վարդապետ դու գովելի
եւ հրեշտակաց ես ցանկալի
ունիս դու վարք զարմանալի
խըստակրօն 'ւ առաքինի :

Տէր վարդապետ ի յաշխարհի
մարմնով վարիս իբր անմարմնի
վարք հրեշտակաց քեզ երեւի,
ով տէր այս անուն յոյժ պանծալի :

Ով բուրաստան պտղով ի լի
պայծառ սըփռեալ քո տրեւնի
պայծառ ծաղկունք քեզ երեւի
տէր վարդապետ հոտ անուշի :

Բարունապետ անյաղթելի
որ քեզ հասու ոչ ոք լինի
քըննող խորոց տեսանողի
տէր վարդապետ յանուն բարի :

Գեղեցկայարմար տեղ ցանկալի
քաղցր եւ բարի յամենայնի
հեզ եւ հանդարտ զքեղ տեսողի
տէր վարդապետ պտուղ բարի :

Քարոզող դու տառից բանի
զոր ոչ լեզու իմ բարբառի
անհաս մըտաց մանկանց սեռի
տէր վարդապետ քըննող խորի :

Առաքելաշնորհ մեծ բարունի
դու հետեւող Տեառն Յիսուսի
շնորհաց հոգւոյն տուն եւ տեղի
տէր վարդապետ քաջդ ի մարմնի :

Ջահ լուսաւոր եւ անշիջելի
պայծառ լապտեր լուսով ի լի
բազում՛ք ի լոյս քո ժողովլի
տէր վարդապետ մեծ բարունի :

Ով լուսաւոր եւ սուրբ հոգի
երկու կենօք երանելի
հռչակաւոր եւ անուանի
որ պարծանաց ես մեզ տեղի :

Արեգական նըման պայծառ
լուսաւորես զեկեղեցի
իբրեւ ջուր հոսեալ հոգով
արբուցանես զծարաւի :

Արդ ունիս քեզ բան գովելի
ըզխոստացեալն Տեառն Յիսուսի
իմաստութիւն Հօրըն վերին
քեզ կատարեալ միշտ երեւին :

Արդ ես քաղցեալս եւ ծարաւիս
ի քէն հայցեմ աղերսալի
զի ըզգովեալս կերակրես
անմահական հացէն բանի :

Եւ ըղձարաւս զովացնես
ի յաղբերքէն անսպառելի
ես չարաչար մեղօք ի լի
եւ պարտապան եմ ըիւր քանքարի ։

Ձեմ արժանի զքեզ գովելոյ
քանզի չեմ ես հըմուտ բանի
այլ եւ ըղձէր սրտի իմոյ
փոքր ի շատէ աստ յայտնեցի ։

Տէր վարդապետ ծաղիկ դաշտի
երանի է քեզ տեսողի
եւ որք առ քեզ մերձակայի
որք են ընդ քեզ ի բաղմոցի ։

Տէր վարդապետ սուրբ ի մարմնի
եւ հետեւող Տեառն Յիսուսի
Հօգւոյն սրբոյ տուն եւ տեղի
կրկին Գրիգոր քաջդ ի մարմնի ։

Տէր վարդապետ քաջ եւ արի
որ պարծանաց ես մեջ տեղի
այլ եւ բոլոր Հայոց ազգի
դու ազդեցօղ Տեառն հրամանի ։

Ի այս վերջին ժամանակի
ազգըս Հայոց կան ի վտանգի
դու մխիթար թաղձեալ սրտի
տէր վարդապետ յանուն բարի ։

Իբրեւ ըղլոյս առաւօտի
ծագեալ յաշխարհըս տարածի
խաւարն քեւ հերքեալ լինի
տէր վարդապետ վանից չարի :

Ազգ ամենայն ի քեզ հայի
ունկըն բազմաց լըցեալ լինի
այլ յարաժամ մեզ տեսնիս
տէր վարդապետ փափաք սըրտի :

Ի յամենայն ժամանակի
ի տուընջեան եւ գիշերի
միշտ աղօթես անձանձրալի
տէր վարդապետ ծաղիկ բարի :

Տէր վարդապետ բացօղ դրախտի
պայծառ շըքեղ եւ սխրալի
կենաս բարի դու յերկրի
վարք անմարմնոց քեզ երեւի :

Տէր վարդապետ չուշան հովտի
պըվետիկոս մեծ բարունի
աւուրք բազումք քեզ եղիցին
երկարակեաց ի աշխարհի :

Տէր եւ իշխան այամ գաւառի
եւ զարդարեալ փառօք ի լի
հայրապետաց ես զովելի
՚ւ տառաքելոց ես նըմանի :

Անուանակցեալ ես Պարթեւի
Լուսաւորչին Հայոց ազգին
իշխանաբար տիրես յերկրի
հովուես զհօտ նոր Սիոնի :

Տէր վարդապետ պանծալի
ընտրեալ հովուէն կեանք տուողի
արեգական ես նըմանի
որով աշխարհս լուսով լցուի :

Որ անպատրաստ ի (քեզ) մերձի
կիզեալ հրով քո տոչորի
որք քեզ հեռանան անդառնալի
տարին որպէս ձմեռնայնի :

Ես հընազանդս ամենայնի
քո տէրութեանդ հրամանի
հաւատարիմ հողոյս յերկրի
երկըրպագեմ գարշապարի :

Հայցեմ Տեառնէն յամենայնի
միթէ լըսօղ լինի բանի
յետ ելանել քո յաշխարհէ
դառնէ ի դաս յաջակողմի :

Այլ մեք եւ դուք ամենեքեան
տամք աւրհնութիւն ի մի բերան
աւրհնեմք զՏէրն վերնական
երկըրպագեմք փառատրական :

51 (87) տուն.

## ՎԱՐԴԱՊԵՏԱՑ ԳՈՎԱՍԱՆՔ

*Նախ եւ առաջ Տէրն ամենի*
*յերկնից ի յերկիր խոնարհի*
*Տէր վարդապետ նա անուանի*
*ուսուցանող մարդկանց ազգի ։*

*Արար ուսոյց որդւոց մարդկան*
*Թողուլ զխաւարն անգիտութեան*
*սիրել զԱստուած ճշմարտութեամբ*
*եւ զիւր ընկերն բարութեամբ ։*

*Որ եւ կոչեալ ըզառաքեալսն*
*լուսաւորել ըզխաւարեալս*
*լոյս անուանեաց զաշակերտեալս*
*եւ աղ կոչեաց ըզհրաւիրեալս ։*

*Սոքօք Թռեաւ աւետարանն*
*ընդ բոլոր ոլորտըս չորեքծագեան*
*բազինք եւ կուռք խորտակեցան*
*եւ լոյս հաւատ հաստատեցան ։*

*Ասաց անսուտ Աստուած բերանն*
*առ Պետրոս վէմըն պատուական*
*եթէ սիրես զիս եւ զհրամանն*
*արածեա զհօտըն տիրական ։*

*Ծառք իբրեւ զայս հրաման լուան*
*Թողին զաշխարհ տուն հայրենական*
*՚ւ եղեն հովիւ քաջ ախոյեան*
*մեռան բազումք հօտին փոխան ։*

Առաքելոցն հետեւեցան
սուրբ վարդապետքն երկոտասան
ըՌեթէոս ողնհանճարեան
Դիոնիսիոս արիոպագեան :

Երկու Կիւրեղքն ուղղադաւան
Կիպրոս կղզոյն սուրբ Եպիփան
սուրբքըն Յովան Ոսկեբերան
նաեւ Գրիգոր աստուածաբան :

Մեծըն Բարսեղ եօթնաջահեան
նաեւ Գրիգոր եղբայր նորայն
եւ Սեղբեստրոս պապ Հռոմայն
եւ Աթանաս Աղեքսանդրեան :

Սոքօք հաւատք հաստատեցան
դեւք սատանայ հալածեցան
եկեղեցիք պայծառացան
հերձուածողաց բերան կարկեան :

Սոցա բազումք հետեւեցան
ազգ եւ ազինք համայնգամայն
նաեւ ի մերս Հայաստան
կոչեալք եղեն Թաթէոսեան :

Սուրբըն Գրիգոր մեծ պարթեւեան
որդւովք թոռամբքըն իւրական
երկու Ներսէսքըն մերազեան
ջահ են մեզի անշիջական :

Նաեւ Մխիթար Գօշ կոչական
իւր աշակերտն Վանական
Վարդան, Ներսէս որդիքն նոցայն
մեծըն Ներսէս Նիչ դաւառեան :

Եւ Յոհանէս Որոտնեցին
նաեւ Գրիգոր Տաթեւացին
Դանիէլ ճըգնաւորն 'ւ այլն
նաեւ Յոհաննէս Յամչեցին :

Զորթան Գրիգոր Արճիշեցին
Ներսէս Մաստաղ Բաղըշեցին
միւս Ներսէսըն Յամկեցին
եւ Յոհաննէս Բըրգուլթեցին :

Մեծն Բարսեղ դաւառեցին
եւ Ազարիա մեծ րաբունին
եւ Յովաննէս Անթապեցին
միւս Յովաննէս Յամչեցին :

Մեծն Թորոս Արեւմըտին
եւ Գրիգոր Տարօնեցին
Յոհան Ծիրեաքն Բաղիշեցին
նաեւ Ղուկասըն Կեղեցին :

Որ եւ Պետրոս Կարկառեցին
եւ Սրապիոն Ուռհայեցին
եւ Մարտիրոս Ծէնքուչեցին
Տէր Յովաննէս որդի նորին :

*Եւ աշակերտք Յովաննէսին*
*Աստուածատուր Հալապեցին*
*Խաչատուր Ատիշեցին*
*եւ Եղիայ Անթապեցին ։*

*Նաեւ Կիրակոս Պելանկացին*
*մեծ Տէր Մարկոս Հայուտեցին*
*պարտիմ գովել զընտրեալն 'ւ արին*
*որ նըմանակ է Քրիստոսի ։*

ՆԿԱՐԱԳԻՐ ՏԵԱՌՆ ՄԱՐԿՈՍԻ

*Ճակատն որպէս գելս արեւի*
*յու(ն)քն որպէս ձեւ աղեղնակի*
*աստուածաբան Տէր Մարկոսին*
*զի օրինակ է Ճըշմարտին ։*

*Է գեղեցիկ գոյն երեսին*
*եւ աննըման ձեւ հասակին*
*գանգըրագոյն է հեր գլխին*
*զի օրինակ է Քրիստոսին ։*

*Է գեղեցիկ աչք ծովային*
*եւ ձոյլ ոսկի ռընկունք նորին*
*եւ ցանկալի լսելիք նորին*
*է զարդարեալ շնորհօք վերին ։*

*Ատամունքն որպէս շար մարգարտի*
*քաղցր եւ ազդարար համեղ լեզուին*
*եւ ի շարժումըն սուրբ բազկին*
*ըզմայլէ զհոգիս մարդկային ։*

է գեղեցիկ մօրուս վարդի
որ ոսկեթել կու նըմանի
գի դու նըման ես Մովսէսի
այն որ խօսէր ընդ Քրիստոսի :

Տէր վարդապետ լոյս աշխարհի
կոչեալ անուամբըն Քրիստոսի
լուսաւորես գեկեղեցի
նըման արփւոյն արուսեկի :

Տէր վարդապետ հովիւ արի
պատերազմօղ ընդդեմ չարի
խաւար մեղաց քեւ հալածի
՚ւ եկեղեցի լուսաւորի :

Տէր վարդապետ աղ ի յերկրի
կուրացուցիչ դու չար օձի
եւ հօտելոց ես պիտանի
ով որ մեղաց յորդունք ունի :

Տէր վարդապետ դու քաղցրաձայն
երգօղ միշտ տաղ եւ շարական
մարտիրոսաց տօն պատուական
միշտ մեծարօղ դու յամէն ժամ :

Տէր վարդապետ աղբիւր ջրոյ
արբուցանող մարդկան հոգւոյ
դհիւանդ հոգիս առողջացոյ
աստուածային ջրովդ արբոյ :

Տէր վարդապետ լոյս ի յերկրի
լուսաւորես զմարդկան հոգի
նըման Փրկչին Տեառն Յիսուսի
մաքրող եղեր դու աշխարհի ։

Տէր վարդապետ բարձր աշտարակ
մեղաւորաց լինիս ճարակ
եւ զխմելոյս առ քեզ երագ
զաստակցեցեր յերկնային յարկ ։

Տէր վարդապետ վանող չարի
եւ հալածիչ բելիարի
հոգիք մարդկան քեւ ազատի
արքայութիւն վերաբերի ։

Տէր վարդապետ դու պատուական
աստուածարեալ եւ սըրբազան
զի որք բանիցտ հետեւեցան
անանց փառօք պսակեցան ։

Տէր վարդապետ դու ժրաջան
սըրբաթոիչ եւ աննիրհական
երագընթաց ի բուրաստան
Աստուածաշունչ գրոց ժողովման ։

Տէր վարդապետ դու գովելի
եւ հրեշտակաց ես ցանկալի
ունիս դու վարք զարմանալի
խըրատկրօն 'ւ առաքինի ։

Վարդապետաց ես դու պարծանք
եւ աղքատաց ապրընճական
աշակերտաց տիս մանկական
ուսուցանօղ դու անխափան :

Առ ոտըս քո անկեալ եւ լամ
աղաղակեմ չհանդուրժական
առ հովիւրդ սըրբազան
Տէր Մարկոսիդ աստուածաբան :

Քրիստոնէից մխիթարութիւն
եւ անյուսից յուսադրութիւն
եկեղեցւոյ պայծառութիւն
քահանայից քաջալերութիւն :

Փառք Աստուծոյ Հօր էակցի
եւ սուրբ Որդւոյ իւր միածնի·
Հոգւոյն սըրբոյ կենդանատուի
անցեալըն այժմոյս եւ յապառնի :

Ի Թուականիս մեր հայկազնի
Հազար Հարիւր եւ քառորդի [1]
ի այսմ ամի աւարտ լինի
ի Մինասէ բազմամեղի :

41 (128) տուն·

[1] Ռ·Ճ + 4 + 551 = 1655

3.

## ՄԻՆԱՍԱՅ ԱՄԴԵՑԻՈՅ ԹՈՒՂԹ ՕՐՀՆՈՒԹԵԱՆ ԱՌ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԱՑԻՍՆ ՈՒՌՀԱՅԻ

*Յիսուսի Քրիստոսի ծառայ Մինաս, որ եւ շնորհօք ամենազօր սուրբ Հոգւոյն, վարդապետ եւ սպասաւոր սուրբ աւետարանի:*

*Ծառայ Յիսուսի Քրիստոսի*
*Տէր Մինաս խընդրող բանի*
*աւրհնութեան թուղթ գրեցի*
*մայրաքաղաքիս Ուրհայի:*

*Հոմերական տաղիւ չափի*
*մեծն Եդեսիայ աւրհնեսցի*
*քահանայք ընդ սարկաւագի,*
*ծերք եւ տղայք ընդ աղքատի:*

*Եւ դու աւրհնեալ քաղաք Ուրհայ*
*զի ոչ ծածուկ ես ի քո տեղին*
*կամ ի յանկեան ինչ թագըստի,*
*կամ ի ձորուտ լեռնամիջի:*

*Այլ գետիցն որ յԱդենի*
*բազմեալ ես դու նոցա միջի*
*ի Եփրատայ եւ Տիգրիսի*
*վասն այն ի քեզ Միջագետ ասի:*

*Եդեսիա մայր բազմորդի*
*ունիս դու շատ դուստր եւ որդի*
*ամենեքեան առ հասարակ*
*քոյին ծնընդոց ոչ հասանի:*

Գեղեցկատիպ աւրհնեալ ես
վայելչապէս զարդարեալ ես
քանզի երկիր դու պարարտ ես
աղբիւր կաթին ի քէն բղխէ ։

Գետոց նման վըտակ հոսես
ըղբուրատան արբուցանես
ծովն ի միջի քո տատանի
քաղցրիկ օդովըն ծիծաղի ։

Զաղտեղութիւն տըղմին մաքրէ
ձըկունքն ի մէջըն կու լողէ
ըղհրապարակն յորինէ
բազմազունի տունկ յորինէ ։

Որպէս դրախտն որ Եդեմէ
սաղարթաբեր ծառօք ծաղկէ
առատագոյն պըտղաբերէ
տերեւախիտ հեզիկ շարժէ ։

Նարդոս քըրքում մեզ ընծայէ
վարդ մանուշակ բուսուցանէ
առաւօտեան ցօղն իջանէ
ոսկւոյ նըման ճաճանչ փայլէ ։

Ուրհայ քաղաք աւրհնեալ աղուոր
լայն ու արձակ նստեալ յաթոռ
որպէս ի կառս թագաւոր
կամ թագուհի յոյժ գեղաւոր ։

Ծուրջանակի պառաստաւոր [1]
պարիսպ ածեալ լայն եւ ամուր
աշտարակօք բարձր ահաւոր
իմաստնապէս արուեստաւոր:

Որպէս գըլուխըն դիտաւոր
մակաստաւոր [2] յանձին բոլոր
հաստահեղոյս հիմամբ ի խոր
մահարձանօք պըսակաւոր:

Տունք եւ տաճարք զարմանաւոր
շինեալ Ուրհա շքեղաւոր
յարկք եւ փողոց տեղք վաճառոց
կայ յօրինեալ հանճարաւոր:

Բայց զեկեղեցիս լուսաւոր
Թէ որպէս ի սիգ յոյժ փառաւոր
այս չէ ասել ինձ հնարաւոր
կամ հողեղէն մարդ նիւթաւոր:

Որ յերկնայնոցն է նմանաւոր
վերնագունին հանդիսաւոր
զարմա(նա)զան եւ աններման
զոր չէ տեսեալ ոք բանաւոր:

Հասցէ հարցման գիր ողջունի
մեր սիրեցեալ պարոնտիրի
Տէր Ներսէս եպիսկոպոսի
աւրհնեալ քաղաքին Ուրհայի:

1 թերեւս պարըսպաւոր:
2 մակաստաւոր կարդա՛ մակասաւոր:

Նախ եւ առաջ տէր Սարգըսի
Հոգւով սըրբացեալ աբեղայի
Ճարտարագիր քարտուղարի
Աստուած պահէ զքեզ կենդանի ։

Տէր Մաղաքիայ գովելի
գլուխ կարգեալ յեկեղեցի
որպէս Պետրոս առաքելոց
նոյնպէս եւ դու այս քաղաքի ։

Որ տէր Պետրոսն հրաշալի
յոյժ հանճարեղ իմաստակլի
դու գովելոյ ես արժանի
Աստուած պահէ զքեզ կենդանի ։

Այլ քահանայքն որ ի կարգի
տէր Յովհաննէս սրբասիրի
տէր Պաղտասար երաժշտի
միւս տէր Սարգիս նոցին կարգի ։

Եւ այլ քահանայքըն Ուրհային
ամենեքեան որ ի դասին
կրկին պատւոյ արժանացին
զարքայութեան լոյսըն տեսցեն ։

Դու մահտեսի այր պատուական
եկեղեցւոյ երեսփոխան
Թուխթըս գրեր եմ քեզ աւրհնութեան
քեզ եւ որդւոց քոց եւ քո տան ։

Եւ դու խօճա Ստեփաննոս
որ Թարգմանեալ կոչիս Փանոս
աւրհնէ զքեզ Յիսուս Քրիստոս
որպէս վկայն ըՍտեփաննոս :

Եւ քո որդիքն հաւատար
երեք նոքա խորհրդարար
ըստ Սադմոսի վկայութեան
որդիքըն քո սեղանոյ ի շար :

Եւ դու աւրհնեալ խօճա Ամիրզատ
Աստուած տայ քեզ շնորհք 'ւ առատ
աւրհնութիւն աստուածային
ի քեզանէ լինի անհատ :

Եւ սիրելիդ մեր գովելի
անուամբ դու Սարգիս չէլէպի
անփորձ կենաս ի աշխարհի
արժան լինիս վերին դասի :

Երկու եղբայրքն միակի
խօճա Ծառխօշ 'նդ Խուտավերդի
յոյժ սիրեցեալ յաչս ամենի
տացէ ձեզ տէր կըրկին բարի :

Եւ դու խօճա Ալլահվերտի
Աստուածատուր Խուտավերտի
աջն անեղին քեզ հովանի
ի յամենայն ժամանակի :

Նորաբողբոջ քո պուակի
խօճա Ծառխօչ այր ցանկալի
Ցարութիւն անուամբ ասի
անփորձ կենաս ի աշխարհի:

Երկու եղբայրքըն միաբան
խօճա Խաչեր խաղաղական
Մուրատ չէլէպի այր պատուական
քաղցրատեսիլ 'ւ իրաւաբան:

Եւ Աւետիք սարկաւագի
ընդ հօր իւրում սատ յիշեսցի
եւ Դանիել սոցին հետի
որ է վէքիլ Պարոնտէրի:

Խօճա Հարապետըդ դու քեմռան
հաւատով սուրբ ուղղադաւան
աւրհնէ զքեզ Աստուծըն բան
որ եղ ի ծոցըն հայրական:

Եւ զքո որդիքըն միաբան
պահէ Աստուածըն բան
սատէն մարմնով խաղաղական
եւ անդ ի գողն աբրահամեան:

Խօճա Աբրահամ Աստուծոյ մարդ
տատասաիրտ եւ երեսբախդ
կենաս անփորձ եւ անարատ
եւ յամենայն մեղաց ի զատ:

*Միւս Աբրահամ գրոց ընթերցող*
*այր բարեզարդ իմաստից խորհ*
*Աստուած լինի քեզ միշտ օգնող*
*բան քո եւ գործք լինի յաջող։*

*Խօճա Ներսէս ճարտարաբան*
*Գասպար, Սարգիս ի հետ սոցայն*
*որ արուեստիւ արծաթագործ*
*Բերսէլիէլի էք դուք նման։*

*Եւ զԽաչատուրն հրաշագան*
*որ եւ հանգեաւ ի այս ձմեռան*
*տացէ Քրիստոս տէրն մեր նորայն*
*զերկնից հանգիստն անդրաւական։*

*Զոր եւ անուամբ չկարացաք ասել*
*մի ըստ միոջէ ըղձեղ ճառել*
*զանունըս ձեր բացայայտել*
*պակասութեան մի մեղադրել։*

*Սուրբ առաքեալն Թաթէոս*
*որ մըկըրտեաց զԱբգարիոս*
*սըրբեաց ջընջեաց եւ զնորին քոս*
*ուսոյց մեզ նոր իմաստից խօս* [1]*։*

*Զեկեղեցի սուրբ հիմնարկեաց*
*տաճար փառաց Որդւոյ կազմեաց*
*հոգւով սըրբով ըզնա օծեաց*
*սուրբ Աստուածածին անուանեաց։*

---

1 Ձեռ. *խոր։*

Եդեսիա քաղաք աղուոր
առաքելական է սուրբ աթոռ
անդ դու տուար Ադդէի չնորհ
սատանայ եղեւ դլխիկոր ։

Բարձրաբերձ սուրբ Աստուածածին
մայր Քրիստոսի սուրբ Տիրուհի
աղօթիւք Ալեքսիանոսին
Ուրհա նա ուրհնող եղեցին ։

Սուրբ դաստառակըն Քրիստոսի
Գուրիասանցն Սամոնասին
Աբիբաս ընդ Թոմանոսին
Ուրհա ուրհնող եղիցին ։

Արքայն Աբգար ընդ Ադդէին
սուրբ Եփրեմ խորին ասորին
սուրբ Սարգիս ընդ Մարտիրոսին
Ուրհա ուրհնող եղիցին ։

Սուրբ առաքեալն Քրիստոսի
որ Պօղոս Պետրոս առձայնին
եւ սուրբ Յակոբըն Մրծեցին
Ուրհա ուրհնող եղիցին ։

Աստուածածին բարձր եւ բոլոր
Եդեսիայ պարիսպ ամուր
լեառն ի Թիկունքն վիմափոր
դաշտն նորա արգասաւոր ։

Սարկաւագունք ձեր քաղցրաձայն
երգեն անուշ տաղ շարական
առեալ բերան զերգըն դաւթեան
աւրհնեն զԱստուած միշտ յարաժամ։

Փարթամըք ձեր դըթածք լիցին
եւ աղքատաց խնամ տարցին
զորբս եւ զայրիս կերակրեսցեն
որով զմեղըս քաւեսցեն։

Երկու եզինք ի լուծ լըծին
ձիք երկու կառըս յարմարին
թռչունք երկու թեւօք թռչին
նոյնպէս հաւատք եւ գործք պիտին։

Զհաւատս ընդ գործըս լծեցէք
ըզսըրբութիւնըն սիրեցէք
դուք աղօթից ըստէպ կացէք
որով զԱստուած հաշտեցընէք։

Զպահքըն սըրբութեամբ պահեցէք
զինով ձիթով մի շաղախէք
եւ սուրբ գըրոց ունկընդըրէք
կանոնաց հընազանդ կացէք։

ԶՔրիստոսի պատուէրն պահեցէք
եւ ըզմիմեանս սիրեցէք
լերուք եւ դուք աստուածասէրք
եղբայրասէրք 'ւընկերասէրք։

Զխոնարհութիւն ի ձեզ բերէք
որ սուրբ Հոգւոյն հանգիստ լինէք
հեզութեամբ զերկիր ժառանգէք
կենդանեաց զերկիրն ժառանգէք:

Ըզմեղըս խոստովանեցէք
վարըն մեղաց ի սուք մըտէք
զԱստուած առ ձեզ քաղցրացուցէք
զարքայութիւնն հարկիւ առէք:

Զհաց քաղցելոց դուք բրթեցէք
ըզծարաւիս դուք արբուցէք
ըզմերկացեալսն ըզգեցուցէք
ըզփոխարէնն Յիսուսէ առէք:

Զաղքատս անյարկս ի տուն տարէք·
Ընտանեաց յերես մի շըրջէք,
զձեռս ի աղքատս յորժամ ձգէք
զմիտ ձեր Աստուած առաքեցէք:

Աւրհնեալ զաւառըն զովելի
որ եւ Կարմունջ կու անուանի
մահտեսի Հապիպ ընդ. Հարապետի
Մարտիրոսն աւրհնեալ եղիցի:

Դաւիթ անուն սուրբ քահանայ
որ Կարմունջ դեղըն կու կենայ
զօրհանապազ աղօթէ նա
սաղմոս ասէ անձանձիր նայ:

*Սարկաւագունքն համձարաւոր*
*երգեն սաղմոսըն խորհըրդաւոր*
*չարական եղանակաւոր*
*աւրհնեն զԱստուած սըրտիւ բոլոր ։*

*Տացէ ձեզ տէր իմաստութիւն*
*կանանց ձերոց ըզգաստութիւն*
*եւ կուսանաց ժուժկալութիւն*
*մանկանց ձերոց զգաստութիւն ։*

*Դրուատ աւրհնութեանս Ուրհայի*
*տաղիւ չափեալ Հոմերոսի*
*թէ ոք ուղղակի ընթերցցի*
*նըմա չնորհք Հոգւոյն տացի ։*

*Փառք Փըրկչին յամենայնի*
*ընդ Հօր իւրում համագոյի*
*եւ սուրբ Հոգւոյն իւր էակցի*
*այժմ եւ յաւէտ միշտ եղիցի ։*

*Սակաւ գրեալս աւարտ յինի*
*թվին հազար հարիւր վեցի* (1657)
*յաւուր մըտի ամռան ամսի*
*տօնի մանկանց Բեթղահէմի ։*

64 *տուն ·*

## Խ.

# ԿԻՒՐՂԻ ԵՒ ԱՆՆԱՅԻ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

*Հայաստանեայց Եկեղեցւոյ Տօնացոյցի մէջ Քառասնորդաց երկրորդ Կիրակէի շաբաթ օրը կը նշանակուի տօն «Կիւրղի Երուսաղէմի Հայրապետի եւ միւս Կիւրղի եւ մօր նորա Աննայի»: Այս ընթերցուածը, ինչպէս միտ դնել կու տայ Հ. Մ. Աւգերեան*[1], *տպագիր Տօնացոյցներու մէջ միայն կը տեսնուի, մինչ հնագոյններն, «աւելի քան զքսան» ձեռագիրներ, ունին «Կիւրղի Երուսաղէմի Հայրապետին եւ մօր նորա Աննայի»: Ճառընտիրները մէկ Կիւրեղ միայն կը ճանչնան եւ այն՝ «Վկայաբանութիւնն Կիւրղի Երուսաղեմայ Հայրապետի եւ մօր նորա Աննայի». մինչդեռ Յայսմաւուրքները ճշդիւ կը զանազանեն Կիւրեղ Երուսաղէմի Հայրապետ, որ իբր* 313*ին ծնած*, 348*ին եպիսկոպոսացած եւ* 386 *մարտ* 18*ին վախճանած է*[2], *եւ Յուդա Կիւրակոս եպիսկոպոս, որդի Աննայի, Հայոց քով*

---

[1] *Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւն Սրբոց. Բ.* (*Վենետիկ* 1811), 422—423:

[2] O. Bardenhewer, Geschichte der altchristlichen Literatur, 3 (1912), 273—281.

*կոչուած Կիւրեղ, որ նահատակուած է Յուլիանոս Ուրացողի հրամանով 363ին Երուսաղէմ, եւ կը պատմէ մէկուն Վարքը եւ միւսին Վկայաբանութիւնը: Վերջինս թէեւ Կիւրեղ կամ Կիւրիղոս եւ Կիւրղոս անուամբ կը յիշատակէն, բայց կան եւ այնպիսիք, որոնք գիտեն, թէ ան Կիւրակոս անունն ալ կը կրէր: Հարցիս շատ զգուշութեամբ մօտեցած է Փոքր Սոկրատի խմբագիրը, որ նախ կը գրէ թէ Յուլիանոս «ըմբռնեալ զեպիսկոպոսն, ընդ որոյ ձեռն եղեւ Գիւտ Խաչին, սպան զնա դառն տանջանօք եւ զմայր նորա, որ վկայեցին բարի դաւանութեամբ... որպէս եւ նոցին իսկ ասի Վկայաբանութիւն», այսպէս առանց անուան յիշատակութեան, յետոյ կ'աւելցնէ սակայն, թէ «Բայց ասի երկուս ոմանս Կիւրեղս ասել, միոյն վկայեալ ի Յուլիանոսէ, որով Գիւտ Խաչին եղեւ, նախկին Յուդայ եւ մկրտեալ Կիւրեղ, որ եւ զկարգս եկեղեցւոյ ասեն ունել յեկեղեցիս ուղղափառաց եւ զմարտիրոսականն առ զպսակն. եւ յետ նորա ասի միւս այլ Կիւրեղ, որ զԱրիոսի կարծիսն ասէին ունել. եւ այս Կիւրեղս եհաս մինչեւ ի ժողովն սուրբ (Կ. Պոլսոյ) որ յաղագս Հոգեմարտին, որպէս նոցին ցուցանին երկոքին (՞) [3]»: Խմբագիրը Խաչի Գիւտի Պատմութենէն եւ Վկայաբանութենէն քաղած է իր տեղեկութիւնները*

[3] *Սոկրատայ Եկեղեցական Պատմութիւն: Վաղարշապատ* 1897, *էջ* 269. *Նկատի առած եմ նաեւ Վիեննայի Մխիթ. Թ.* 623 *ձեռագիրը:*

*առաջինին մասին. երկրորդին համար իր աղբիւրն է Սոկրատ: Տարակոյս չի կրնար ըլլալ, թէ ինքը Վկայաբանութեան մէջ, զոր ունէր ձեռքի տակ, Յուդա–Կիւրակոսն Կիւրեղ անունով գտած էր, ինչպէս ունին այժմեան բոլոր ձեռագիրները: Թէ ի՞նչպէս եւ ե՞րբ տեղի ունեցած է մերիններու քով այս անուանափոխութիւնը, հաւաստեաւ չեմ կրնար ըսել. կը թուի ինձ սակայն, թէ պատճառը պէտք է փնտռել այն իրողութեան մէջ, որ Հայոց ծանօթ էին Կիւրեղ Երուսաղեմացւոյ անունով* Կոչումնն ընծայութեան *(գրուած իբր 348ին) եւ* Թուղթն առ Կոստանդիոս կայսր վասն Երեւման Ս. Խաչին, *գրուած 351ին, եւ դարձեալ ծանօթ էր, որ Կիւրեղ նաեւ 381ի ժողովին մասնակից էր, ուստի կենդանի էր 348—386 տարիներուն, երբ կ՚իյնար արդեամբք ալ իր գործունէութեան շրջանը: Հակառակ իրաց այս հանգամանքին, Վկայաբանութիւնը կը ներկայացնէր Երուսաղէմի «Կիւրակոս» եպիսկոպոսն ձեռնադրուած Կոստանդիանոս Մեծի օրով եւ վկայած Յուլիանոսի օրով (363ին): Ժամանակագրական այս հակասութիւնը ստիպած է մերինները նոյնացնել Կիւրակ[illegible], ի հրէութեան Յուդա կը կոչուէր, Կիւրիղոս–Կիւրղոս–Կիւրղի հետ: Անուններու մերձաւորութիւնը ԿԻՒՐԻՂՈՍ եւ ԿԻՒՐԱԿՈՍ կարող էր նպաստած ըլլալ այս աղճատման: Յամենայն դէպս թէ յոյն, թէ լատին եւ թէ ասորի, ղպտի եւ եթովպացի օրինակները միաբան*

Կիւրակոս կը ճանչնան Երուսաղէմի մարտիրոս եպիսկոպոսին անունը: Այսպէս ըլլալու էր նաեւ հայ սկզբնագրին մէջ· վասն զի Խաչի Գիւտի պատմութեան մէջ, որ սերտիւ կապուած է Վկայաբանութեան հետ, կ՚ըսուի թէ Հեղինէ կայսրուհին երբ յաջողեցաւ գտնել Ս· Խաչը օգնութեամբ հրեայ Յուդայի, «հրամայեաց եպիսկոպոսին Եւսեբեայ ի քաղաքէն Հռովմայ գալ եւ տալ կնիք Յուդայի եւ անուանեաց զանուն նորա Կիւրակոս եւ կացոյց զնա եպիսկոպոս յԵրուսաղէմ[4]»: Այս տեղիքը Վիեննայի Թ· 224, որ Կիւրղի համառօտ վկայաբանութիւնը կը պատմէ, ունի· «Եւ Յուդա առեալ զքրիստոսական կնիքն մկրտութեան՝ կոչեցաւ Կիւրղոս (Զ· Կիւրղիոս), որ է Կի(ր)ակոս»: Բնականաբար Կիւրղոս որ եւ է կերպով համազօր չէր կրնար նկատուիլ Կիւրակոս անուան հետ: Նկատի առնելով, որ Խաչի գիւտի յիշուած Պատմութիւնը Թ· դարու կէսէն է[5], պիտի հետեւցնեմ, թէ Կիւրակոսի անուանափոխութիւնը Կիւրեղի տեղի ունեցած է Թ· դարէն ետքը: Արդէն Ժ· դարուն, Ուխտանէս գիտէ Կիւրակոսի «Կիւրեղ» յեղաշրջումը (Ա·, էջ 104—105):

Թէ գոյութիւն ունեցա՞ծ է պատմական անձնաւորութիւն մը «Կիրակոս եպիսկոպոս Երուսաղեմացի վկայ» կը կասկածի իրաւամբ

---

[4] Ճառընտիր Վիեննայի Մխիթ· Մատ· Թ· 2, թղ· 218բ:

[5] Այս մասին պիտի խօսիմ ուրիշ առթիւ:

քաջն Պապեբրոք Բոլլանդեան[6]: Յամենայն դէպս Դ. դարու Երուսաղէմի եպիսկոպոսներու թուին մէջ տեղ չունի Յուդա Կիրակոս, իսկ Յուլիանոս Պարսից դէմ արշաւանքին (363) չհանդիպեցաւ Երուսաղէմ:

Ս. Խաչի գիւտի պատմութիւնն եւ Վկայաբանութիւնս որքան ալ անվաւերական համարուին, կը մնայ այն ստոյգ, որ անոնք իբրեւ գրական կեղծիքներ գոյութիւն ունէին Ե. դարուն եւ այսպէս արժանահաւատ նկատուած են ի մէջ այլոց Հայերէ, ուստի եւ արժանի թարգմանուելու հայերէնի:

Ես աստ եւ այժմ նկատի պիտի առնեմ միայն Վկայաբանութիւնը:

Յունարէն բնագիրը հրատարակեց առաջին անգամ A. Papadopoulos-Kerameus, *Συλλογὴ Παλαιστίνης καὶ Συριακῆς ἁγιολογίας*' Պետերբուրգ 1907, էջ 164—172, որուն սկզբնաւորութիւնն եւ վերջաւորութիւնն է. «Յետ վախճանելոյ աստուածասիրին Կոստանդիանոսի թագաւորի եւ Կոստանդեայ... ըստ արժանեացն վկայութեան թաղեցին եղբարք հաւատացեալք ի Տէր... ամէն» (B. H. G. 465): Ինչպէս սկիզբն եւ վերջաւորութիւնը ցոյց կու տայ, վկայաբանութիւնս տարբեր խմբագրութիւն մը կ'ընծայէ, քան

---

[6] D. Papebrochius (Daniel van Papenbroeck), De S. Juda Quriaco episcopo martyre Hierosolymis. Acta Sanctorum Maii, t. I (Antverpiae 1680). 439—451. Հմմտ. իր տեսութեանց դէմ Հ. Մ. Աւգերեանի միամիտ պայքարն Լիակատար Վարք, Բ., 440—458:

որ ունին հայն եւ լատինը: Վերջիններուն համապատասխան կ'երեւայ Cod. Messan. s. Salv. 30 (յամէ 1307), որ 28 հոկտ. ունի «Կիւրակոսի Երուսաղէմի եպիսկոպոսի» վկայաբանութիւնը սկզբնաւորութեամբ. Μετὰ τὸ τελειωθῆναι («յետ վախճանելոյ»). A. Ehrhardt, Überlieferung und Bestand der hagiographischen und homiletischen Literatur der griechischen Kirche, III. Bd., Leipzig 1939, S. 444. (Texte und Untersuchungen, 52. Bd., I., 1—5). Այս բնագիրը տակաւին չէ հրատարակուած:

Լատիներէն թարգմանութիւնն համեմատութեամբ ձեռագրաց տպագրեց Papebroch: Acta Sanctorum Maii, t. I (1680), 449—451. Սկ. եւ վերջ. «Յետ փոխման երանելւոյն Կոստանդիանոսի յաջորդեաց զթագաւորութիւնն ամբարիշտն Յուլիանոս... ընկալեալ եղեւ ի փառս յաւուր շաբաթու յութերորդ ժամու, ի մուտս մայիս ամսոյ, յերկրորդ ամի թագաւորութեան Յուլիանոսի բռնաւորի»:

Ասորերէն, ղպտերէն եւ եթովպերէն բնագիրները հրատարակեց հանդերձ գաղղիերէն թարգմանութեամբ Ign. Guidi: Textes orientaux inédits du martyre de Judas Cyriaque évêque de Jerusalem. I. Texte syriaque. Revue de l'Orient chrétien 9 (1904) 79—95. «Աստուած որ գիտէր յառաջ քան զարարչութիւնն աշխարհի եւ զԱդամայ՝ զնոսա զամենեսին որ ծնանելոց էին ի սմանէ...

Պակեցաւ յաւուր չաբաթու, ի վերջ կոյս
այարի, (ամսոյն) գիւտի Ս. Խաչին»:

II. Texte copte, անդ, էջ 310—332· «Եւ
եղեւ զի արդարն Կոստանդիանոս եղեւ թա—
գաւոր, ընկալաւ զհաւատս Տեառն մերոյ Յի—
սուսի Քրիստոսի... կատարեցան սուրբ
վկայքն Յիսուսի Քրիստոսի Կիւրակոս սուրբ
եպիսկոպոսն եւ Աննա մայրն նորա եւ թո—
վլիչն Ազմոն ի 27 պարպի (ամսոյ)»:

III. Texte étiopien, անդ, 11 (1906),
337—351: Աւելի մերձ է ասորի քան խպտա—
կան բնագրի:

Հայերէն Վկայաբանութեան վրայ ըն—
դարձակ խօսած է Հ. Մ. Աւգերեան, Լիա—
կատար Վարք եւ Վկայաբանութիւն Սրբոց,
հատոր Բ. (Վենետիկ 1811), էջ 429—439:
Թէպէտ օգտագործած է Աւգերեան հայերէն
հին թարգմանութիւնն, զոր թերակատար
ունեցած է ձեռքի տակ, բայց բնագիրը լոյս
չէ տեսած մինչեւ այսօր ամբողջութեամբ:

Իմ հրատարակութեանս հիմ առած եմ,
Վիեննայի Մխիթ. Թ. 1, թղ. 184ա—188բ
(Ցուց., էջ 6):

Հայ ձեռագրական հաւաքածոյքներու
մէջ յաճախ կը տեսնուի Վկայաբանութիւնս·
կը յիշեմ. Պարիս, Ազգ. Մատենադարանի
Հայկ. ձեռագրաց Թ. 110, 224բ—227բ
(ԺԲ.): 115, 128բ—134ա (ԺԳ.): 116,
88ա—90ա (1307)· 120, 61ա—64բ: 178,
353ա: Բերլին, Պետ. Մատ. 46, 48ա—54բ:

Տիւբինգէն, *Համալսարանի Մատ.* 39, 57ա—61բ (*ԺԶ.*) ։ Կիպրոս, *Նիկոսիա*, *Թ.* 4, 105ա ։ Վենետիկ, *Մխիթ. Թ.* 203, 155ա (*ԺԳ. ակ. պական. Սարգիսեան*, *Ցուց.*, *Բ.*, 122) ։ 212, 244ա—247բ (*ԺԳ.*, *Ցուց.*, *Բ.*, 221) ։ 217, 45բ (*ԺԴ.*, *Ցուց.*, 258) ։ 222, 97բ—101ա (1335, *Ցուց.*, 330) ։ 223, 160բ—164ա (*ԺԵ.*, *Ցուց.*, 364) ։ 228, 99բ (1847 = *Երեւան*, *Պետ. Թանգ.* 78 · *Ցուց.*, 446) ։ 234, 324ա (1518, *Ցուց.*, 533) ։ Երուսաղէմ, *Թ.* 1 ։ 120 ։ 154 ։ 173 ։ Հալէպ, *Քառ. Մանկ. Թ.* 145, 285ա (*ԺԶ.*, *Սիւրմէեան*, *Ցուց.*, 256) ։ 146, 652բ (1413, *Ցուց.*, 263) ։

*Երկու թղթեայ հատակտոր միջին մեսրոպեան երկաթագրով պահուած է Բեռլինի Պետ. Մատենադարանի Հայերէն Ձեռագիրներու մէջ, Թ. 92, Ծրար Գ. Թղ. 58 եւ 60 ։ Այս հատակտորներու հրատարակութիւնը տես իմ Նիւթեր հայ վկայաբանութեան ուսումնասիրութեան համար, Վիեննա* 1914, *էջ* 47—49 · *հմմտ. էջ ԼԲ—ԼԳ ։ Ընթերցուածներէն ինչ ինչ օգտագործած եմ հրատարակութեանս մէջ, տես վարը, հատած* 6—11 ։

*Համառօտ խմբագրութիւններ ։*

ա. *Պատմութիւն վարուց սրբոյն Կիւրղի Երուսաղէմի հայրապետի եւ կատարումն նորին ։ — Ի ժամանակս թագաւորելոյ մեծին Կոստանդիանոսի բարեպաշտի, որ առաջին ի Քրիստոսէ աստուածակարգ հաստատեցաւ թագաւոր, նմա լինէր եւ երանելին Կիւրեղ*

յաշխարհին Հրէաստանի, եւ վարժեալ յոյժ գրովք մարգարէականօք, ըստ օրինացն Մով֊սէսի անարատ վարուք, զի եւ ծնօղքն Թէպէտ եւ հրեայք էին, արդարք էին եւ արդարոց պարմք...: Զխաչն յայտնեաց զգանձն կե֊նաց...»: Կ'աւարտի. «Այլ նա ընդ երկո֊սեան քաջապէս մարտուցեալ՝ երկոցունցն յաղթեալ զօրութեամբ Խաչին Քրիստոսի եւ յանպատմելի կեանսն փոխեցաւ ի Քրիստոս Յիսուս...:

Պարիս, Ազգ. Մատ. Թ. 116, 151ա—153ա (1307): Վենետիկ, Մխիթ. Թ. 201, 36ա—39ա (ժԳ. Ցուցակ, Բ., 39)[7]: 212, 241բ (ժԳ. Ցուց., 221): Երուսաղէմ, Թ. 1, 177ա: 154: 918:

Բ. Ի սմին աւուր[8] յիշատակ է սրբոյն Կիւրղի Յուդայի: — Սա էր ազգաւ հրեայ եւ անուն սորա Յուդա: Սա եգիտ զխաչափայտն Քրիստոսի հրամանաւն դշխոյին Հեղինեայ..: Իսկ ուրացողն Քրիստոսի Յուլիանոս արքայն լուաւ զհամբաւ սքանչելեաց սրբոյն Կիւրղի եպիսկոպոսին...: Վ. Եւ Թագաւորն Յու֊լիանոս գնաց ի Պարս ի պատերազմ եւ անդ սատակեցաւ ըստ բանի սրբոյն Կիւրղի:

---

[7] Սկզբնաւորութենէն ընդարձակ հատուած մը տուած է Հ. Մ. Աւգերեան, Լիակատար Վարք, Բ., էջ 454, ծան. 2: Կ'ըսուի հոն ի մէջ այլոց. Եւ ի մկրտելն «Կիւրեղ փոխանակ Յուդայի կոչէ զնա Հօ֊գին, որպէս Պօղոս փոխանակ Սօղոսի, եւ կացոյց զնա եպիսկոպոս յԵրուսաղէմ զկնի կատարման Մակարայ»:

[8] Բ. շաբաթ Մեծի Պահոց: Կը յաջորդէ Կիւրեղ Երուսաղեմացւոյ յիշատակին:

Վիեննա, Թ. 224, 269բ—280ա (1428. Ցուց., 578)։ Տիւբինգէն, Թ. 38, 284ա—286բ (1465)։ Լոնդոն, Բրիտ. Թանգարան Թ. 90, 22բ (Conybeare, Catalogue, p. 219)։

գ. Յայսմաւուրքներ. Մարերի Լ. եւ Յունիսի Զ. Վկայաբանութիւն սրբոյն Կիւրղի Յուդայի եւ մօր նորա Աննայի։ — Սուրբ Հայրապետն Կիւրեղ, ազգաւ Հրեայ էր եւ անուն նորա Յուդա։ Նա եգիտ զԽաչն Քրիստոսի...։ Վ. Եւ ետ գեղարդեամբ խոցել զսուրբն ի սիրտն եւ ի կուշտն։ Եւ այնպէս կատարեցաւ ի Քրիստոս Յուդա Կիւրեղ եպիսկոպոսն եւ մայր նորա Աննա։

Վիեննա, Մխիթ. Թ. 10, 481բ (Ցուց. 88)։ 213, 349բ։ 219, 385ա։ 701, 565բ—567ա եւ այլն։

Այս խմբագրութիւններէն Յայսմաւուրքի օրինակը գրեթէ բառ առ բառ համառօտութիւն մըն է Վկայաբանութեան։ Դուրս թողուած է Աղօթքները, համառօտած է հարցաքննութիւնները։ Բ. խումբը, զոր ունիմ մեր Թ. 224 ճառընտիրի մէջ, նոյնպէս կը հետեւի հայ Վկայաբանութեան, տեղ տեղ բառական ծայրաքաղութեամբ. կը շեղի սակայն դէպքերու յաջորդականութեան մէջ, շատ բան անտեսած է. 1. Յուդա Կիւրեղ եւ Գիւտն Ս. Խաչի. 2. Կիւրեղ յատեննի կայսեր. 3. Հատումն աջոյ ձեռին. 4. Հոսելն կապար ի բերանն. 5. Բանտարկութիւն. 7. Այցելութիւն Աննայի. 8. Նահատակութիւն Աննայի. 9. Հարցաքննութիւն Կիւրղի.

10. Արկանելն ի սան. 11. Խոցելն գեղարդեամբ. 12. Մահ Յուլիանոսի:

Մինչ լատին բնագիրը յամենայնի կը համընթանայ Հայ Վկայաբանութեան, արեւելեան միւս բնագիրները մեծապէս կը խոտորին պատմութեան յաջորդականութեան մէջ: Այս հարցը չի հետաքրքրեր զմեզ հոս աւելի: Յանկալի էր սակայն համեմատութիւն մը յոյն բնագրին հետ. դժբախտաբար չկրցայ ձեռք բերել Papadopoulos-Kerameusի հրատարակութիւնը:

Հայ Վկայաբանութեանս սկիզբը զետեղուած է Նախաբան մը, որ գոյութիւն չունի միւս հայ եւ օտար բնագիրներու մէջ: Այս մասն անկասկած եկամուտ է, կարկատանք մըն է հայ խմբագրէ մը, հաւանօրէն ուշ ժամանակ մը, ինչպէս գուշակել կու տան ան–պատճառապէս եւ անճարտարապէս, ամենա–սուրբ բառերը: Ա. մասը Հաւատոյ Հանգանակէ մը հանուած հատակոտոր մը կը թուի: Բ. մասը կ՚ենթադրէ Ս. Խաչի Գիւտի պատմութիւնը, զոր անպատճառ կարդացած է նոյն խմբագիրը: Նոյն գրչին վերագրելու է, ըստ ամենայն հաւանականութեան, նաեւ § 7ի մէջ մուծուած տեղիք մը, որ զետեղուած է հոն բաց թողուած Աղօթքի մը փոխարէն: Այս Աղօթքը, որ կը պակսի նաեւ լատին վկայաբանութեան կարգ մը ձեռագիրներու մէջ, երբայեցերէն աղօթք մըն է հանդերձ թարգմանութեամբ, բարեբախտաբար պահած է զայն Վենետիկի Մխիթ·

*Թ· 206 ձեռագիրը, յառաջ բերուած Աւգերեանէ եւ Սարգիսեանէ: Կարեւոր համարեցայ բնագրի մէջ առնել զայն:*

*Հայերէն Թարգմանութիւնս Ե· դարէն է, դասական հայերէնով: Բնագրին ինչ ինչ աղաւաղումներ ուղղեցի: Ցանկալի էր անշուշտ բնագիրը ճշդիւ վերականգնելու համար նկատի առնել այն ձեռագիրներն ալ, զորոնք թուեցի վերագոյն: Աննպաստ ժամանակս թոյլ չտուաւ իրագործել փափագս:*

*Այս պատճառով ալ պահեցի կարգ մը բառեր, որոնց գոյութիւնը դասական բնագրիս մէջ շատ կասկածելի է: Ասոնք են·*

Ամենասուրբ (9 *անգամ գործածուած՝* 1, 2, 7, 14· *մէկ դէպքին ընտրելագոյն ձեռագիր մը կը կարդայ «սուրբ»*) : *Այս* ամենա*մասնիկը իբրեւ գերադրական՝ անհարազատ է դասական բնագիրներու մէջ (տե՛ս Վարդանեան, Բառաքննական դիտողութիւններ, Ա·, էջ* 14—16· *եւ Նիւթեր հայերէն բառագրութեան, էջ* 46—47) : *Պէտք է զանազանել* ամենա- *իբրեւ բառակերտ մասնիկ յուն·* *παν-ի համազօր*, կարի, յոյժ, ամենայնիւ *իմաստով, այսպէս* ամենա*բարի*, *πανάγαθος· πάνκαλος*, ամենա*չար*, *ամենաժանտ*, *πάγκακος*, *նոյնպէս* ամենա*սուրբ*, *πανάγιος, παν, ἱερος են:*

Անխռով, Անվրդով· *«Առաքեա զհրեշտակ քո, որ եկեալ պահեսցէ զիս անխռով* (F *անվրդով*) *ի հնարից սատանայի»* (6) *լատինն ունի «Առաքեա զՄիքայէլ հրեշտա-*

կապեա լուսոյ եւ ապրեցո զիս ի չարագործէ աստի, զի մի յաղթեսցէ ինձ գործն նորա չարութեան»։ Առ հասարակ բովանդակ Աղօթքն ընդլայնուած է հայ խմբագրողէն։ Կարելի չէ ըսել վստահաբար, թէ տեղիքս հարազատ է հայ սկզբնագրին։ Դասական հայերէնին անծանօթ են թէ անխռով եւ թէ, մանաւորապէս, անվրդով բառերը։ Ոսկ. Մատթ. 712 ունի անգամ մը անխռովութիւն, «ժամանակաւ եւ տեղեաւ որպալ յաղօթս զանխռովութիւն». կայ նոյնը նաեւ Վարք Հարանց Ա. 48. «քանզի անխռովութեանն (այլ օր. անխռովականութեան) է հաստատուն նշանակ բնաւ եւ հարցանելն իսկ թէ ո՛վ ես եւ ուստի.». Հմմտ. Ոսկ. Ճառք, 50. «եւ ո՛չ ընդ խռովական եւ անդադար այլս ծովու ճանապարհորդել»։

Գռհացողական (7, ծան.)[9]։

Զանազան. «Ահաւոր եւ զանազան տանջանս ածեր ի վերայ» (12). լատ. ecce quantas illi intulisti poenas (էջ 450բ)։ Բառս անսիրելի էր դասական գրականութեան. այն տակաւ տեղիքներն, ուր գործածուած է բառս, կասկածելի են. կը յիշեմ Ագաթանգեղոս (ի Վարս Գրիգորի). «զանազան ակամբք պատուականօք (4, 9). «Համբաւն

[9] Հ. Ա. Վարդանեան, Նիւթեր հայերէն Բառագրութեան, Վիեննա 1920, էջ 55 = Հանդ. Ամս. 1920, էջ 451—452, կը գրէ իրաւամբ. Այս «բառին վաւերականութեան վրայ կը տարուիմ ծանրաբար տարակուսիլ. դասական մատենագիրները երբեք չեն սիրած գործածել այս անհամակրելի բառը»։

*Հռչակեալ պարկեշտութեան* զանազան *դե-ղեցկութեանն Հոփսիմեայ»* (90, 10) · *Փաւս-տոս*, *Գ*·, 20 · *«Եւ էր ձին . . . տեսանելով քան զայլս գեղեցիկ* զանազան, *որ համեմատ նմա այլ ոչ գտանէր» · Արիստակէսեայ Զատադովու-թիւն*, 8 · *«վասն այսորիկ* զանազան *սքան-չելեօքս եւ ամենայն բարութեամբք զարա-րածս հաստատեաց» · Վարք Հարանց*, *Ա*·, 113 · *«զանազան տանջանօք վատնէր» (միւս թարգմանութիւնը պարզապէս «տանջանօք սպանանէր»)* : Զանազանութիւն, *Սիրաք*, *ԼԸ*· 28 · *Ոսկ· Մեկն· Հռովմ*. 119, 190, 305, 306 (*համմտ· Նորայր Բիւզանդացի*, *Կորիւն* . . . , *էջ* 214—215) · *իսկ զարմանազան*, *աստուա-ծազան են· տե՛ս Վարդանեան*, *Բառաքննա-կան դիտողութիւններ*, *Բ*·, 22—23 :

Հարսնարան (§ 9) : *Դասական մատե-նագրութեան մէջ միայն հոս կը գտնենք բա-ռիս գործածութիւնը* :

Հեշտութիւն · *«Խաւարեալ յունայնու-թիւն մտաց ի բանսարկուէն ի ձեռն հեշտու-թեան* (§ 3) : *Կիրարկուած է անգամ մ՚ալ Ոսկ· Մատթ*· 635 · *«հեշտութիւն ի ներքս արկանէ» · երկու տեղիքներս ալ կասկածելի կը թուին· դասականք կը սիրեն առաւելա-պէս* հեշտականութիւն (*անդ*, *էջ* 264, 571, 582 *եւն*) :

Քաւարան · *«Մեղաւորաց —»* (§ 6) : *Դասականներու քով միայն ա՛յստեղ կը տես-նուի* : *Բնագիրը կ՚ենթադրէ* «քաւիչ» *կամ* «քաւութիւն *մեղաւորաց» կամ մեղաց · համմտ* .

Բ. Մնացորդաց Զ. 27. «Բաւիչ լիցիս ժողովրդեանն մեղուցելոյ» եւ Պատարագամատոյցի տեղիքս. «Սա է կեանք, յոյս յարութեան եւ քաւութիւն եւ թողութիւն մեղաց մերոց» (Գաթըրճեան–Տաշեան, Սրբ. Պատարագամատոյցք Հայոց, էջ 296)։

Ուշադրութեան արժանի է Վկայաբանութիւնս ոչ միայն իր ընտիր լեզուին համար, այլ եւ Ագաթանգեղոսի աղբիւր ծառայած ըլլալուն համար։ Լեզուական տեսակէտով մեծ թուով նորութիւններ չի բերեր գրուածքս. բայց կը բերէ իր լուման դասական բառագանձին. կը յիշեմ բառերս։

Այպատամբ փոխանակ ապստամբի. Հմմտ. Աճառեան, Հայերէն արմատական Բառարան, Ա., էջ 466։

Արձակութիւն. «Որ նեղ ճանապարհաւ յարձակութիւն տանի» (§ 3). ծանօթ էր բառս միայն Եփրեմ Բ. 253. «Մի թօթափեսցուք յարձակութիւն կամաց մերոց»։

Բթեմ. «Որո՞վ կախարդանօք զամենեսեան բթեցեր» (§ 10). այսինքն տաշեցնել, շլացնել. Հմմտ. Փիլոն, Լինել... «փայլատակմբքն զաչսն շլացուցանէ եւ բթէ»։ Խրատք Նեղոսի (Վարք Հարանց, Բ., 642). «Հայելի ժանգոտ ոչ երեւեցուցանէ յստակ զկանդխմանեալ երեսս, եւ մտաւորական ակն բթեալ՝ ոչ ունի զգիտութիւն Աստուծոյ». Անդ, 654. «Զաչաց ներգործութիւն նուաղէ մէգ, եւ զմիտս տեսողս բթէ արմութիւն»։

Գիրք Պիտոյից, 349· «Նոքա ոչ գքաջամիտսն ի կատարելութիւն յառաջեն… այլ բթեցուցեալ եւս ընդունակս անչափն պատրաստեն կորստեան»: Դասական գրականութեան մէջ հմմտ. Մարութայի Վկայք արեւելից, էջ 64· «Բթեցան երկաթք ի հատանել եւ նոքա ոչ կասեցան ի սիրոյն»· եւ աւկէ Ագաթ· 87· «Մեր սուրքս բթեցան եւ նոքա ոչ զարհուրեցան ի մեռանելոյ»:

Դարգիճ· Առաջին անգամ ա՛յս տեղ կը հանդիպինք բառիս· աւկէ առնուած գործածուած է այն նաեւ Ս· Սոփիայի եւ անոր գուստրներու վկայաբանութեան եւ Յայսմաւուրքի մէջ: Կոչ. Ընծ· 382 ունինք «Դարգճակալ»: Հմմտ· առ այս Վարդանեան, Նիւթեր հայերէն Բառագրութեան, էջ 56 = Հանդ· Ամս· 1920, էջ 453 եւ Աճառեան, Արմատ. Բառարան, Բ·, 451—452:

Ծորեմ· «Միրտ ծորեալ եւ միտք չիջեալ» (§ 13): Հետաքրքրական է բառիս այս ոճաձեւ գործածութիւնը, իբրեւ անսիրտ եւ անմիտ իմաստով, որ միայն այս տեղ երեւան կու գայ:

Հատումն· «— ձեռինս» (§ 3)· նոյնն ունինք նաեւ Սեբեր· 132 «հատումն գործեցաւ»:

Պաշտօն պաշտել· «Զո՞ր պաշտօն պաշտես» (§ 2)· այս ինքն՝ ո՞ր կրօնքի կը հետեւիս: Այլուր չէ գործածուած այս ընտիր ձեւը:

Քերիչ· «Քերել երկաթի քերչօք» (§ 9):

Առաջին անգամ հոս գործածուած է բառս· տակէ՝ Ագաթ. 65:

## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆՍ ԱՂԲԻՒՐ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ

Գալուստ Տէր-Մկրտչեան[10] ցոյց տուած էր թէ Ագաթանգեղոս երբ կը նկարագրէ Գրիգոր Լուսաւորչի խոստովանութիւնն եւ չարչարանքները, ձեռքի տակ ունեցած է Գուրիայի եւ Շամոնայի վկայաբանութեան հայերէն թարգմանութիւնը եւ տեղիքներ փոխ առած է անկէ, նոյն իսկ բառական: Առթիւ մը ուշադիր ըրած էի, որ Ագաթանգեղոս իր աղբիւրներու թուին մէջ ունեցած ըլլալու է նաեւ Աբերկիոսի Վարքը[11], հին հայերէն թարգմանութեամբ: Այս ուղղութեամբ շարունակելով պրպտումներս, յաջողած էր ինձ վերհանել նոյն կարգի աղբիւրներ վկայաբանական գրականութեան մէջ· այս մասին պիտի անդրադառնամ այլուր: Այս տեղ կը պահանջէ առիթս մատնացոյց ընել այն տեղիքները միայն, որոնք բանաքաղուած են Ագաթանգեղոսի կողմէ Կիւրեղ-Կիրակոս Երուսաղեմացւոյ Վկայաբանութենէն:

---

[10] Ագաթանգեղոսի աղբիւրներից· Յիշատակ դատակնքոց Գուրիայ եւ Շմոնի վկայից որ վկայեցին յՈւռհա· Արարատ 1896, էջ 385—392, 425—440 (Արտատպ. Էջմիածին 1896, $8^{0}$, էջք 91):

[11] Հ. Ն. Ակինեան, Նիւթեր հայ վկայաբանութեան ուսումնասիրութեան համար: Վիեննա 1914. էջ ԺԵ—Ի,

Կը հետեւիմ Վկայաբանութեանս կարգին.

1. Ագաթանգեղոս (էջ 461) կը պատմէ, թէ Տրդատ եւ Գրիգոր երբ կը հասնին Հռոմ «աստուածակարգ թագաւորն պատուակալ աթոռոյն Կոստանդիանոս եւ Հայրապետն մեծ, արքեպիսկոպոսն աշխարհամուտ Դրանն, որում անուն կոչէր Եւսեբիոս, մեծաւ սիրով պատիւ արարեալ՝ ընդ առաջ ելանէին...»: Այս տեղ Ագաթանգեղոս իր առաջ կաղապար ունեցած է Կորիւնը, որմէ բանաքաղած է անամաչ. Կորիւն նկարագրելով Մաշտոց վարդապետի այցելութիւնն Կ. Պոլիս, կը գրէ. «Եւ մտեալ առաջի պատուակալ աթոռոցն՝ յանդիման լինէր աստուածակարգ թագաւորացն եւ հայրապետին սրբոյ կաթողիկոսին աշխարհամուտ Դրանն, որում Ատտիկոսն կոչէին»: Այս փոխառութիւնն չէ զմեզ հոս հետաքրքրողը: Ի՞նչ աղբիւրէ ուսած է Ագաթանգեղոս Եւսեբիոս[12] Հայրապետին անունն եւ անոր ժամանակակցութիւնը Կոստանդիանոս թագաւորի հետ: Եւսեբիոս անուն եպիսկոպոս մը Հռոմի աթոռին վրայ կը յիշուի Դ. դարու առաջին տասնեակին, իբրեւ յաջորդ Մարկեղղոսի (308—309), եւ մեռած է, կ՚ըսուի,

[12] Այսպէս ունին հնագոյն ձեռագիրները. Նոյնպէս գիտէ նաեւ Ժ. դարուն Ուխտանէս («զգացուցեալ... մեծ Հայրապետին Եւսեբեայ), Ա., էջ 106): Յետնագոյն ձեռագիրներու մէջ վերածուած է «Սեղբեստրոս» անուան:

յաքսորս ի Սիկիլիա 309ին կամ 310ին[13]: Իրեն յաջորդեց Մելքիադէս կամ Մեղտիադէս (311—315) եւ ապա՝ Սեղբեստրոս: Կոստանդիանոս Հռոմ ոտք կոխեց առաջին անգամ 312 Հոկտեմբեր 28ին: Եթէ Տրդատ եւ Գրիգոր Հռոմ գացած են 312էն ետքը, չէին կրնար հոն Եւսեբիոս հայրապետի հանդիպած ըլլալ: Սեղբեստրոսի անունը Հայոց կարող էր ծանօթացած ըլլալ միայն 671էն ետքը, երբ թարգմանուեցաւ Սեղբեստրոսի անվաւերական Վարքը· ուստի անոր յիշատակութիւնն Ագաթանգեղոսի ինչ ինչ օրինակներու մէջ մտած պիտի ըլլայ Ը· դարէն, յատկապէս Փոքր Սոկրատի հրապարակ գալէն ետքը: Իսկ «Եւսեբիոս» անունը հարազատ է Ագաթանգեղոսի:

«Եւսեբիոս արքեպիսկոպոս Հռոմայ» կարող էր Ագաթանգեղոսի ծանօթութեան հասած ըլլալ մի միայն մէ՛կ աղբիւրէ, այն է «Պատմութիւնն Գիւտի Ս. Խաչի» եւ անոր հետ սերտիւ կապուած Կիւրղի Վկայաբանութիւնը· երկուքն ալ միաժամանակ յերիւրուած անվաւերական կարկատանք, որոնք Դ. դարու մէջերը յօրինուած, ծանօթ էին Ե· դարուն եւ արժանացած նաեւ հայերէն թարգմանութեան նոյն Ե· դարուն: Այս տեղ կ՚ըսուի, թէ Հեղինէ կայսրուհին, Կոստան-

---

[13] H rgenröter-Kirsch, Handbuch der allgemeinen Kirchengeschichte, Հատ. Ա· (Freiburg 1902) էջ 287:

դիանոս Մեծի մայրը, կայսեր հրամանով, 312էն ետքը, Երուսաղէմ գնաց, Յուդա հրէի ցուցմունքներով եւ գործակցութեամբ գտաւ Ս. Խաչն. ապա «հրամայեաց եպիսկոպոսին Եւսեբեայ ի քաղաքէն Հռոմայ գալ եւ տայ կնիք Յուդայի եւ անուանեաց զանուն նորա Կիւրակոս եւ կացոյց զնա եպիսկոպոս յԵրուսաղէմ[14]»: Նոյնը կը կրկնուի ապա նաեւ Կիւրեղ-Կիրակոսի Վկայաբանութեան մէջ, ըստ հայերէն թարգմանութեան՝ «Իսկ այժմ (անուանիմ) Կիւրեղ··· հրամանաւ մեծին դշխոյին Հեղինեայ, որով եւ զեպիսկոպոսութիւնս իսկ ընկալայ ի սրբոյ հայրապետէն <Եւսեբեայ քաղաքին> Հռովմայ[15]»: Աւելորդ է խնդիր յուզել, թէ այս տեղիքները ունի՞ն որ եւ է պատմական արժէք. մեզի համար կարեւորն է այն, որ այս երկու անվաւերականներս այն բարեհաւատ դարուն համարուած են արժանահաւատ եւ Ագաթանգեղոսի աղբիւր ծառայած են Զ. դարու առաջին տասնեակին:

---

[14] Տես վերը ծան. 4: Տեղիքիս լատիներէն հին թարգմանութ՛ւնն ունի՝ Beata autem Helena accersivit episcopum Eusebium (Ms. Maximini: S. Şilvestrum Papam) urbis Romae, et ordinavit Judam episcopum in Jerosolyma ecclesiae Christi: mutavit autem nomen eius et vocatus est Cyriacus (p. 447 D)

[15] „Venerabilis vero Helena Cyriacum me vocati praecepit, beato episcopo Eusebio urbis Romae, super me peccatore ordinationem faciente (p. 449 A):

Վկայաբանութիւն․

1․ «*Եպիսկոպոսն* ասէ․ Բարիոք ասացեր, ով թագաւոր, եթէ յուսով․․․» (3)։

2․ Զի եթէ ոչ աշխատի մշակն *ի գործ ըստ ժամանակին*, ոչ ժողովէ զարդիւնս շահեկանս պտղոցն *ի վայելից* (var. *վայելման ի*) հանգստեան *ժամանակին* (3)։

3․ *Հաւանեցարուք ինձ եւ զոհեցէք աստուածոցն․ ապա եթէ* ոչ հաւանիք, *դառն տանջանօք* կոտեմ զձեզ *եւ չարչարանօք* պահանջեմ *զոգիս ձեր* (3)։

4․ *Յուլիանոս ասէ․ Դարձջիք․․․ ի պաշտօն աստուածոցն, զոր եսն պաշտեմ․․․ եւ այժմ այսպիսի յուսով* մեռանիս *վասն խաչելոյն* ընդ վայր եւ վայրապար (3)։

5․ *Որպէս Քրիստոս պատրաստեալ է* (*տանջանս*) *դիւաց եւ* («*այնոցիկ*») *որք պաշտեն զնոսա*, որ իբրեւ զքեզդ իցեն *ամպարիշտք եւ ամենայն մեղաւորաց*, որոց ոչ գոյ

Ագաթանգեղոս․

1․ *Գրիգոր* «ասէ․ Բարիոք ասացեր (ո՛վ թագաւոր), եթէ *այս իցեն անհրեւոյթ արարածք*» (62)։

2․ *Այո՛, ա՛յս է․* զի թէ ոչ քրտնեսցի մշակն *ի տապ խորշակի* ․․․ ոչ *ըմբռնէ* (var. ժողովէ) զարդիւնս շահեկանս *ուրախութեան* պտղոցն *ձմերանւոյն* հանգստեան (63)։

3․ *Տամ*․․․ կոտել զքեզ *յերկար*․․․․ *տանջել զքեզ յերկար եւ* պահանջել *ի քէն զանարգանս դիցն*․․․ *որ* ոչ կամեցար *պաշտել զնոսա* (61)։

4․ *Թագաւորն ասէ*․․․ *Զինչ եղիր ի մտի․ լինե՞լ կցորդ կենաց իմոց*․․․ *եթէ* մեռանել տարապարտուց ի տարապարտ *խորհուրդս ընդունայնութեան մտացդ ուր կաս* (61)։

5․ *Եւ անպակաս ուրախութիւնքն այն են, յորժամ զիւր սիրեցեալսն*․․․ *անմահացուսցէ յիւր աստուածութիւնն եւ զմեղաւորսն* (որ են իբրեւ զքեզդ)[16] *անմահացուսցէ*

---

[16] *փակագծի մէջ առնուածը զետեղուած էր Ագաթ*․ 36, *տ*․ 9—10, *պարբերութեան մէջ, անյարիր տեղւոյն, այսպէս*․ «*Զի նա* (*Քրիստոս*) *արձակեսցէ*

վախճան պատուհասիցն *այնոցիկ*, . . . *եւ զապրոտամբսն ի ճշմարտութենէ աւանդիցն*, որ իբրեւ զճեզ են, արկցէ ի տանջանսն յաւիտենից, ի հուրն անշէջ (4)։

ի տանջանսն յաւիտենից (36, *տ*. 13—16)։ *Այլ զնոսին նովին* ոգւով *եւ նովին* մարմնով արկանէ *ի գեհեն* յանշէջ հուրն՝ յաւիտենից տանջանս, *մատնեալ զայնոսիկ*, որ իբրեւ զճեզդ են *ի կռապաշտութեան* (68, *տ*. 12—14)։

6· *Հրով այրեցից զքեզ*, երբէ ոչ հաւանեսցիս *կամաց իմոց եւ* պաշտեսցես զդիսն (5)։

6· *Իսկ արդ*, երբէ ոչ առցես դու յանձն պաշտօն տանել դիցն··· *եւ այլ եւս չարագոյն անցս անցանիցեն ընդ քեզ* (39—40)։

7· Հրամայեաց երկաթի պուտամբք հալել կապար եւ մինչդեռ եռայր՝ արկանել *ի բերան* նորա *եւ* զամենայն մարմնովն· եւ այրեցին *եւ խորովեցին* զմարմին նորա· *եւ համարեցան զնա մեռեալ յայրմանէ հրոյն։ Եւ իբրեւ անցին ժամք երեք եւ կարծէին զնա մեռեալ համբարձ զաչս իւր յերկինս եւ ասէ*... (5—6)։

7· *Եւ* ետ հրամանն երկաթի պուտամբք հալել կապար· եւ մինչդեռ ջերմ էր իբրեւ զջուր՝ հոսել արկանել զմարմնով նորա։ Եւ այրեցին զմարմին նորա *առ հասարակ*. *եւ ոչ* մեռաւ· *այլ կայր մեծաւ ուժով· եւ զինչ հարցանէին՝ վաղվաղակի տայր պատասխանի* (69)։

8· *Իսկ* բռնաւորն զարմանայր ընդ ժուժկալութիւն *սորայն*, երբէ զիարդ կայցէ կենդանի *եւ խաւսի*

8· *Եւ* զարմացեալ թագաւորն ընդ ժուժկալութիւն *համբերութեանն կարի անհնարին եւ ընդ տո-*

---

*զկապեալս ի տանէ կապանաց կռապաշտութեան, որ կապեալ են ի մեղս եւ խղեցէ զշղթայս անօրէնութեան [որ են իբրեւ զքեզդ]»։ Կը պատշաճի տեղւոյս։*

| | |
|---|---|
| եւս: Եւ հրամայեաց տանել ի բանդ գերանելին. եւ ինքն խորհէր, թէ որպէս չարչարեսցէ զսուրբն (8): | կալ նորա. եւ ասէ, թէ Զիա՞րդ կայ ի քեզ շունչդ յայդչափ ժամանակաց եւ ի չարաչար տանջանացդ, որով զքեզն կոտեցի... ։ Եւ մինչդեռ խորհէր Տրդատիոս խօսել եւ այլ ողոքով ընդ նմա... եթէ այնմ եւս ոչ լսիցէ, ասէ, եւ այլ եւս յաւելից եւ տոկ կոտեցից... Հրամայեաց... տալ զնա ի դղեակ բերդին Արտաշատ քաղաքի (69—71): |
| 9. Եւ... հրամայեաց զնա կախել եւ քերել երկաթի քերչօք, մինչեւ հոսէր արիւնն յերկիր... եւ հրամայեաց ջահս մատուցանել ի կողս նորա. եւ կայր այնպէս կախեալ ժամս երիս. սկսաւ ասել ի կախաղանին. Տէր Աստուած զօրութեանց ... (9): | 9. Եւ ետ հրամանն քերել զկողս նորա երկաթի քերչօք, մինչեւ ոռոգանն վայրքն ամենայն յարենէ նորա (65): Եւ յետ այսորիկ Հրամայեաց կախել զնա... եւ կայր նա կախեալ այնպէս աւուրս եօթն: Արդ մինչդեռ կայր նա կախեալ սկսաւ խօսել ի կախաղանին այսպէս. Գոհանամ զքէն, Տէր... (41—42): Եւ կաց կախեալ այնպէս զերիս աւուրս (67): |

*Ագաթանգեղոս, որ չափազանցութեանց սիրող է, իր աղբիւրին «ժամս երիս» նախ վերածած է «աւուրս եւթն» եւ ապա «զերիս աւուրս», ուստի ի միասին 10 օր կախուած մնացած է Գրիգոր «ի կախաղանին»: Այսպէս նաեւ Գուրխասի վկայաբանութեան «զերիս*

*աւուրս»*, *զորոնք անցուց «վիրապի» մէջ*, *Ագաթանգեղոս Գրիգորի համար երկարած է «ամս երեքտասան»* (*Արարատ*, 1896, *էջ* 427) :

10. *Եւ հրամայեաց ա*–ծել զեպիսկոպոսն. *Իբրեւ ետես թագաւորն*՝ զարմացաւ, *զի այնչափ տանջանս կրեալ՝ կայր ղուարթերես առաջի նորա: Ասէ թագաւորն յաւուրն. Որո՞վ կախարդանօք զամենեսեան րթեցեր* առ ոչինչ համարելով տանջանս: *Եպիսկոպոսն ասէ. Զզօրութիւն Աստուծոյ գիտա՞ց համարիս... այլ ոչ թողու Աստուած* զյուսացեալս *իւր. եւ դու ըստ արժանի քում* ամբարշտութեանդ *ընկալցիս զպատուհաս յարդար դատաւորէն* (10):

10. *Եւ ի միւսում ա*–*ւուրն* ածին զնա *առաջի նորա: Սկաւ հարցանել զնա եւ ասէ*. Զարմացեալ, զարմացեալ եմ *եւ կարի քաջ. զիա՞րդ կեաս դու կենդանի* եւ ոչ ինչ զրեցեր դու զցաւսդ *եւ խօսիս եւս. զի արժան էր, թէ վաղուց էիր դու վախճանեալ ի տանջանաց այտի* (66—67): *Ետ պատասխանի Գրիգորիոս եւ ասէ. Ոչ է իմ ժուժկալութիւն տոկալոյդ՝ իմով զօրութեամբ, այլ ուժով շնորհի Տեառն իմոյ... զի գիտասցես, թէ ոչ ոք կարէ մեկնել* զյուսացեալս *ի նա ի սիրոյ նորա... զի ամաչեսցեն անօրէնք...* յամբարշտութեան *եւ յապստամբութեան իւրեանց, որ իբրեւ զքեզդ իցեն. եւ կացցեն ամօթով յաւուրն այցելութեան եւ յանդիմանութեան:*

11. *Եւ բարկացեալ թագաւորն* հրամայեաց *կոչել թովիչս եւ իժս եւ քարբս սաստիկս թիւնաւորս* ար–կանել ի գուբ մի եւ ընկե–

11. Հրաման տայր (*Տրդատ*)... զնա... իջուցանել ի վիրապն ներքին.. *մինչեւ անդէն մեռցի* (70—71): *Ետու զնա ըն*–

նուլ զսուրբն ի մէջ նոցա: *Իսկ սուրբն յարուցեալ կայր յաղօթս... եւ Թիւ–նաւոր* սողունքն ոչ մեր–ձենային *ի սուրբն*, ոչ արտմեցուցանէին եւ ոչ նեղէին զնա (13):

*կենուլ ի խոր վիրապն՝ յանհնարին, զի անդէն իսկ միանգամայն օձից լցի կերակուր* (78): *Զի նոյն–օրին, իբրեւ իջուցին զնա անդր՝ յօձիցն իսկ տես–լենէն նոյնժամայն սատա–կեալ իցէ* (114): *Ի մէջ* օձիցն *էր բնակութիւն իմ եւ վասն ահին Տեառն* ոչ երբեք մեղան ինձ եւ ոչ զարհուրեցայ ի նոցանէ·· (121): *Կամ թէ կեցցէ՞ արդեօք մարդ լոկ միօրեայ ժամանակի յանհնարին ի խոր վիրապի անդ յայն–միկ, յորում Թաղեալ կայի ես* ի մէջ օձեցն *իբրեւ ի չեղջի, եւ եռային զմարմնովք իմովք, պա–տեալ կային շուրջ զինեւ եւ կայտառային զանդամովք իմովք* (124):

*Համեմատութիւններս բացատրութեան չեն կարօտիր: Ագաթանգեղոս իր քաղուածք–ները տեղ տեղ բառական պահպանած է, ուրիշ տեղեր ընդլայնած է կամ համառօտած: Կը զգացուի, թէ ան նախահոգ եղած է, որ իր բանագողութիւնները նշմարելի չըլլան ընթերցողներու· այս նպատակաւ է անշուշտ, որ յիշեալ* 11 *հատուածները եռեւառաջու–թեամբ ցանցնած է իր պատմութեան այլ եւ այլ էջերու մէջ: Զիք ինչ ծածուկ որ ոչ յայտնեսցի:*

## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ Ս. ՍՈՓԻԱՅ ԵՒ ԵՐԻՑ ԴՍՏԵՐԱՑ ՆՈՐԱ

*Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Բ.,* 310—321 *հրատարակուած է այս վկայաբանութիւնս: Կը գտնեմ այս տեղ երկու հատուած, որոնք մեծ նմանութիւն ունին Կիւրղի Վկայաբանութեան հետ, թէ ըստ բովանդակութեան եւ թէ ըստ լեզուին: Յառաջ կը բերեմ այս տեղիքները, յանձնարարելու համար սրբախօսներու, քննել հասարակաց աղբիւրը: Այս հատուածներու մէջ կը թուի ինձ, թէ հայ խմբագրի մը ձեռքը խաղացած է:* Դարգին *բառը հին գրականութեան մէջ մի անգամ միայն եւ այն Կիւրղի Վկայաբանութեան մէջ գործածուած է. անոր կից բառական վերբերումը այս տեղ ակամայ կասկած կը յարուցանէ, թէ փոխառութիւն մը կայ հոս:*

ա. Եւ հրամայեաց թագաւորն բերել դարգինս երկաթիս եւ դնել ի վերայ կրակի, մինչեւ շողանալ դարգնացն իբրեւ զհուր, եւ զսուրբն (Պիստիս) տարածեցին ի վերայ...: *Եւ յետ ժամուց անցանելոյ յաղօթել սրբոյն՝ ոչ մերձեցաւ ի նա հուրն: Յայնժամ հրամայեաց առնուլ զնա ի դարգնացն եւ դնել ի տապակ եւ* արկանել ձէթ *եւ մոմ եւ նաւթ. եւ իբրեւ հալեցան եւ էր եռանդն յոյժ ի տապակին. եւ արկին զնա անդր: Եւ երանելին հայէր յերկինս եւ ասէր այսպէս...: Եւ զայս ասացեալ՝ մինչչեւ հրաման տուեալ թագաւորին՝ խնդութեամբ ելանէր ի տապակն եւ*

*վաղվաղակի տապակն* ցրտանայր. *եւ աղախինն Քրիստոսի զօրանայր ի տապակին իբրեւ ի ցօղոյ*...: Յայնժամ հրամայեաց *սրով մաչել* զնա... *եւ այնպէս հանգեաւ Աստուծով*» (314—316):

«*Իսկ սատանայ... արկ ի սիրտ նորա* (*Թագաւորին*) սան լնուլ ծիթով *եւ ձարպով* եւ դնել հուր ի ներքոյ նորա. եւ յեռալ սանին սաստիկ շիթք հատանէին *եւ զբաղումս ի մերձաւորացն այրէին զոլոշիք հրոյն*. Եւ հրամայեաց ընկենուլ զնա ի ներքս: *Իսկ սպասաւորացն առեալ զաղջիկն* (*Էլպիս*) *արկանէին* ի սանն. *եւ վաղվաղակի* սանն *հերձաւ*...: Հրամայեաց *սրով սպանանել* զնա» (317/18):

Բ. *Վկայաբանութիւն Ս. Կիւրղի*. «*Յայնժամ* հրամայեաց Յուլիանոս բերել դարգինս երկաթիս եւ ընկենուլ ի վերայ կայծականց հրոյ, ի վա՛ր զերեսսն... *եւ* արկանել ի հուրն ծիւթ *եւ զմարմինն աղաջուր*...: *Յայնժամ Թագաւորն սրտմտութեամբ եւ բարկութեամբ լցեալ՝ հրամայէր* սան ծիթոյ լնուլ եւ ջեռուցանել սաստիկ յոյժ, մինչ զի ոչ կարէին սպասաւորքն մերձ լինել ի բռնութենէ հրոյն: Եւ հրամայեաց ընկենուլ զնա ի սանն մինչդեռ յեռանդանն էր: *Եւ երանելին... եմուտ* ի սանն, *որ ի վերին զօրութենէն* շիջանէր եռանդն հրոյն *եւ նա յարուցեալ օրհնէր զԱստուած*...: Յայնժամ *առաւել բարկութեամբ շարժեալ Թագաւորն՝* հրամայեաց զնա *գեղարդեամբ խոցել*»:

## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՀԱՅՐԱՊԵՏԻ

1· *Միածին Որդին եւ Բանն Աստուած, որ յառաջ քան զամենայն յաւիտեանս, ի Հաւրէ ծնեալ ճշմարտապէս եւ անպատճառապէս եւ առ անքննութեանն՝ որոյ ոչ է սկիզբն աւուրց եւ ոչ կատարած յաւիտենից: Որ յաղագս փրկութեան աշխարհի իջեալ յերկնից եւ մարմնացաւ ի սուրբ Կուսէն Մարիամայ, որ էանց ընդ ամենայն հաստկս անարատապէս եւ երեսնամեայ մկրտեցաւ· եւ յետ այնորիկ նշանաց սկիզբն արարեալ, որպէս աւետարանն փրկութեան քարոզէ զսքանչելիսն· եւ չարչարեալ եւ խաչեալ եւ թա–*

ՁԵՌԱԳԻՐՔ

A *Վիեննա, թ.* 1:
B *Վիեննա, թ.* 224:
F *Բեռլինի հատակոտորք:*
H *Վիեննա, Ցայսմաւուրք թ.* 701:
L Acta Sanctorum Maii, t. I.
P Paris, Bibliothèque nationale, Cod. arm.
V *Վենետիկ, Մխիթ. Ձեռագիրք:*

ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔ ՁԵՌԱԳՐԱՑ: *Բառերու վերջը Ց գրի անկումն եւ յաւելուածը նկատի չեն առնուած:*

ԽՈՐԱԳԻՐՆ՝ P 115, 116· V 212 *Մարտի ԺԸ· Վկայաբանութիւն Կիւրղի եպիսկոպոսի, որ Յուդայ անուանեալ էր յառաջ, յորոյ ձեռն գիւտ խաչին եղեւ յԵրուսաղէմ:*

1 A չունի *եւ*: V 212, 222, 234:

3 *«առ անքննութեանն». նախադասութիւնս թերի կ'երեւայ. Հմմտ. Եզնիկ* 6· *«քանզի մի էութիւնն անքնին է եւ անհաս բնութեամբ, առ նորա անքննութիւնն ընծայութիւն անգիտութեան մատուցանելի է»: Երր. է.* 3· *«Որոյ ոչ սկիզբն աւուրց եւ ոչ կատարած կենաց»:*

10 *Յովհ. Բ.* 11· *«Զայս արար սկիզբն նշանաց Յիսուս ի Կանա Գալիլեացւոց»:*

դեալ եւ յերրորդ աւուր յարուցեալ եւ համբարձեալ յերկինս. եւ զամենեսեան կոչէ յիւր արքայութիւնն եւ ի փառս. զոմանս ինքն եւ զոմանս ի ձեռս աշակերտաց իւրոց:

Որ եւ զՅուդաս որդի Աննայի բարեպաշտի ի ձեռն սքանչելի երեւման գիւտի փրկական սուրբ Խաչին կոչէր ընդ հրաւիրեալսն, ոչ միայն հաւատալ յամենասուրբ Երրորդութիւնն, այլ եւ չարչարանս եւ մահ ընդունել վասն ամենասուրբ անուան նորա հանդերձ մարբն ի Յուլիանոսէ ամբարշտէ:

2. Քանզի եղեւ փոխումն մեծին Կոստանդիանոսի յաշխարհէս. եւ առնու զթագաւորութիւնն ամբարիշտն Յուլիանոս: Եւ սկսաւ յարուցանել հալածանս ի վերայ սուրբ եկեղեցւոյ խորամանկութեամբ: Բայց նախ զինեցաւ նա ընդդէմ Պարսից ի պատերազմ. եւ եկեալ յԵրուսաղէմ, դիմեալ երթայր ի Պարսիկս: Եւ լուեալ զբարեպաշտութիւն երանելւոյ եպիսկոպոսին Կիւրղի Երուսաղեմացւոյ, եւ համբաւն յառաջագոյն հասեալ էր ի պիղծ լսելիս նորա, ոչ կարաց համբերել նախանձու բանսարկուին, այլ վաղվաղակի հրամայեաց կոչել զեպիսկոպոսն յատեան եւ տեսանել զնա եւ լսել ի նմանէ: Եւ իբրեւ եկն եպիսկոպոսն առ թագաւորն, նայեցաւ ի նա

14 Ա. Թեսաղ. Բ. 12. «Որ կոչեացն զձեզ յիւր արքայութիւնն եւ ի փառս»: — 17 A բարէպաշտի: — 18 A երեւմամբ: — 24 A փոփումն: — 29 A պատերազմն: — 31 A զբարէպաշտութիւն երանելոյ: — 34 A համբերեալ: — 36 A կոչեալ:

եւ ասէ. Զի՞նչ անուն է քո: Եպիսկոպոսն ասէ. Յուդա նախ կոչեցայ ի ծնողաց իմոց. իսկ այժմ Կիւրեղ կոչիմ ի ձեռն հաւատոցն Քրիստոսի եւ լուսաւոր մկրտութեանն հրամանաւ մեծին դշխոյին Հեղինեայ, որով եւ զեպիսկոպոսութիւնս իսկ ընկալայ ի սրբոյ <Եւսեբեայ> հայրապետէն Հռոմայ: Ասէ թագաւորն. Կենդանի՞ են ծնողքն քո: Ասէ Սուրբն. Մայրն միայն: Ասէ թագաւորն. Կոչեսցի եւ մայրն քո: Իբրեւ եկն, Յուլիանոս ասէ ցնա. Կին դու, զո՞ր պաշտաւն պաշտես: Անա ասէ. Ես, որպէս գտաք զողորմութիւն ի ձեռն հաւատոցն որ ի Քրիստոս, զնոյն եւ պաշտեմ[ք] հանդերձ Հարբ եւ ամենասուրբ Հոգւովն՝ աստուածութիւն մի, որ արար զերկինս եւ զերկիր եւ որ ի նոսա արարածք

40 A յուդա նախ ասի (ասէի՞) ի ծնաւղաց. H ի ծնողաց իմոց Յուդա կոչեցայ որ ասի՝ գալ ի խոստովանութիւն. L Յուդա անուանեցայ ի ծնողաց իմոց: Յուդա անուան ստուգաբանութիւնը Գրիգոր Օլաթեցւոյ յաւելուածը կ'երեւայ, առնուած «Թարգմանութիւն անուանց Եբրայեցւոց, Քաղդէացւոց եւ Յունաց» բառգիրքէն (հրտ. Franz Wutz, Onomastica sacra. Untersuchungen zum Liber interpretationis nominum hebraicorum des hl. Hieronymus, Leipzig 1914, էջ 849—1003). հոն կ'ըսուի. «Յուդաս. գովութիւն ընդ մեզ. խոստովանութիւն» (էջ 980), Յուդա. խոստովանութիւն կամ գովութիւն» (էջ 918—919), այն է յն. (հմմտ. անդ, էջ 476—477):

41 A չունի կոչիմ. H Կիւրղոս կոչիմ: — 45 A չունի Եւսեբեայ. L «beato episcopo Eusebio urbis Romae». Բնագիրն աղճատուած է հոս. պէտք է վերականգնել համեմատ խաչի գիւտի պատմութեան եւ լատին օրինակին՝ «ի սրբոյ եպիսկոպոսէ Եւսեբեայ քաղաքին Հռոմայ»:

46 A ծնաւղքն: — 48 A չունի եւ. H:

*իցեն. եւ ամենասուրբ Երրորդութեանն մատուցանեմ[ք] զպաշտաւն հանդերձ երկրպագութեամբ եւ փառաւորութեամբ եւ աւրհնութեամբ այժմ եւ հանապազ: Յուլիանոս ասէ. Ո՞ւր է որդին քո: Աննա ասէ. Որ առաջի քո ատենիդ հասեալ կայ եպիսկոպոսդ Կիւրղոս: Յուլիանոս ասէ. Մեծաց պատուոց եւ կենաց առաջի կացեալ՝ զպաշտաւն ձեր հաւանեցարուք ինձ եւ դարձջիք յերկրպագութիւն եւ ի պաշտաւն աստուածոցն, զոր եսն պաշտեմ: Եպիսկոպոսն ասէ. Մեք ճշմարիտ Աստուծոյ մատուցանեմք զպաշտաւն, որ արարիչն է ամենայն եղելոցս, եւ ոչ դիւաց պղծոց եւ նոցին պատկերաց:*

3. *Յուլիանոս ասէ. Ես պաշտեցի զխաչելեալն եւ ոչ ինչ աւգտեցայ. այլ զնեղութիւն քարոզէ յերկրի եւ յուսով զկեանս յետ մահու: Եպիսկոպոսն ասէ. Բարիոք ասացեր, ով թագաւոր, եթէ «յուսով զկեանս յետ մահու». զի եթէ ոչ աշխատի մշակն ի գործ ըստ ժամանակին, ոչ ժողովէ զարդիւնս չահեկանս պտղոցն ի վայելից հանդստեան ժամանակին. եւ եթէ ոչ մարտնչի զինուորն ընդդէմ թագաւորին թշնամւոյն եւ յաղթէ,*

63 A *դարձջիք:*

**3.** 4 B *բարւոք:* — 6 B *զի թէ:* — 7—8 A *զարդիւնս չահեկան պտղոյն.* BH: *Ագաթ.* 63. «*Ոչ ըմբռնէ* (ց *ձեռ. ժողովէ*) *զարդիւնս չայեկանս* (*այլ ձձ. չահեկանս*) *պտղոցն ձմեռանւոյն հանգստեան*»: A *ի վայելից.* B *վայելման.* H չունի. թերեւս *ի վայելս:* — 9 B *եւ թէ:* — 10 BH *ընդ թշնամիս թագաւորին:* —

*ոչ առնու պարգեւս եւ պսակս ի Թագաւորէն: «Ունել քո եւ ոչինչ աւգտել», քանզի ոչ կամեցար, զի մի ծագեցի ի քեզ լուսաւորութիւն փառաց Որդւոյն Աստուծոյ, խաւարեալ յունայնութիւն մտաց ի բանսարկուէն ի ձեռն հեշտութեան. եւ այնու քարշեալ ի վիհն կորստեան արձակ ճանապարհաւն, որ տանի ի կորուստ. աւտարացեալդ եւ թշնամի եղեր արդարութեան. եւ այսու ոչ շատացար քոյով կորստեամբդ, այլ եւ զքարոզս եւ զմշակս եւ զժողովուրդս Աստուծոյ հրապուրես ի ճշմարտէն Աստուծոյ, որ նեղ ճանապարհաւ յարձակութիւն [որ] տանի՝ ի կեանսն յաւիտենից:*

*Յուլիանոս ասէ. Բազումք ի խաչելեալն Քրիստոս յուսացեալք դժնդակ նեղութեամբք եւ դառն տանջանաւք ելին յաշխարհէս եւ ոչինչ աւգտեցան. վասն որոյ հաւանեցարուք ինձ եւ զոհեցէք աստուածոցն. ապա եթէ ոչ հաւանիք, դառն տանջանաւք կոտեմ զձեզ եւ չարչարանաւք պահանջեմ զոգիս ձեր: Եպիսկոպոսն ասէ. Ոչ կարես այնպիսի տանջանս պատրաստել հոգւոյ եւ մարմնոյ, որպէս Քրիստոս պատրաստեալ է դիւաց եւ որոց*

11 BH *զպսակս եւ զպարգեւս:* — 12 A *ունել* — 15 A *ի բանսարկութենէն* BH *որ խաւարեալդ ես ունայնութեամբ մտաց խաբանօք բանսարկուին:* — 16 A *հեշտութեան,* կարդա՛ *հեշտականութեան:* — 20 A *քոյին կորստեանդ:* — 23 A *որ* կրկնութիւն կ'երեւայ: — 26 A *դժնդակ:* — 30 H *դառն մահուամբ կոտտամահ առնեմ զձեզ:* — 34 A *որք* H *եւ որոց:* —

պաշտենն զնոսա, որ իբրեւ զքեզդ լցեն ամբարիշտք, եւ ամենայն մեղաւորաց, որոց ոչ գոյ վախճան պատուհասիցն այնոցիկ· զի դու զմարմինս տանջես եւ հոգիս լուսաւորի եւ երեւմամբ վայելէ զառաջիկայ բարիսն. փոքր ինչ յետոյ եւ զմարմինն առնու, որ չարչարանաւք [եւ] լուսաւորեսցէ ի յարութեան արդարոցն· եւ հոգւով եւ մարմնով ժառանգէ զանսպառ բարիսն, զոր տացէ Քրիստոս սիրողաց իւրոց: Յուլիանոս ասէ· Եւ այժմ այսպիսի յուսով մեռանիս վասն խաչելոյն ընդ վայր եւ վայրապար: Եպիսկոպոսն ասէ. Ոչ սնոտի է յոյսն մեր զոր ունիմք առ խաչելեալն, որ մեռաւ վասն մեր եւ յարեաւ, զի զմեզ կենդանացուսցէ ի յաւուրն յետնումն, զորս հրաւիրեաց գալստեամբն իւրով ի կոչումն կենացն անվախճանից. եւ* զապստամբսն ի ճշմարտութենէ աւանդիցն, որ իբրեւ զքեզ են, արկցէ ի տանջանսն յաւիտենից, ի հուրն անշէջ, հոգւով եւ մարմնով, որ պատրաստեալ է սատանայի եւ զաւրաց նորա: Բայց դու մի ի զուր հպարտանար ի վերայ ծառայից Աստուծոյ, որ ներելովն Աստուծոյ այժմ պերճացեալ ունիս զթագաւորութիւնդ, որ վաղվաղակի եղծանի, Փոխա-

41 A եւ աւելադրութիւն կ'երեւայ: — 42 կարդա՞լ ժառանգեսցէ:

53—55 Մարկ. Թ. 42· «երթալ ի գեհեն ի հուրն անշէջ». Մատթ. ԻԵ. 41· «Երթայք յինէն, անիծեալք, ի հուրն յաւիտենական, որ պատրաստեալ է սատանայի եւ հրեշտակաց նորա»:

նակ զի ոչ ծանեար զժամանակ այցելութեան, այլ դարձար յետս :

4· Բարկացաւ Թագաւորն եւ հրամայեաց զաչըոյ զձեռն հատանել· եւ ասէ. Զրագումս դարձուցեր ի դիցն պաշտամանէ գրով ձեռամբս այսուիկ: Եպիսկոպոսն սկսաւ գոհանալ զՏեառնէ· եւ ասէ ցԹագաւորն· Այս առաջին յանցման իմոյ բժշկութիւն, հատումն ձեռինս, որով գրէի ի բաց կալ ի Քրիստոսէ, մինչ դեռ ի հրէութեանն էի· եւ լաւ իցէ ինձ միաձեռանի ի կեանսն յաւիտենից մտանել, քան ողջանդամ ի դեհեանն: Յուլիանոս ասէ. Զամենայն մարմինդ ապականեցից չարաչար· եւ տեսից, ո՞վ իցէ որ փրկիցէ զքեզ: Եպիսկոպոսն ասէ· Քրիստոս Փրկիչն, որ ի քէն հայհոյի· որ տայ զաւրութիւն յուսացելոց իւրոց եւ յամաւթ առնէ զքո ամբարհաւաճութիւնդ, առեալ' Աստուծոյ :

5· Յուլիանոս ասէ· Հրով այրեցից զքեզ, եթէ ոչ հաւանեսցիս կամաց իմոց եւ պաշտեսցես զդիսն: Եպիսկոպոսն ասէ· Ո՞վ ամբարիշտ եւ անյիշատակ յամենայն բարեաց, ո՞չ լռես ի Թիւրելոյ զՔրիստոսի պաշտաւնն ուղիղ, այլ հրապուրես ի պաշտաւն դիւաց.

60 Ղուկ. ԺԹ. 44· «Փոխանակ զի ոչ ծանեար զժամանակ այցելութեան քո»:

65 A այսորիկ: — 69 A չունի էի· H: Հմմտ· Մատթ. ԺԸ· 8· «Լաւ իցէ քեզ միաձեռանի կամ կաղ մտանել ի կեանս, քան թէ երկուս ձեռս եւ երկուս ոտս ունիցիս եւ անկանել ի հուրն յաւիտենից»: — 73 Հմմտ. Դան. Գ. 15· «Ով է Աստուած, որ փրկէ զձեզ ի ձեռաց իմոց»:

Եւ ո՞չ յիշես զանոխակալութիւնն Քրիստոսի, որ ապրեցոյց զքեզ ի մահուանէ ընդ սրբով սեղանովն, ընդ որով թաքուցեալն էիր, յորժամ նիւթէիր զմոլորութեան աղանդն, որով կարծեցեր յաղթել ամենայն սրբոց Քրիստոսի. բայց ըստ արժանեացն ընդունելոց ես վրէժս ի Քրիստոսէ, թէպէտ եւ առժամայն ներեաց անյիշաչարութիւնն Քրիստոսի, որ զամենեսեան կամի զի կեցցեն եւ դարձցին: Յայնժամ բարկացեալ թագաւորն՝ հրամայեաց երկաթի պուտամբք հալել կապար եւ մինչդեռ եռայր՝ արկանել ի բերան նորա եւ զամենայն մարմնովք. եւ այրեցին եւ խորովեցին զմարմին նորա. եւ համարեցան զնա մեռեալ յայրմանէ հրոյն:

6· Եւ իբրեւ անցին ժամք երեք, եւ կարծէին զնա մեռեալ, համբարձ զաչս իւր յերկինս եւ ասէ. Քրիստոս լոյս աշխարհի, որ լուսաւորեցեր զհաւատացեալս ի քեզ լուսով գիտութեան քո, անշէջ ճառագայթիւք. որ ի խաւարի եւ ի ստուերս մահու ծագեցեր զլոյս աստուածգիտութեան քո եւ առաջնորդեցեր սիրողաց քոց նեղ ճանապարհաւ ի հանդիստ քո: Տէր, որ տաս զաւրութիւն տկարութեան եւ աւգնութիւն վտանգելոց,

5. 9 A սրբոյ: — 11 A յաղթեալ: — 17 հալեալ: — 23 B սակայն եւ այնու ոչ մեռաւ: — 26 Հմմտ. Կողոս. Ա. 12. «Օրհնեալ է այն, որ արժանի արար զմեզ հասանել ի մասն ժառանգութեան սրբոց ի լոյս. Եւ Ագաթ. 374. «Եւ սրբոցդ մասին ժառանգութեան... հասանել:

*որք յուսան յանուն քո սուրբ. Փրկիչ աշխարհի, աղաչեմք զքեզ, որ արժանի արարեր զիս չարչարանաց վասն փառաւորեալ անուանդ քո սրբոյ, եւ արժանի արարեր զիս մասին սրբոցն համբերութեան, որ կեանքդ ես այնոցիկ որ մեղաւքն են մեռեալ, մեղուցելոց քաւարան, պարտ[ուց]ելոց փրկիչ, Քրիստոս Աստուած: Դու ես, Տէր, որ զերիս մանկունսն ի հնոցին ապրեցուցեր, որք աղաչէին զքեզ, Տէր Աստուած հարցն մերոց. որ զԹագաւորն յամաւթ արարեր, որ խրոխտայր ի վերայ նոցա. որ ծանուցեր զքեզ միայն ճշմարիտ Աստուած եւ զԴանիէլ ապրեցուցեր ի գրոյ առեւծուցն եւ զնորին առելին մատնեցեր զազանացն կերակուր: Դու ցամաքեցուցեր զԾով Կարմիր եւ անցուցեր զժողովուրդն քո եւ զարձեալ ընկղմեցեր զփարաւոն կառաւք եւ հեծելովք նորին, որ ոչ ծանեաւ զզաւրութիւն նշանաց եւ արուեստից, որ ցուցեր յԵգիպտոս եւ ի ծովուն եւ յանապատին ամս քառասուն: Որ աւրինակաւ խաչին քո զվիշապն կախեցեր յանապատին եւ ապրեցուցեր զժողովուրդն*

38 L *ունի* pecatorum propitiatio, *մեղուցելոց քաւութիւն:* — 39 A *պարտուցելոց.* L *մոլորելոց փրկիչ եւ առաջնորդ:* Կարդա՞լ *ըստ արտուղի մոլորելոց:* — 44 A *ճշմարիտդ:*

50—57 Այս տեղ կը սկսի F. առաջին գիրն *զ* կարդալու է *ր*, ուստի *(ի գիշե)րի սեամբ հրով եւ* |||||| *աւերեալ* (°) *հզաւր (ձեռամբ եւ) բարձր բազկաւ եւ (մեծամեծ ա)եսլեամբք. յԵգիպտ(ոս եւ ի ծովու)ն եւ յանապատին (ամս քառաս)ուն. զոր աւրինակ խ(աչի քո զվիշ)ապն պղնձի կանգն(եցեր) յանապատին...»:*

*ի թունից մահաբեր աւձիցն: Դու նոյն ինքն Տէր, որ կարող ես յամենայնի հզաւր զաւրութեամբ· որ զատելիս քո եւ զթշնամիս սիրելեացն քոց արդար դատաստանաւ դատիս ի դէպ ժամանակի· որ տաս երկայնմտութիւն տարակուսելոց եւ կեանս այնոցիկ որ մաչեալն են սրտիւք իւրեանց: Աղաչեմ զքեզ, Տէր, առաքեա զհրեշտակ քո, որ եկեալ պահեսցէ զիս անխռով ի հնարից սատանայի եւ յամենայն բռնութենէ ամբարշտիս, որ նեղէ զիս չար եւ դառն տանջանաւք վասն անուանդ քո սրբոյ· եւ տուր ինձ համբերութիւն ցաւոցս եւ զաւրացո զծառայս քո եւ զորդի աղախնոյ քո եւ արա առ իս նշան բարի, զի տեսցեն ատելիք իմ եւ ամաչեսցեն զի դու ես փառաց եւ պատուոյ արժանի եւ քեզ փառք յաւիտեանս:*

7· *Իբրեւ կատարեաց զաղաւթսն եպիսկոպոսն, ասէ թագաւորն ցնա· Ոչինչ աւգտիս*

Ասկէ կը տեսնուի որ A հոս համառօտուած է ըստ մասին· L ձեռնտու չէ վերականգնելու բնագիրը: Հմմտ· *Բ· Օր· Դ·* 34 *եւն «Հզօր ձեռամբ եւ բարձր բազկաւ:*

55 A *թիւնից*. F: — 58 F *սիրելեաց*: — 61 F *մաչեալ* A *աղաչեմք*· F: — 62 *անխռով*] F *անվրդով*: — 56 F *որ նեղէս չար*: — 66 *քո*] A *քում*:

69 AF *բարի* H *բարութեան* A չունի *զի տեսցեն ատելիք իմ եւ ամաչեսցեն* FVH· կը շարունակէ H *զի դու, Տէր, աւգնեցեր ինձ եւ մխիթարեցեր զիս*: V 203 (*թղ·* 155*ա*) կը սկսի հոս ||| *ամաչեսցեն զի դու*...: Հմմտ· *Սղմ· Ձե·* 17· *«Տուր զօրութիւն ծառայի քում, կեցո զորդի աղախնոյ քոյ եւ արա առ իս նշան բարութեան. տեսցեն ատելիք իմ եւ ամաչեսցեն, զի դու, Տէր, օգնեցեր ինձ»*:

7 1 F *յ· ամէն*: 2 F *եպիսկոպոսն զաղաւթս*: —

ի քոյ աղաւթիցդ, եթէ ոչ պաշտես զդիսն եւ կատարես զկամս իմ: Եպիսկոպոսն ասէ· Ես ոչ պաշտեմ զդիսն քո, այլ զԱստուած ճշմարիտ· զոր կամիս արա՛ վաղվաղակի:

Յայնժամ հրամայեաց Յուլիանոս բերել դարդիճս երկաթիս եւ ընկենուլ ի վերայ կայծականց հրոյ՝ ի վայր զերեսն, եւ բրաւք հարկանել զթիկունսն եւ զմկանունսն, եւ արկանել ի հուրն ձիւթ եւ զմարմինոմն աղաջուր: Իսկ նա ամբարձ զձայն իւր եբրայեցերէն, եւ ասէ· Բարուք աթաղա ինամամուէ տարքուսիաղ, նամեղաով թարուր կաթթաղ զեղբիդոմովէ նաւաթի աբիամ խով բամ բէդէլ ադոնաէ եղաւթ· որ է հայերէն· Աստուած Աստուած անչափդ, որ վասն մեր չարչարեալ՝ եւոււր կեանս այնոցիկ որ հաւատան ի քեզ· որ մարգարէին Յովնանու զաւրինակ երեքաւրեայ յարութեան քո ցուցեր մեզ· որ զընտրեալ մարգարէն քո զԵղիաս

7 F չունի Յուլիանոս: — 9 A զերեսն: AH բրաւք (H գաւար ք·)· F: — 11 F զմարմինովքն: —

12—16 AF չունին իսկ նա — որ է հայերէն· փոխարէն ունին Եւ այնպէս չարչարէին զսուրբն ըստ հրամանի ամբարիշտ թագաւորին: Եւ սուրբն զոհանայր զՏեառնէ, որ (F եւ) վասն սուրբ (F ամենասուրբ) անուանն (F անուան) Քրիստոսի (F չունի) արժանի եղեւ չարչարանս կրել· եւ գոհացողական ձայնիւ փառս ի բարձունս ամենասուրբ Երրորդութեանն (F չունի ա· ե·) առաքէր: Հարազատ ընթերցուածը պահած է V 203 (Դ· ձառընտիր), զոր յառաջ բերած են Հ· Մ· Աւգերեան, Լիակատար Վարք եւ Վկ· սրբոց, Բ·, 456, եւ Հ· Բ· Սարգիսեան, Ցուցակ, Բ·, 121· ունի նոյնը L ինչ ինչ ձեռագիրներու մէջ:

19 V Յունանու:

Հրեղէն կառաւք յերկինս յափշտակեցեր : Եկ, Տէր, եւ յայս դատաստան, եւ թեթեւացո զիս ի ցաւոցս յայսցանէ· զի վասն անուան քո կրեմ զայս :

8· Իսկ բռնաւորն զարմանա՛յր ընդ ժուժկալութիւն սրբոյն, եթէ զիա՞րդ կայցէ կենդանի եւ խաւսի եւս : Եւ հրամայեաց տանել ի բանդ զերանելին· եւ ինքն խորհէր, թէ ո՞րպէս չարչարեսցէ զսուրբն :

Եւ եկն Աննա մայր սրբոյն ի բանդն առ որդին եւ ասէ· Որդեակ, բարիոք մրցեցար վասն անուանն Տեառն· արդ կաց եւ մնայ քեզ արդարութեան պսակն· բայց յիշեա, որդեակ, զհայրն քո, զի հրեայ վախճանեցաւ· թերեւս լիցի նմա ողորմութիւն վասն քո ի Տեառնէ, եւ վասն բարեխաւսութեան սրբոյ նախավկային, ազգականին քո : Եւ զիս յիշեա զմայրս քո, որ ծնայ զքեզ եւ սնուցի մեծաւ աշխատութեամբ· եւ արժանի եղէց տեսանել զհատուցումն քո ի Տեառնէ, զանթառամ պսակն եւ զանսպառ բարիսն :

Եւ հրամայեաց Յուլիանոս ածել զմայրն յատեանն· եւ ասէ ցնա· Որդին քո ընտրեաց զմահ· բայց դու ընտրեա զկեանս՝ պաշտել զդիսն եւ հաւանել կամաց իմոց : Աննա ասէ· Զերկրաւորս արհամարհեցի եւ յաւիտենականն կենացն ցանկացայ· զի երեւելիքս առ

26 F եւ: —
30 F որով: — 32 F որդին իւր: — 36 F չունի ի տեառնէ: — 45 FB զկեանս ընտրեայ (F ընտրեաց): — 48 A յաւիտենականացն· F: — 49 F իսկ: —

ժամանակ մի են եւ հանդերձեալքն յաւիտենականք. եւ ես պաշտաւն Քրիստոսի մատուցից եւ ոչ դիւաց պղծոց. եւ այժմ հաստատեալ եմ հաւատովս որ ի Քրիստոս, որպէս եւ սուրբ որդին իմ, որ վասն անուանն Քրիստոսի ընկալաւ զտանջանս ի քումէ յամբարշտութենէդ, ատելի՝ Աստուծոյ կենդանւոյ:

9. Եւ սրտմտեալ թագաւորն հրամայեաց կախել զնա եւ քերել երկաթի քերչօք, մինչեւ հոսէր արիւնն յերկիր: Եւ նա ոչինչ բարբառէր, այլ միայն աւրհնէր զԱստուած: Եւ հրամայեաց ջահս մատուցանել ի կողս նորա. եւ կայր այնպէս կախեալ իբրեւ ժամս երիս: Եւ սկսաւ ասել ի կախաղանին. Տէր Աստուած զաւրութեանց, որ հաստատեցեր զերկինս եւ զերկիր եւ որ ի նոսա արարածք իցեն, եւ առաջնորդեցեր ազգի մարդկան հաւատացելոց քոց ի ճանապարհս արդարութեան. եւ զթիւրեալսն ի կամաց քոց դատիս ի դէպ ժամանակի. լո՛ւր եւ ինձ աղախնոյ քում, զի կատարեցից զընթացս իմ եւ ցնծալով մտից ի հարսնարանդ քո ընդ սրբոյ որդւոյն իմում: Եւ զայս ասացեալ աւանդեաց զհոգին երանելին Աննա. եւ ամփոփեցին զսուրբն:

52 F չունի եմ. A հաւատով. F: — 53 A քում: — 58 A զնա կախեալ. FB. A քերեալ: — 63 չունի եւ: — 67 F ճանապարհ: — 72 F արձակեաց երանել A անփոփեցին:

10· Եւ հրամայեաց (Յուլիանոս) ածել զեպիսկոպոսն. եւ իբրեւ ետես Թագաւորն՝ զարմացաւ, զի այնչափ տանջանս կրեալ կայր գուարթերես առաջի նորա: Ասէ Թագաւորն ցսուրբն. Որո՞վ կախարդանաւք զամենեսեան բթեցեր՝ առ ոչինչ համարելով զտանջանս: Եպիսկոպոսն ասէ, Զզաւրութիւն Աստուծոյ դիւա՞ց համարիս· վասն զի դու անկար ի ճշմարտութենէն՝ կամիս եւ զայնոսիկ որք են ի լոյս՝ քարշել ի խաւար· այլ ոչ թողու Աստուած զյուսացեալս իւր· եւ դո՛ւ ըստ արժանի քում ամբարշտութեանդ ընկալցիս զպատուհաս յարդար դատաւորէն. զի ոչ եւս դարձցիս ի ճանապարհէդ, յոր երթալոցդ ես· զի բարկացուցեր զՏէր Աստուած կենդանի:

11· Եւ բարկացեալ Թագաւորն հրամայեաց կոչել Թովիչս, եւ իժս եւ քարբս սաստիկս թունաւորս արկանել ի գուբ մի եւ ընկենուլ զսուրբն ի մէջ նոցա: Իսկ սուրբն յարուցեալ կայր յաղաւթս եւ ասէր. Տէր

**10.** 1 A ածեալ B հ. արքայ ածել յատեան զե·: — 2 A չունին եւ. F: — 3 F կրեալ զաւր(ութեամբ) Քրիստոսի: — 4 FB զուարթերես կայր: — 5 FBH չունին Թագաւորն: — 5 L quibus maleficiis nobis caliginem induxisti?, որպիսի՞ կախարդանօք ածեր զմեօք մառախուղ. տարրին՝ par quelles sorcelleries as-tu fasciné les yeux?, որպիսի՞ կախարդանօք շլացուցեր զաչս մեր: — 8 B համարիս, ա՛յ թշուառական: L ասէ, նզովք քեզ, անպիտան շուն, զզօրութիւն...: — 10 F ||| քեզ ի խաւար: — 11 F յուսացեալս: — 13 F ամպարշտութեանդ: — 18 A կոչեալ: — 19 F սաստիկս եւ թ·: A թիւնաւորս: A գուփ: —

*Աստուած, լուր աղաչանաց ծառայիս քո, որ զՑովսէփ փրկեցեր ի գրոյ տառապանաց եւ ետուր հրաման ի վերայ իժից եւ քարբից գնալ եւ կոխել զզաւրութիւնս Թշնամւոյն։ Եւ այժմ արա՛ առ իս զգութ մարդասէր շնորհաց քոց եւ ապրեցո զիս ի Թունաւոր դաղանացս, զի ծանիցեն ամենեքեան, եթէ դու ես միայն, ճշմարիտդ Աստուած, որ կարող ես յամենայնի։ Եւ Թունաւոր սողունքն ոչ մերձենային ի սուրբն, ոչ տրտմեցուցանէին եւ ոչ նեղէին զնա․ եւ երանելին զոհանայր զՏեառնէ ի մէջ սողնոցն։*

12․ *Իսկ Թովչացն աւագն, որում անուն էր Աղեմոն, ասէ․ Ով Թագաւոր, լի ես ամենայն յիմարութեամբ, ո՞չ տեսանես զմեծամեծս Աստուծոյ․ զի ոչ յայլմէ ումեքէ է զաւրութիւնս այս եւ սքանչելիքս, բայց ի Քրիստոսէ, որպէս պատմեն գիրք Քրիստոնէից․ զի ոչ կախարդութիւնք եւ ոչ այլ ինչ ընդունայն աղանդք աստուածոցն կարացին այսպիսի սքանչելիս առնել։ Ահաւոր եւ զանազան տանջանս ածեր ի վերայ եւ ոչ կարացին հաւանեցուցանել եւ պաշտաւն մատուցանել դիւաց սնոտեաց։ Եւ ես ճշմարտութեամբ հաւատամ, Թէ մեծ է Աստուածն Քրիստոնէից եւ նա է Աստուած ճշմարիտ եւ*

20 F *եւ նա*։ — 22 A *ծառայի*․ F։ — 23 *տառապանաց*] hnu կը վերջանայ F։ — 27, 30 A *Թիւնաւոր*։ — 35 H *Աղամոն* L Amon. Ammon. Abdon. *Աւ․ խայտ*. Admon։ — 43 A *տանջանք*։

այլ ոք չիք· բայց միայն ընկալցի զիս ըստ մեծի ողորմութեան քում: Իսկ Թագաւորն իբրեւ գիտաց, եթէ ճշմարիտ հաւատաց այրն, հրամայեաց սրով սպանանել զնա: Եւ նա սկսաւ զայս բարբառել· Տէր Աստուած, ընկալ զոգի իմ խաղաղութեամբ, զի դու ես Տէր եւ Աստուած ամենայնի: Եւ իբրեւ զայս ասաց՝ ձգեաց զսուրն դահիճն եւ եհատ զպարանոցն· եւ այսպէս բարի խոստովանութեամբ կատարեցաւ ի Քրիստոս:

13· Դարձեալ ասէ Թագաւորն ցսուրբ եպիսկոպոսն· Ապշեցուցե՛ր զամենեսեան· բայց դու մի ակն ունիցիս ապրել ի ձեռաց իմոց, թէ ոչ ուրասցիս զխաչելեալն: Ասէ սուրբն· Ո՛վ ամբարիշտ եւ ամենաչար Թագաւոր, սիրտ ծռեալ եւ միտք չիջեալ քո, զի՞նչ է, զոր ասեսդ զհայհոյութիւնդ· զայսչափ բարերարութեան զարմանս տեսեալ քո եւ ոչ դադարես ի մոլորութենէդ, այլ յամառորիս յազդմանէ չարին եւ զիս նման քեզ կամիս առնել ուրացող· բայց ես ոչ խոտորեցայց ի ճշմարտութենէ աւանդիցն, այլ Աստուծով կացից եւ ընդ Քրիստոսի մեռայց, զի ժառանգաւոր եղէց փառացն որ յայտնելոց է ի մեզ ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Յայնժամ Թագաւորն սրտմտութեամբ եւ

48 H եւ չիք այլ ոք բաց ի նմանէ: — 52 A բարբառեալ: — 55 A էհատ: — 63 L o cor perversum et sensum extinctum! Ո՛վ սիրտ կամակոր եւ միտք չիջեալ:

*բարկութեամբ լցեալ՝ հրամայեաց սան ձիթով լնուլ եւ ջեռուցանել սաստիկ յոյժ, մինչ գի ոչ կարէին սպասաւորքն մերձ լինել ի բռնութենէ հրոյն: Եւ հրամայեաց ընկենուլ զնա ի սանն մինչդեռ յեռանդանն էր: Եւ երանելին կնքեալ զինքն նշանաւ սուրբ խաչին՝ եմուտ ի սանն, որ ի վերին զաւրութենէն շիջանէր եռանդն հրոյն, եւ նա յարուցեալ աւրհնէր զԱստուած ի վերայ անպատումն պարգեւացն եւ փառս ամենասուրբ Երրորդութեանն մատուցանէր:*

14· *Յայնժամ առաւել բարկութեամբ շարժեալ թագաւորն՝ հրամայեաց զնա գեղարդեամբ խոցել· եւ անդէն աւանդեաց զհոգին ի փառս ամենասուրբ Երրորդութեանն:*

*Եւ այսպէս կատարեցաւ սուրբ եպիսկոպոսն Կիւրղոս ի յամբարշտէն Յուլիանոսէ:*

*Եւ թագաւորն Յուլիանոս գնաց ընդդէմ Պարսից ի պատերազմ եւ անդէն սատակեցաւ ըստ յառաջասացելոյ սրբոյ եպիսկոպոսին· եւ զաւրքն փախստական դառնային անդրէն յաշխարհն իւրեանց: Եւ դադարէր հալածումն եւ ամենեքեան աւրհնէին զամենասուրբ զԵրրորդութիւնն յաւիտենից յաւիտեանս:*

75 *սան*] L caccabus magnus *այն է յն.* *κάκκαβος*, *գաղղ.* marmite à trois pieds (ALEXANDRE). — 78 B *ի բարկութենէ*: — 79 B *յեռանդման*: — 81 A *խաչիւն*:

85 L ունի հոս աղօթք մը: — 88 *գեղարդ*] L contus magnus, *յն.* *երկար ձող, նիզակ, ռէգ. ռս.* une longe lance: — 88 A *խոցեալ.* L *ի կողն, ռս. ի սիրտն*: — 92—99 L չունի այս մասը:

*Վկայագիրը* § 2, *տ.* 33 (*էջ* 146) *կը գրէր.* «*Եւ լուեալ* (*Յուլիանոսի*) զքարեպաշտութիւն *երանելւոյ եպիսկոպոսին Կիւրղի Երուսաղեմացւոյ*, *եւ* (կարդա՛ *որոյ*) համբաւն յառաջագոյն հասեալ էր ի *պիղծ* լսելիս նորա», *ուր լատ. ունի* Sancti igitur Cyriaci fama perveniente usque ad eius auditum. *Հայ սկզբնական բնագիրը սակաւ ինչ խմբագրութեան ենթարկուած է սկիզբը. բայց ընդգծուած տողը մնացած է անաղարտ, ինչպէս լատին թարգմանութենէն կը տեսնուի: Ուշագրաւ է, որ նման տեղիք մ՚ալ կը կարդանք Կորիւնի Ս. Մաշտոցի Վարքին մէջ.* «*Վասն առաքելագոյն* բարեգործ համբաւուց յառաջագոյն զնմանէ *անդ(ր) ի Հիւսական կողման*ց հռչակելոց» (*Վենետիկ*, 1894. *էջ* 27):

*Եթէ պատահական նմանութիւն մը չհամարինք տեղիքս, ստիպուած ենք ընդունելու, թէ Կորիւն կարդացած էր Վկայաբանութիւնս եւ օգտագործած է ասութիւնս իր Պատմութեան մէջ:*

Բնագրական տարբերութիւնք վենետիկի ձեռագրին ճառընտիր Դ, Թ. 203:

էջ 195. 71 + այժմ եւ յաւիտեանս: — § 7. 2. գնա, Ոչինչ աւգտիս ] չաւգտիս ինչ:

էջ196 3. ի քո: պաշտեցիս: 4. Կատարեսցես: > իմ: 6. + զոր ինչ կամիս: 7. Հրամանաց: 8. դարբինս: + երկաթիս եւ պրկել զնա ընգենուլ: + աղաջուր եւ այնպէս չարչարէին զսուրբն ըստ հրամանի ամբարշտին Յուլիանոսի: 14. կաթթազ: 15. աքիա: խովրամ: 19. Յոնանաւ: 25. + կրեմ զայս եւ կատարեալ զաղաւթսն զոհացողական ձայնիւ փառս ի բարձունս ամենասուրբ Երրորդութեան մատուցանէր: 27. > եթէ: 28. > եւս: 29. զերանելին ] զսուրբն: 30. որպէս ] որով: չարչարիցէ: + զսուրբն Աստուծոյ: 31 32 առ որդին իւր ի բանդն: 33. վասն ] որդի: արդ ] արդար: 35. վախճանեցաւ ] մեռաւ: 36/68 > Թերեւս լիցի նմա ... ազգականին քո: 39. զմայր: 40. + աշխատութեամբ, զի զիս ընգալցի ընդ սիրելիս իւր: 42. + բարխն եւ սպասաւորացն արքունի ծանուցին զայս կայսերն: 43. > Յուլիանոս: 45. զկեանս ընտրեա: պաշտելով: 47. արհամարհեցից: 48. ցանգակացա: 49. եւ ] իսկ հանդերձեալքն: 51 2. հաւատով հաստատել: 58. զնա կախել: 59. մինչեւ ] եւ: + հոսէր իջանէր յերկիր: 60. այլ ] բայց: 61. մատուցանել ] լուցանել: 66. եւ ] որ: 96. > ի դէպ ժամանակի: > եւ: աղախնոյս: 70. > քում զրթացս: 71/2. ընդ սրբոյ որդւոյն իմում ] առ սուրբ որդին իմ: 72. աւանդեաց ] արձակեաց: > Աննա: ամփոփեցին:

էջ 199 § 10. 1. (Յուլիանոս): + ածել զերանելի: 2. եպիսկոպոսն: > եւ: 3/4. զաւարթերես հայր: > թագաւորն: 6. + զայսպիսի տանջանս: 9. անդար: + եւ կամիս: 10. ի լոյսն եւն: 13. ընդալցիս պատուհաս: 15. լերթայց: 19. թիւ–

նաւորս: 20· ընդենուլ: Իսկ սուրբն ] եւ նա: 22· ծառայի: 23· զՅուսէփ: 24· + Հրաման ծառայի քո: 25· գնալով: զզաւրութիւն թշնամոյն: 27· Թիւնաւոր: 29· միայն ես: Աստուած ճշմարիտ, եւ կարող յամենայի: 30· Թիւնաւոր: 31· + եւ ոչ տրամ...: 33· + ի մէջ սողնոցն. եւ զամենայն բազաւորն ի վերա զարմանալեացն եւ զսուրբն հանեալ ի գբոյն՝ զգազանսն այրեալ հրամայեաց: 35· Ագիմոն ] Ագոն: + որ լի ես: > ամենայն: 37/8· > զաւրութիւնս: 38· եւ սքանչելիքս ] սքանչելիս: 41· կարիցեն: 42· + այսպիսի զաւրութիւնս առնել եւ սքանչելիս: 42· Ահա որքան զանազան: 43· > եւ: կարացեր: 46/7· Քրիստոնէից Աստուածն մեծ է: 47· > Աստուած: 48· բայց ] նա: ընկալցի ] ընդ մեզ է: 49· իւրոյ: 50· ճշմարտութեամբ: 51· > գնա: 52· + զայս բանս: > Տէր: 53· զհողի: 54· Աստուած ] արարիչ: 54/55· Եւ իբրեւ զայս ասաց ] Եւ զայս ասացեալ: 56· > բարի խոստովանութեամբ: 58· սուրբ: 59· եպիսկոպոս: ափչեցուցեր: 60· ապրիլ 63· չիջեալ ] չրջեալ: 64· ասես: 67/8· կամիս ] ջանաս: 68/9· խոտորեցայց ] ուրացայց: 70· կեցից: 72· Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ: 75· > եւ բարկութեամբ լցեալ: 76· > լնուլ եւ: զի մինչ: 77· միտք ոչ կարէին լինել: > սպասաւորքն: 78· ընդենուլ: 80· երանելոյն: 80/1· խաչին: 81· որ ի ] եւ ի: 84· անպատում սքանչելեացն: 86· ի բարկութիւն: 88· խոցեալ: 90 > եւ: 91· Կիւրեղ: 93· ի պատերազմն: 94· ըստ յառաջագոյն ասացեալ: 97· Հալածումն. եւ ամենեքեան ուրհնէին զԱստուած: 97/99· զամենասուրբ ... յաւիտեանս:

---

## ԽԱ.

## ՆԿԱՐԱԳԻՐ ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ ԵԶՆԿԱՑ ԵՐԻՑՈՒ

## ԽԱ.

# ՆԿԱՐԱԳԻՐ ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ ԵԶՆԿԱՑ ԵՐԻՑՈՒ

### ՎԵՐԱՀԱՅԵԱՑ ՄԸ

1. *Պարիսի Ազգային Մատենադարանի Թ. 112 հայերէն ձեռագիրը, գրուած Վարդան գրչէն Իտալիա, 1254ին (Հայոց ՉԳ), «Ի քաղաքիս որ կոչի Ռիմ, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս, որ(ոյ), յանուն սուրբ աւետարանչացն Յովհաննու եւ Մատթէոսի. եւ է սա Հոգետուն Հայոց», կը պարունակէ՝ թղ. 1ա—104բ. Յաճախապատում, թղ. 108—290 Ագաթանգեղոս, եւ թղ. 291ա—292բ. «Նշանագիր կարգաց բանից Եզնկան երիցու»: Վերջին փոքրիկ գրուածքը միայն այս ձեռագրին մէջ պահուած է մեզի: Անկէ արտագրուած են Ժթ եւ Ի դարուն բոլոր ծանօթ օրինակները. կը յիշեմ ա. Վենետիկի Մխիթարեանց Թ. 294, թղ. 20ա (1824, Սարգիսեան, Ցուցակ Բ. 1059—60): բ. Նոյն Մատենադարանի Յաճախապատում Դ. էջ 347 (հմմտ. Հ. Բ. Սարգիսեան): գ. Յովհ. Զօհրաբի օրինակը (Թ. 51, Բեռլինի Պետ. Մատենադարանի): դ. Հ. Յ. Գաթըրճեանի օրինակը: ե. Արշակ Տէր-Միքէլեանի օրի–*

նակը: գ. Ն. Ադոնցի օրինակը: է. Լուսանկար ձեռագրին, հանուած Գ. Տէր–Մկրտչեանի համար:

Տպագրութեամբ լոյս տեսաւ.

Ա. տպ. Ա. Տէր–Միքէլեանէ Սամուէլ Անեցւոյ ժամանակագրութեան կից ծանօթութիւններու մէջ. Վաղարշապատ 1893, էջ 266—268 (սխալաշատ): = A.

Բ. տպ. Հ. Ն. Ակինեանէ հանդերձ քննութեամբ՝ «Հանդէս Ամսօրեայ» 1937, էջ 517—532: = B.

Գ. տպ. Ն. Ադոնցէ՝ Սիոն 1938, էջ 149—152: = C.

Դ. տպ. Գարեգին Յովսէփեան Վեհափառ կաթողիկոսէ՝ Յիշատակարանք, Ա. Անթիլիաս, էջ 19–28, հանդերձ լուսանկար տպագրութեամբ ձեռագրին: = D.

Ե. տպ. կրնայ նկատուիլ առաջինկայս, որ թէպէտ արտատպութիւնն է Բ. տպագրութեան, բայց վերաքննուած է բնագիր լուսանկարին հետ եւ ճշդումներ ներս առած :=E.

Հրատարակութեանս մէջ գրուածքս բաժնուած է երեք մասերու.

Ա. Յաջորդութիւնք Թագաւորաց եւ կաթողիկոսաց:

Բ. Փոխադրութիւն նշխարաց Ս. Հռիփսիմեանց:

Գ. Ժամանակք հայրապետացն Հայոց:

Այս վերջինս ձեռագրին մէջ գրուած է մէկ սիւնակ (Թղ. 292բ): Կազմողը պէտք զգացած է այս սիւնակին ներքին լուսանցքին վրայ վերէն վար Թուղթ փակցնել, որուն հետեւութեամբ տողերուն վերջին 8–10 գրերը ծածկուած են. բայց դարման տարած է այս կէտին անով, որ մանր բոլորգրով ծածկուած գրերը արտագրած է կպցուած Թղթին վրայ: Բայց ո՞րքան հաւատարմօրէն,, չենք կրնար վկայել. յամենայն դէպս «Զօրէն» ձեռագրին մէջ գրուած ըլլալու է «Զաւրէն». անտեսուած են երեք տեղիքներ տես այս բաժնին մէջ Կոմիտաս, Խաբայէլ, եւ Յովհաննէս խմաստասէր անունները[1]:

2. Վերնագիրը ձեռագրին մէջ է «Նշանագիր կարգաց բանից Եզնկանն երիցու»: Ու այս ունիմ դիտողութիւններս.

ա. «Նշանագիր» Հ. Յ. Գաթըրճեան կարդացած, լաւ եւս բանասիրական սրբագրութեամբ ուղղած է «Նկարագիր», զոր եւ առած եմ բնագրի մէջ. վասն զի «Նշանագիր» բառին որ եւ է առումով չի պատշաճիր տեղւոյս. կրնար ըսուիլ «Նշանագիր կարգէ բանից»: Բայց անեղական ձեւով ունինք «Նշանագիրք». որ Եբր. Ե. 12 «Նշանագիրf սկզբան բանին Աստուծոյ», ուր յունարէն է. στοιχεῖα, որ Գաղտ. Դ. 3 եւ 9, Կողոս Բ. 8

[1] Այս գլուխը խմբագրուած է հեղինակէն 27 Ապրիլ 1951:

եւ 20 «տարերք» եւ Բ· Պետր· Գ· 10 եւ 12 «բնութիւնք» թարգմանուած է։ բ· Ինչպէս յունարէնն նոյնպէս հայերէնն ունին նաեւ «այբուբեն» իմաստը, եւ այս առումով առհասարակ գործուած է հայերէնի մէջ։ Ձեռագրին բառս այբուբեն իմաստով եւ եզակի ձեւով կը գտնենք նաեւ տող 56, այն հատուածին մէջ, զոր համարած ենք յետնագոյն գրչէ, այսպէս· «Սա (Մաշտոցս) եգիտ նշանագիր գպրութեան հայերէն լեզուին վարելոյ ալփաբետացն (Զ· ալափետացն) հանգամանս»։ Թէ հոս նախնաբար «նշանագիրս» եղած պէտք է ըլլար, չենք կասկածիր։ Վարդան գրիչ իր արտագրութեան մէջ չատ ուշադիր չէ եղած առհասարակ ուղղագրութեան ինչպէս «ալափետացն» ցոյց կու տայ։

Գրուածքս նպատակ ունի Հայոց թագաւորներու եւ եպիսկոպոսապետներու ժամանակագրական պատկերը ներկայացնել· դէմ առ դէմ համադրութեամբ։ Այս գործողութիւնը Փաւստոսի Պատմութեան «Նախագիտելի խոստովանութեան» մէջ այսպիսի տողերով արտահայտուած է· «Ժամանակագիր արարեալ ի թագաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչեւ վերջին ժամանակն վախճանելոյ թագաւորացն Հայոց· եւ ի քահանայապետութենէն Վրթանայ որդւոյ Գրիգորի առաջնոյ քահանայապետի մինչեւ ցայնոսիկ ի վերջինսն, որք կային (տպ· կային) գլխաւորք եպիսկոպոսք Հայոց, մի ըստ միո—

*չէ կարգօք, թուօք եւ համարօք կանոնեալ դրոշմեալ նկարեցի իւրաքանչիւր գլխովք»: Փաւստոս այս ծրագիրը ի գլուխ հանած է տալով Ա. գրքի մէջ ժամանակագրութիւն մը, եւ Բ. գրքի 1–4 դպրութիւններու մէջ «պատմութիւնք»ը:*

*Գրուածքիս մէջ կը գտնենք այդ ժամանակագրութիւնը ճշդիւ նշանակուած ծիրին մէջ, Խոսրովէն ցԱրտաշէս. եւ Վրթանէսէն ցԱսպուրակ(էս):*

*Փաւստոսի ժամանակագրութիւնը, ինչպէս Սեբէոսի Պատմութեան Նախերգանքէն կը տեսնուի, տասուելապէս քաղաքական պատմութեան ժամանակագիր պատկերը կը գծէր: Գրուածքէս կ'իմանանք, թէ անոր կից կը գտնուէր բաժին մ'ալ, որ թագաւորներու եւ կաթողիկոսներու յաջորդութեանց ժամանակագրական պատկերը կ'ընծայէր: Այնպէս որ գրուածքս հիմնական մասին մէջ Փաւստոսի Պատմութեան կը վերաբերէր. այն է Վրթանէսէն մինչեւ Ասպուրակէս բաժինը. իսկ Վռամշապուհէն մինչեւ Արտաշէս եւ Մարգպանական շրջանի սկիզբը, Եղնիկի յաւելուածը հարկ է նկատել. Եղնիկի, որ ըստ ամենայն հաւանականութեան թարգմանիչն եղած է Փաւստոսի գործին, բայց ոչ ա՛յն բնագրին, որ հասած է այսօր մեզի չարատանջ խմբագրութեամբ: Ա՛յս խմբագրութենէն հանուած է գրուածքս, որ Եղնիկի անունը կը կրէ:*

*Գրուածքս միակ ձեռագրին մէջ խորագիր կը կրէ «Նշանագիր կարդաց բանից...»: Խնդիր է, թէ «նշանագիր» հոս նախնակա՞ն ընթերցուածը կը ներկայացնէ: Վասն զի այն դարուն, երբ կ'ապրէր Եզնիկ, «նշանագիր» միայն ածականաբար կը գործածուէր, ուստի կը սպասուէր «նշանագիր կարդք բանից»: Եզակի գոյական երբեք. իսկ յոգնակի անեզական «նշանագիրք» աղբափետք, այբուբենք ·դմ)ջὰ στοιχεῖα) իմաստն ունէր: Գրուածքիս վերջը, այլ ձեռքէ յաւելուածի մէջ կը կարդանք ի մասին «Մաշտոցի» (իմացիր՝ Մաշտոցի). «Սա եղիտ նշանագիր դպրութեան հայերէն լեզուին՝ վարելոյ ալփաբետացն հանգամանս» (տող 55–57): Տեղիքս դասական աղբիւրէ մը փոխ առնուած կ'երեւայ, ուր պէտք է եղած ըլլար. «Սա եղիտ զնշանագիրս դպրութեան հայերէն լեզուին՝ զվարելոյ աղփաբետացն հանգամանս»: Գրիչը Վարդան, անփոյթ օրինակող մ'եղած է, բազմաթիւ են իր գրչին տակ գրչագրական վրիպակներ, ինչպէս հոս «ալափետացն»: Վերադոյն յիշեցի «նշանագիրք» բառին նախնեաց քով գործածութիւնը: Այս տեղ յառաջ կը բերեմ երկու տեղիք. «Պարտ եւ պատշաճ է մեզ ոչ կարօտանալ* ի նշանագիրս *գրելոյն օգնականութեան», որ թարգմանութիւնն է յն.* γράμματα *յգ. բառին, գիրք, գրուածք իմաստով. ուստի «ի նշանագիրս գրեալք»: Եբր. Ե.* 12. *«Զի՞նչ են* նշանագիրք *սկզբան*

բանից Աստուծոյ» , թարգմանութիւնն է յն· τὰ στοιχεῖα (եզ· στοιχεῖον ) բառին , որ այլուր առ հասարակ տարերք կը թարգմանուի· իսկ Բ· Պետր· Գ· 10 եւ 12 «բնութիւնք» : Այս երեք նշանակութիւններն ալ ունի յունարէն բառը : Ինչպէս յոյնին τὸ στοιχεῖον A , Ա· նշանագիրն կամ տառն հայերէնի մէջ կ՚ըսուէր Ե· դարուն՝ «Նշանախեցն (կամ գրախեցն) Ա· · · : (Մատթ· Ե· 18 Ղուկ· ԺԶ· 17) եւ ոչ «նշանագիրն» :

Այս պատճառաւ ալ Հ· Յ· Գաթըրճեան , անշուշտ ոչ սխալ ընթերցմամբ , այլ բանասիրական թեթեւ , երկու գրի սրբագրութեամբ իր օրինակութեան մէջ առած է «Նկարագիր» բառը փոխանակ նշանագիր : Այս նկարագիր բառը յաճախ կիրարկուած է դասական գրականութեան մէջ , ըստ ամենայնի յունարէն χαρακτὴρ բառին ունեցած առումներով : Յոյն բառին նշանակութիւնը այսպէս կը սահմանէ C· Alexandre իր բառարանին մէջ· caractère gravé ou ciselé, empreinte o u gravure quelconque, trait, linéament; empreinte o u coin de la monnaie: trait, linéament, e t p a r e x t. traits du visage, figure, physionomie grdq 1 ip χαράσσω դրոշմել , գրել , նկարել , տկօսել եւն : Χαρακτὴρ նկարագիր թարգմանուած է Եբր· Ա· 3 (յառաջ բերուած Ագաթ· Վարդ· 174· Փաւստ· Դ· 5· Սեբեր· 18) «նկարագիր էութեան» , զոր Եփրեմ իմացած է «կերպարանք

մեծութեան» (Գ· էջ 198)· եւ Փաւստոս Ե· 28 «կերպարանք չութեան»· այսպէս նաեւ Վուլգատա՝ figura: Նոյնպէս Ոսկ· Մատթ· 58 եւ 468, Սեբերիանոս, 124, նոյն բառը նկարագիր կը թարգմանեն «կերպարանք»: Հաւանօրէն Սեբեր· 11 «փրկիչն... եցոյց զերկուս լուսաւորս նկարագիր (Լայդէնի օրինակն՝ նկարագիրս) ճշմարտութեանն՝ զաստուածութեանն նշանօք եւ զմարդկութեանն չարչարանօք նոյնպէս χαρακτῆρας կ'ենթադրէ: Ուրիշ դէպքերու մէջ «նկարագիր» կը համապատասխանէ յն· ἱστορία բառին, որուն նշանակութիւնն է «պատմութիւն»· եւ եկեղեցական մատենագրութեան մէջ՝ sens littéral ou historique des Ecritures (Alexandre), այն է Աստուածաշունչի խնդրոյ առարկայ որեւէ տեղիքը· այսպէս Ոսկ· Մատթ· 443 եւն: Փաւստոս Դ· 53 «կնքե(ա)լ վարագ նկարագիր մատանեաւ» իմանալու է մատանի, որուն վրայ փորագրուած էր Վարազ:

Այս տեղիքներէն կրնանք հետեւցնել, թէ Փաւստոսի «Կանոնեալ դրօշմեալ նկարեցի» արտայայտութեան համապատասխան բառ մը կիրարկուած ըլլալու էր խորագրիս մէջ, եւ այդ էր նկարագիր, որ աշխահարար նկարագրութիւն բառին իմաստն ունենալու էր մերձաւորապէս: Այս նկատումով պահեցի հրատարակութեանս մէջ Հ· Գաթըրճեանի սրբագրութիւնը:

Բ· «Կարգաց բանից» ուղղած էի «Ի բա-

նից» ներկայ հրատարակութեան մէջ դուրս ձգեցի այս ի նախադրութիւնը, նկատի առնելով, որ նախնեաց սիրելի է կարգ գործոց, իրաց, գնացից, այսպէս նաեւ բանից։

գ. Ձեռագրին «Եզնկանն» ընթերցուածը կարելի չէ որ եւ է քերականական օրէնքով արդարացնել։ Եզնիկ ուղղական ձեւը կը հոլովի սեռ. Եզնկայ, որ Ն յոդին կցումով կ'ըլլայ Եզնկայն։ Անունիս ուղղականը Եզնիկ ծանօթ է նաեւ գրուածքիս կցուած յաւելուածէն (տող 62)։ Իսկ Բ. հատուածին վերջը կ'ըսուի[1]. «եղիցի յիշատակ Եզնակի թարգմանել»։ Տեղիքս ուղղեցի Եզնկայ ի թարգմանել։ «Յիշատակ»ս առանց տարակուսի նախնաբար կը գտնուէր Ա. հատուածի վերջաւորութեան, «Եւ ապա մարգպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ» տողերէն ետքը. եւ կը հայէր բովանդակ գործին, այսինքն Փաւստոսի Պատմութեանց թարգմանութեան։ Կը տարակուսիմ թէ սկզբնագրին մէջ այս ձեւով գրուած ըլլար Յիշատակս. դասական դարու հեղինակ մը պիտի գրէր պարզօրէն. «Եղիցի յիշատակ Եզնկայ երիցու, որ թարգմանեացն զգիրս զայս»։ Այս տեսակէտէն կը ստանայ Յիշատակս ծանրակշիռ նշանակութիւն։

[1] Այս ձեւին կը հանդիպինք նաեւ այլ ձեռագիրներու մէջ. կ'ըսուի «Եզնկանն տացեալ վասն արարչութեան աւուրց», զոր ուրիշ ձեռագիրներ կը խորագրեն «Եզնկայ թարգմանչի», նաեւ «Եզընկացւոյ» (Տիւրինգէն, 74. 44ա, էջմ. 1098 242ա, Վատիկան, 455բ. յամէ 1287) եւն։

Գրչին անհմտութիւնը կը մատնէ «Եզ-նակնի» գրչութիւնը, կը յիշուի Թ. դարուն Եզնակ վարդապետ իբրեւ մանր մատենագիր, որուն սեռականը կը հոլովի «Եզընկայ», ձե-ռագիրներէն ոմանք այս անունի քով կը դնեն «Կողբացի» յորջորջանքն ալ: Տեսանք վերա-գոյն Եզնիկ անունին սեռականն «Եզնկանն», Արշակ անունը գրուած Աշակ, թոռն, փոխ. թոռին, «յետ Վռամշապուհոյ» փոխ. «յետ Խոսրովու Վռամշապուհ», որդի Վռամշա-պուհոյ». որ փոխ. եւ, «ի Մեհենագեաւղն» փոխ. ի մեհենագեղջէն (Թերեւս ուղղագոյն՝ ի մեծէ մարգարէանոցէն. Հմմտ. Փաւստ. Գ. 16) եւն:

Դ. Խորագրին շարունակութեան մէջ կ՚ըսուի, «Թէ ուստի՞ էին, որպէ՞ս, զիա՞րդ յաջորդութիւնք Թագաւորացն ի Տրդատայ եւ քահանայապետիցն ի Ս. Գրիգորէ, որ կային մինչեւ առ մեզ. վարուցն փոքր ի շատէ դրոշ-մեալ վասն (ժամանակացն) գիտութեան ի վերայ հասանելոյ»: Այս խոստարանութիւնը չ՚արդարացներ գրուածքիս սկզբնաւորութիւ-նը, որ կը սկսի Թագաւորաց յաջորդութիւնը Խոսրով Փոքրէն եւ քահանայապետիցն՝ Վըր-թանէսէն. ուստի կը պակսին «Տրդատ որդի Խոսրովու» եւ Գրիգոր, Արիստակէս (իմացիր Մեհրուժան):

Առաջին Թագաւորներու՝ Խոսրովի, Տի-րանի եւ Արշակի տարիները գրուած են ժա-մանակակից քահանայապետից անունները՝

*Վրթանէս, Յուսիկ, Փառներսեհ, Ներսէս որդի Աթանագինէի: Այնուհետեւ եւեւէ եւեւ կը նշանակուին «կաթողիկոսաց» յաջորդութիւնք՝ Սահակ, Շահակ, Զաւրէն, Ասպուրակ. եւ թագաւորք՝ Պապ, Վարազդատ, Օտարակալութիւն, Խոսրով — Արշակ կոմէսք Հռովմ. բաժին — Վռամշապուհ, Մարզպանք Պարսից, Արտաշէզ, Մարզպանք պարսիկք մինչեւ առ մեզ»: Կը յաջորդէ. «Առ որով Ասպուրակէս: Եւ դարձեալ առ որով ընտրեցաւ Սահակ անուն լինել կաթողիկոս», առանց յայտարարութեան թէ որ թագաւորը կ՚ակնարկեն այդ երկու «առ որով»ները:*

*«Մինչեւ առ մեզ»: Մինչեւ ե՞րբ: Զենք կրնար վստահաբար հաստատել, թէ Եղնիկ մինչեւ ուր հասցուցած է թագաւորաց եւ կաթողիկոսաց յաջորդութիւնը: Որովհետեւ ան ձեռքի տակ ունի Փաւստոսի Պատմութիւնը (սկզբնագրի մէջ), բնականաբար պիտի մնար այն սահմանին մէջ, ուր կը վերջանար Փաւստոսի Պատմութիւնը. ուստի մինչեւ* 386/7:

*Թէ թագաւորաց եւ կաթողիկոսաց յաջորդութիւնք կը վերջանային Խոսրով Գ.ով եւ Ասպուրակէսով, այս կը տեսնուի հետեւեալ պարագայով:*

*Եղնիկ տող* 20—23 *յիշեց թէ յետ Ներսէսի* († 372) *յաջորդեցին «Սահակ, Շահակ, Զաւրէն եւ Ասպուրակ(էս): Ըստ Փաւստոսի Ասպուրակէս կ՚ապրէր Խոսրով Գ.ի օրով,*

ուստի 385–87 տարիներուն : Փաւստոսի հետեւելով Եղնիկ պէտք էր յիշէր թէ առ Խոսրովու կաթողիկոսն էր Ասպուրակէս : Այժմ այս անունը կը գտնենք տող 43ի մէջ, այսինքն Վռամշապուհէն, Արտաշէսէն եւ մարզպաններէն յետոյ : Այս դասաւորութիւնը չէր կրնար նախնականն ըլլալ : Մեկնելու համար այս տեղափոխութիւնը պէտի ըսենք, թէ 36–43 տողերը, որոնք 400—427 տարիներուն կը պատկանին, իբրեւ լրացուցագրութիւն աւելցուած են նոյն կամ ուրիշ ձեռքէ այլ եւ այլ տարիներու մէջ օրինակողը, ներս առած եւ զետեղած է անուշադրութեամբ ընդ մէջ 35ի 36 տողերուն, որով տող 44 մնացած է տեղէն չարժած :

Երեք անգամ կրկնուած է այս 45 տողերու մէջ «մինչեւ առ մեզ» մէկ վերնագրի մէջ· ապա տող 39 եւ 43 : Վերջին անգամ յետ Արտաշէսի մարզպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ. ուստի 427էն ետքը :

Այս օրինակողը ուշ ժամանակի գրիչ եղած է · ան ունեցած է իր տրամադրութեան տակ Փաւստոսի Պատմութեան Գ. Գիրքը, այն կերպարանքի տակ, որ հասած է մեզի : Խմբագրութիւնը 490էն ետքը, իբր 500 կատարուած է, ուր Գրիգորի յաջորդները ներկայացուած էին Գրիգորի որդիներ, թոռներ եւ թոռնորդիներ մինչեւ Մեծն Ներսէս մինչեւ Սահակ Մեծ :

*Այս գրիչի ձեռքէն են տող 45 եւ շարունակութիւնը, ուր Գրիգորի Թոռնէն Սահակ ներկայացուած է (որդի Ներսէսի որդւոյ Աթանագինէսի, որդւոյ Յուսկան, Թոռին Գրիգոր Լուսաւորչի)։ Ինչպէս իրեն վերագրուած Տեսիլքի մէջ ալ կը կրկնուի։*

*Ինչպէս Փաւստոսի քով, նոյնպէս այս տեղ կաթողիկոսաց ցանկէն հանուած է Գրիգորիս, յաջորդն Վրթանէսի, որուն գոյութիւնը սակայն պահած է կարգն հայրապետաց, որ պահպանուած է սկզբնագիր կարգացի կից։*

*Բայց գիտենք Փաւստոսէ (Զ· 4), թէ Ասպուրակ «առաջնորդեաց դրանն Խոսրովու», ուստի Սահակ ալ նոյն թագաւորի օրով յաջորդած պէտք է ըլլայ (387°)։ Այս տեղիքները յայտնապէս կը դնեն մեր առջեւ, թէ Սահակ (= Զոնակ, Յուսիկ) Արշակի եւ Պապի օրով, իսկ Շահակ, Զաւրէն (ըստ Փաւստոսի Զաւէն, Շահակ) Վարազդատի, Օտարականութեան շրջանին եւ Արշակի օրով, ուստի 375–385 շրջանին պէտք է յաջորդած ըլլան։ Այս թագաւորներու եւ «կաթողիկոսներու» ժամանակակցական դասաւորութիւնը, նման նախորդներու, յետոյ անծանօթէ մը խանգարուած է· այս խանգարումը կամ խմբագրութիւնը պէտք է տեղի ունեցած ըլլայ 490էն ետքը, այն շրջանէն ետքը, երբ Փաւստոս ենթարկուեցաւ նոր խմբագրութեան։ Այս շրջանին է որ «քահանայա–*

*պետք տեղի տուլին «կաթողիկոսներու» կամ գլխաւոր եպիսկոպոսներու, ըստ Փաւստոսի:*

*Եղնիկ իւր խոստաբանութեան մէջ Թադաւորաց եւ քահանայապետից յաջորդութիւնը կը խոստանար տալ «մինչեւ առ մեզ»· հաւատարիմ իր խոստումին կը դրէր թէ յետ մահուան Վռամշապուհի «ապա ամս հարուստս մարզպանք Պարսից կալան մինչեւ առ մեզ» (այն է 410էն մինչեւ 420)· «Իսկ ապա Արտաշէս» կը թագաւորէ (ըստ Եղիշէի ամս վեց, իրր 420էն 426)· «եւ ապա մարզպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ, ուստի 426—435/6, Վասակ Սիւնւոյ մարզպանութենէն յառաջ· Վասակ մարզպան կը յիշուի առաջին անգամ 444ին, Շահապիվանի ժողովին մէջ: Եղնիկ իր օրով Հայոց «կաթողիկոս» կը ճանչնայ Սահակը· եւ որովհետեւ խօսք չ՚ըներ քահանայապետից յաջորդութեան ընդհատումի մասին, կրնանք հետեւցնել, թէ նա գրութիւնս աւարտած է 439 սեպտեմբերէն առաջ:*

Ե· *Եղնիկ իր խոստաբանութեան մէջ կ՚ըսէր ի վերջոյ, թէ բացի յաջորդութենէ պիտի տար վարուճն փոքր ի շատէ դրոշմեալ վասն (ժամանակացն) գիտութեան ի վերայ հասանելոյ»: Ինձ կը թուի այժմ թէ հոս Թադաւորաց եւ քահանայապետից դահակալութեան տեւողութեան մասին է խօսքը· ուստի հարկ է աւելցնել «ժամանակացն», որ ինկած կ՚երեւայ: Փաւստոս իր ժամանակագրու-*

*թեան մէջ մասնաւոր ուշադրութիւն դարձուցած է Հռոմայեցւոց, Պարսից եւ Հայոց թագաւորաց ժամանակագրութեան եւ թագաւորութեան տեւողութեան: Այս կանոնին հետեւած ըլլալու է նաեւ հոս: Եւ այն պարագան, որ Եզնիկի Նկարագիրը իր առաջին բաժնին մէջ ժամանակակցական պատկերը կու տայ Ա—Գ թագաւորներու եւ Ա—Դ քահանայապետներու, հարկ կը դնէ ենթադրելու, թէ նաեւ թագաւորներու եւ քահանայապետներու իշխանութեան տեւողութեան տարիները նշանակած ըլլալու էր: Իր Պատմութեան մէջ Զաւէնի եւ Շահակի գլխաւոր եպիսկոպոսութեան տարիները կը յիշէ, միայն՝ Գ. եւ միւսին Բ. նշանակելով: Միւս կողմէ ունինք հին գաւազանագիրքեր Հայոց հայրապետներու, որոնց ծանօթ են Գրիգորէն մինչեւ Սահակ Մեծ յաջորդութեանց իւրաքանչիւրի տարիները: Ասոնք ունեցած են իրենց ձեռքի տակ գրաւոր աղբիւր. որ միայն Փաւստոսի ժամանակագրութիւն կամ Եզնիկի այս Նկարագիրը կարող էր ըլլալ, աւելի լաւ պահուած օրինակներու մէջ, անոնցմէ մին մատչելի եղած է «Ժամանակք հայրապետաց» գրութեան հեղինակին, ուրիշ մը Diegesis գրութեան, երրորդ մը Մ. Խորենացւոյ եւ Ե. դարէն մինչեւ Ժ. դար՝ Յովհաննէս Դրասխանակերտցւոյ, լռելով ուրիշներու անուններ:*

*Ինձ ծանօթ հնագոյններէն մէկն է «Ժամանակք Հայրապետաց», պահուած Պարի–*

սեան օրինակին մէջ, զոր ներկայացուցինք վերագոյն: Այս ալ թէեւ անթերի չէ, բայց եւ այնպէս յարգի է գոնէ ինչ ինչ առաւելու-թիւններով: Հնագոյն օրինակ մը ունեցած է Գրիգորէն մինչեւ Գիւտ (Գադ) կաթողիկոս շրջանի համար, որ ապա ենթարկուած է խմբագրութեան համաձայնեցնելու համար Ագաթանգեղոսի եւ խմբագրեալ Փաւստոսի ժամանակագրութեան: Բայց բախտով մը անաղարտ մնացած է «Գրիգորիս ժէ», որ յաջորդած է Վրթանէսի եւ իրեն յաջորդ ունեցած է Յուսիկը: Դարձեալ իրեն անծա-նօթ մնացած են Ղազար Փարպեցւոյ Ա. մասը եւ առ Վահանն գրուած Ղազարի Պատմութիւնը: Այսպէս ան ունի Ե. դարուն համար Սահակ, Գադ եւ Յովհաննէս անունները:

Ինչպէս այլուր խօսած եմ, Ագաթանգե-ղոսի Պատմութիւնը հրապարակ դրուեցաւ 490ին, ուր Տրդատ եւ Գրիգոր եւ Արիստակէս Դիոկղետիանոս եւ Կոստանդիանոս թագա-ւորներու ժամանակակից կը ներկայացուէին: Այս ժամանակագրութեան համաձայն նոյն դարու վերջերը «սրբագրութեան» ենթար-կուեցաւ Փաւստոսի Պատմութիւնը: Թագա-ւորներ եւ կաթողիկոսներ ջնջուեցան պատ-մութենէն եւ Հայոց քաղաքական եւ եկեղե-ցական պատմութիւնը տուժեց իր ուղիղ ժա-մանակագրութենէն շատ բան: Ներքին եւ Արտաքին աղբիւրներու վերաքննութեամբ հնարաւոր եղաւ վերականգնել Հայոց թէ

*քաղաքական եւ թէ եկեղեցական պատմութեան ուղիղ ժամանակագրութիւնը, զոր կը զետեղեմ այստեղ միւսանգամ, թողլով ընթերցողներուն համեմատելու զանոնք աղաւաղուած բնագիրներու հետ։*

| | |
|---|---|
| ՏՐԴԱՏ Բ· *որդի Խոսրովու* Ա· 217–253· | *Գրիգոր* Ա· *ամս* Լ· 219–249 |
| *Օտարակալութիւն·* 253–272· | *Մեհրուժան ամս* Է· 250–257 |
| *Արտաւազդ* 254–272 | *Վրթանէս ամս* ԺԷ· 257–274 |
| ԽՈՍՐՈՎ Բ· *որդի Տրդատայ* Բ· 273–283 | *Գրիգորիս ամս* ԺԷ· 274–291 |
| ՏԻՐԱՆ Ա· *որդի Խոսրովու* Բ· 283–295 | *Յուսիկ ամս* Գ· 291–294 |
| *Օտարակալութիւն·* 295–297 | *Փառէն ամս* Դ· 294–298 |
| ԱՐՇԱԿ Բ· *որդի Տիրանայ* 298–338/9 | *Արիստակէս ամս* ? 298–338 |
| ՏԻՐԱՆ Բ· *որդի Արշակայ* Բ· 338–349 | *Ներսէս ամս* ԼԴ 338–372 |
| ԱՐՇԱԿ Գ· *որդի Տիրանայ* 349–367 | *Շահակ–Զաւէն* 362–366 |
| *Օտարակալութիւն·* 366–369 | *Յուսիկ* 372–375 |
| ՊԱՊ *որդի Արշակայ* 369–374 | *Զաւ(ր)էն ամս* Գ· (Դ) 376–379 |
| ՎԱՐԱԶԴԱՏ | *Շահակ ամս* Բ· *Խոր·* Զ· 380–2 |
| *Օտարակալութիւն·* | |
| ԱՐՇԱԿ *որդի Պապայ* | |
| ԽՈՍՐՈՎ Գ· | *Ասպուրակ* Է· *Խոր·* Ե· 382/87 |
| *Օտարակալութիւն·* | *Սահակ Մեծ* ԾԱ· 387–349 |

ՎՌԱՄՇԱՊՈՒՀ 400–410
Մարզպանք
ԱՐՏԱՇԷՍ որդի
Վռամշապհոյ 420–426
Մարզպանք պարսիկք
Վասակ Սիւնի մարզպան
440–451
Մարզպանք պարսիկք — Գադ ժէ· Յովհաննէս
Վահան Մամիկոնեան
485–505°

Աղաթանգեղոսի ժամանակագրութեան թերութիւնը զգացած է վաղ իսկ Մովսէս Խորենացի, երբ ուզած է իմանալ Տրդատի թագաւորութեան սկիզբը, ըստ այնմ դասաւորելու համար իր Պատմութեան ժամանակագրութիւնը· «Քանզի ոչ է պատմութիւն ճըշմարիտ առանց ժամանակագրութեան· վասն որոյ եւ մանրախուզիւ քննեալ՝ գտաք զԹագաւորելն Տրդատայ յերրորդ ամի Դիոկղետիանոսի, եւ գալ այսր (ի Հայս) մեծաւ զօրու» (Գ· 82) : Թէ ի՞նչ հիմամբ կամ ինչ աղբիւրէ օգտուելով այս եզրակացութեան եկած է Խորենացի, չէ հաղորդած : Դիոկղետիանոսի Գ· տարին է 286/7 : Այս տարին ելակէտ ընտրելով Գրիգորի վիրապի մէջ անցուցած 13 տարիները, այն է Տրդատի ԺԳ· տարին կը համարի 299/300, երբ կ՚իյնայ Հռիփսիմեանց Հայաստան գալն եւ նահատակուիլը : Գրիգոր եպիսկոպոս կը ձեռնադրուի Տրդատի ԺԷ· տարւոյն (303/4)· իրեն կը յաջորդեն

*աթոռին վրայ Արիստակէս Տրդատի ԽԶ. տարւոյն (332/3) մինչեւ ԾԳ (340/41). Տրդատ կը վախճանի ԾԳ. տարւոյն (286/7—342/3 Գ. 92):*

*Այս ժամանակագրութեամբ Տրդատի յաջորդները իշխած կ'ըլլան.*

| | |
|---|---|
| *Խոսրով Բ. ամս Թ.* | 343–352 |
| *Տիրան ամս ԺԱ(ԺԶ).* | 352–363 |
| *Արշակ Բ. ամս Լ.* | 363–393: |

*Ամմիանոս Մարկեղոսի համաձայն Արշակ սպանուեցաւ 367/8ին, որ գահ բարձրացած էր 349/50ին:*

*Անկէ կը տեսնուի թէ Մ. Խորենացւոյ «մանրախուզիւ քննեալ» թուականը բաւական չէր «ճշմարիտ պատմութեան» ուղիղ ժամանակագրութեան համար:*

*Մ. Խորենացւոյ այն տեղիքը, թէ «մանրախուզիւ քննեալ պատք, զԱ. ամն Տրդատայ ի Գ. ամին Դիոկղետիանոսի, եւ Սամ. Անեցւոյ հաւաստումը, թէ այլք Տրդատի Ա. տարին Դիոկղ. Թ. տարւոյն կը նշանակեն, թոյլ կու տան ենթադրելու իրենց ձեռքի տակ աղբիւր մը, ուր Տիրանի վերջին տարին Դիոկ. Թ. տարւոյն (կամ Գ. տարւոյն) նշանակուած տեսած են եւ զայն մերձեցուցած Խոսրովի վերջին եւ Տրդատայ Ա. տարւոյն. վասն զի Դիոկղ. Թ. տարին է 293/4 այն է Տիրանի ԺԱ. (կամ վերջին) տարին, այս դէպքին Տի–*

րանի վերագրուած ԺԶ· խմանալու է 298, որ է Արշակի Ա· տարին:

Նոյն երեւոյթը կը տեսնենք Փաւստոսի քով:

Տրդատի կը յաջորդեն հոս՝

1· Խոսրով Բ· որդի Տրդատայ, որդւոյ Խոսրովու, որդւոյ Վաղարշայ:

2· Տիրան որդի Խոսրովու·

3· Արշակ որդի Տիրանայ·

4· Պապ որդի Արշակայ եւ այլն:

Իսկ Գրիգորի յաջորդներն են·

1· Արիստակէս, որդի Գրիգորի,

2· Վրթանէս որդի Գրիգորի,

3· Յուսիկ որդի Վրթանէսի, եղբայր Գրիգորիս Աղուանից կաթողիկոսի,

4· Աթանագինէս եւ Պապ որդիք Յուսկան անարժան կը գտնուին կաթողիկոսական աթոռին:

5· Դանիէլ ասորի յանձն չ'առներ նստիլ յաթոռ Յուսկան·

6· Փառէն, նստաւ սակաւ ժամանակս· աւուրս Տիրանայ·

7· Շահակ Աղբիանոսեան· յաւուրս Տիրանայ·

8· Ներսէս որդի Աթանագինեայ որդւոյ Յուսկան, յաւուրս Արշակայ· Զոնակ = Շահակ=Յուսիկ հակառակաթոռ·

9. Յուսիկ (Շահակ). աւուրս Պապայ, Յուսիկ կին կ'առնէ Տիրան թագաժառանգին դուստրը.

Աթանագինէս եւ Պապ Տիրանի երկու քոյրերը՝ Բամբիշն եւ Վարազդուխտ:

Եթէ ըստ Ագաթանգեղոսի Տրդատ եւ Գրիգոր Դ. դարու առաջին կէսին կ'ապրէին, վախճանած իրր 340ին, եւ Ներսէս վախճանած է Պապի (368/9–374) Դ. տարւոյն (372/3) Արշակ Բ. գահ ելած է 349/50ին, Խոսրով Բ.ին եւ Տիրանին համար միջոց կը մնայ 10 տարի միայն, մինչ անոնք թագաւորած են Թ. եւ ԺԱ. = 20 տարի: Իսկ կաթողիկոսաց համար (որոնց իշխանութեան տարիներու գումարն է 15 + 6 + 4 + 34 = 59) մինչեւ իրր 32 տարի, մինչ իշխանութեան տարիները կու տան 59:

Նկատի առնելու է ուրիշ անպատեհութիւն մ'ալ.

Գրիգորի երէց որդին Վրթանէս, որ ծնած է Կեսարիա իրր 260ին ,340ին երբ յաջորդեց հօր իրր 80ամեայ էր, սակայն ինչպէս կ'ունենայ «ի ծերութեան», ինչպէս Աբրահամ եւ Զաքարիա, երկուորեակ զաւակ, Յուսիկ եւ Գրիգորիս (իրր 340ին). Յուսիկ կ'ամուսնանայ Տիրանի դստեր հետ եւ կ'ունենայ նոյնպէս երկուորեակ՝ Աթանագինէս եւ Պապ. անոնք կին կ'առնեն Տիրանի քոյրերը (ուստի Խոսրով Բ.ի դուստրերը?). Աթանագինէս կ'ունենայ զՆերսէս, որ 350ին եպիսկո–

պոս կ՚օծուի։ Այս 340–350 տարիներուն ինչպէս կարելի է ենթադրել Յուսիկի ծնունդը, զաւակը եւ եպիսկոպոսի Թոռնիկը։

Փաւստոս, որուն համար կ՚ըսուի թէ Մեծ ժամանակագիր է Յունաց, չէր կրնար իրեն թոյլ տալ այսպիսի անհեդեդութիւններ գրի առնել։

Եթէ անկարելի է այս, պէտք է կամ Ագաթանգեղոսն եւ Փաւստոսը պատմութեան համար անպէտ աղբիւրներ նկատել, եւ կամ ենթադրել թէ անհմուտ ձեռքէ խանգարուած են մեր հնագոյն պատմական աղբիւրները։

Եթէ Ագաթանգեղոս, որ այր Հռոմայեցի է մեծն Հռոմայ, հմուտ հռոմայերէն եւ յունարէն լեզուներու, վարժ մատենագրի, Արշակունի թագաւորներու արքունիքին մէջ Տրդատի հրամանով, նոտարական վաւերագիրներու վրայ յեցած հեղինակած է Պատմութիւնս եւ Փաւստոս Բիւզանդեան, մեծ ժամանակագիրն Յունաց իր Պատմութիւնքը հայ հողին վրայ, կամ ականատես կամ ականջալուր գրած է Դ. դարուն վերջերը, եւ այսպիսի անհեդեդ, անժամանակագրական տեղեկութիւններու ծրարներ դրած են մեր առջեւ, ստիպուած ենք խորհելու, թէ կա՛մ անոնք կեղծ հեղինակներ են եւ կամ անոնց հեղինակութիւնները խարդախուած հասած են մեզի։

Փաւստոս իր Պատմութեանց մէջ, մասնաւորապէս Ե. գրքին մէջ, ունի հատուած–

ներ, որոնք ըստ ամենայնի համապատասխան են արտաքին աղբիւրներու հաղորդագրութիւններու։ Այս հատուածները կը վկայեն, թէ ան յեցած էր պատմական վաւերագիրներու վրայ, ծանօթ էր ժամանակակից անցուդարձերու, հաւատարիմ պատմագիր էր։ Եւ եթէ կան այդ հատուածներու կից անպատմական, անհաւաստի տեղեկութիւններ ալ, անոնք ցոյց կու տան, թէ իրօք, երկրորդ, թերեւս եւ երրորդ ձեռքէ խարդախուած, աղճատուած եկամուտ տեղիքներ են, անհարազատ սկզբնագրին։ Այս անդրադարձութիւնը կը յորդորէ զմեզ աւելի վստահութիւն արթնցնել մեր մէջ իրեն հանդէպ եւ հետամուտ ըլլալ գտնել, վեր հանել եկամուտ տարրները եւ վերակազմել սկզբնագիրը որքան հնարաւոր է։

Այսպիսի վստահութիւն չի ներշնչեր սակայն մեզի Ագաթանգեղոս, որ ամբողջութեամբ կեղծիք է, թէ անունով եւ թէ Պատմութեամբը։

## Ա·

## ՆԿԱՐԱԳԻՐ ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ ԵԶՆԿԱՑ ԵՐԻՑՈՒ

ԹԷ ՈՒՍՏԻ՞ ԷԻՆ ԿԱՄ Ո՞ՐՊԷՍ, ԶԻԱ՞ՐԴ ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆՔ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ՝ Ի ՏՐԴԱՏԱՅ ԵՒ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՑՆ՝ Ի ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԷ, ՈՐ ԿԱՅԻՆ ՄԻՆՉԵՒ ԱՌ ՄԵԶ· ՎԱՐՈՒՄՆ ՓՈՔՐ Ի ՇԱՏԷ ԴՐՈՇՄԵԱԼ ՎԱՍՆ ԳԻՏՈՒԹԵԱՆ Ի ՎԵՐԱՑ ՀԱՍԱՆԵԼՈՑ

**Յետ Տրդատայ Թագաւորեաց որդի նորա[1], որ կոչեցաւ Փոքր Խոսրով: Ի սորա աւուրս եկաց քահանայապետ երէց որդին Գրիգորի Վրթանէս:**

**Յետ նորա Տիրան, որդին Խոսրովու: Ի սորա աւուրս Յուսիկ որդի Վրթանիսի եկաց քահանայապետ:**

**Յետ նորին Թագաւոր յաւուրս Տիրանայ: Յետ մահուան Յուսկանն կալաւ զքահանայապետութիւնն Հայոց Փառներսեհ ոմն մի յագարակէն Մատրանն Յովհաննու, ի Տարաւն գաւառէ ի Մեհենադեղջէն[2], որ մայր է եկեղեցեացն Հայոց, այսինքն նախ անդ եկեղեցի զառաջին շինեալ:**

**Յետ նորա Թագաւորէ Արշակ որդին Տիրանայ: Ի սորա աւուրս Ներսէս որդի Աթանագինէի եկաց յաթոռն Յուսկանն՝ Թոռ(ի)ն Գրիգորի մեծի, զորմէ ասեն համեմատե[ա]լ Գրիգորի ի գործս կարգաց վարուց գնացից**

---

խորագիր· Զ· Նշանագիր: — Զ· չունի ի (Տրդատայ): — Զ· Եզնկանն: — [1] Զ· որդին իւր:

[2] Զ· ի մեհենադեաւղն:

իւրոց: Զկնի սորա Սահակ. սա եկաց կաթողիկոս: Եւ ապա Շահակ եւ Զաւրէն եւ Ասպուրակ կացին կաթողիկոսք, որ էին ի զաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի:

Յետ նորա Պապ որդին Արշակայ:

Յետ նորա Վարազդատ ի նմին թագաւորութեանն տոհմէ: Եւ[3] ապա աւտարակալութիւն:

Ապա Խոսրով ոմն ի նմին տոհմէ թագաւորացն Հայոց: Առ սովաւ բաժանեցան զերկիրն Հայոց ընդ երկու՝ թագաւորքն Յունաց եւ թագաւորքն Պարսից: Պարսից կողմանն Խոսրով թագաւորէ: Մասինն Յունաց աշխարհին Ա<ր>շակ ոմն ի նմին տոհմէ թագաւորէ հրամանաւ Յունաց թագաւորին: Յետ սորա կոմէսք կալան:

Յետ <Խոսրովու Առաւան հազարապետ. ապա>, Վռամշապուհ[ոյ] <որդի Խոսրովու>, որ կողմանն Պարսից թագաւորեաց:

Ապա ամս հարուստս մարզպանք Պարսից կալան մինչեւ առ մեզ:

Իսկ ապա Արտաշէզ որդի Վռամշապուհոյ թագաւորէ հրամանաւ Պարսից արքային:

Եւ ապա մարզպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ:

Առ որով Ասպուրակէս կաթողիկոս:

Եւ դարձեալ առ որով ընտրեցաւ Սահակ անուն լինել կաթողիկոս, որ է որդի Ներսեսի

---

[3] Զ. որ:

տռաքինւոյ, թոռն Աթանագինեայ <որդւոյ Յուսկան>, թոռին սրբոյն Գրիգորի:

[Առ սովաւ եւ դպրութիւնք Հայոց յաջորդեալ. եւ կտակարանք եկեղեցւոյ ի սմանէ յառաջ թարգմանեցան: Եւ կարգք գործոցն Գրիգորի նորոգեալ՝ արամբ միով երանելեաւ Տարաւնացւով[4], որում անուն Մասրովպ ճանաչէր. որ էառ զձեռնադրութիւն երիցութեան ի նմին Սահակայ կաթողիկոսէ: Սա եգիտ նշանագիր դպրութեան Հայերէն լեզուին՝ վարելոյ ալփաբետացն[5] հանգամանս: Յորում ժամանակի լցան նոքաւք կարգքն յառաջդիմութեան:

Եւ նոյնուն աշակերտ Ղեւոնդ, այր սուրբ եւ ընտրեալ եւ ճշմարիտ ի գործ մշակութեան Աստուծոյ. եւ Արձան եւ Կորիւն եւ Եղնիկ եւ արբանեակք նոյնուն լուսաւոր հանդիսիցն՝ ձեռնադրեալքն ի նմին սրբոյ կաթողիկոսէ:]

Բ.

Եւ եղեւ հանումն եւ նորոգումն ոսկերացն սրբոցն Գայիանեայ եւ Հռիփսիմեայ[7] եւ ընկերաց նոցին ի Սահակայ կաթողիկոսէ. զի եղածոյն Գրիգորի կային նոքա: Եւ շինեաց զվկայարանսն վիմատաշ կոփածոյ քա–

4 Ջ. Աթանագինէ, թոռն:
4 Ջ. Տարաւնացւոյ:
5 Ջ. ալափետացն:
6 Ջ. յորով:
7 Ջ. Հռիփսիմեա:

*բամբք ի Վաղարշապատ քաղաքի. եւ նորոգեաց զտունն Աստուծոյ, այսինքն զսուրբ եկեղեցին: Զի մեծին Գրիգորի եղեալ էր զհիմունս զայն. որպէս եւ ցուցեալ էր <ի> Տեսլեանն երեւեցելոյ:*

*Բազում եւ այլ տեղիս նորոգեալ է սուրբ եւ ճշմարիտ կաթողիկոսն մեծ(ն) Սահակ:*

*Եւ ապա շինեաց զսուրբ եկեղեցին եւ զվկայարանս սրբոցն ընդ ամենայն տեղիս Հայոց մեծաց:*

*Եւ եղեւ այս ի ժամս Արդլաի*[8] *վանաց երիցու սրբոյ ի Վաղարշապատ քաղաքի*[9] *մինչեւ յաւուրս Կոմիտասայ սրբոցն Հռիփսիմեանց սպասաւորի, որ արժանի եղեւ աթոռոյն սրբոյն Գրիգորի, որ ցանկացաւ նորոգել զեկեղեցիսն, որում եւ շնորհեցաւ մեզ ի Քրիստոսէ նախ նորոգել զսուրբ Կաթողիկէն. եւ ապա զվկայարանսն սրբոյն Հռիփսիմէի, որ կայր նովին պատանաւ սրբոյն Գրիգորի պատեալ իւրովք ձեռաւք՝ ողջ եւ անքակ խառնակք յաւդիցն նովին հանդերձով. որ արդեաւք անհաւատալի թուիցի զկնի մեր եկելոց. այլ մերովք իսկ ձեռաւք արժանի եղաք շօշափել յանդիման բազմամբոխ հրապարակաց. զոր փոխեաց ի հանդիստ ի նոյն յարկս,*

---

8 *«Ասանկ գրոյ մը տեղ աւրուած է. բայց կ'երեւայ որ* ա *գրոյն վերջի ակռան ալ մեկտեղ աւրուած է. եւ ըլլայ ամբողջ անունը* Արդլայի» *կը ծանօթագրէ Հ. Ց. Գաթըրճեան:* Կարդա°լ *Աբրահամու:*

9 *Ձեռագրին մէջ հոս իբր հինգ տառի դատարկ:*

*զոր չինեաց արատաոյ վիմաւք: (Այս եղեւ յաւուրս Յոհաննկան սրբոյ[ն] կաթողիկէի վանաց երիցու եւ կամովեղի[10] Նորուն սրբոյ Հոխիախմէի վանաց երիցու ի Վաղարշապատ քաղաքի. (ի) քսան եւ իններորդ ամի Խոսրովայ[11] արքայից արքայի, որդւոյ Որմզդի:*

*Եղիցի յիշատակ Եզնկայն[12] ի թարգմանել զգիրս զայս:*

Գ.

ԺԱՄԱՆԱԿՔ ՀԱՅՐԱՊԵՏԱՑՆ ՀԱՅՈՑ

| | | |
|---|---|---|
| *Սուրբն Գրիգոր* | *ամս* | *Լ.* |
| ,, *Ռոստակէս* | *ամս* | *Է.* |
| ,, *Վրթանէս* | *ամս* | *ԺԷ.* |
| ,, *Գրիգորիս* | *ամս* | *ԺԷ.* |
| ,, *Յուսիկ* | *ամս* | *Զ.* |
| ,, *Ներսէս* | *ամս* | *Գ.* |
| *Տէր Փառներսէս* | *ամս* | *Դ.* |
| ,, *Շահակ* | | *Զ.* |
| ,, *Զաւրէն[12]ա* | | *Դ.* |
| ,, *Ասպուրակէս* | *ամս* | *Է.* |
| *Սուրբն Սահակ* | | *ԽԱ.* |
| *Տէր Գաղ* | | *ԺԷ.* |

10 *Հ. Յ. Գաթըրճեան կ'առաջարկէ կարդալ* Սամուէլի:

11 *Ձ. Խոսրովայ ա. ամաքայի:*

12 Ձ. «Եզնակնի Թ. զգիրս զայս». ընդգծուածները կազմողի գրչէն են:

12ա *Ձ. զօրէն (կազմողէն):*

| | |
|---|---|
| Տէր Յոհան Մանդանդ· | ԺԲ. |
| „ Բարգէն | Ե. |
| „ Սամուէլ | Ժ. |
| „ Մուշէ | Ը. |
| „ Սահակ | Ժ. |
| „ Քրիստափոր | Ձ. |
| „ Ղեւոնդ | Դ. |
| „ Ներսէս | Ի. |
| „ Յովաննէս | ԺԷ. |
| „ Մովսէս | Լ. |
| „ Աբրահամ | ԻԳ. |
| „ Յոհան | ԻՁ. |
| „ Կոմիտաս | <ԺԷ.> |
| „ Քրիստափոր | Գ. |
| Եզր | Ժ. |
| Ներսէս | Ի. |
| Անաստաս | Ձ. |
| Իսրայէլ[12]ր | <Ժ.> |
| Սահակ | ԻՁ. |
| Եղիա | ԺԳ. |
| <Յովհաննէս | ԺԱ.>[13] |
| Դաւիթ | ԺԳ. |
| Տրդատ | ԻԳ. Բ.[14] Ա. |
| Սիոն | ԻԷ. |
| Եսայի | ԺԳ. |
| Ստեփանոս[15] | Բ.[16] |

[12] ր Զ. ԻԷ. Լ. իմացիր Իսրայէլ:
[13] Վեց տարի տեղ զատարկ:
[14] Այս ինքն ԻԳ. տարի, Բ. ամիս եւ մի օր:
[15] Անունս գրուած էՍտեփ. եւ ջնջուած գծերով:
[16] Կ'ուարտի· «Փառք ամենա'''»:

3· Գրուածքս երեք մաս կը բաղկանայ.

ա· «Նկարագիր կարգաց… թէ ուստի՞ էին կամ ո՞րպէս գիտ՞րդ յաջորդութիւնք թագաւորացն ի Տրդատայ եւ քահանայապետացն՝ ի Ս· Գրիգորէ, որ կացին մինչեւ առ մեզ»· այս ինքն յաջորդութիւնք թագաւորաց մինչեւ ցԱրտաշէս վերջին· եւ քահանայապետից մինչեւ ցՍահակ մեծ: Կ՚աւարտի տ· 45—48· «Եւ դարձեալ առ որով ընտրեցաւ Սահակ անուն լինել կաթողիկոս, որ է որդի Ներսեսի առաքինւոյ, թոռն Աթանագինէ(ի), թոռ(ի)ն, սրբոյն Գրիգորի»: Այս հատուածը, սակայն, իր ամբողջութեամբը հարազատ չ՚երեւար, յատկապէս ընդգծուած մասին մէջ: Թէ Սահակ Ներսէսի որդին է, առաջին անգամ այս տեղ կը յիշատակուի: Նոյնը երկրորդ անգամ յիշատակուած կը գտնենք Սեբէոսի քով, այն հատուածի մէջ, ուր կը խօսուի Հռիփսիմեանց տաճարի շինութեան մասին· կ՚ըսուի· «զոր շինեալ էր սրբոյն Սահակայ հայրապետի, Հայոց Կաթուղիկոսի, որդւոյ սրբոյն Ներսիսի» (էջ 88): Ապա Ղազար Փարպեցւոյ Ա· Դրուագի կեղծ հեղինակը համարձակութիւն առած է գրելու «մեծ քահանայապետն Հայոց սուրբն Սահակ, որ էր յազգէն Պարթեւաց, որդի սրբոյն Ներսէսի» (19): Զեմ ուզեր մերժել, թէ Սահակ որդին չէ Մեծին Ներսիսի, բայց կ՚երեւայ թէ իրողութիւնս չեշտուած չէ Ե·—Զ· դարու հեղինակներու քով:

Եթէ պնդուի, սակայն, թէ վերոյիշեալ տեղիքն, այնպէս ինչպէս ունինք, Եղնիկ երէցի գրչէն է, պիտի համաձայնէի միայն հետեւեալ սրբագրութեամբ. «Եւ դարձեալ առ որով եկաց Սահակ կաթողիկոս, որ էր որդի Ներսիսի, թոռն Աթանագինէի՝ որդւոյ Յուսկան՝ թոռին սրբոյն Գրիգորի»: Բայց կը թուի ինձ, թէ սկզբնագրին աւելի մօտ պիտի ըլլար, եթէ ամէն յաւելուած եւ փոփոխութիւն ի բաց պարուրելով կարդայինք. «Եւ դարձեալ առ որով եկաց Սահակ կաթողիկոս»: Ասութիւնս «Ներսիսի առաքինւոյ» կը յիշեցնէ ինձ Ղ. Փարպեցւոյ թղթին «զկրօնաւոր առաքինւոյ եւ զմեծ լուսաւորչէն Հայոց զտէր Սահակայ» (203), որ, ինչպէս ուրիշ տեղ տեսանք, նոյնպէս անհարազատ յաւելուած կ'երեւայ: — Տարունակութիւնը յայտնապէս ուրիշ ձեռքէ է, զոր առինք քաղուածի մէջ (տես § 5):

բ. Պատմութիւն նորոգութեան Հռիփսիմեանց տաճարին, որ տեղի ունեցած է Կոմիտաս կաթողիկոսի օրով, 618/619ին:

Նոյնպէս Բ. Մասը որ Հռիփսիմեանց տաճարի նորոգութեան կը հայի, յաւելուած մըն է 620էն, եւ չունի որ եւ է առնչութիւն Ա. մասին հետ:

Հռիփսիմեանց տաճարի նորոգութեան եւ սուրբ նշխարաց փոխադրութեան մասին ունինք հատուած մ'ալ Սեբէոսի քով, ուսկից քաղուածքներ յառաջ բերի վերը, ծան. 10.

Հ· Ալիշան կը գրէ առ այս․ Հատուածս Սեբէոսի «պատմագրութեան կարգին կապակից չէ․ կամ պակաս բան կայ անոր մէջ, կամ օտար մէկն խառներ է զայս անոր գրոց» (Հայապատում, § 181, էջ 219, ծան. 5)։ Առանց տարակուսի վերջին մասը «Ով հրաշափառ... Ստեփաննոս» անագանագոյն շրջանի մը յաւելուածն է։ Ուշագրաւ է հոն «Ես Խոսրովիկ ծառայ սուրբ Հռիփսիմէի սուրբ Ոլոգին» խօսքերը։ Խոսրովիկ կարող է Ը․ դարու առաջին կէսէն ծանօթ «Խոսրով քահանայի» կամ «Խոսրովիկ Թարգմանչի» հետ նոյն ըլլալ։ Յամենայն դէպս Սեբէոսի հատուածին հեղինակին ծանօթ եղած ըլլալու է այս մասը, որ իր կարգին քաղուածք մ՚ըլլալու է հնագոյն համանիւթ գրուածքէ մը, թերեւս Վրթանէս Քերդողի, «որոյ է համառօտ պատմութիւն ընտիր ոճով վասն շինութեան վկայարանի Հռիփսիմեանց ի Կոմիտաս կաթողիկոսէ», ինչպէս կ՚ըսուի Նոր Հայկազեան Բառգրքի «Ցուցակ մատենից եւ մատենագրաց» բաժնին մէջ, Ա․, էջ 19։ Վրթանէսի այս գրութիւնը, որ ծանօթ էր ՆՀԲի հեղինակներուն, չէ յայտնուած տակաւին։ Գալուստ Տէր-Մկրտչեան երեւան բերած էր Էջմիածնի Մատենադարանի Ձեռագրի մը մէջ «Գիւտ նշխարաց Հռիփսիմեանց», որուն համար կ՚ըսուէր, թէ «շուտով հրատարակելու է» Տէր-Մկրտչեան (Շողակաթ հայագիտական ժողովածու, Վաղարշապատ 1913, էջ 172), բայց չէ հրատարակուած ցայսօր։

գ. «Ժամանակք հայրապետացն Հայոց». *այս ինքն կաթողիկոսներու յաջորդութիւնք Ս. Գրիգորէն մինչեւ Ստեփանոս Ա.* († 790) :

*Վերջինս յայտնապէս առաջին երկուքէն անկախ ինքնակաց գրութիւն է, յօրինուած հաւանօրէն Ը. դարու առաջին կէսին եւ ապա շարունակուած մինչեւ Ստեփանոս Բ.* (790) : *Զարմանալի է, որ դուրս ձգուած է ցանկէս Յովհ. Օձնեցւոյ անունը :*

4. *Ա. Մասը խորագիր կը կրէ «Նկարագիր կարգաց բանից Եզնկայ (Զ. Եզնկան) երիցու» :*

Նկարագիր *հոս բառին դասական առումով կը նշանակէ «պատմութիւն, գրութիւն». այս իմաստով գործածուած է՝ Ոսկ. Մատթ.* 443. *«բայց նկարագիրս զայս յայտ առնէ»* (*յն.* ἱστορία) : *Ոսկ. Ես.* 248. *«տեսանեմք ըստ նկարագրին եւ ըստ նորոց կտակարանացս կատարեցաւ այս նախ ի դարձին...» : Եւս. Եկեղ. Պատմ.* 110. *«բանք նկարագիրք որպէս եւ անդ ասացեալ է՝ գրեաց նա» : Եղիշ.* 81. *«ի ձեռն առեալ զքաջ նկարագիրն Մակաբայեցւոց՝ ընթեռնոյր ի լսելիս ամենեցուն» : Բուզ.* 1. *«դրոշմեալ նկարեցի» :*

Կարգ *նոյնպէս դասական իմաստով կը նշանակէ «պատմութիւն, իրողութիւն, դէպք, յաջորդութիւնք». Հմմտ. «կարգք անցելոց իրաց, գործք եւ վարք», Բուզ.* 1. *«մի ըստ միոջէ կարգօք, թուօք եւ համարօք կանոնեալ դրոշմեալ նկարեցի», անդ :*

Վարումն (*ճշգագոյնս «զվարումն»*) *հոս «ամոփումն», «համառօտ յառաջբերութիւն», «համադրութիւն» իմաստով, ունինք նաեւ Եփրեմ Ասորւոյ գործոց թարգմանութեան մէջ· «Մատենագիրն գպրութեանն Իբրամենու, զի է մեկնութիւն նորա դպրութիւն՝ վարումն աւուրց թագաւորաց Յուդայ՝ յԱրարածոց եւ* <ի> *Յեշովայ··· զօղէ յօղէ··· մեք ոչ եթէ զկնի կարգելոյ եւ շարելոյ պատմութեանցն ընթանամք···»* (Ա· 463):

Փոքր ի շատէ, *հմմտ· Բուղ· Գ· 1· «բայց եւ մեք ի մերում աստ եղաք փոքր ի շատէ ի կարգի պատմութեան»: Ոսկ· Մատթ·* 124· *«օն առեալ անսացէք փոքր ի շատէ բանիցս, որ ի մէնջ վասն իրացս այսոցիկ ասիցին» եւն:*

Դրոշմել, *հմմտ· Բուզ·* 1· *«մի ըստ միոջէ··· կանոնեալ դրոշմեալ նկարեցի» Ոսկ· Ես·* 16· *«զԱստուծոյ զազդեցիկ զօրութիւնսն նշանակէ դրոշմէ»: Ոսկ· Պաւղ·* 782· *«Մի՞թէ զտա՞նց այրեցածս դրոշմել կամէի» Եւս· Քր· «զնորին կործանումն դրոշմէ» եւն:*

*«Վասն* գիտութեան *ի վերայ հասանելոյ»· «գիտութիւն» հոս «գիտնալ» իմաստով է· հմմտ· Ոսկ· Մատթ·* 577· *«ոչ զայն ինչ ասէ, թէ ամենեքեան իսկ ոչ գիտէին զնա, այլ ըստ այնմ գիտութեան՝ որպէս ես գիտեմ զնա, այլ ոք ոչ գիտէ»: Ուստի «ի վերայ գիտութեան հասանել» իմանալ, ծանօթանալ· հմմտ· «զի հասեալ ի վերայ իմաստութեանն՝ չծանեան իմաստութեամբն զարարիչն»· Եզ-*

նիկ, 202: Թերեւս ճշգագոյն ըլլար, եթէ կարգայինք «վասն գիտութեան ժամանակացն»:

Ըստ այսմ խորագրին լեզուն եւ ոճը դասական նկարագրով է:

5· Գրուածքին հեղինակ կը ներկայացուի «Եզնիկ երէց»· այսպէս նաեւ Բ· մասի վերջը կը կարդացուի· «Եղիցի յիշատակ Եզնակնի թարգմանել զգիրս զայս»: Ընդգծուած բառերը նորոգողի գրչէն են: Զենք կրնար հաւատալ թէ բնագիրն ալ «Եզնակնի» ունեցած ըլլայ: Պէտք է ուղղել «Եզնկայ ի թարգմանել»: Խնդրական կ'երեւայ նաեւ «զգիրս զայս» ընթերցուածը· պիտի սպասուէր «որ թարգմանեաց զգիրս զայս» եւ կամ «ի թարգմանել գրոցս այսոցիկ»: Բայց եւ այնպէս խորագրին «ի բանից Եզնկանն երիցու» ասութիւնը ենթադրել կու տայ, թէ Եզնիկ հեղինակած է գրութիւնս եւ ոչ թարգմանած: Եթէ թարգմանել հոս «յօրինել» իմաստով առնուած է, կրնանք իրաւամբ կասկածիլ անոր հնութեան վրայ: Ցամենայն դէպս «եղիցի յիշատակ» մաղթանք մըն է ի դէմս Եզնկան, գրուած ընդօրինակողէ մը, եւ այն այս տեղ, Հոփսիմեանց նշխարաց 619ին փոխադրութեան յիշատակութեան կից:

Եզնիկ Երէց իբրեւ հեղինակ «Նկարագիր կարգաց» գրութեան առանց տարակուսի համանուն Կողբացին է, որ յետոյ Բագրեւանդայ եպիսկոպոս եղաւ:

Շարունակութիւնը՝ տող 44—64, զոր քառարուսի փակագծի մէջ առինք, անհարա–

գատ է «Նկարագիր կարգաց» գրութեան : Լեզուն եւ շարադրուածքը Եզնիկ երէցի սեպհական չեն, յատկապէս «եւ Եզնիկ եւ արբանեակք նոցուն լուսաւոր հանդխիցն» տողը : Յաւելուածիս հեղինակին Ե. դարու թարգմանիչներէն ծանօթ եղած են «Ղեւոնդ, Կորիւն, Արձան եւ Եզնիկ», հաւանօրէն Ղ. Փարպեցւոյ Բ. դրուագէն (էջ 70)· Ղեւոնդ, Կորիւն, Արձան, Եզնիկ եւ Յոհան ի միասին ի Կ. Պոլիս կը յիշուին նաեւ Մ. Խորենացիէն (Գ. 60, էջ 341), անշուշտ ոչ առանց ազդեցութեան գրուածքիս : Կորիւն չէ յիշած Արձան իբրեւ գործիչ եւ ի թիւս Մաշտոցի աշակերտներուն : Ուշագրաւ է «կտակարանք եկեղեցւոյ ի սմանէ (ի Սահակայ) յառաջ թարգմանեցան»· որ ակնարկութիւն է Կորեան «երանելոյն Սահակայ զեկեղեցական գրոց զումարութիւնն կանխաւ ի յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ» խօսքին (էջ 33—34) :

Յաւելուածիս վերջին տողը՝ «Եղիցի յիշատակ Եզնկան ի թարգմանել զգիրս զայս» ուզեցին բանասէրներէն ոմանք մերձեցնել Ագաթանգեղոսի Պատմութեան, այն իմաստով, թէ Եզնիկ եղած ըլլայ անոր թարգմանիչը : Բայց ի զուր : Այս առթիւ ծագած խնդրոց համար բաւական ըլլայ յաջորդս. Սուքիաս Վ. Պարոնեան, որուն կը հետեւի V. Langlois, Collection des historiens ancients et modernes de l’Arménie, I, Paris 1884, p. 103, այս Եզնիկը տարբեր անձնաւորու-

թիւն կը համարի քան զԿողբացին. եւ Ցիշատակագրութեանս խօսքերը Ագաթանգեղեայ գրոց մերձեցնելով՝ անոր թարգմանութիւնը կը վերագրէ այս Եզնիկ երիցու, որ Է. դարուն, ութիւ Կոմիտասի ձեռքով Հռիփսիմեանց տաճարի նորոգութեան՝ մուծած է Ագաթանգեղոսի Գրիգորի վարուց թարգմանութեան մէջ Հռիփսիմեանց պատմութիւնն իւր յարակից մասերով: Ն. Ադոնց, Арменія въ эпоху Юстиняна, Պետերբ. 1908, 342, յարելով այս կարծեաց՝ Է. դարուն ապրող Եզնկան կը վերագրէ միայն Ագաթանգեղոսի նոր, երկրորդ խմբագրութիւնը:

Պարոնեանի այս վարկածին դէմ ելաւ Հ. Ղ. Ալիշան (ԲԶՄ. 1875, 16 եւ Հայապ., Ա., էջ 76—77. հմմտ. եւ Հ. Բ., Սարգիսեան Ագաթ., 314—315) որ ընդունելով հանդերձ, թէ Ցիշատակագրութիւնս կապ ունի Ագաթանգեղեայ գրոց թարգմանութեան հետ, կը գրէ. «հաւանական թուի որ մեր ծանօթ Եզնիկն երիտասարդութեան ատեն թարգմանած է զայն՝ շատ տարի առաջ քան զգրութիւնն Աղանդոց դէմ», նկատելով թէ Ագաթանգեղեայ «ճոխ եւ ճապաղ» լեզուն անհամապատասխան է Եզնկայ «կոկ եւ յստակ» լեզուին:

Ն. Մառ, Крещеніе, 152 (= Հայ Թարգմ. Մկրտութիւն Հայոց, Վրաց..., 95) առանց ուրիշ խնդրոյ միջամուխ ըլլալու՝ այս Եզնիկը պարզապէս Է. դարու թարգմանիչ մը կը համարի:

6· «Նկարագիր կարգաց» իւր սկզբնական կերպարանքի մէջ չէ հասած մեզի։ Ինկած են անկէ անուններ, մուծուած են հոն բառեր, եւ ինչպէս կ'երեւայ, ձեւափոխուած է կազմը։ Հետեւեալ տեղիքը ուշագրաւ է· «Յետ նորա (Խոսրովու Բ·) Տիրան, որդի Խոսրովու· ի սորա աւուրս Յուսիկ որդի Վրթանիսի եկաց քահանայապետ։ Յետ Նորին թագաւոր յաւուրս Տիրանայ։ Յետ մահուանն Յուսկանն կալաւ զքահանայապետութիւնն Փառներսեհ ոմն»։ Ընդգծուած բառերը ցոյց կու տան յայտնապէս, թէ սկզբնագիրը ենթարկուած է հոս ձեւափոխութեան։ Միտքն է· «յետ նորին (Յուսկան) յաւուրս Տիրանայ կալաւ...»։ Այս ձեւափոխութիւնը երկրորդ գրչէ է, որ ընդլայնած է իւր առջեւն ունեցած տարբեր ձեւի սկզբնագիրը։

Այդ սկզբնագիրը թագաւորներու եւ քահանայապետներու անուններն ունէր ժամանակագրական համադրութեամբ դէմ առ դէմ, երկու սիւնակներու կամ կանոններու մէջ «կարգօք, թուօք եւ համարօք» դասաւորուած, ուր մի առ մի նշանակուած էր, թէ ո՛ր թագաւորի օրով ո՛ր կաթողիկոսը նստած է, թերեւս նաեւ թէ թագաւորներն եւ քահանայապետները քանի՛ տարի գահակալած են եւ ի՛նչ ժամանակագրական համեմատութեամբ, այս ինքն կաթողիկոսները թագաւորներու քաներո՞րդ տարւոյն բարձրացած են աթոռ։ Այս զուգակշիռ ցանկերը յե–

*տոյ վերածուած են միապաղաղ գրչութեան, ուր ոչ կաթողիկոսներու եւ թագաւորներու ժամանակակցութիւնը ճշդիւ տրուած է եւ ոչ ալ կաթողիկոսներու անունները լրիւ յառաջ բերուած:*

*Արդեամբք ալ վերականգնելով նախնական ձեւը՝ կը ստանանք «յաջորդութիւնքն թագաւորացն ի Տրդատայ եւ քահանայապետութիւն ի Ս. Գրիգորէ, որ կացին մինչեւ առ մեզ» հետեւեալ պատկերի մէջ.*

ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒԱԾ ԲՆԱԳԻՐԸ

| | |
|---|---|
| *Յետ Տրդատայ թագաւորեաց նորին որդի Խոսրով, որ կոչեաւն Փոքր.* | *Ի սորա աւուրս եկաց քահանայապետ երէց որդին Գրիգորի՝ Վրթանէս:* |
| *Յետ նորա Տիրան՝ որդին Խոսրովու.* | |
| *Յաւուրս Տիրանայ.* | *Ի սորա աւուրս Յուսիկ որդի Վրթանիսի եկաց քահանայապետ:* |
| | *Յետ մահուան Յուսկանն կալաւ զքահանայապետութիւնն Հայոց Փառներսեհ ոմն մի յԱգարակէն Մատրանն Յովհաննու ի Տարաւն գաւառէ ի Մեհենագեղջէն, որ Մայր է Եկեղեցեացն Հայոց, այսինքն նախ անդ եկեղեցի զառաջինն շինեալ:* |
| *Յետ նորա թագաւորէ Արշակ որդին Տիրանայ:* | *Ի սորա աւուրս Ներսէս որդի Աթանագինէի եկաց* |

| | |
|---|---|
| | յաթոռն Յուսկանն, Թոռ(ի)ն Գրիգորի մեծի[15], զորմէ ասեն համեմատեալ Գրիգորի ի գործս կարգաց վարուց գնացից իւրոց: |
| Յետ նորա Պապ որդին Արշակայ: Յետ նորա Վարազդատ ի նմին թագաւորութեանն տոհմէ: Եւ ապա օտարակալութիւն: | Զկնի սորա Սահակ [սա] եկաց կաթողիկոս: Եւ ապա Շահակ Եւ Զաւրէն Եւ Ասպուրակ կացին կաթողիկոսք, որք էին ի գաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի: |
| Ապա Խոսրով ոմն ի նմին տոհմէ թագաւորացն Հայոց: Առ սովաւ բաժանեցան զերկիրն Հայոց ընդ երկու՝ թագաւորն Յունաց եւ թագաւորն Պարսից: Պարսից կողմանն Խոսրով թագաւորէ: | Առ որով Ասպուրակէս կաթողիկոս: |
| Մասինն Յունաց աշխարհին Ա(ր)շակ ոմն ի նմին տոհմէ թագաւորէ հրամանաւ Յունաց թագաւորին: — Յետ սորա կոմէսք կալան: | Եւ դարձեալ առ որով ընտրեցաւ (որդի Ներսէսի) Սահակ անուն լինել կաթողիկոս. . .: |

[15] Հմմտ. Փաւստոս Դ. 3· Արշակ դահ կը բարձրացնէ զՆերսէս «զորդի Աթանագինէ զԹոռն քահանայապետին Յուսկան, որդւոյ Վրթանայ, որդւոյն Գրիգորի մեծին առաջնոյ քահանայապետին»: Դ. 4· «Զի ի վարս կարգաց գնացից իւրոց նմանեաց իւրոյ հօրն մեծին Գրիգորի»: Փաւստոսի սկզբնագրին մէջ խօսքը Արիստակէսի մասին էր:

| | |
|---|---|
| Յետ <Խոսրովու> Վռամշապուհ որ կողմանն Պարսից Թագաւորեաց։ | <Առ որով Սահակ կաթողիկոս> |
| Ապա ամս հարուստս մարզպանք Պարսից կալան մինչեւ առ մեզ։ | |
| Իսկ ապա Արտաշէզ որդի Վռամշապհոյ Թագաւորէ հրամանաւ Պարսից արքային։ | <Առ որով Սահակ կաթողիկոս> |
| Եւ ապա մարզպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ։ | <Առ որով Սահակ կաթողիկոս> |

Ճիշդ այսպիսի դասաւորութեամբ «կարգօք Թուովք եւ համարօք կանոնեալ դրոշմեալ նկարուած» էր Սեբէոսի Պատմութեան սկիզբը գրուած Արքայացանկը երից Թագաւորութեանց՝ Հայոց, Պարսից եւ Հռովմայեցւոց, որոնք ապա վերածուած են նոյնպէս միահետ գրչութեան, բնականաբար դարձեալ անճիշդ համադրութեամբ Թագաւորաց։ Թերեւս նաեւ այդ Արքայացանկը Եզնկայ եղած ըլլայ, նոյն «Նկարագիր կարգաց» խորագրին տակ։ Այս մասին պիտի խօսիմ այլուր առանձին։

7· Նկարագիր կարգաց սերտ կապ ունի Փ· Բուզանդի Պատմութեան հետ։ Կը սկսի ճիշդ այն կէտէն, ուր Փ· Բիւզանդ սկիզբ կ'ընէ իր Պատմութեան, այն է Խոսրով Բ·էն եւ Վրթանէսէն։ Առանց տարակուսի Եզնիկ աչքի առաջ ունեցած է Փ· Բիւզանդի Պատ–

մութիւնը։ Կը չեղի Եզնիկ Բիւզանդէն մէկ կէտի մէջ· Փաւստոսի Փառէնը Եզնիկ ունի Փառներսեհ[16]։ Իսկ Զաւէնը ներկայացուած է հոս Զաւրէն գրչութեամբ, զոր նաեւ ժամանակք հայրապետաց պահած է։ Եզնիկին հետեւած է Մ. Խորենացի։ Ինչ ինչ անուններու չգոյութիւնը Նկարագրիս մէջ, նոյնպէս ինչ ինչ անուններու եռեւառաջութիւնը պէտք է վերագրել գրչին (խմբագրին) անհոգութեան։

Համեմատութեան կը դնեմ երկու հատուած.

ԵԶՆԻԿ

1· Յետ մահուան Յուսկանն կալաւ զքահանայապետութիւնն Հայոց Փառներսեհ ոմն մի յԱզարակէն Մատրանն Յովհաննու ի Տարաւն գաւառէ ի Մեհենադեղջէն, որ մայր է Եկեղեցեացն Հայոց, այսինքն նախ անդ եկեղեցի զառաջին շինեալ։

ՓԱՒՍՏՈՍ

Գ. 16· Յայնմ ժամանակի համարեցան արժանի (աթոռոյ) զՓառէն ոմն երէց ի գաւառէն Տարաւնոյ, ի մեծէ Մարգարէանոցէն

---

16 Թերեւս Փառներսեհ ըլլայ սխալ ընթերցումն Փաւստոսի «զՓառէն ոմն երէց»ի, իբրեւ

1 2 3 4 5 ո 7 8 9
ՓԱՌԷՆ ԵՐԷՑ
1 2 3 5 . 6 7 . 8 9
ՓԱՌ Ն ԵՐսԵՀ

Փաւստոս երեք անգամ կը կրկնէ Փառէն, ուստի ոչ սխալագրութեամբ։ Խորենացի Փառներսեհը առած է Նկարագրէն, ուստի երբ հոն արդէն սխալագրութեամբ մուտ գտած էր այն։

| Նկարագիր. | Փաւստոս. | Ժամանակք Հայրապետաց. | Մ. Խորենացի. |
|---|---|---|---|
| | Գրիգոր | Գրիգոր ամս Լ. | Գրիգոր Լ. |
| | Առիստ. | | Ռստակէս ամս Է. |
| Վրթանէս | Վրթանէս | Վրթանէս ամս ԺԷ. | Վրթանէս ԺԵ. |
| | | Գրիգորիս ամս ԺԷ. | |
| Յուսիկ | Յուսիկ | Յուսիկ ամս Զ. | Յուսիկ Զ. |
| Փառներսեհ | Փառէն | Ներսէս ամս Գ. | Փառներսեհ Դ. |
| | Շահակ | | |
| Ներսէս | Ներսէս | Փառներսէս ամս Դ. | Ներսէս ԼԴ. |
| | Զոնակ | | |
| Սահակ | Յուսիկ | Շահակ Զ. | Սահակ–Շահակ Դ. |
| Շահակ | | | |
| Զաւրէն | Զաւէն | Զաւրէն Դ. | Զաւէն Դ. |
| | Շահակ | | |
| Ասպուրակէս | Ասպուրակէս | Ասպուրակէս ամս Է. | Ասպուրակէս Ե. |
| Սահակ | Սահակ | Սահակ ԽԱ. | Սահակ ԾԱ. |
| | Ղ. Փարպեցի | | Սուրմակ Ա. |
| | Յովսէփ երէց | | Բրքիշոյ Գ. |
| | Մեղիտէ | | Շամուէլ Ե. |
| | Մովսէս | | |
| | Գիւտ | Գադ ամս ԺԷ. | |

*Յովհաննու, որ էր նախ շինեալ տուն աղօթից···: Եւ յետ այնորիկ հանդեաւ··· եւ առեալ պաշտօնէիցն··· զմարմինն՝ գնացեալք ի գաւառն Տարօնոյ տարան ի յԱգարակն մեծի Մարգարէանոցին Յովհաննու, ուր էր ինքն ի կենդանութեանն իւրում յառաջագոյն բնակեալ···: Հմմտ. եւ Գ. 14:*

## ԵԶՆԻԿ

2· *Ապա Խոսրով ոմն ի Նմին տոհմէ Թագաւորացն Հայոց: Առ սովաւ բաժանեցան զերկիրն Հայոց ընդ երկու՝ Թագաւորն Յունաց եւ Թագաւորն Պարսից: Պարսից կողմանն Խոսրով Թագաւորէ: Մասինն Յունաց աշխարհին Ա(ր)շակ ոմն ի Նմին տոհմէ Թագաւորէ հրամանաւ Յունաց Թագաւորին:*

## ՓԱՒՍՏՈՍ

*Ապա գտանէր ի Նմին տոհմէ մանուկ մի անուն Խոսրով. եւ կապեաց Թագ ի գլուխ Նորա···:*

*Թագաւորն Յունաց եւ Թագաւորն Պարսից··· ընդ երկու(ս) զաշխարհն բաժանեցին: Բաժին կողմանն Պարսից էր Թագաւորին Խոսրովու. եւ բաժին մասինն Յունաց էր Թագաւորին Արշակայ:*

8· *Նկարագիր կարգաց այժմեան կերպարանքը առած էր արդէն Ը· դարուն: «Ժամանակք Հայրապետացն Հայոց», որ գրուած է 790ին, եւ Մովսէս Խորենացի իբր 820ին օգտուած են անկէ: Համեմատութեան կը*

*դնեմ Նկարագիրն կարգաց, Փաւստոս, Ժամանակք Հայրապետաց եւ Մ. Խորենացի.*

*Ժամանակք հայրապետաց անկախ դիրքի մէջ է. այս պատճառաւ չատ հետաքրքրական: Ան չունի Արիստակէս, ունի յետ Վրթ. Գրիգորիս, ապա յետ Յուսկան՝* Ներսէս, փառՑներսէս: *Իսկ Նկարագրին՝* ՍահակՑ (= *Յուսիկ Բ.) ու* Շահակը *նոյնացուցած է*[17]:

*Խորենացի նոյնպէս՝ անկախ Ժամանակքէն՝ կը հետեւի Նկարագրին. ըստ ամենայնի նոյն կարգով. զՍահակ եւ զՇահակ նոյնացուցած է միայն. բայց դիտէ Խորենացի «Սահակի» նաեւ «Շահակ» ձեւը* (Գ. 39 *եւ* Գ. 41):

*«Ժամանակք Հայրապետաց» չի ճանչնար զԽորենացին, այնու որ ցանկին մէջ չէ առած «Սուրմակ, Բրքիշոյ եւ Շամուէլ» անուններ: Բայց Խոր. կ'երեւայ թէ ծանօթ է այդ ցանկի դոյութեան, ուսկից առած է կաթողիկոսներու դահակալութեան տարիները (ինչ ինչ փոփոխութեամբ): Այսպէս Խորենացի հիմ առնելով Նկարագիրը՝ շեղած է Փաւստոսէն: Նկարագրին շեղումները Փաւստոսէն իմբագրին անուշադրութեան վերագրելու է:*

*Մովսէս Խորենացի ա՛յս գրուածքէն դիտէ Խոսրովի «Փոքր»*[18] *յորջորջումը, որ*

---

[17] *Յուսիկ յուն.* ʼΙσαάκ *անուան հայացուած ձեւն է: Իսկ Շահակ = Սահակ ասորական* Isḥāq *ի տառադարձութիւնն է ըի անկմամբ (Հմմտ.* Armenische Grammatik, I, 291):

[18] *«Խոսրով քանզի* փոքր *էր յանձնէ եւ անուար ոսկերօք»* (Գ. 6, *Հմմտ. եւ Բ.* 83):

թարգմանութիւնն է պահել՝ Կոտակի, ինչպէս կը գործածէ Փաւստոս (Գ․ 3)։ Դարձեալ նոյն աղբիւրէ առած է «աշխարհին իւրեանց մասինն կացուցին Ցոյնք Կոմէսս իշխանս» (Գ․ 46)։

«Ժամանակք Հայրապետաց» կ'երեւայ թէ յետոյ լրացուած է, այս օրինակէն ծաղած է Diegesisի[19] ցուցակը, ներս առնուած է Սուտ-Ղազարի երեք հակառակաթոռները․ զոր յառաջ կը բերեմ ուղղելով աղաւաղուած անունները․

| | |
|---|---|
| Գրիգոր՝ | Լ· |
| Արիստակէս՝ | Է՞· |
| Վրթանէս՝ | ? |
| Յուսիկ՝ | Զ· |
| Փառներսեհ՝ | Դ· |
| Ներսէս՝ | ԼԴ· |
| Յուսիկ՝ | Գ· |
| Զաւէն՝ | Դ· |
| Ասպուրակէս՝ | Է· |
| Սահակ՝ | Խ· |
| Սուրմակ· | |
| Բրքիշոյ· | |
| Շմուէլ· | |
| Մաշտոց տեղապահ. | |
| Գիւտ՝ | ԺԷ· |

Խմբագրողին ծանօթ չէ եղած Ղ․ Փարպեցւոյ Բ․ դրուագը։

8· Նկատմամբ «Նկարագիր»ի գրութեան ժամանակի, ունինք հետեւեալ կռուանը․ կ'ըսուի «Յետ <Խոսրովու> Վռամշապուհ, որ կողմանն Պարսից թագաւորեաց։ Այս

19 Հմմտ․ Հանդէս Ամսօրեայ, 1935, էջ 459—460։

*ամս հարուստս մարզպանք Պարսից կալան մինչեւ առ մեզ: Իսկ ապա Արտաշէզ որդի Վռամշապհոյ թագաւորէ հրամանաւ Պարսից արքային: Եւ ապա մարզպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ»: Այս տեղ կը տեսնենք թէ հեղինակը իր գործը աւարտած է յընթացս այն տասնամեայ շրջանին, որ Վռամշապուհի եւ Արտաշէսի մէջ կ'իյնայ, այն է ընդ մէջ 409—420 տարիներու, երբ երկրին վարչութիւնն «մարզպանք Պարսից կալան մինչեւ առ մեզ»[20]: Երբ Արտաշէս բարձրացաւ դահ եւ կարճատեւ թագաւորութենէ ետքը մեռաւ, եւ դարձեալ «մարզպանք պարսիկք կալան», հեղինակն կամ այլ ոք իբրեւ յաւելուած կցած է Արտաշիսի եւ մարզպաններու յաջորդութիւնը. կ'ըսուի դարձեալ «մինչեւ առ մեզ», այն է իր 430—442 շրջանը, վասն զի իբր 443ին մարզպան կարգուեցաւ Վասակ Սիւնեաց տէր, որ «պարսիկ մարզպան» չէր կրնար նկատուիլ:*

*Նաեւ Սեբէոսի Արքայացանկը, որ «Նկարագիր կարգաց» գրութեան մասն էր, կ'աւարտէր Վռամշապուհով, այն համոզմամբ թէ Հայոց թագաւորութիւնը դադրեցաւ վերջացաւ, ուստի Արտաշէսի գահակալութենէն յառաջ*[21]*:*

*Եւ որովհետեւ հեղինակը «Եզնիկ երէց» է, պէտք է ենթադրել թէ գրութիւնս գրուած*

---

[20] *Տես անդ*, էջ 465—466:
[21] *Անդ*, էջ 466—467:

*է Եզնիկի եպիսկոպոսութենէն յառաջ։ Եզնիկ ըստ ամենայն հաւանականութեան Բագրեւանդայ եպիսկոպոս օծուեցաւ* 436*ին, Կ. Պոլսէն վերադարձէն ետքը, առ կենդանութեամբ Սահակայ· վասն զի Սահակ, որ Եզնիկի հետ Ս. Գրոց սրբագրութեամբ կը պարապէր, Եզնիկի քով ի Բագրեւանդ կ՚ապրէր* 436—438 *տարիներուն։*

---

# ԳԱՐՁԵԱԼ ՆԿԱՐԱԳԻՐ («ՆՇԱՆԱԳԻՐ») ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ ԵԶՆԿԱՅ ԵՐԻՑՈՒ

## ՊԱՏԱՍԽԱՆ ՄԸ ՈՒՍՈՒՑՉԱՊԵՏ Ն. ԱԴՈՆՑԻ

*«Հանդէս Ամսօրեայ»*, 1937, *էջ* 517—532 *հրատարակած էի հանդերձ քննութեամբ «Եզնիկ երէցի» անուամբ հասած «Նշանագիր կարգաց» գրուածքը, զոր ուղղած էի «Նկարագիր կարգաց»:*

*Գրուածքիս բնագիրը միւսանգամ կը հրատարակէ Պարիսի օրինակէն Ուսուցչապետ Ն. Ադոնց. «Նշանագիր կարգաց բանից Եզնկան երիցու». Սիոն*, 12 (1938), 147—153, 180—185, *կցելով անոր իւր կողմէն նկատողութիւններ եւ նաեւ անդրադարձութիւններ ի մասին իմ տեսութիւններուս: Ի հարկէ իր սուր քննադատութեան առջեւ մի առ մի թօթափուած, ինկած, անպէտքացած են իմ նկատողութիւններս եւ եզրակացութիւններս ինչպէս ցրտահար պտուղներ:*

*Կը սիրեմ քննադատուիլ: Բայց կը պահանջեմ քննադատէս քննադատուած առարկայի շուրջը հասկացողութիւն. ըմբռնողութիւն ապացոյցներուս ոյժին եւ անոնց ապուժութեան համար հզօրագոյն ապացոյցներ: Քննադատողին ինքնավստահութիւնը կամ*

անհատական ճաշակը համոզիչ չեն ըներ վճիռները։

Կը կանխեմ ըսել, թէ նախորդ յօդուածիս մէջ մոռացութեամբ դուրս ինկած էր ծանօթութիւն մը Ջեռագրին «Նշանագիր» ընթերցուածին շուրջը, զոր ես սրբագրած էի «Նկարագիր», առանց արդարացնելու սրբագրութիւնս *։

Պարխի օրինակը խորագիր կը կրէ «Նշանագիր կարգաց բանից Եզնկանն երիցու»։ Այսպէս արտագրուած է Վենետիկի Թ․ 294 օրինակը․ այսպէս հրատարակած է Տէր–Մի–քէլեան։ «Նշանագիր», այսպէս եզակի գործածութեամբ չունի որ եւ է իմաստ խորագրիս մէջ։ Դասական գրականութեան մէջ ծանօթ է բառս «Նշանագիրք» յոգնակի ձեւով իբրեւ «գիր», «տառ» իմաստով․ յաճախ անգամ գործածուած է բառս այս առումով․ կը յիշեմ տեղիքներս․

1․ Կորիւն․ Սահակ եւ Մաշտոց խորհուրդ կ՚ընեն «ի գիւտ նշանագրոց (տպ․ եւ գիրս նշանագրոյ) Հայաստան ազգին հասանել» (16)․ Վռամշապուհ կը յիշէ Դանիէլ ասորւոյ յօրինած «նշանագիրս այփաբետաց հայերէն լեզուի» (17)․ Հաբել կը տեղեկանայ ի Դանիէլի «նշանագրացն» (տպ․ նշանագրոյն, 17)․ Սահակ եւ Մաշտոց «ընկալեալ

* Ինչպէս այժմ (1950) կը նկատեմ «նկարագիր» ընթերցուածը Հ․ Ց․ Գաթըրճեանի օրինակէն է։ Այսպէս կարդացած կամ բանասիրական սրբագրութեամբ ուղղած է Ջեռագրին «նշանագիր» ընթերցուածը։

գնչանագիրսն» ուրախ լինէին (17). Կ'ուսուցանեն «գնչանագիրսն» հայ մանկտոյն (17), բայց կ'իմանան թէ «չեն բաւական նշանագիրքն» (18). Ի վերջոյ կը յաջողի Մաշտոց յօրինել «նշանագիրս» հայերէն եւ վրացերէն եւ աղուան լեզուներու (19, 25, 29):

2. Կը գրէ Յերոնիմոս իւր Յառաջաբանութեան մէջ, «զի ԻԲ նշանագրաւք վարին Եբրայեցիք, Ասորւոց եւ Քաղդէացւոց լեզուն նշանակէ. քանզի նոքա... զոյգ նշանագրաւք վարին բարբառեալ նոյնպէս, բայց գրեն այլափոխ նկարագրոշմիւք: Այլ եւ Սամարացիք... ԻԲ նշանագրաւք գրեն...: Բազումք պնդեն... Եզրի դպրի... այլ նշանագիրս Եբրայեցւոց ցուցանել. քանզի... եւ նոքա նկարագրոշմս նշանագրաց ունէին զառաջինն: Նաեւ ի գիրս Թուոց նոյն ԻԲ նշանագիրք գտանին...: Նոյնպէս եւ զՍաղմոսն ...նովին թուով նոցին նշանագրացն կարգեալս եւ եղեալս գտանեմք: Նա եւ զՈղբսն... նովին նշանագրաւք եւ նկարագրոշմիւք զատուցեալս է տեսանել: Եւ հինգ գիր առ ի նոցանէ կարծի թէ կրկին իցէ՝ քափն, մեմն...: Եւ այսու նշանագրաւք... վարին Եբրայեցիք...: Արդ որպէս ցուցաւ թէ ԻԲ նշանագիրք են» եւն (էջ 58—64 հրտ. Վարդանեան):

3. Ըստ Եւսեբիոսի «Նաեւ նշանագիրք իսկ գրոցն Եբրայեցւոց՝ այլազգ առ Հրեայս գտանին եւ այլազգունդակ առ Շամրացիս...

*ապա ուրեմն չգոյր ինչ ի մէջի նոցա այլակերպութիւն մինչեւ ի նշանագրացն փոփոխումն» (Քրոնիկոն, Ա., 114)։ Զեզրայ «ասի զամենայն աստուածեղէն գիրս վերստին յիշել եւ աւանդել Հրէիցն նորանկար Եբրայեցւոց նշանագրօք» (անդ, 190)։*

4. *Երր. Ե. 12. «Ուսանել թէ զինչ են նշանագիրք սկզբան բանիցն Աստուծոյ»։*

5. *Եւսեբիոս Եկեղ. Պատմ. Ե. 8 (էջ* 359)*. «Թիւ անուան այսր օձի՝ ըստ համարոյ Յունաց ի նշանագրաց իւրոց ճանաչի»։*

6. *Ոսկ. Մատթ. Ա. 1. «Պարտ եւ պատշաճ էր մեզ ոչ կարօտանալ ի նշանագիրս գրելոյն օգնականութեան»* (τῇ διὰ τῶν γραμμάτων βοηθείᾳ)։

7. *Իգնատիոսի Թուղթք Ա. եւ Բ. «Զոր ի ձեռն սակաւ նշանագրացս խնդրեմ ի ձէնջ հաւատացէք (չնորհեցէք) ինձ». Petermann, էջ* 176. *յն.* δι' ὀλίγων γραμμάτων)։

8. *Այս իմաստով է նաեւ Ագաթանգեղոսի «Գրեցին ատենակալ դպիրքն նշանագրացն»* (60)։ *Իսկ «Ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրաց»* (9) *կասկածելի տեղիք է (հմմտ. Հանդ. Ամս.*, 1938, *էջ* 27)։ *Նոյնպէս «կարգել ինձ ի ձեռնարկութենէ նշանագիր (այլ ՁՁ. նշանագիւտ) ժամանակագրացն, պատմել նախ» (զգործս եւն.* 10)։

*Ագաթանգեղոս ունի անգամ մը «դիպեցան անդ նշանագիրք»* (97), *դպիր իմաստով,*

որ հաւանօրէն սղումն է «նշանագիր գրիչք»ի կամ «դպիրք նշանագրաց»ի։

Նոր Հայկազեան Բառգրքի կոչումն․ «իւր նշանագրաւս ձեռամբ, այսէ, գրել զողջոյն»․ Ոսկ․ Բ․ Թեսաղ․» պէտք է կարդալ «այլ թէ զողջոյնս խմով ձեռամբ գրեմ», ինչպէս ունին համաձայն յունարէնի էջմիածնի եւ Թեհրանի ձեռագիրք։

Այս տեղիքները դիտմամբ յառաջ բերի, ցոյց տալու համար թէ «Նշանագիր», այսպէս եզակի, գործածութիւն չունէր դասականաց քով․ իսկ «նշանագիրք» կը նշանակէր գիր, տառ եւ այբուբենք։

Նկատի առնելով այս հանգամանքը ենթադրեցի թէ «Նշանագիր կարգաց» աղաւաղում մ'ըլլալու է, եւ սրբագրեցի «Նկարագիր», պատմութիւն, չարագրուածք են իմաստով․ դասական հեղինակներու քով սիրուած բառ մը (տե՛ս Վկայութիւնքը), որ նաեւ Ի․ դարուն ի գործածութեան էր։ Յիշեցինք Եղիշէի մէկ տեղիքը․ կը յիշեմ նաեւ Կոմիտաս կաթողիկոսի առ Մովսէսոս թղթին հետեւեալ տեղիքը․ «եւ ի վերայ այսր աւետարեր նկարագրի··· անդադար բերանով զպարգեւարաշխն օրհնեսցուք» (Սերիոս, 87)։

Ադոնց կը գրէ․ «խորագրում նշանագիր է գրուածf, գրութիւն․ իմաստ որ դասական չէ»․ բայց ես պիտի աւելցնեմ, որ նաեւ ոչ-դասական չէ․ գոնէ այն դարուն համար, երբ կ'ենթադրէ Ադոնց զԵզնիկ երէց․ Ադոնցի նոյն այդ Եզնիկը, Ա․ Մասին վերջին յաւե—

լուածական հատուածին մէջ «նշանագիրը» գիր, տառ իմաստով կը գործածէ: Բառն ինքնին, ինչպէս տեսանք, ծաղումով դասական է. եւ եթէ իմաստը հոս տարտամ է, հարկ է կա՛մ բառն աղաւաղուած ընդունիլ, եւ կամ ամբողջ խորագիրն եղծուած ճանչնալ:

Խորագրին Նշանագիրը հարկ համարեցայ կարդալ երկու գրի փոփոխութեամբ Նկարագիր տեղւոյն յարմար իմաստ մը տալու համար: Այս «Նկարագիրը» հարկաւ «Է· [իմացիր ԺԳ·] դարու համբակ գրիչը» պիտի չկարենար հասկնալ «պատմութիւն»· բայց Ը· դարու սկիզբը Diegesisի թարգմանիչը ճշդիւ կրցած է իմանալ:

Խորագրին յաջորդ «կարգաց բանից Եղն-կանն երիցու» պատչաճ տեսած էի կարդալ «կարգաց ի բանից»: Կը բողոքէ Ադոնց· «չէ կարելի անջատել ՙբանից, բառը, որովհետեւ «նշանագիր կարգաց» ոչինչ չէ նշանակում, ամէն պարագային չէ նշանակում պատմու-թիւն» (Սիոն, 153): Անշուշտ «նշանագիր կարգաց» չի նշանակեր «պատմութիւն»· բայց «Նկարագիր կարգաց» կը նշանակէ «պատմութիւն յաջորդութեանց»: Փաւստոս, զոր աչքի առաջ ունի Եղնիկ, գիտէ «կարգ՟ անցելոց իրաց, գործք եւ վարք··· քահա-նայապետից··· եւ թագաւորաց» (էջ 1): Անիկա կը խոստանայ գրել թագաւորաց եւ քահանայապետից պատմութիւնը «մի ըստ միոջէ կարգօք, թուօք եւ համարօք», եւ

կ՚ըսէ թէ այսպէս ալ «դրոշմեալ նկարեցի» (էջ 1)։ Հոս «կարգօք... դրոշմեալ նկարեցի» ճշդիւ հոմանիշ է «Նկարագիր կարգաց» ասութեան։ Խորագրին այս երկու բառերու իմաստը աւելի պայծառ պիտի ցայտէ, եթէ կարդանք «Նկարագիր կարգաց, թէ ուստի՞ էին կամ որպէս գիարդ յաջորդութիւնք թագաւորացն... եւ քահանայապետիցն»։

Ինձ անծանօթ է նախնեաց մատենագրութենէն «կարգք բանից». բայց ծանօթ է «որպէս ի բանից կարգի է ասել» (Եբր. Է., 8) կամ «ի բանս կարգի առակաց» (Ագաթ. 71), բոլորովին այլ իմաստով։ Ուստի հարկ է «բանից» կարդալ «ի բանից Եղնկանն երիցու»։ Ձեռագրիս մէջ յաճախ կը տեսնուի «ի» նախադրին անկումը։

Ուսուցչապետ Ադոնց ուշադիր կ՚ընէ որ կայ «սերտ առնչութիւն» Նկարագրիս եւ Diegesisի մէջ. «սկզբի մասը, որ վերաբերում է Տրդատի եւ Ս. Գրիգորի յաջորդութեան, յար եւ նման է Նշանագրին եւ անկասկած առնուած է այնտեղից» (Սիոն, 183—184)։ Ուղիղ է այս նկատողութիւնը։ Ուշագրաւ է մանաւորապէս խորագիրը.

Διήγησις ἀπὸ τοῦ ἁγίου Γρηγορίου μέχρι τοῦ νῦν περὶ τῶν ἐν τάξει γενομένων διαδόχων αὐτοῦ, ἤγουν τοῦ θρόνου αὐτοῦ, καὶ περὶ τῶν ἐν τάξει γενομένων καὶ βασιλευσάντων ἐν ταῖς ἡμέραις αὐτῶν, ἔν τε Ῥωμαίοις καὶ Πέρσαις, παρὰ τοῦ γινώσκειν κτλ.

Բառական թարգմանութիւնն է. «Պատմութիւն ի սրբոյն Գրիգորէ մինչեւ ցայսօր (մինչեւ առ մեզ) վասն ըստ կարգէ (կարգաւ) եղելոց յաջորդաց նորա, այս ինքն աթոռոյ նորա, եւ վասն ըստ կարգէ եղելոց եւ թագաւորեցելոց յաւուրս նոցա ի Հոռոմս եւ ի Պարսս, առ ի գիտել» են:

Եթէ խորագիրս «անկասկած առնուած է» Նկարագրէն, ապա հարկ է յունարէն բնագրի մութ տեղիքները լուսաբանել հայերէնով եւ ոչ ընդհակառակն: Ուստի «եւ վասն ըստ կարգէ եղելոց եւ թագաւորեցելոց յաւուրս նոցա ի Հոռոմս եւ ի Պարսս» պէտք է իմանալ «թէ ուստի էին կամ որպէս գիարդ յաջորդութիւնք... թագաւորացն ի Տրդատայ, որ կացին մինչեւ առ մեզ» ի Մեծ եւ ի Բաժանեալ Հայս: Ցոյն բնագրին «ի Հոռոմս եւ ի Պարսս» չկայ հայ բնագրին մէջ· Ադոնց կ'իմանայ ի մասին «Հայ վերջին թագաւորներին ընդ իշխանութեամբ Հոռոմոց եւ Պարսից» (185): Կարելի է վերապահութեամբ ընդունիլ Ադոնցի այս մեկնութիւնը: Մեզի համար կարեւոր է սատ եւ այժմ իրողութիւնս, որ յոյն թարգմանիչը ճշդիւ հասկցած է «Նկարագիր կարգաց» բառերը, διήγησις περὶ τῶν ἐν τάξει γενομένων իմաստով:

Ըսենք միաժամանակ, որ Diegesis աչքի առաջ ունեցած է Նկարագիրը իր սկզբնական ծաւալի մէջ, այն է մինչեւ «եւ ապա (յետ Արտաշիսի) մարզպանք կալան մինչեւ առ մեզ»: Ա· Մասի Ցաւելուածը, ինչպէս եւ

Բ. եւ Գ. մասերն ամբողջապէս անծանօթ են իրեն։ Diegesis իւր երրորդ՝ «Կաթողիկոսք Հայոց» բաժնին համար ունեցած է Հայոց կաթողիկոսներու ուրիշ ցանկ մը, ուր կաթողիկոսներու անուան կից նշանակուած էին նաեւ անոնց ծննդավայրերը· ցանկ մը, զոր աչքի առաջ ունեցած է Յովհաննէս Պատմաբանը։ Այս հին ցանկէն տարբեր էր «Նկարագրին» Գ. Մասը։ Ուստի յետս կ՚առնեմ, «Հանդէս Ամսօրեայ», էջ 531 ըսածս «այս օրինակէն [այսինքն Նկարագրի Գ. մասէն] ծագած է Diegesisի ցուցակը»։

*

Ճեշտած էի թէ Նկարագրի Ա. Մասը գրուած է դասական լեզուով, ուստի եւ կը պատկանի Եզնիկ Կողբացւոյ գրչին։ Ադոնց չի տար առ այս իւր հաւանութիւնը եւ կը պնդէ, թէ Ա. եւ Բ. մասերը գրուած են մի եւ նոյն «համբակ գրչէն», Է. դարու երկրորդ տասնեակին, Կոմիտաս կաթողիկոսի օրով։ Կը գրէ. «Եզնիկին վերագրելու համար բաւական չէ դասական կոչուած տարրամ կնիքը. պէտք է Եզնիկեան կնիք, որ աւելի որոշ հասկացողութիւն է»։ Այսքան նրբախնդրութի՞ւն։

Ես դասական լեզու ըսելով կը հասկնամ այն լեզուն, որ եղած է գրական լեզուն Ե. դարու առաջին կէսին, մերձաւորապէս 407—450 տարիներուն թարգմանուած եւ գրուած հայերէն մատենագրութեան մէջ։

Ամէն գրութիւն, որ այս շրջանէն է, կը կրէ իր վրայ դասական լեզուի կնիքը· անոնց թուին մէջ է Ընդդէմ Աղանդոց գիրքը, որ ծանօթ է Եզնիկ Կողբացւոյ անուամբ: Այս գրքին հեղինակը օգտուած է իրմէ յառաջ թարգմանուած գրքերէ: Լեզուն եւ ոճը, որոնք դասական նկարագրով կը փայլին այս գրքին մէջ, հաւասար բարձրութեան վրայ երեւան կու գան Ոսկեբերանի, Սեբերիանոսի, Եւսեբեայ, Աստուածաշունչի եւ այլ գրուածներու մէջ: Հաւանօրէն նոյն ինքն Եզնիկ եղած է անոնց մեծ մասին թարգմանիչը: Ուստի լեզուի տեսակէտով դասական նկարագիրն է չափանիշը, եւ ոչ անհատի ոճը: Եթէ Աղոնց Եզնիկ երէցի այս փոքրիկ գրուածքին վրայ Եզնիկ Կողբացւոյ անհատական կնիքը կը փնտռէ, կարող է գտնել նոյնը անաշխատ· ամէն բառ, ամէն նախադասութիւն Եզնիկեան կնիքով է հոն, որովհետեւ դասական դրոշմով է: Արտայայտութեան շնորհքը, բարձրական ոճը, բառերու ընտրութիւնը եւ նախադասութեանց կազմութիւնը կ'երեւցնեն իրենց վրայ վայելչութիւն մը, որ չէր կրնար ծորել ոչ–դասական հեղինակի մը գրչէն, եւս առաւել է· դարու «համբակ գրչէ» մը:

Նկատելու համար դասական լեզուի նկարագիրը, զգալու համար անոր առանձնայատկութիւնները, ճաշակելու համար անոր քաղցրութիւնը հարկ է ապրած ըլլալ դասական մատենագրութեան մէջ, սնուցած ըլլալ

Բ. 95)։ Սակայն ասութեանս դասական, «եզնիկեան» ըլլալու համար կարեւոր չէին վկայութիւններս. արդէն յիշած էի տեղիք-ներ Փաւստոսէն եւ Ոսկեբերանէն։ Կրնայի յիշել նաեւ Ագաթ. 29, 382. Կիւրղի Կոչումն Ընծ. 18, 47, 165, 294, 298, 358, 365, 372, 374, 379, 380, 416 («փոքր ի շատէ կարճ ի կարճոյ ասասցուք»). Զգօն, 21 («փոքր ի շատէ գրեցի վասն յիշատակի՝ սիրոյդ քում»), 156. Վարք Հարանց, Ա. 1, 34, 38, 103, 266. Բարսղի Վեցօրեայք, 12. եւ ի վերջոյ Եւս. Քրոն. Ա. 110. «այսչափ բաւական լիցի, քանզի ցուցաւ փոքր ի շատէ»։

Դրոշմեմ. «գրեմ». «Դրոշմեաց զնա ընդ սուրբսն». Եզնիկ, 170. ի քրիստոսադրոշմն դրոշմեալ զամենայն ազգ». Ագաթ. 358. «Ըստ այնմ ձեւոյ դրոշմեցաք». անդ, 469ին։ Շատ յաճախ կը գործած է բառս Բարսղի Վեցօ-րէին Թարգմանիչը. կը յիշեմ. «որ զայս այս-պէսն դրոշմեցին ի ստագիր գիրսն իւրեանց», 4. «զոր օրինակ դրոշմեսցի գիր բոլորակ յումէ եւ իցէ . . . թէ զխարդ եւ որպէս դրոշ-մեցաւ գիրն», 6. «զմերձաւորութիւն ստոե-ղացն դրով դրոշմեցին», 8. «ստուածեղէն բանն, որ ի գիրս դրոշմեալ է», 116 եւ այլն։ «Գրով . . . զքաջութիւնն դրոշմէր». Եւս. Քրոն. Ա. 53. «ապա զնորին կործանումն դրոշմէ», անդ, 97. «կարդաւ առ սոսին դրոշ-մեսցուք զթագաւորս», անդ, 262։ Սեբեր. 69. «մին զօրինակն դրոշմէ, եւ միւսն զգործն յօրինէ»։ Եւ այլն։

լափոխ հետքերը։ Այսպէս նաեւ հոս. եթէ այդ քաղուածքները կատարուած են Է. դարու Եզնիկ երէցէն, զգալի պիտի ըլլային հոն իր ոտքերուն հետքերը։ Այդպիսի հետքեր երեւան հանեցի գրուածքիս կատարածին եւ նշանակեցի իբրեւ եկամուտ տարրներ յետնագոյնի մը գրչէն. բայց Ա. մասն յէականս հասած է մեզի անաղարտ իբրեւ գրուածք Ե. դարու, հարազատ ըստ խորագրին «Եզնիկ երէց» Կողբացւոյ։

Փոքրիկ գրուածքս, որ իմ հրատարակութեան մէջ մօտաւորապէս 55 տող կը գրաւէ, քիչ նախադասութիւն ունի իր մէջ, ուր ապարէզ ունենար գրիչը փայլեցնելու դասական լեզուի ինքնատիպ լուսանցնցող ճառագայթները։ Այս ճառագայթները սակայն ողողած են արդէն բովանդակ 55 տողերը։

Առնենք խորագիրը.

«Նկարագիր կարգաց... թէ ուստի՞ էին կամ որպէս զիարդ յաջորդութիւնք թագաւորացն... որ կացին մինչեւ առ մեզ. վարուցն փոքր ի շատէ դրոշմեալ վասն գիտութեան ի վերայ հասանելոյ»։ Ամէն բառ, ամէն գիր դասական է հոս։

Ընտիր դասական ձեւ է «Ուստի՞ էին կամ որպէս զիարդ». հմմտ. Ագաթանգեղոս. «Ուստի՞ կամ զիարդ կամ որպէս եւ զինչ անցք անցին», 10 (ըստ ac օրինակներու). «Թէ որպէս կամ զիարդ ընկալան» (13). «Թէ որպէս կամ զիարդ եղեւ» (191). «զիարդ

կամ որպէս եղեն» (46)։ Փ. Բիւզ. «Թէ զիարդ կամ որպէս սատակեցան» (41). «Թէ որպէս եւ կամ զիարդ նա զհրամանսն կատարեաց» (49). «Թէ որպէս կամ զիարդ կոչեաց» (52, 105). «Թէ զիարդ կամ որպէս սպան» (52) եւն։ Եւս. Քրոն. Ա. 5. «Թէ որպէս զիարդ մարթ իցէ գիտել»։ Վեցօր. Բարսղի. «զիարդ եւ որպէս ընթացաւ բանն» (182). «զիարդ եւ որպէս դրոշմեցաւ գիրն» (6). «զիարդ եւ որպէս լեալ իցէ» (6). եւ այլն։

Ցաջորդութիւն ունինք. «Որ ըստ հայրենի յաջորդութեան քահանայապետութիւնն եւ իշխանութիւնն ի մէջ Հրէից կարգէր». Եւս. Քր. Բ., 254։

Վարումն. բառիս մասին խօսած էինք (էջ 15) եւ տուած անոր «ամփոփումն, համառօտ յառաջբերութիւն» իմաստը։ Իսկ անոր հնութեան համար ի վկայութիւն կոչած էինք Եփրեմ Ասորւոյ Մնացորդաց գրոց մեկնութենէն հետեւեալ տեղիքը. «Մատենագիրն դպրութեան Իբրամենու, զի է մեկնութիւն նորա դպրութիւն՝ վարումն աւուրց թագաւորաց Յուդայ» (Ա. 463)։

Աղոնց երկար կը դեգերի վարումն բառիս շուրջը. առանց որոշ եզրակացութեան մը յանգելու։

Եփրեմի յիշեալ տեղիքն կ՚ենթադրէ Ասորերէն բնագրի մէջ ܣܦܪܐ ܕܕܒܪܝ ܝܘܡܝܢ, sefra ddebre iamim. Հմմտ. Եփրեմի ասորերէն գրուածոց հրատարակութիւնն, Ա., էջ 476

(տպ. Հռոմ 1737), այն է «Մատենադիր (գիրք) Դեբրեիամիմոււ»: Հայ թարգմանիչը իւր օրինակին մէջ կարդացած է debre iamin, եւ d համարելով սեռականի նախդիր, մնացածը տառադարձած է Իբրամեն: Այս Երրայական անուանակոչութիւնը Մնացորդաց գրոց, որ Եօթանասնից թարգմանութեան մէջ Դ. Թագ. ԺԴ. 18 թարգմանուած է Գիրք բանից աւուրց թագաւորացն, այստեղ Եփրեմ կը մեկնէ. «զի է մեկնութիւն նորա Դպրութիւն՝ վարումն աւուրց», այսինքն debre (երրայեցերէնէ փոխառութեամբ) կը նշանակէ դպրութիւն, իսկ ասորերէն՝ דבר, |debar «վարէ» արմատէն՝ վարումն, իսկ iamin, աւուրց: Կը տեսնուի ասկէ, թէ հայ թարգմանիչը նկատմամբ debre բառին վարանքի մէջ եղած է. ո՞ր իմաստով թարգմանել. ի վերջոյ տուած է երկու իմաստներն ալ: Յերոնիմոս իւր Յառաջաբանութեան մէջ կը գրէ. «զԴաբրէ Իովմինն, որ նշանակէ զԲանս աւուրց. բայց յայտնագոյնս ասիցէ ոք Պատմութիւն ժամանակական, որ Գիրք Մնացորդացն անուանին եւ զերկոսեան ողջ ապրեցուցանէ ի մէնջ» (74):

Աղոնց «վարումն» բառին մեր տուած իմաստը ընդունելի չի գտներ: Ինչո՞ւ եւ ի՞նչպէս: «Վարումն գործողութեան անուն է, կը գրէ, վարել բայի. վարել գիշխանութիւն, զկեանս. որից եւ վարումն իշխանութեան, կենաց: Հետեւապէս վարումն փոքր ի շատէ դրոշմեալ այլ միտք չունի քան վա–

րումն թագաւորութեան կամ հայրապետութեան, եւ կամ ինչ որ մենք այժմ անուանում ենք վարմունք, նոյն անուան յոգնակին» (153) : Այս բացատրութենէն ես բան մը չհասկցայ :

Վարեմ (վարիմ) բայը այլեւայլ առումներով կը գործածուի դասական (նաեւ արդի աշխարհաբար) լեզուի մէջ. կ'ըսուի վարեմ զերկիր, վարեմ զիշխանութիւն, զկեանս, վարեմ զանատուն ընդ ճանապարհ, վարեմ ի գերութիւն, վարել զրանս, զպատմութիւն, զընթերցուածս, զչարութիւն յառաջ, զմտաց, զհետոց զհետ վարել, վարել օրինակաւ, սովորութեամբ, հոգւով սրբով, նախանձու, խստութեամբ, ըստ կամաց ուրուք, զանձն յանդուգն վարել եւն եւն : Այս առումնե՛րը կ'ամփոփէ իր մէջ վարումը : Եղնիկ կը թուէ հայ թագաւորներու եւ կաթողիկոսներու յաջորդութիւնը. վարէ յառաջ զանուանս նոցա մինչեւ առ մեզ. միւս կողմէն այդ անուններր կը քաղէ կը հանէ Փաւստոսի պատմութենէն, կը մշակէ այդ քաղուածքը իւր ծրագրին համաձայն. այս գործողութիւնները վարումն են, զոր ուրիշ բառով կրնանք թարգմանել «ամփոփումն, համառօտ յառաջբերութիւն, համադրութիւն» : Ասով կը կարծենք թէ ըռնազբօսած չենք բառին իմաստը : Ի հարկէ աւելի բացայայտ պիտի ըլլար, եթէ կարդայինք վարումն աւուրց կամ ամաց :

Աղոնց կը յանդի հետեւեալ չատ զարմանալի եզրակացութեան. կը գրէ. «Միանգա—

մայն հաւանական է որ Նշանագրի հեղինակ գիտէ վարումն բառը Եփրեմի Թարգմանութիւնից: ...Այսպիսի բառեր անուանել դասական չէ կարելի, որովհետեւ դասական լեզուի մէջ ընդունուած եւ հանրածանօթ չեն: Եփրեմի Թարգմանութիւնը պատկանում է յետեգնիկեան շրջանին եւ վարումն, որ Եփրեմից է անցել Նշանագրի, տանում է մեզ բոլորովին հակառակ եզրակացութեան քան Հ· Ա[կինեան]. այն է որ Նշանագրի հեղինակը յետեգնիկեան շրջանի մարդ է եւ չէ կարող ինքն Եզնիկն լինել» (181):

Ինչպէս զուարափակը (Ագաթ· 27), թէեւ մէկ անգամ գործածուած է, դասական բառ է եւ հայ լեզուի մէջ գործածական (հմմտ· Մովսէս Կաղանկ·, 142, զոր չէ կարելի անպատճառ Ագաթանգեղոսէն փոխառութիւն նկատել), նոյնպէս ուրիշ շատ ցանցառ բառեր, որոնք դասականաց քով երեւան կու գան, կը պահեն իրենց դասականութիւնը: Իսկ դասական գրականութիւնը եղած է երկար ժամանակ, նաեւ մինչեւ օրս, հայ մտաւոր դասակարգին ընթերցանութեան գիրքը· ուսկից ինչպէս լուսաւորուած են մտքով, նոյնպէս զարգացած են հայ լեզուի մէջ: Անոնց փոխառութիւնները դասականէն դիւրաւ կարելի է մատնանիշ ընել: Իսկ այս տեղ կարելի չէ ենթադրել, թէ Եզնիկ կարօտութիւնն ունեցած ըլլայ Եփրեմի Թարգմանութեանց դիմել բառ մուրալու համար: Եթէ

Ադոնց «միանգամայն հաւանական» կը համարի բառիս փոխառութիւնը Եփրեմէն, հաճի նախ ապացուցանել թէ է. դարու «Եզնիկ երէց» առ հասարակ ձեռք առա՞ծ է Եփրեմի Մատենագրութիւնը: Միւս կողմէն «վարումն» բառն, որուն իմաստին շուրջը մենք այսօր կը վիճենք, կ'ընծայէ՞ր իր մէջ հրապոյր, խրացուելու է. դարու «համբակ» հեղինակէ մը եւ կիրարկուելու այս փոքրիկ գրուածքին խորագրին մէջ: Այսպիսի ենթադրութիւն մը կարելի չէ իբրեւ «միանգամայն հաւանական» հրամցնել: Եւ եթէ «հաւանական» է, հարկ է որ անոր վրայ յեցած եզրակացութիւնն ալ «հաւանական» ըլլայ եւ ոչ միանգամայն ստուգութիւն:

«Այսպիսի բառեր անուանել դասական կարելի չէ»: Եթէ վարեմ դասական է, կարող է նաեւ վարումն դասական ըլլալ. եւ որովհետեւ ունինք զայն դասական մատենագրութեան մէջ երկիցս գործածուած, հարկ է ճանչնալ դասական: «Յաջորդութիւն» բառն ալ նոյնքան թուով գործածուած է, ինչպէս ուրիշ շատ բառեր, թէ հայ, թէ յոյն եւ թէ լատին դասականաց քով, որոնք կը նկատուին հաւասարապէս դասական, առանց հարցնելու, թէ հանրածանօ՞թ են թէ ոչ:

Այս «միանգամայն հաւանական» հաւաստումէն անշուշտ կը հետեւցնէ Ադոնց, թէ «Եփրեմի թարգմանութիւնը [Թագաւորաց եւ Մնացորդաց գրքերու] պատկանում է յետեղ-

*նիկեան շրջանին»: Ո՛ երկինք: Մինչեւ այսօր բանասիրական ասպարէզի վրայ կ՚իշխէր այն համոզումը, թէ Եփրեմի յիշեալ Մեկնութիւնք թարգմանուած են Ե· դարու առաջին կէսին, երբ կ՚ապրէր Եզնիկ, ի շարս այն ասորական հարց գրուածներուն, զորոնք Եզնիկ եւ Յովսէփ «ի հայերէն գրելս դարձուցին»* (Կորիւն, 33) *յԵդեսիա իբր* 430*ին: Տիրող ըմբռնումէն հրաժարելու համար կը կարօտինք ծանօթանալ Ուսուցչապետ Ադոնցի ապացոյցներուն:*

փոքր ի շատէ· *Ադոնց կը գրէ· բառս «ոչ Եզնիկեան է եւ ոչ սուրբ գրենական»* (153): *Հեղինակէ մը, որ դասական հայերէնի մասին վճիռներ կը կտրէ, պիտի սպասէինք թէ փոքր ի շատէ ուշադիր կարդացած ըլլար գէթ Եզնիկն եւ Ս· Գիրքը: Ադոնցի ուշադրութեան կը յանձնեմ Սուրբ գրենական տեղիքներս· Բ· Եզր· Թ·* 8· *«ետուր մեզ կենդանութիւն փոքր ի շատէ»: Հռոմ· ԺԱ·* 25· *«Կուրութիւն փոքր ի շատէ եղեւ Իսրայէլի»: Անդ, ԺԵ·* 15· *«Համարձակագոյնս գրեցի առ ձեզ, եղբարք, փոքր ի շատէ, իբրեւ յիշեցուցանելով ձեզ վասն շնորհացն որ տուեալ են ինձ յԱստուծոյ»· հմմտ· եւ անդ, ԺԵ·* 24· *Ա· Կորն· ԺԳ·* 10, 11, 12· *Բ· Կորն· Ա·* 14, *Բ·* 5· *«ոչ եթէ զիս տրտմեցոյց, այլ փոքր ի շատէ»: Այս կոչումներէն Ա· Կորն· ԺԳ·* 10 *ծանօթ է նաեւ Եզնիկի· «Այժմ փոքր ի շատէ գիտեմք»* (*էջ* 232· *նոյնը նաեւ Եփրեմ,*

Բ. 95)։ Սակայն ասութեանս դասական, «եզնիկեան» ըլլալու համար կարեւոր չէին վկայութիւններս. արդէն յիշած էի տեղիք– ներ Փաւստոսէն եւ Ոսկեբերանէն։ Կրնայի յիշել նաեւ Ագաթ. 29, 382. Կիւրղի Կոչումն Ընծ. 18, 47, 165, 294, 298, 358, 365, 372, 374, 379, 380, 416 («փոքր ի շատէ կարճ ի կարճոյ ասասցուք»). Զգօն, 21 («փոքր ի շատէ գրեցի վասն յիշատակի՝ սիրոյդ քում»), 156. Վարք Հարանց, Ա. 1, 34, 38, 103, 266. Բարսղի Վեցօրեայք, 12. եւ ի վերջոյ Եւս. Քրոն. Ա. 110. «այսչափ բաւական լիցի, քանզի ցուցաւ փոքր ի շատէ»։

Դրոշմեմ. «գրեմ». «Դրոշմեաց զնա ընդ սուրբսն». Եզնիկ, 170. ի քրիստոսադրոշմդն դրոշմեալ զամենայն ազգ». Ագաթ. 358. «Ըստ այնմ ձեւոյ դրոշմեցաք». անդ, 469ին։ Շատ յաճախ կը գործած է բառս Բարսղի Վեցօ– րէին Թարգմանիչը. կը յիշեմ. «որ զայս այս– պէսն դրոշմեցին ի ստագիր գիրսն իւրեանց», 4. «զոր օրինակ դրոշմեսցի գիր բոլորակ յումէ եւ իցէ ... Թէ զխարդ եւ որպէս դրոշ– մեցաւ գիրն», 6. «զմերձաւորութիւն սատե– ղացն գրով դրոշմեցին», 8. «աստուածեղէն բանն, որ ի գիրս դրոշմեալ է», 116 եւ այլն։ «Գրով... զքաջութիւնսն դրոշմէր». Եւս. Քրոն. Ա. 53. «ապա զնորին կործանումն դրոշմէ», անդ, 97. «կարդաւ առ սոսին դրոշ– մեսցուք զԹագաւորս», անդ, 262։ Սեբեր. 69. «մին զօրինակն դրոշմէ, եւ միւսն զգործն յօրինէ»։ Եւ այլն։

Գիտութեան ի վերայ հասանեմ. *Աղոնց կ'որակէ զայս «անյաջող նախադասութիւն ոճի տեսակէտից»: Դասական մատենագրութեան յատուկ ոճաբանութիւն է «հասանել ի վերայ իրիք». բանի մը ծանօթութեան հասնիլ են. այսպէս կը գրէ Եզնիկ «զի հասեալ ի վերայ իմաստութեանն՝ չծանեան իմաստութեամբն զարարիչն»* (202). *Ագաթ. «ոչ էիք հասեալ յիրաւի ի լաւութեանցդ վերայ»* (323). *«ոչինչ դժուարին է հասանել ի վերայ կատարածին»* (232). *«իբրեւ ի վերայ իրացն հասանէր»* (70). *«զի ոչ եթէ իւրեանց կարճահաս իմաստութեամբն հասեալք (ի վերայ) չքնաղ գիտութեանն Աստուծոյ»* (365). *Փ. Բիւզ. «իբրեւ հասանէր Թագաւորն յիրացն հաստատութեան ի վերայ»*, 103. *Հմմտ. եւ* 100, 113 *եւ այլն: Իմաստն լաւ հասկցած է* Diegesis, *երբ Թարգմանած է զայն* γιγνώσειν :

*Կը տեսնուի ապկէ, թէ խորագրին մէն մի բառ ընտիր դասական է:*

*Եզնիկ երէց գրուածքիս մէջ օգտուած է Փաւստոսէն. քաղած հանած է անկէ մտքեր, նախադասութիւններ, բայց անցուցած է զանոնք իւր տեսրակին մէջ ոսկի գրչով. Փաւստոսի անփոյթ ոճը ոյժ, կերպարանք առած է իր գրչին տակ. այս տեղ ինքնակաց է Եզնիկ. նոյն ջղապինդ, դասական հեղինակը: Յառաջ կը բերեմ փոքրիկ հատուած մը իր գրչէն. Փաւստոսի տեղիքս* (Դ. 4). *«զի ի*

*վարս կարգաց գնացից խրոց նմանեաց*[1] *խրոյ հօրն մեծին Գրիգորի»*, Եղնիկ կը չրջէ իր աքանչելի գրչով այսպէս. *«Ի սորա աւուրս [illegible]ոսէս... եկաց յաթոռն Յուսկանն Թոռին Գրիգորի մեծի. զորմէ ասեն համեմատե[ա]լ Գրիգորի ի գործս կարգաց վարուց գնացից խրոց»* :

Համեմատեմ իմիք (*նաեւ* ընդ իմիք *եւ* ընդ ինչ) *դասականաց յատուկ է. Հմմտ. «զՍամփսոնէ ասեն թէ կարի նշանաւոր էր զօրութեամբ մինչեւ համեմատել Հերակղի գործոցն»*, *Եւս. Քրոն. Բ.* 136. *«յորժամ սորա զխոսւթիւնս հանդերձելոց բարեացն համեմատիցի»*, *Ոսկ. Մատթ. Ա.* 247. *«Ընդէր զամենայն թագաւորս արդարս նմա համեմատէ»*. *Եփր. Ա.* 168. *«զի մեծի արարածոցն զանձն համեմատիցէ»*. *Կիւրղի Կոչումն Ընծ.* 90 :

*Դասականի մը գրչէն միայն կրնար ծորել «յետ նորա Վարազդատ* ի նմին թագաւորութեանն տոհմէ: ... *Ապա Խոսրով ոմն* ի նմին տոհմէ թագաւորացն Հայոց» :

Բաժանիմ, *բաժանեմ իմաստով. «Առ սովաւ բաժանեցան զերկիրն Հայոց ընդ երկու՝ Թագաւորն Յունաց եւ Թագաւորն Պարսից»* : *Համեմատէ Սղմ. ԽԱ.* 19 *եւ Յովհ. ԺԹ.* 24. *«Բաժանեցան զհանդերձ իմ յիւրեանս»*. *ցանցառ գործածուած, բայց ընտիր՝ դասականներու քով* :

---

[1] *Հմմտ. «Առաջնոյն Գրիգորի՝ հօրն գործոցն նմանեալ». անդ, Գ.,* 5, *էջ* 10:

Նկատի առնենք ի վերջոյ Հարուստ· «Այս ամս հարուստս մարգպանք Պարսից կալան մինչեւ առ մեզ»: Բառս բաւական շատ, երկար իմաստով սիրելի է դասականներուն. «Իբրեւ ժամք հարուստ ի վերայ անցին»· Գ· Մակաբ· Բ· 15: «Մինչեւ ցվախճան մեծ աւէ· փոխանակ ասելոյ, թէ հարուստ ժամս ձգեցին զխօսսն»· Կիւրեղ Աղեքս· Մեկն· Թագ·: «Աւուրք հարուստ անցին ի վերայ իրացն գործելոց»· Փ· Բիւզ· 103: «Ի սակաւ բանս պատգամացն ի հարուստ ժամ աշխատ եղեալք»· Բարսղի Վեցօր· 23: Կամ նաեւ Հարուստ մի· «Դադարեաց երկիրն ի խաղաղութեան ամս հարուստ մի»· Փ· Բիւզ· 16: «Իբրեւ անցին ժամանակք հարուստ մի»· Եփր· Ա· 105: Կամ՝ «Հարուստ մի յերեկ ժամանակին զգուել զձեզ յօժարեցայք»· Ոսկ· Յովհ· 111: «Ինքն անցանէր հարուստ մի ի քաղաքէն»· Ագաթ· 104: «Հարուստ մի ըստ քաղաքն արտաքս ելանել», Բ· Մակաբ· Ժ· 27: Եւ այլն:

Նկատմամբ վերջին յիշատակագրի «եղիցի յիշատակ Եզնկան ի թարգմանել զգիրս զայս» կը գրէ Ադոնց· «Եթէ խորագրի Եզնիկ երէցը է Եզնիկ Կողբացին, ո՞վ է այս վերջինը: Հ· Ակինեանի կարծիքով, յիշատակարանը անհարազատ է, որպէս թէ ոմն գրիչ իր կողմէն աւելացրել է որպէս մաղթանք: Այսպէս է մտածում որովհետեւ թարգմանել բառը գործ է ածուած այստեղ «յօրինել» իմաստով, ինչ որ խորթ է Կողբացուն: Այո՛,

*խորթ է Կողբացուն, բայց ո՛չ Եզնիկ երէցին: Կարիք չկայ անհող ենթադրութեան: Է· դարու մի համբակ գրիչ, որպիսին է Եզնիկ երէց, կարող է թարգմանել = յօրինել բառով որակել իր կատարած գործը» (Սիոն,* 183)*: Յիշատակարանս կը գտնուի գրուածքիս Գ· Մասին վերջը: Եթէ ընդունինք թէ այն գրուած է «Եզնիկ երէց»ի գրչէն, հարկ է ընդունիլ թէ Եզնիկ երէց գրած է Ա·, Բ·, Գ· Մասերը, ուստի եւ է* 790*էն վերջը ապրող հեղինակ: Իսկ եթէ ըստ Ադոնցի «Եզնիկ երէց»* 618*ին ականատես եղած է Հոփփսիմեանց նշխարաց փոխադրութեան, չէր կրնար Գ· Մասին հեղինակն ըլլալ: Եթէ նախնաբար Բ· Մասին վերջը կը գտնուէր, եւ ապա փոխադրուած է Գ· Մասին վերջը, կրնանք ենթադրել թէ կարող էր այն նաեւ Ա· Մասին վերջը գրուած ըլլալ: Այս եթէներու մէջ անկարելի է ոտքի տակ հաստատուն հող ունենալ:*

*Ըստ Ադոնցի «Եզնիկ երէց» չէ Կողբացին: Գրականութեան պատմութենէն ծանօթ է մեզի երկրորդ Եզնակ մը, որ ապրած է Ժ· դարուն: Եւ որովհետեւ յիշեալ Յիշատակարանը գրուած է* 780*էն ետքը, կը մնայ ընդունիլ, թէ հոս խօսքը այդ Եզնակի մասին է· որովհետեւ ուրիշ «Եզնիկ երէց» ծանօթ չէ: Եթէ անընդունելի է հետեւութիւնը, ապա հարկ է ուրիշ հողի վրայ փոխադրուիլ:*

*Հին օրինակողներու սովորութիւնն էր ի*

վերջ գրութեան նշանակել մաղթանքով մը հեղինակը։ Այսպէս եղած է հոս ալ։ Պարիսի Ձեռագրին մէջ վերջին գրուածքն էր «Նկարագիր կարգաց (ի) բանից Եզնկանն երիցու»։ Արտագրողը այս գրուածքով պիտի փակէր ձեռագրին օրինակութիւնը. ուստի եւ ակնարկելով «Եզնկան»անունը, գրած է «Եղիցի յիշատակ Եզնկան ի թարգմանել զգիրս զայս»։ Ապա կը դնէ գրիչը իւր Յիշատակարանը։ Ապացոյց մեր այս ենթադրութեան համար «թարգմանել» բառը, որ գործածուած է հոս յօրինեմ, գրեմ իմաստով։ Բառին այս իմաստը, կը գրէ Ադոնց, «այո, խորթ է Կողբացուն, բայց ոչ Եզնիկ երէցին»։ Ի՞նչ հիմամբ խորթ չէ բառս է. զարուն գրող «Եզնիկ երէցին» համար։ Կը պահանջենք Պրոֆ. Ադոնցէն ապացոյց։ Ես գիտեմ որ թարգմանել յօրինեմ իմաստով ռամկօրէն է, առաջին անգամ գործածուած Մխիթար Հերացիէն 1184ին (Գիրք Մխիթարութեան ջերմանց) եւ ապա 1272ին Սմբատ Գունդստաբլէն, որ եղած է «թարգմանող» իւր Տարեգրոց։ Այս 1184 եւ 1272 տարիներու մէջ, ճշդիւ 1254ին օրինակուած է Պարիսի ձեռագիրը, որ կը բովանդակէ Նկարագիր կարգաց գրուածքս։ Ուստի պիտի ըսենք Պրոֆ. Ադոնցին, իր խօսքերով. «կարիք չկայ անհող ենթադրութեան», եւս առաւել վճիռներու։

Կը գրէ Ադոնց. «Փառներսեհ պահլաւանունը հանել «Փառէն ումն երէց»ից յանձնա–

բարելի չէ»։ Պահլաւերէնի մէջ գոյութիւն չունի Փառնէրսեհ անունը։ Պահլաւերէնի բառակազմութիւնը պիտի պահանջէր Ներսեհփարէն. հմմտ. Ariphārnes, Phratapher-nes (Հրատափառէն) եւ նման անունները, կազմուած հպ. farnah բառէն, բախտ, վեհութիւն իմաստով։ Անուն մը, որ Եղնիկ երէցի գործած աղբիւրին՝ Փաւստոսի Պատմութեան մէջ երեք անգամ Փառէն ձեւով կը յիշուի, չէր կրնար Եղնիկ «Փառներսեհ» կարդալ եւ արտագրել։ Եղնիկի բնագրին մէջ հարկ է ենթադրել աղաւաղութիւն մը նաեւ հոս. եւ որովհետեւ կը յիշուի Փարէն՝ երեց տիտղոսով. բնականաբար բանասիրական սրբագրութիւնը թոյլ պիտի տար աղաւաղման պատճառը այս երէց բառին մէջ ենթադրել. Փարնէրսեհ = Փարէն երէց համեմատութեան մէջ ունինք 7 տառ նոյն, 2 տառ՝ օտար։ Աւելի յաջող բանասիրական սրբագրութիւն ես չեմ կարող մտածել. եւ եթէ Ադոնց զայն յանձնարարելի չի գտներ, հաճի յաջողագոյն սրբագրութիւն մ'առաջարկել. ամէն դէպքին կը պնդեմ թէ Փարնէրսեհ անունը իբրեւ «պահլաւ անուն» անփոփոխ պահելը «յանձնարարելի չէ եւ անյարիր մեր պատուական բարեկամի բարձր եւ լուրջ գիտնականութեան» (Սիոն, 185)։

Նոյն վճռական չեշտով կը գրէ Ադոնց. «Յուսիկ հայ անունը կապ չունի յոյն Ισαακի հետ։ Շահակ չէ սարքական Ishaq, այլ պահ–

լաւ անուն է, որի հին ձեւն է Շահրակ (հմմտ. Շահրիկ) եւ Շահէն Sahrên»։

Եղնիկ մեզմէ աւելի դիտէ, թէ Յուսիկ նոյն է Սահակ անուան հետ, երբ Փաւստոսի յիշատակած Յուսիկ Բ. իր ցանկին մէջ կ՚առնէ «Սահակ» ձեւով։

Իսկ Շահակ անուան համար Հ. Հիւբշման (Armenische Grammatik, I, 58) զգուշօրէն կը հարցնէ, թէ կապ ունի՞ Շահ, կամ Սատրակէս, նպ. Շահրակ անուններու հետ. առանց համարձակելու վճռել։ Իսկ Շահրիկ, Շահէն անուններու հետ համեմատութեան դնել Շահակը եւ ոչ մտքէն անցուցած է Հիւբշման։ Շահրիկ, շահր- (= աշխարհ) արմատէն, միջին պարսկերէն բառ է, աշխարհատէր, կողմնապետ իմաստով։ Որովհետեւ Հայոց հայրապետններու շարքին մէջ, Գրիգորի եւ Աղբիանոսի տներէն, ունինք 2 Յուսիկ, 2 Շահակ եւ 1 Սահակ, պէտք է կարծել, թէ տոհմական անուն էր Սահակ, որ Կորճէից աշխարհին մէջ Շահակ կը հնչուէր ասորական ազդեցութեան տակ (հմմտ. Սիմէոն = Շմաւոն, Սուզաննա = Շուշան, Սաւուղ = Շաւուղ, Եղիսէ = Եղիշէ են), իսկ հայ ընիկ ժողովրդեան բերանը սեղմուած եղած է Յուսիկ։

*

Ադոնց մերձենալով Ս. Մասին պատմական բովանդակութեան՝ կը գրէ. «Ինչ վե-

*բարերում է այն տողերին . . . ուր յիշւում է կոմէսների, Վռամշապուհ եւ Արտաշէս թա-գաւորների, այլ եւ Մարզպանների իշխանու-թիւնը, նրանք եւս օտար են Եզնիկ Կողբա-ցուն» (Մխոն, 181):*

*Փոքրիկ պատառիկիս ճիշդ այս տողերը պատմագիրք մը կ՚արժեն: Փաւստոսի Պատ-մութիւնը կ՚աւարտէր իրր 386ին: Անկէ մին-չեւ 450 Հայոց քաղաքական Պատմութեան համար չունինք արժանահաւատ պատմագիր, ի բաց առնելով Կորիւնը: Տեղեկութիւնները, զորոնք կը գտնենք յիշեալ տեղերու մէջ, կը կրեն հարազատ կնիքը ժամանակակից հեղի-նակի: Եւ եթէ Եզնիկ երէց է այդ հեղինակը, ինչպէս կը հաւաստէ խորագիրը, այդ երէցը միայն Կողբացին կրնայ ըլլալ, որուն ժամա-նակը ճիշդ Ե. դարու առաջին կէսին կ՚իյնայ, ուստի եւ ժամանակի անցքերուն ի մերձուստ ծանօթ մը: Հակիրճ տողերու մէջ, անկաշառ հատու ոճով, կը հաղորդէ տեղեկութիւն-ներ, որոնք արժանահաւատ են ըստ ամենայն մասանց: Անոնք չեն կրնար «օտար» համա-րուիլ ժամանակակից Եզնիկի:*

*Կ՚ըսէ Եզնիկ, թէ «Յետ սորա (Արշակայ ի Մասին Յունաց) կոմէսք կալան»: Գի-տենք, որ Արշակ երկար չապրեցաւ իր կի-սափուլ գահին վրայ. գիտենք նաեւ որ իր գահին վրայ յաջորդ չունեցաւ. այլ Թէոդոս Մեծի հրամանաւ «կոմէսք կալան» Հայաս-տանի այն բաժինը: 438ին, երբ կը գրէր Եզ-*

*նիկ Նկարագիրս, կրնար հաղորդել իրողութիւնս իր ընթերցողներուն։*

*Կը գրէ Եզնիկ, թէ «յետ (Խոսրովու, կամ Արտաւան հազարապետի) Վռամշապուհ[ոյ], որ կողմանն Պարսից թագաւորեաց*։ Այպա ամս հարուստս մարզպանք Պարսից կալան մինչեւ առ մեզ։ *Իսկ ապա Արտաշէզ որդի Վռամշապ[ու]հոյ թագաւորէ հրամանաւ Պարսից արքային*։ Եւ ապա մարզպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ»։

*Կը զարմանամ թէ ի՞նչպէս աչք կը գոցէ ուսուցչապետ Ադոնց այս տողերու առաջ. եւ չ՚ուզեր տեսնել անոնց պատմական արժէքը։ Վռամշապուհ վախճանեցաւ* 408/409*ին։ Իսկ անոր որդին Արտաշէս գահ բարձրացաւ* 421/422*ին։ Ո՞վ եղաւ այս միջոցին երկրին վարիչը։ Եզնիկ կը պատասխանէ հարցման. «Ապա ամս հարուստս մարզպանք պարսիկք կալան»։ Տեսանք վերագոյն, թէ «ամս հարուստս» կը նշանակէ որոշ ժամանակ մը, ոչ սակաւ եւ ոչ ալ բազում։ Արդեամբք ալ կայ ընդ մէջ* 410—420 *տարիներու իբր* 10 *տարի. որուն համար շատ ճիշդ բառած է «ամս հարուստս»։ Ժամանակակից մը կրնար այս նախադասութեան կցել «մինչեւ առ մեզ». այսինքն մինչեւ մեր օրերը. մինչեւ Արտաշէսի գահակալութիւնը որ Արտաշէս, ըստ Եղիշէի եւ Կեղծ-Ղազարի թագաւորեց* 6 *տարի. ուստի* 421—427/428։ *«Եւ ապա մարզպանք պարսիկք կալան մինչեւ առ մեզ»։ Այս ան–*

գամ կը պակսի «ամս հարուստս»․ որովհետեւ կը գրէր Եզնիկ 429էն ոչ շատ եաքը, ուստի ժամանակ մը, երբ երկրին իշխանութիւնը Մարզպաններու ձեռքն էր։ Մարզպանք սովորաբար երեք տարի անգամ մը կը փոխուէին։ Քանի որ Եզնիկ «մարզպանք» կ՚ըսէ, պէտք է կարծել, թէ գոնէ 2—3 մարզպան յաջորդած պիտի ըլլան «մինչեւ առ մեզ»․ նա գրած պիտի ըլլայ իրր 438ին, Սահակի մահէն յառաջ։

Ազոնց փոխանակ այս լուսարձակ տողերու համաձայն պատմութիւնը լուսաւորելու կը դիմէ Կեղծ-Ղազար Փարպեցւոյ, եւ հոն «Տապուհ Թագաւոր» մը գտնելով հայ գահին վրայ, անոր գլուխ կը ծռէ։

Ասոնք «սխալ հաշիւներ են»։ Եթէ «Ղազար Փարպեցու առաջին գիրքը խաթարուած է, ինչպէս կը գրէ Ազոնց, մի ստոր ձեռք վրայից անցել է եւ չգիտենք, արդեօք Կոմէսների եւ Ասպուրակէսի մասին յիշատակութիւն չի՞ եղել նախ քան բնագրի խանգարումը» (Սիոն, 182)․ ինչո՞ւ ինքը այդ «ստոր ձեռքի» յաւելուածը չէ համարած նաեւ «Հայոց Տապուհ Թագաւոր», որուն գոյութեան նաեւ Diegesis անծանօթ է։ Բայց ես կ՚ըսեմ որ Ղազարի Ա․ Դրուագը — ի բաց հանելով Բ․ դրուագէն ներս առնուած տողերը — ամբողջապէս կեղծիք է Ը․ դարու․ եւ չունի պատմական որ եւ է արժէք։

Ըսած էինք եւ հաստատեցինք այժմ

միւսանգամ, թէ գրուածքիս Ա· մասն կը պատկանի Եզնիկ Կողբացւոյ· իսկ Ա· մասին վերջին հատուածն եւ Բ· մասը «չունի որ եւ է առնչութիւն առաջին մասին հետ»։ Ադոնց կը պնդէ թէ «երկուսի հեղինակը մի անձն է, եւ այն որ պատմում է Հռիփսիմէի նորոգութեան պարագան որպէս ականատես, այս ինքն Եզնիկ երէց»։ Ուստի եւ Ա· եւ Բ· մասերու մէջ «առնչութիւն կայ եւ չատ սերտ» (Սիոն, 182)։ Այս կէտի մասին նոր ըսելիք մը չունիմ· կը վերադարձնեմ միայն ուսուցչապետին խօսքերը իրեն· «Երբ բանասիրական լուծումը յանգում է ad absurdum, նշանակում է ելակէտը սխալ է եղել եւ ստուգութեան պէտք ունի» (Սիոն, 183)։

Ադոնց չի հաճիր ընդունիլ, թէ Ա· Մասին վերջին երկու փոքր հատուածները՝ «Առաւօտ — ի սրբոյ կաթողիկոսէ» յաւելուած են ուրիշ գրչէ։ Ուշադիր ըրած էի (վերագոյն 17) որ հոս «լեզուն եւ շարադրուածքը Եզնիկ երէցի սեպհական չեն, յատկապէս եւ Եզնիկ եւ արքանեակք նոցուն լուսաւոր հանդիսիցն տողը»։ Հոս ունինք արքանեակ եւ հանդէսք բարերը, որոնք գործածուած են ոչ-դասական առումով։ Բայց գրուածքի մը ոչ-դասական ըլլալու յատկանիշները միայն բառերու ընտրութեան մէջ չեն կայանար։ Կայ վարդ հոտաւէտ, նուազ հոտաւէտ եւ առաւել հոտաւէտ· տարբերու-

թիւնը տեսութեամբ չենք կրնար դատել, վարժ հոտառութիւնը միայն կը զգայ։

Բ. Մասի համար ըսած էի թէ «չունի որ եւ է առնչութիւն առաջին մասին հետ»։ Ուսուցչապետ Ադոնց, սակայն, կը հաւաստէ թէ «առնչութիւն կայ եւ շատ սերտ»։ Ապացո՞յց. «Եզնիկ երէցը Ագաթանգեղոսի գործը ընդօրինակելուց յետոյ բարի ցանկութիւն է ունեցել ի շահ ընթերցողներին հակիրճ տեղեկութիւն տալ Տրդատի եւ Ս. Գրիգորի յաջորդների մասին»։ Այս ապացոյցը արժէք պիտի ունենար, եթէ խօսքը Պարխի օրինակին գրիչ Վարդանի մասին ըլլար։ Ուսկի՞ց գիտէ Ադոնց, թէ «Եզնիկ երէց» ալ Ագաթանգեղոս օրինակած է եւ վերջն ալ այս յաւելուածը «ի շահ իր ընթերցողներին» զետեղած է։ Կարելի չէ՞ մտածել, թէ այդ բարի խորհուրդը Վարդան գրիչ ունեցած ըլլայ, եւ գտնելով գրուածքս որ եւ է ձեռագրի մէջ՝ հանած զետեղած ըլլայ իր օրինակութեան վերջը։ Ասոնք ձրի ենթադրութիւններ են եւ չունին ապացոյցի ոյժ։

Այդ «Եզնիկ երէցը», «Ս. Սահակի [Հռիփսիմեանց մատրան] նորոգութեան համար գրաւոր աղբիւր է ունեցել, քանի որ յիշում է վանաց երէցի Արդլայի անունը» (Սիոն, 182)։ Այս սխալ եզրակացութիւնը հանուած է հետեւեալ շատ կասկածելի պարբերութենէն. «Եւ եղեւ այս ի յամս Արդլա·ի (Արդլսի՞) վանաց երիցու սրբոյ ի Վաղարշապատ քաղաքի։

*Մինչեւ յաւուրս Կոմիտասայ ..»: Աղոնց ծանօթութեան մէջ (Սիոն, 151) կը գրէ. «Մինչեւ յաւուրս» ուզում է ասել* Եւ այսպէս եկաց մնաց մինչեւ *յաւուրս. ոճաբանական թերութիւն է անվարժ գրչի»: Բայց ասով վերականգնուած չ'ըլլար ոչ բնագիրն եւ ոչ իմաստը:*

*Այս «Եւ եղեւ»ով կը սկսի Հռիփսիմեանց տաճարին նորոգութեան պատմութիւնը. միաժամանակ նաեւ գրչին փոխառութիւնը գրաւոր աղբիւրէ մը: Ինչպէս քիչ վարը «Կամովեղի» սխալագրութիւն մը կ'ենթադրէ, նոյնպէս հոս «Արդլս.ի»: Վերջինս Հ. Գաթըրճեան կը կարդար «Արդսի» եւ կ'առաջարկէր ուղղել «Արդլայի», զոր կ'ընդունի նաեւ Աղոնց «Արդլախի» գրչութեամբ: Բայց այսպիսի անուն անծանօթ է հայ եկեղեցականաց անուանացանկին մէջ: «Ար» սկզբնատառերը կը թելադրեն ինձ կարդալ Ար(րահամու): Աբրահամ կաթողիկոսին 607/608ին տրուած Ձեռնարկին մէջ կը յիշուին «վանաց երիցունքն՝* Աբրահամ *սրբոյ Կաթուղիկէի վանաց երէց,* Սամուէլ *սրբոյ Հռիփսիմէի» եւ այլն (Գիրք Թղթոց, 151. Ուխտանէս, Բ., 63): Ասոնցմէ երկրորդը նոյն է «Կամովեղի» հետ, որ էր «Նորուն սրբոյ Հռիփսիմէի վանաց երէց ի Վաղարշապատ քաղաքի»: Իսկ առաջինն ըլլալու է Արդլսի:*

*Պարբերութեան ուշադիր ընթերցումը զգալ կու տայ, որ անկէ դուրս ինկած են բա–*

ներ. կը պակսի յանուանէ վանքին անունը, որուն վանաց երէց է Արդլս.ի = Աբրահամ. դարձեալ «մինչեւ» սերտիւ չի կապեր երկու նախադասութիւնները: Կ'առաջարկեմ վերականգնել բնագիրն այսպէս. «Եւ եղեւ այս (Նորոգութիւն Հոփսիմէի) ի յամս Աբ<րահամու> վանաց երիցու սրբոյ <Կաթուղիկէի> ի Վաղարշապատ քաղաքի, [մինչ]եւ <Սամուելի սրբոյ Հոփսիմեանց վանաց երիցու ի Վաղարշապատ քաղաքի եւ> յաւուրս Կոմիտասայ սրբոցն Հոփսիմեանց առաջնորդի[2], որ արժանի եղեւ . . .»:

Այս լրացումներով ամբողջական իմաստ կը ստանայ բնագիրը. եւ հարկ չ'ըլլար յանձին «Արդլսյի» Ե. դարու Հոփսիմեանց վանաց երէց մ'ենթադրելու կամ «Եզնիկ երէցի» ձեռքը Ս. Սահակի մասին «գրաւոր աղբիւր» տեսնելու:

Ուստի Աբրահամ 618ին, երբ կը հիմնարկուէր Հոփսիմեանց տաճարը, կենդանի էր դեռ. եւ վախճանած է յընթացս 618—619 տարիներուն, եկեղեցւոյն աւարտելէն յառաջ: Իր յաջորդն եղած է Յովհաննիկ:

[2] Սեբէոս, 78. կը գրէ «Յետ նորա (Աբրահամու) յաջորդէ զաթոռ հայրապետութեանն Կոմիտաս Տարօնոյ (տպ. Տարոնոյ) եպիսկոպոսն, որ ի դեղջէ Աղցիցն աւանէ»: Իսկ Յովհ. Կաթողիկոս (74). «Յաջորդէ զաթոռ նորա Կոմիտաս ի գեղջէ Աղցից եւ փակակալ սրբոյն Հոփսիմեան վկայարանին, եպիսկոպոս Մամիկոնեան Տարօնոյ»: Նոյն Պատմագիրը իր «Ճառագրութիւն հայրապետացն Հայոց» գրուածքին մէջ կը գրէ. «Տէր Կոմիտաս յԱրագածոտնէ, ի գեղջէ Աղցից, ի շինաւանէ վկայարանի սրբոյն Հոփսիմէ, ամս Ը»:

*Յայտնած էի կարծիքս թէ Սեբէոսի յառաջ բերած հատուածը Հոփսիմեանց նշխարաց յայտնութեան եւ եկեղեցւոյ շինութեան մասին թերեւս օգտուած ըլլայ գրուածքէս, «որ իր կարգին քաղուածք մ՚ըլլալու է հնագոյն համանիւթ գրուածքէ մը, թերեւս Վրթանէս Քերդողի» անունով հասած գրութենէն, զոր կը յիշէ Նոր Հայկազնեան Բառգիրք (Հանդ· Ամս·, 1937, էջ 523) : Առ այս կը գրէ Ադոնց· «Վրթանէսը մեռած էր տարիներ յառաջ, երբ Կոմիտաս կաթողիկոսացաւ եւ ապա ուրեմն չէր կարող Կոմիտասի նորոգութեան մասին բան գրել: ՙՀայկազնեան Բառագրքի, յիշած ՙպատմութիւնը,, ինչ եւ ըլինէր նրա բովանդակութիւնը, թիւրիմացութեամբ է կրում Վրթանէս քերթողի անունը» : Ես պիտի խնդրէի Ուսուցչապետէն, որ հաճէր մատնանիշ ընել աղբիւրը, ուսկից գիտէ թէ Վրթանէս Կոմիտասի ընտրութենէն «տարիներ յառաջ» մեռած է: Այլապէս այսքան խիզախօրէն պէտք չէ վճռէր այս հարցը: Վրթանէս յուժի էր 609ին, Աբրահամ կաթողիկոսի օրով: Չկայ հայ մատենագրութեան մէջ որ եւ է ակնարկութիւն իր մահուան մասին (հմմտ· Հանդ· Ամս·, 1910, էջ 10) : Եւ եթէ կայ վկայութիւն, որ կը հաստատէ, թէ Վրթանէս Կոմիտաս կաթողիկոսի օրով, ուստի 618/619, կենդանի էր, ապա հարկ է, գոնէ վերապահօրէն, ընդունիլ այդ վկայութիւնը, մինչեւ որ յայտնուի Հայկազնեան Բառգրքի ակնարկած Պատմու–*

թիւնը։ Ջրի վճիռներ անտեղի են նման դէպքերու մէջ։

Ադոնց կը շարունակէ նոյն վճռական շեշտով․ «Սեբէոսի հատուածը Հռիփսիմեանց մասին եւս անկախ է Եղնիկից եւ պատկանում է Սեբէոսին։ Այս առթիւ եղած կասկածները ձրի են։ ...Սեբէոսի հատուածի հեղինակը եւս ականատես է, բայց տարբեր անձ է քան Եղնիկ երէց։ Երկուսի հաղորդութեան մէջ զգալի գանազանութիւն կայ եւ մինչեւ անգամ հակասութիւն։ Մէկի աւելորդ նորոգութիւնը տեղի է ունեցել Խոսրովի 29րդ տարին, այն ինչ միւսի ունի 28րդ տարին։ Սեբէոսի մօտ Կոմիտաս «ոչ համարձակեցաւ բանալ» Հռիփսիմէի տապանը եւ միայն կնքեց իր մատանիով, ինչպէս արել էին նոյնը Ս․ Գրիգոր եւ Ս․ Սահակ։ Մինչդեռ Եղնիկ երէց հաւաստացնում է որ ... տապանը բաց է արուած» (Սիոն, 182—183)։

Անհիմն վճիռներ։

Սեբէոս կը գրէ թէ «յամի ԻԸ․ Թագաւորութեանն Ապրուէզ Խոսրովու քակեաց Թուղիկոսն Կոմիտաս զմատուռ Ս․ Հռիփսիմեայ....։ Արդ մինչդեռ քակէին... երեւեցաւ.... կուսական մարմին» Հռիփսիմէի։ Իսկ հատուածիս մէջ կ'ըսուի ընչխարան Կոմիտաս «փոխեաց ի հանդիստ ի նոյն յարկս զոր շինեաց... ի ԻԹ․ ամի Խոսրովայ արքայից արքայի»։ Այս տեղ «զգալի գանազանութիւն» չկայ երկու աղբիւրներու հաղորդագրութեանց մէջ․ մին կ'ըսէ թէ Կոմիտաս հին

շէնքը քակեց Խոսրովի ԻԸ. տարւոյն, միւսը կը հաստատէ թէ շինութիւնը աւարտեցաւ եւ նշխարները ի հանգիստ փոխադրուեցան նոյն Թագաւորի ԻԹ. տարւոյն. ուստի շինուածքը աւարտած է գրեթէ յընթացս մէկ տարւոյ:

Սեբէոս կը գրէ. «Մինչդեռ քակէին զորմն մատրանն, երեւեցաւ... կուսական մարմինն սրբոյ տիկնոջն Հռիփսիմէի. եւ քանզի անդամ անդամ յօշեցին՝ յօշեալ ի միմեանց» (Սեբ. 88): Հատուածիս մէջ կ'ըսուի. Կոմիտաս նորոգեց «այս զվկայարան[ս]ն (= զմատուռն) սրբոյն Հռիփսիմէի, ո<ւ>ր կայր <մարմին նորին կուսին> պատանաւ Ս. Գրիգորի պատեալ իւրովք ձեռօք՝ ողջ եւ անքակ՝ խստոնակէ յօդիցն՝ նովին հանդերձով. ...մերովք իսկ ձեռօք արժանի եղաք շօշափել յանդիման բազմամբոխ հրապարակաց»: Հատուածս քիչ շատ աղճատուած է հաւանօրէն անճարակ համառօտողէն: Բայց ինչ որ նա «խստոնակք յօդից» կ'ըսէ, նոյն է Սեբէոսի «յօշեալ ի միմեանց» արտայայտութեան հետ: Այս նշխարները շօշափած է պատմութեանս հեղինակը. անշուշտ «պատեալ... նովին հանդերձով» եւ կնքուած Գրիգորի եւ Սահակի կնիքներով: Այս տեղ հակասութիւն չեմ տեսներ երկու հեղինակներու մէջ: Նախադասութիւնս. Սեբ. «Այս եղեւ յամս Յովհանկան վանաց երիցու սրբոյ Կաթուղիկէին» = «(Այս եղեւ) յաւուրս Յովհանկան սրբոյ Կաթողիկէի վանաց երիցու» կը թելադրէ ենթադրել երկու գրութեանց

Հասարակաց աղբիւր, որ ըլլալու է — դարձեալ կը կրկնեմ — Վրթանէս Քերդողի Պատմութիւնը:

Թերեւս երկարեցաւ մեր պատասխանն աւելի, քան որ ցանկալի էր մեզ, բայց ստիպեց մեր պատուական Բարեկամին Հարցասիրութիւնը արտայայտուիլ աւելի բացայայտ, քան թերեւս թոյլ տուած էր նախորդ գրուածքիս ծաւալը: Հարկ եղաւ աւելի կամ պակաս յառաջբերութիւններ ընել Ուսուցչապետ Ադոնցի գրութենէն, որոնց համար յուսով եմ թէ ներողամիտ կ'ըլլայ մեր Բարեկամը:

---

# ԽԲ.

# ԴԱՒԻԹ ՔԱՀԱՆԱՅԻ ԽՄԲԱԳԻՐ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ

---

ԽԲ.

# ԳՐԻԻԹ ՔԱՀԱՆԱՅԻ ԽՄԲԱԳԻՐ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Երեւանի Պետական Մատենադարանի Թ. 2679 (Գէորգեան, Թ. 102), գրուած 981ին, թուղթի վրայ, գանձարան մըն է հազուադիւտ բնագիրներու, իմաստասիրական, հայրաբանական եւ պատմական բովանդակութեամբ: Հաւաքողն եղած է Դաւիթ քահանայ, օրինակողն՝ անոր որդին Ղուկաս. տեղը՝ անյայտ: Այն սեպհականութիւնն եղած էր Կարնոյ Կարապետ եպիսկոպոսի, որ 1830ի գաղթին հետը բերած էր Կարնէն: Այս ձեռագրէն 1835ին օրինակութիւններ կատարած է Հ. Ե. Սեթեան Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի համար, ուր կը կրեն Թ. 739/218 եւ 740/219 (հմմտ. Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 270—303): Արտագրութիւններ կատարած է ուրիշ անանուն մ'ալ այն տարիներուն. այս հաւաքման պատահեցայ 1924ին, ի Սամարա եւ գնեցի. այժմ Երեւան, Պետ. Մատենադարան, Թ. 6828:

1858ին Կ. Տէրոյենց հրատարակեց Երեւակի մէջ, Դ. տարի, էջ 233—240, 263—270, անբաւարար ցուցակագրութիւն մը այս ձեռագրին:

*Մխիթարեանք եւ էջմիածնի Միաբաններէն Գալուստ եւ Կարապետ Տէր-Մկրտչեան, Գարեգին Յովսէփեան, ինչպէս նաեւ Աշոտ Աբրահամեան հրատարակեցին այս ձեռագրէն բազմաթիւ մեծ եւ փոքր հատուածներ :*

ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

1· *Թղ·* 35*ա· «ԶԴաւիթ քահանայ յիշեցէք ի Քրիստոս :*

2. *Թղ·* 59*բ· ԶԴաւիթ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս, զստացող սուրբ գրոցս :*

3· *Թղ·* 86*բ· Յիշեսջիք ի Քրիստոս զիս զԴաւիթ քահանայ· որոյ գիրս գրեցաւ եւ զորդի իմ զՂուկաս, որ զծաղրեաց իսկ զսա» :*

4· *Թղ·* 152*ա· Փառք ամենասուրբ Երրորդութեանն զաւրացուցչին իմոյ, եւ ընդունաւղին աղաւթից, որ զաւրացուցանէ զհաւատացեալս անուան իւրոյ առ ի ճանաճանաչել զհաւատոյ լրումն :*

*Ես Դաւիթ քահանայ ցանկացայ լուսաւոր եւ աստուածային վարդապետութեան սրբոյն Աթանասի, որ ընդդէմ Արիանոսաց եւ Հրէից յաղագս տնաւրէնութեան Աստուածն բանի՝ ծանոյց երիս անձնաւորութիւն եւ մի աստուածութիւն· զորս ես ըստ իմոյ նուաստութեանս եւ աղքատ մտացս ի մի վայր բովանդակեցի, առեալ եւ սուղ ինչ ի սրբոյն Անդրէասի վարդապետութենէն եւ այլոց նորին նմանեաց զշարադրութիւն առ—*

*մարդոյ հաւաքեցի ի գիրս յայս ի յիշատակ ինձ եւ իմոյ կենդանեաց եւ ննջեցելոց եւ ի ժառանգութիւն որդւոյ իմոյ Ղուկասու, որ գծագրեացս ինկ զսա:*

*Արդ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք եւ ուսանիք եւ կամ յայդս մատենագրէք ի սմին աւրինակէ՝ յիշման արժանի արասջիք, զի թերեւս արասցէ Աստուած ողորմութիւն յաւուրն համատուտի, ուր բանք սպառին եւ գործք թագաւորին* (ա՛յսպէս), *լսել զերանաւետ ձայնն՝ Եկայք աւրհնեալք Հաւր իմոյ, զոր Աստուած մեզ եւ ձեզ հասարակաց շնորհեսցէ. ամէն: Եւ է նորոգումն սորայ ի ՆԼ թուականութեանս Հայոց:*

5. *Թղ.* 163*ա օտար գրիչ մը կը յիշատակագրէ.*

*Տէր Յիսուս Քրիստոս միածին Որդի Աստուծոյ, ողորմեա Գիչին եւ Ադիդ մամին եւ զաւակաց նոցա՝ տէր Սարգսի, Կարապետին եւ Մելքիսեդեկա եւ մեղաւոր աւագ էրէց Յովհաննիսի որդւոյ Գիչի, որ գրկունքս ընեցի եւ յետ ՄԾԴ ամի զգանկս յաւրինեցի ի ՈՀԴ թուականիս:*

ԳՐՁՈՒԹԵԱՆ ՏԱՐԻՆ

*Դաւիթ քահանայ կը գրէ. «Եւ է նորոգումն սորա ի ՆԼ թուականութեանս Հայոց». գրիչն եղած է իր որդին Ղուկաս: Այս «նորոգումն» բառը իմացուած է այժմեան իմաստով՝ վերակազմուած. ուստի ձեռա-*

գիրս փոխանուած է որ եւ է կերպով, այս միւսանգամ վերանորոգուած ՆԼ տարւոյն։ Բայց հոս Դաւիթ պարզապէս ըսել կ՚ուզէ, թէ իր հաւաքած նիւթերը Ղուկաս ի նորոյ արտագրած է 981ին։

Թ. 5 Յիշատակագրութեան մէջ Յովհաննէս աւագերէց կը յայտարարէ թէ «յետ ՄԾԴ ամի զցանկս յօրինեցի ի ՈՀԴ թուականիս», այն է 1125։ Այսինքն Յովհաննէս կազմած է ձեռագրիս ցանկը 1125ին, անոր գրուելէն 254 տարի ետքը։ Այս հաշուով ձեռագրին գրչութեան տարին կ՚ըլլայ 971։

Գալուստ Տէր-Մկրտիչեան, Թուղթ առ Հ. Յ. Տաշեան, Մատենագիտական մանր ուսումնասիրութիւնք, Ա., Վիեննա 1895, էջ 295, կը գրէ. «Ըստ իս նորոգումը պէտք է հասկնալ այն մտքով որ ձեռագիրն ընդհատումներով է գրուած երկար տարիների ընթացքում։ Մի ուրիշ յիշատակարանից (կ՚ակնարկէ Թ. 5) կարելի է մակաբերել ձեռագրի բուն թուականը, այն է ձեռագրի առաջին մասին գրութեան թուականը, որ լինելու է ՆԻ (=971)»։ Այս ենթադրութիւնը իւրացուցած են Գ. Յովսէփեան, Աշոտ Աբրահամեան եւ ուրիշներ։

Այժմեան վիճակին մէջ ձեռագրիս «Ա. մասը» կը կազմեն առաջին 151 թուղթերը։ Այս մասին մէջ որ եւ է յիշատակութիւն չկայ «ՆԻ» տարւոյ մասին. բայց կայ Թղ. 1ա «ՆԼ» տարին, որով կը սկսի 532 բո–

*լորակի աղիւսակը: Ուստի աւելի խոհեմական պիտի ըլլայ համարիլ, թէ Յովհաննէս աւագերէց իր հաշուին մէջ* (674 [1125]—430 [981] = 244) *տասով մը սխալած է, փոխանակ ՄԽԴի, գրած է ՄԾԴ:*

## ԴԱՒԻԹ ԲԱՂԱՆԱՑԻ ԽՄԲԱԳԻՐ ԺԱՄԱՆԱԿԱ-ԳՐՈՒԹԻՒՆԸ

*Դաւիթ թէպէտ ինքզինքը մտքով աղքատ կը ներկայացնէ, բայց ունեցած է նրբաճաշակ քիմք, եւ սուր հոտառութիւն գրական մարզին մէջ. ան քրքրած է բազմաթիւ գրքեր, եւ «հաւաքած» եւ ի մի վայր բովանդակած է բազմազան բովանդակութեամբ մանր բնագիրներ, որոնց մեծագոյն մասը հաղուագիւտ հատակտորներ են: Երբ կը գրէ Յիշատակարանին մէջ, թէ «առեալ եւ սուղ ինչ ի սրբոյն Անդրէասի վարդապետութենէն եւ յայլոց նորին նմանեաց՝ զճարտարութիւն տոմարաց հաւաքեցի ի գիրս յայս». կը համարիմ թէ կ՚ակնարկէ այն ժամանակագրութիւնը, զոր զետեղած է 28ր—70ր թղթերու մէջ, եւ որուն խորագիրն է. «Մովսէսի Խորենացւոյ եւ Անդրէասի»: Իրօք ալ հաւաքած է հոս «յԱնդրէասէ եւ յայլոց նորին նմանեաց», այլ եւ այլ հատուածներ եւ անոնցմով, հիւսած է ժամանակագրութիւն մը, որ կը հասնի մինչեւ 685:*

*Եւսեբիոսի Քրոնիկոնէ եւ Եկեղեցական Պատմութենէ, Եպիփանէ, Կայսերաց գրքէ եւ այլ մեզի անծանօթ աղբիւրներէ,*

ի մէջ այլոց նաեւ Վրթանէս Քերդողի ժողովոյ պատճառէ: «Անդրէաս» հոս կը նոյնանայ «Հիպողիտոսի» կամ «Ազգայց գրքի», Lohber generationis (minium) հեղինակին հետ. որուն հայերէն թարգմանութենէն ընդարձակ փոխառութիւններ առած է: Գտած եմ այս գրքին առաջին մասը հանդերձ յառաջաբանով, որուն խորագրին մէջ դժբախտաբար հեղինակի անունը անընթեռնլի է:

Եթէ Դաւիթն է ժամանակագրութեանս հիւսողը, պէտք է իր անունով կոչուի այս՝ «Դաւիթ քահանայի խմբագիր ժամանակագրութիւնս», 981 տարիէն:

Ժամանակագրութիւնս մասնաւոր խորագիր չի կրեր: Սկ. Մովսէսի Խորենացւոյ եւ Անդրէասի: — Ադամ նախաստեղծ. սա կեցեալ ամս երկերիւր եւ երեսուն. եւ ծնանի զՍէթ...: Վջ. եւ սպանին ի պատերազմի զիշխանս Հայոց, Վրաց եւ Աղուանից, յամսեանն սահմի, որ աւր տասն էր ամսոյն, ի ՃԼԴ թուականին Հայոց»:

Երեւան, Պետական Մատենադարան, Թ. 2679 (Գէորգեան 102. յամէ 981), Թղ. 28բ—70բ:

Ժամանակագրութիւնս առաջին անգամ լոյս ընծայեց Հ. Բ. Սարգիսեան, Անանուն ժամանակագրութիւն խմբագիր յօրինեալ յէ. դարու ի հնագոյն ժամանակագրաց, Վենետիկ 1904:

Երկրորդ անգամ հրատարակեց Աշոտ

Աբրահամեան, Պատմութիւն Անանիայի Շիրակացւոյ համարողի. ի գիրս Անանիա Շիրակացու Մատենագրութիւնը, Երեւան 1944, էջ 142—149 եւ 357—399:

Հ. Բ. Սարգիսեան միտած էր վերագրել ժամանակագրութիւնս Անանիա Շիրակացւոյ. Ա. Աբրահամեան անվարան համարեցաւ Անանիայի հեղինակութիւն:

Եթէ Դաւիթ քահանայ 981ին «պչարագրութիւնս տոմարաց հաւաքեցի ի գիրս յայս» կ'ըսէ, ան կարող էր օգտուիլ թէ Անանիայէն եւ թէ Մովսէս Խորենացիէն. սակայն ինչ ինչ նմանութիւնք ժամանակագրութեանս եւ Անանիայի գրութեանց մէջ, չէին կրնար ապացոյց ծառայել ժամանակագրութիւնս Անանիայի ընծայելու: Նոյնպէս Մ. Խորենացւոյ ժամանակի համար կարելի չէր ապացոյց փնտռել Ժ. դարու գրուածքի մը մէջ:



## ԽԳ.

# ԲԱՐՍԵՂ ԱՐԾՐՈՒՆԻ

### 1.

*Բազմավրդով դարու ծնունդն է Բարսեղ: Աճեցաւ պատերազմներու աղմուկին մէջ եւ գործեց զէնքերու շառաչիւնին տակ:*

*Սասունի Մարմանդ գիւղին մէջ տեսաւ ան առաջին լոյսը: Անկէ անուանեցին զինքը «գաւոցի» (Դաւիթ Բաղիշեցի կը յիշէ զինքը «Բարսեղ առաջնորդ Ամթայ Գաւըռցի». Դիւան Հայոց պատմութեան, Ժ.,* 51). *վասն զի «Մշեցիք զՀայս Սասնոյ» կոչեն «Գաւառ–ցիք» (Հ. Ղ. Ինճիճեան, Նոր Հայաստան,* 201) *փոխանակ ըսելու Մարմանդցի. իսկ Բարսեղ կը յորջորջէ ինքզինքը «սեփական կայի Արծրունի», նաեւ «Արծրունեցի»:*

*Իր ծնողներն են Ապուհար եւ Եղիկ. իր եղբայրներն են Ապտուլ, Մաղսուտ, Մհեր, Արեւ, եւ քոյրերն՝ Մանդրուտ, Փնքոյշ, Մարխամ, Փաշրի եւ Շուշան: Իր եղբօրորդիներէն կը յիշուի* 1648*ին Թորոս արքեպիսկոպոս (Համամճեան, Ցուցակ Գաղատիոյ ձեռագիրներու, Թ.* 49). 1632*ին կը յիշէ ինքը Բարսեղ՝ Անդրէաս սարկաւագը, «որ է ինձ արեանառու»: Ապտուլ աւագ եղբայրը ընտրած էր ճգնաւորական կեանքը* 1587*էն ի*

վեր· 1634ին կենդանի էր դեռ· «որ հրաժա-րեալ է աշխարհէս խարազնազգեստ ճգնու-թեամբ, աղօթիւք եւ պահօք ի լերինս շրջա-գայելով· ի ծերպս վիմաց է բնակութիւնն· յամարայնի արեւակէզ եւ ձմերայնի ցրտա-սառոյց, զտիւ եւ զգիշեր ոչ դադարէ, այլ միշտ եւ հանապազ աղօթելով եւ անյագ ըն-թեռնլով յօրհնաբանութիւն եւ ի փառա-բանութիւն ամենասուրբ Երրորդութեանն» (Թորոս Աղբար, Բ·, 431)։ Յաճախ կը հան-դիպէր Առաքելոց վանքը։

Այս աստուածասէր եղբօր հոգատարու-թեան կը պարտի Բարսեղ իր դաստիարակու-թիւնը։ Ապտուլ հոգացած է, որ Բարսեղ «փոքր հասակէն» աշակերտի Սրապիոն Ուր-հայեցւոյ առ ոտս յԱմիթ։

Սրապիոն· «առն մեծատան որդի», 1578ին աշակերտած էր Յովհաննէս Ծիրակ վարդապետի, որ էր վերատեսուչ Ամիթ քա-ղաքի, եւ կը բնակէր Աթխայ վանքը։ 1582ին կը վախճանի Յովհաննէս Ծիրակ, կը յա-ջորդէ Ղուկաս Վ· Կեղեցի, անոր աշակերտը։ Սրապիոն կը չարունակէ ուսմանց ընթացքը անոր քով· կը ձեռնադրուի քահանայ եւ եպիսկոպոս (Ուրհայի), կ՚ընդունի վարդա-պետական իշխանութիւնը եւ «առնու գաւա-զան եւ հրաման դաս ասելոյ ի տէր Ղուկաս վարդապետէ խուրմէ» 1585ին։ 1591ին կ՚այ-ցելէ հանդերձ «աշակերտեալ մանկամբք» Երուսաղէմ, ուր կը մնայ տարի մը Դաւիթ

պատրիարքի օրով: 1592ին կը վերադառնայ Եդեսիա (Ուրհա) եւ 1593ին Ամիթ. «յորում ամի եւ ի ձեռս նորա գլխապետութիւնն Ամթայ՝ վարդապետն Ղուկաս. եւ ինքն զծերութիւն պատճառեալ ապահովանայր: Եւ այսպէս սեփականեալ իբրեւ զարժանաժառանգ հօր որդի՝ զերկոքին աթոռս, զՈւրհայոյ եւ զԱմթայ» (Պալեան, Ցուցակ Ս. Կարապետի Նոր Մատենադարանի, Թ. 9):

Թէ Բարսեղ ո՞ր տարւոյն աշակերտութեան մտաւ Սրապիոնի քով, չգիտենք. յամենայն դէպս 1585էն առաջ. նա այս տարւոյն 10 տարեկան էր: Յիշատակագիր մը, Ղազար արեղայ, կը վկայէ թէ Սրապիոն մեծ րաբունապետի աշակերտներէն էին 1690ին Արիստակէս եւ Թոմաս, «ընդ նմին եւ Բարսեղ սարկաւագ»: Իր իսկ խոստովանութեամբ ան քահանայական ձեռնադրութիւնը ստացած է Սրապիոն եպիսկոպոսէն 1593 հոկտեմբերին, վարդապետական գաւազանը՝ 1599, սեպտ. 30ին եւ եպիսկոպոսական օծումը՝ 1604 յուլիս 30ին:

Բարսեղ կը գրէ թէ Սրապիոն Ուրհայի եւ Ամթայ եպիսկոպոսն եւ էջմիածնի կաթողիկոսը «ի ՌԾԳ (1604) թուին օրհնեաց զիս եպիսկոպոս յԱմիթ ի Ս. Սարգիս, առաջնորդ եւ տեսուչ Ղազարու վանաց Մշու ԺԲ Առաքելոցն». հաւանօրէն Տարօնի Յակոբ եպիսկոպոսի մահէն առաջ, որ կը յիշուի 1602ին. Մարտիրոս արեղայ Առինջ գիւ–

ղին մէջ ՌԾԱ․ Թուին Աւետարան մը կ'օրինակէ «ի կաթողիկոսութեան Մելքիսեթի, ի հայրապետութիւն Յակոբ եպիսկոպոս(ի)ն, հերպետութիւն տէր Շմէոնի» (Երեւան, Պետ․ Թանգ․ 144)։ Տակաւին արեղայ էր Բարսեղ, երբ Սրապիոն վարդապետէն Առաքելոց վանք կ'ուղարկուէր պաշտօնով մը․ այս մասին արձանագրած է Բարսեղ ինքնագիր, այժմ դժուարընթեռնլի տողերս Առաքելոց Վանքի ճառընտիրի սկիզբը այսպէս․ «Թվին ՌԽԷ (1698) եկի ես Բարսեղ ծառայ սուրբ առաքելոյն․․․ (հրամանա՞ւ) Սրապիոն վարդապետին Եղեսիոյ, ի վանքս սուրբ» եւ այլն (տե՛ս վարը), թերեւս նուիրակութեան համար։ Բարսեղ մնաց մինչեւ իր կեանքի վերջին տարիները առաջնորդ կամ վերատեսուչ Առաքելոց վանքին․ ուր կ'այցելէր ժամանակ առ ժամանակ, կ'ընծայաբերէր եկեղեցական զգեստներ, գրքեր եւ այլն, միժամանակ կը տնտեսէր վանքին այլ պիտոյքները։ 1604—1636 տարիներէն ծանօթ չէ ինձ Տարօնի եպիսկոպոս։ Առաջին անգամ կը յիշուի 1637ին Յովհաննէս եպիսկոպոս, որուն յիշատակութիւնը կ'ըլլայ այնուհետեւ շատ անգամ։

Բարսեղ վարդապետ հրաման կ'ընդունի Սրապիոնէն նուիրակութեամբ երթալու Ջուղայ․ 1601 գարնան «եկի ես անարժանս Բարսեղ սպասաւոր բանի եւ աշակերտ Սրապիոն քաջ բաբունապետին Ուռհայեցւոյ ի գիւղա–

քաղաքս Ջուղայ»: Նոյն տարին «մարախ եկն եւ գնացաք, կ՚ըսէ, ի դաշտն ի պահպանել» (տե՛ս վարը):

1603, օգոստոս 14ին Սրապիոն Ուռհայի եւ Ամիթի եպիսկոպոսը կաթողիկոս կ՚ընտրուի Գրիգոր ԺԳ. անուամբ, բայց կը ստիպուի երեք ամիս յետոյ հրաժարիլ աթոռէն եւ վերադառնալ Ամիթ: Պարսից եւ Օսմանեանց մէջ ահեղ պատերազմ մը ծագած էր. ոտնակոխ եղած էր Այրարատեան դաշտը. բնակչութիւնը բանի տեղահան եղած եւ տարուած Պարսկաստան: Գերութիւն եւ սով կ՚իշխէին ընդհանուր: Սրապիոն նստած Ամիթ, կը խորհի նուիրակներ ուղարկել արեւմուտք, հաւաքելու ողորմութիւն էջմիածնի եւ հայ ժողովուրդին համար: Այդ նուիրակներու թուին մէջ էր Բարսեղ եպիսկոպոս: 1605ին հանդիպած է իրեն ի Կոզլով Գրիգոր Դարանաղցի, որ արձանագրած է իր ժամանակագրութեան մէջ տողերս. Սրապիոն ուղարկեց նուիրակներ. «իւր Բարսեղ աշակերտն էր ի Կաֆայ: Թվ. ՌԾԴ (105) էր, որ պատահեցաք այս Բարսեղ վարդապետին ի Կաֆու Կոզլով քաղաքին, որ ի մեծ քաղաքէն Կաֆայու էր եկեալ, հալածական լինելով ի սուտ եղբօրէ ումեմնէ Մեսրոպ անուն անառակէ, մատնելով դատաւորին եւ փաշային, թէ չաշուտ եւ լրտես մի եկեալ է ի Կարմիր գլխոյն, համ այսչափ դրամ կու խնդրէ ի Հայերացն, որ Շահին տանի: Այս-

պէս մատնութեան գրոյց կ՚ասէ, ըմբռնել կուտայ, չատ մի դրամ տուժինք կ՚առնեն, մինչ–նորդականաց աղաչանօքն հազիւ կու գեր–ծանի: Եւ անդ ի Կոզլով քաղաքն եկեալ եւ պատմեաց մեզ զամենայն անցսն իւր զորպէս եղեալն» (էջ 58—59):

Անկէ յառաջ կամ ետքը պէտք է պատա–հած ըլլայ Լվով: Վասն զի Սիմէոն Լեհացի տարիներ ետքը երբ տեսակցութիւն կ՚ունե–նայ յԱմիդ Բարսեղ եպիսկոպոսի հետ, «սա տեսեալ զիս՝ ճանաչեց, զի երբեմն եկեալ էր ի Լեհ՝ նուիրակ Ս. Էջմիածնայ» (Ուղեգրու–թիւն, էջ 205):

1606 ապրիլ 23ին կը վախճանի Սրա–պիոն–Գրիգոր Ժգ.: Աթոռին վրայ յաջորդ կ՚ընտրուի Բարսեղ եպիսկոպոս, որ միժա–մանակ էր վերատեսուչ Առաքելոց վանքին եւ վիճակին:

1607ին կը գտնենք զինքը Տարօն, ուր կը նորոգէ Առաքելոց վանքը եւ կը բարձ–րացնէ վանքին պարիսպը. այս առիթով կը նուիրէ պատարագի զգեստ մը ամփոփոնով եւ թագով: Այս տեղ կ՚իջնար իր ճգնավայ–րէն Ապտուլ ճգնաւոր, տեսակցելու իր եպիս–կոպոս եղբօր հետ:

Բարսեղ նորոգեց նաեւ իր ծննդավայրի, Մարմանդ գիւղի Ս. Գէորգ եկեղեցին եւ նուիրեց անոր ձեռագիր Աւետարան մը:

Բայց իր աթոռանիստ քաղաքն էր Ամիթ եւ աթոռանիստ եկեղեցին Ս. Կիրակոս:

1613ին այստեղ հանդիպած է իրեն Սիմէոն Լեհացի, որ կը գրէ իր ուղեգրութեան մէջ․ «Կայր Հայոց երկու եկեղեցի, մեծ եւ վիմաշէն փառաւոր․ մէկն Սուրբ Կիրակոս աւագ եկեղեցի եւ Սուրբ Սարգիս։ Ունէր դարպաս եւ եպիսկոպոսարան եւ դպրատուն եւ վարդապետ մի Բարսեղ անուն, որ եւ տառաջնորդ, աշակերտ Սրապիոն կաթողիկոսի, այր խրթին եւ բազմիմաստ . . . ։ Կայր հազար տուն հայի եւ ամէնքն հարուստ եւ փարթամ, պերճ եւ փառաւոր . . . ։ Աստ եւ ի Սեւաստ տեսայ լաւ հաւատ եւ լաւ քրիստոնէութիւն» (204—205)։

Բարսեղ Ամիթի Դպրոցին ղեկավարն էր․ կը շարունակէր Յովհաննէս Ծիրակի, Ղուկաս Կեղեցւոյ եւ Սրապիոն Ուրհայեցւոյ «համալսարան»ը, ան ունէր իր աշակերտները․ 1632ին կը յիշէ․ «զաշակերտեալ մանկունս զԿարապետ եպիսկոպոսն եւ զՅովանէս վարդապետն Մչեցի եւ զՂազար վարդապետն Սուրբ–Աղբերակցի, զՂուկաս վարդապետն եւ զայժմու սպասաւորք զՅովանէս մալազն եւ զԱռաքելն որ զյիշատակս գրեաց, եւ զԱնդրէաս սարկաւագն որ է ինձ արեանառու»։

Տարբեր էր այս Դպրոցէն այն Դպրատունը, զոր կ՚ակնարկէր Սիմէոն Լեհացի։ Դպրատունս հաստատուեցաւ Բարսեղ Ամթեցւոյ հովանաւորութեան տակ Մինաս Ամթեցի գրիչ–մանրանկարիչէն․ որուն նպատակն էր ուսուցանել գրչութեան, մանրան–

կարչութեան եւ կազմարարութեան արհեստը: Այս Դպրատունը կատարեալ արհեստանոց մ'եղաւ, ուր գրուեցան յընթացս 1606—1637 տարիներուն վարպետ Մինասի առաջնորդութեան տակ բազմաթիւ նկարազարդ ձեռագիրներ եւ ուսկից ելան անուանի գրիչներ եւ ծաղկողներ: Հոս կը բերուէին զանազան կողմերէ ձեռագիրներ նկարազարդելու, կազմելու եւ նորոգելու:

1632/3 տարւոյն Ամիթի իշխանն եւ տեղապահն էր Մուրթազայ փաշան «սիրողն քրիստոնէից». որ թոյլ տուաւ քրիստոնեաներուն շինել եւ նորոգել եկեղեցիները: Օգտուելով այս հրամանէն նաեւ Ամթեցիք «յայսմ (1633) ամի նորոգեցին զաւրբ Կիրակոսի եկեղեցին եւ մեծացուցին եւ սրահ կամարակապ շինեցին զաւիթ եկեղեցւոյն. եւ պատճառ նորոգման խոճայ Երեմեան. եւ երեսփոխան մղտեսի Գասպարն, որ մեզ Դպրոցի խուց շինեաց»:

Բարսեղ վարդապետ Երուսաղէմ գացած եւ հոն տարի մը մնացած էր 1591ին, իբրեւ ուղեկից Սրապիոն վարդապետի: Ան վերջին անգամ Երուսաղէմ այցելեց 1632 մարտին. այս առթիւ նուիրեց Ս. Յակոբայ վանքին նկարազարդ Աստուածաշունչ մը:

Ամիթի եպիսկոպոսը 1637ին Մինաս գրչէն կը ներկայացուի «ծերացեալ»: Այս տարւոյն ան 62 տարեկան էր: Այստեղ կը կորսնցնենք իր հետքը պատմութեան մէջ: Իր մահուան

տարին չէ աւանդուած մեզի. որ հաւանօրէն 1637—1640ի մէջ պէտք է ենթադրել: Ամիթի եպիսկոպոսն էր 1647ին Յովհաննէս որուն յաջորդն եղած է Ոնուփրիոս Կարկուռ, յիշուած 1660ին եւ 1662ին:

Սկսեալ 1637էն Տարօնի Առաքելոց վանքի առաջնորդն է Յովհաննէս. Թերեւս նոյն՝ Բարսեղ Ամթեցւոյ աշակերտ Յովհաննէս Վ. Մշեցւոյ հետ: Կ'երեւայ թէ Բարսեղ նախահոգ եղած էր Առաքելոց վանքին առաջնորդ մը կարգել: Այս Յովհաննէսի մասին ունինք Յիշատակարանս.

«Ի Թուականութեանս Հայոց ՌՁՁ (1637) ...որպէս եւ այս սուրբ ուխտիս Ղազարու վանաց. ԺԲ. Առաքելոց առաջնորդ Յովաննէս վարդապետն որ ի յայս հարկապահանջութեան ժամանակիս, տիրէ եւ կառավարէ եւ ազգի ազգի փորձանաց համբերէ վասն սիրոյ սուրբ ուխտիս: Զոր եւ տեսեալ բազում գրեանս եղծեալ եւ ապականեալ եւ ետ վերստին նորոգել, թէ զԳործս առաքելոց, թէ զԱռակաց ընարանն, թէ զՇրգ երգոցի Մեկնիչն եւ քանի տարւոյ գիրքն եւ զԱւետարան ետ նորոգել...: Տէր Աստուած իւրն վարձահատոյց լիցի... հանդերձ աշակերտիւն իւր տէր Մարգարէիւ, որ կապեաց զսուրբ գրեանքս... ամէն» (Գեղամ Տէր-Կարապետեան, Ձեռագիրք Տարօնոյ):

ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Ժամանակակից, Բարսեղ վարդապետի գործունէութեան ականատես վկաները միաբան կը դրուատեն զինքը իբրեւ անձնաւորութիւն մը, «որ իբրեւ ճրագ փայլէ ի մէջ աշտանակի», կամ «որ իբրեւ զՋահ փայլէ ի մէջ սուրբ եկեղեցւոյ լուսաւոր բանիւ... ի պարծանս ազգիս Հայոց» եւ այլն: Ան իր առաքինի վարքով ցոյց տուաւ թէ աշակերտն է Սրապիոն Ուռհայեցւոյ. եւ խստակեաց կենցաղը եղաւ արժանաւոր եղբայրը ճգնակեաց Ապտուլի: Ունեցաւ աշակերտութիւն, հասցուց զանոնք վարդապետութեան աստիճանի: Կառավարեց իր հօտը այն «դառն եւ դժուարին» դարուն. պայծառացուց իր եկեղեցւոյն մէջ բարեպաշտութիւնը աւելի քան այլուր, ինչպէս գովութեամբ կը հաստատէր բազմաշրջիկն Սիմէոն Լեհացի: Քաջալերեց գրչութեան արուեստի հետամուտները, բացաւ անոնց համար Դպրատուն, նպաստեց որ բարգաւաճի մանրանկարչութիւնը: Իր առաջնորդութեան շրջանին ոչ միայն օրինակուեցան մեծ թուով ձեռագիրներ, այլ եւ ծաղկուեցան անոնք բազմագոյն նկարազարդ: Այդ Դպրատան արհեստաւորները շարունակեցին իրենց գործունէութիւնը նաեւ դարուն երկրորդ կէսին: Անոնց մահուան հետ մեռաւ նաեւ մանրանկարչութեան եւ գրչութեան արուեստը: Եթէ արհեստաւորները իրենց Յիշատակարաններու մէջ Ամիթի դի–*

տապետը իրենց «պարծանքը» կը հռչակէին, նոյնպէս կարող էր ինքը պարծիլ իր օրով հռչակ հանած քաջագիր եւ նկարահան դրչապետներու Յովհաննէսի եւ Մինասի վրայ: Հայ Մշակոյթի պատմութեան մէջ Բարսեղ Արծրունւոյ առաջնորդութեան շրջանը առանձին գլուխ պիտի կազմէ:

Ուստի անարդար կը գտնեմ Գրիգոր Դարանաղցւոյ չարաչար դատաստանը Ամիթի առաջնորդի մասին: Արապիոն Ուրհայեցւոյ աշակերտներէն մէկն է, կ՚ըսէ Դարանաղեցի, «Ամթեցի Բարսեղ, որ ի վաղ ժամանակաց հետէ, յետ վախճանելոյ կաթողիկոսին Արապիոնի, սա յաջորդեաց գեպհական աթոռ նորին եւ է յոյժ ամարդի եւ ցամաք ի գթոյ եւ ի խնամարկելոյ վտանգելոց եւ այսքան ժամանակ է, մէկ բարեաց հռչակ մի չենք լսեր յիւրմէն» (368/9):

Այս դատաստանին մղուած է Գրիգոր Դարանաղցի առթիւ Երզնկացի Առաքել անուն վաճառականին, որ Պաղտասար մաքսապետէն բանդ դրուած էր: Բանտարկեալին ընտանիքը կը դիմէ Դարանաղցւոյն որ միջնորդէ Պաղտասարին եւ Ամթայ առաջնորդին քով, որպէս զի բանտէն դուրս գայ Առաքել. «Նա՛ որչափ աշխատ եղէ ի գրելն եւ ուղարկեցաք, նա ոչինչ համարեցան եւ անփոյթ եղեն» (Պաղտասար եւ Վարդապետն). Իսկ բանտարկեալն չդիմանալով նեղութեան կ՚ուրանայ հաւատքը: «Արդ, կը գրէ Դա-

բանայցի, գոյս լաւութիւն թէ չարութիւն՝ այսպիսի փորձիւ գիտասջիք զնա» (369)։

ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Ինձի ծանօթ չէ Ամթեցի Բարսեղ եպիսկոպոսի գրչէն գրական երկասիրութիւն մը, որ վկայուած ըլլայ ժամանակակիցներէն։ Նկատի առնելով որ Բարսեղ հեղինակած է երկու ընդարձակ չափական Յիշատակարաններ Երուսաղէմի Թ. 2559 Աստուածաշունչի եւ Թ. 3407 Հաւաքածոյքի մէջ, կը միտիմ ենթադրելու թէ իրենն ըլլան այն երեք տաղերը, որոնք «ի Բարսեղ վարդապետէ» երգուած են եւ կը գտնուին ժէ. դարու տաղարաններու մէջ։

Երուսաղէմի Թ. 3407ի «երկար ոտանաւորը» կ՚աւարտէր այսպէս, ըստ Յ. Քիւրտեանի.

Ոգեալ եղեւ բանս յինէն,
ի յապիկար ապաշնորհէն,
Բարսեղ անուն սպասաւորէն,
Սրապիոնի աշակերտէն.
Հազար յիսուն եւ վեց թվին,
բանս ի կարգի շարատողեցի,
Յիմար մտաց եւ եղկելի,
Բարսեղ անուն Արծրունեցի։

Յ. Քիւրտեան, Հայաստանեայց եկեղեցի, 1949, էջ 46)։

*Վերջիշեալ երեք տաղերն են.*

1. Գովասանք ի վրայ սուրբ Աստուածածնին ասացեալ ի Բարսեղ վարդապետէ:

*Երգ զարմանազան ձայնիւ հրաշազան*
*նուագեմք Կուսին յոյժ վայելչական...*
*Որ է անտեսին մեծ խորհրդարան*
*և աստուածութեանն տուն և մարմնարան...*

*Տունք՝* ԵՐԳ Ի ԲԱՐՍԵՂԷ:

— Յ. *Քիւրտեան՝ Տաղարան*, 1678, § 150: *Էջմ.* 41, 154ր (*Ժ°Ը*):

2. Ի Բարսեղ վարդապետէ ասացեալ ի վերայ սուրբ Աստուածածնին:

*Աստուածածին մայր անարատ խնկուհի*
*ներ խնկարան անեղ բանին Յիսուսի*
*անեղծ մարմնատեսիլ հրեշտակի*
*Քերովրէ մաքուր անխախտ պատկեր*
*հայելի...*

*Տունք՝* ԱՅՍ Ի ԲԱՐՍԵՂԷ:

— Յ. *Քիւրտեան՝ Տաղարան*, 1678, § 151:

3. Երգս զայս Բարսեղի է ասացեալ գովասանութիւնն սուրբ հարանց յանապատի:

*Երգ սրբութեանն այս գովեստի գուրա-*
*կան*
*վայելչարար առ վայելուչն գրեցան...*

վջ. *Անդ է խմուստ յայրին վիմայ հրաշարան*
*Եկեղեցի Աստուածածնին ըստ անուան...*

*Տունք՝ ԵՐԳ Ի ԲԱՐ(ՄԵՂ)Ի։*

*=էջմ․* 2361, 313*ա—բ* (*ժէ*)։

*Իր մասին՝*

*Մկրտիչ եպ․ Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, Երուսաղէմ* 1929, *էջ* 50—51։

*Յ․ Քիւրտեան, Բարսեղ Վ․ Ամթեցի (Նիւթեր Ամթայ դպրոցին պատմութեան համար), Հայաստանեայց Եկեղեցի,* 11 (1949), 42—46։

2․

ԱՄԻԹԻ ԴՊՐԱՏՈՒՆԸ

1․ *ԺԶ․ դարու երկրորդ կէսին համբաւուած էր իբրեւ գրիչ եւ մանրանկարող Հիզանցի Մարտիրոս քահանան։ Ունեցաւ ան բազմաթիւ աշակերտներ․ որոնց մէջ անուանի հանդիսացաւ* Աստուածատուր, *որդի տէր Սարգիսի եւ Թումարի։ Սա «յետ շրջելոյ այսր եւ անդր» եկաւ հաստատ Ամիթ եւ զետեղուեցաւ ի Ս․ Կիրակոս* (1589/90), *երբ Ղուկաս Վ․ Կեղեցին էր քաղաքին առաջնորդը։ Դաւիթ, Տարօնի եպիսկոպոսը, յանձնարարած էր իրեն գրել նկարազարդ Աւետարան մը։ Ի գլուխ կը հանէ զայն․ կը գրէ եւ կը ծաղկէ «բազում աշխատութեամբ եւ տկար մարմնով»։ Թէ յաջող*

*գործ մըն էր այն, վստահ է գրիչը. «զոր իմաստուն ընթերցողք եւ հմտական մտառուքդ ճանաչէք զարուեստ եւ զիմաստութիւն որ ի սմա գանձեալ կայ»:*

*Աստուածատուր վարպետ միաժամանակ ունեցած է իր շուրջը աշակերտներ. իր հոգեւոր զաւակը կը կոչէ աշակերտն Յովհաննէս սարկաւագ. կը յիշէ նաեւ Ծահնազար մը, որոնք «բազում աշխատանք կրեցին ի սուրբ Աւետարանիս»: Իսկ իր «հոգեւոր հօր եւ ուսուցչին, քաջ քարտուղար Հիզանցի տէր Մարտիրոս քահանայի համար կը մաղթէ որ «պահեսցէ Քրիստոս Աստուածն մեր անսասան կենօք մինչեւ ի խորին ծերութիւն»: Աստուածատուր մէկ քանի տարի ետքը կը վախճանի: Իր քով աշակերտած է նաեւ Ստեփանոս Կարմիր:*

2. Յովհաննէս *որդի Ճանիպէկին եւ Եթարին, որ սարկաւագութենէն երիցութեան կը բարձրանայ* (1633*ին*), *յետոյ ալ՝ «ի ծերութեան» վարդապետական աստիճանի կ՚արժանանայ, կը մնայ ապաստան իր ոյժերուն, սակաւ ուսածն ինքնօգնութեամբ զարգացնելու, բայց միշտ երախտագէտ իր ուսուցչին.* 1616*ին կը մաղթէր «ուսուցող վարժապետին իմոյ տէր Աստուածատուր քարտուղարին, որ աշխատեցաւ ընդ անարժանիս ի յուսումն հռչակաւոր արհեստիս մելանագործութեան, որոյ ողորմեսցի Քրիստոս Աստուած եւ ընդ սուրբ գրչապետացն դա–*

սեսցէ»: Խաչատուր գրիչ 1647ին «Նոր ա֊րուեստածին» ուսուցիչ: 1593ին Սրապիոն Ուրհայեցի, որ Երուսաղէմէն բերած էր Թա֊դէոս Կաֆացւոյ նկարազարդած Հարանց վարքը, կը յանձնարարէ Յովհաննէսին հա֊նել անկէ իրեն համար օրինակ մը, բնագրով եւ նկարներով: Թէպէտ դեղեւելով, բայց յանձն կ'առնէ հրամանը եւ կ'աւարտէ 1599ին յաջողութեամբ: Այս իր գլուխ գործոցը կ'ըլլայ: Կը հռչակուի համբաւը: Կը հաւաքուի իր շուրջը աշակերտութիւն, որոնց մէջ էին Մինաս եւ Մելքոն: Մինաս 1609ին կը խնդրէ յիշել «զուսուցիչն իմ զտէր Յովաննէս գրչա֊պետն եւ զկենդանագիր սրբոց պատկերաց նկարողն, որ բազում աշխատութեամբ աշ֊խատ եղեւ հետ անարժանիս յուսուցանել զարուեստս... Աստուած պահեսցէ զնա եր֊կար ամօք ի վերայ երկրի հանդերձ եղ֊բարրքն ի պարծանս ամենայն գրչաց»: 1611ին կ'անուանէ զանիկա «գրչապետ»: 1626ին «զուսուցանող արհեստիս զտէր Յովանէս քաջ քարտուղար եւ զաստուածարան քահանայ»: Յովհաննէսէն ունինք այլեւայլ մանր գոր֊ծեր, գորոնք, գրած, ծաղկած, եւ կազմած է 1603, 1604, 1605, 1612, թերեւս նաեւ 1618 եւ 1621 տարիներուն: Ասոնց մէջ ուշադրու֊թեան արժանի է 1616ին նկարազարդած Աւե֊տարանը, որուն մանր նկարագրութիւնը տուած է ինքնին: Յովհաննէս գրչապետ կը նստէր ի Ս. Սարգիս: Ունէր իրեն աշակերտ Մելքոն դպիրը:

3. Ստեփանոս *կոչուած* Կարմիր, *որդին էր Տէրվիչին եւ Մարիամին, ամուսնացեալ քահանայ, կողակիցն Զինար, որմէ ծնաւ Մինաս։ Ստեփանոս աշակերտած էր Աստուածատուր դրչապետին, բայց ուսուցչին մահուամբ թերակատար մնացած ընթացքը կը դրէ ինքնին* 1597*ին. «...հոգեւոր հօրն իմոյ եւ վարպետիս տէր Աստուածատուրին, որ բազում աշխատանք կրեց հետ մեզ եւ կատարելութեան ոչ եհան* (*եւ*) *վախճանեցաւ»։ Ստեփանոս Կարմիր ունի բազմաթիւ օրինակութիւններ, ոմանք ծաղկուած իրմէ։ Կը գործէր ի Ս. Կիրակոս։ Մինասի մասին Սիոն* 1951, 142/46։

4. Մինաս Քահանայ, *որդի Ստեփանոս քահանայի եւ Զինարի. եւ հայր Կարապետ եւ Յովհան դպիրներու, աշակերտեցաւ առ ոտս Յովհաննէս վարպետի, երբ տակաւին դպիր էր։ Հմտացաւ թէ գրչութեան եւ թէ մանրանկարչութեան արհեստներուն եւ եղաւ վարպետ։ Բարսեղ Ածրունւոյ հաւանութեամբ բացաւ գրչութեան Դպրատուն մը Ս. Կիրակոսի կից, այսինքն Առաջնորդարանին հովանաւորութեան տակ։* 1624*ին կը պարծէր. «Գրեցաւ ի Դպրատանն նուաստ Մինաս գրչի, ձեռամբ աշակերտաց իմոց»։* 1633*ին կը գրէր. «Յաւուրս Բարսեղ վարդապետի «հաստատեցաք Դպրոց յարհեստ գրչութեան». եւ* 1634*ին՝ «Եւ այս Բարսեղ վարդապետի ժամանակն սահմանեցաք Դպրատուն եւ շնոր–*

*Հօք ամենազօրին Աստուծոյ եւ օժանդակութեամբ Դիտապետին մերոյ գրեալ եղեւ (հինգ) Աստուածաշունչ եւ այլ բազում գրեանք»: 1633ին երբ նորոգուեցաւ Ս. Կիրակոս եկեղեցին, Գասպար երեսփոխան կարեւոր տեսաւ գրչութեան արհեստին համար ուրոյն արհեստանոց մը շինել. եւ «մեզ Դպրոցի խուց շինեց»: Այս Դպրատան մէջ կ'աշակերտէին Մինասի՝ Գրիգոր, Յովհաննէս սարկաւագ, ապա քահանայ († 1635), Առաքել արեղայ († 1635), Եղիազար որդի Մինասի եւ Պաղչայի, Սափար († 1635), Եղիա Ամթեցի եւ այլն: Սովորութիւն ունէր Մինաս իր կենդանութեան իր աշակերտներուն գրել տալ առաջարկուած գրքերու բնագիրները, իսկ նկարազարդումը կը կատարէր անձամբ. մինչեւ իր մահը նկարազարդած էր հինգ Աստուածաշունչ եւ բազմաթիւ այլ գրքեր: 1635 ապր. 1—յունիս 1 Ամիթի մէջ ծագած մահ տարաժամը խլեց Դպրատունէն երեք պատրաստուած ոյժեր. Առաքել, Յովհ. եւ Սափար: «Այս եղեւ ինձ մեծ սուգ եւ կսկծալի դառնութիւն. զի սոքօք պարծէի. զի դպրատունն իմ ամայի եղեւ»: Մինաս վախճանեցաւ 1637, օգոստոս 25ին Ամիթ: Իր աշակերտներու մէջ երեւելի հանդիսացան իր մահէն ետքը՝ Եղիազար եւ Եղիա: Իսկ Ամիթի Դպրատան գրչապետ եղաւ, ինչպէս կ'երեւայ, իր որդին Յունան:*

5. Մելքոն դպիր *որդի Ամիրճանի եւ*

Մարխամի, աշակերտած է Յովհաննէսին ի Ս. Սարգիս. 1609ին կը գրէր Մինաս անոր մասին. «Աստուած պահեսցէ... եւ զաշակերտն իւր (Յովհաննէսի) զՄելքոն դպիրն, որ յոյժ կախթոգին է ուսանել զարուեստս գրչութեան։ 1616ին կը յայտնէ Յովհաննէս, թէ Աւետարանը, զոր ինքը նկարազարդած է, «ձեռամբ չնորհազիծ գրչի Մելքոն դպրի. որ հարկեալ ի մէնջ որդիական հնազանդութեամբ գրեաց»։ Այս Մելքոնէն, որ կը նստէր Ս. Սարգիս եկեղեցւոյ վերնայարկին մէջ, ծանօթ են ինձ այլ եւ այլ գրչութիւններ 1611, 1613, 1615, 1621 տարիներէն։ Թերեւս իր գրչէն ըլլայ նաեւ 1624ին ի Ս. Սարգիս օրինակուած Յայսմաւուրքը։

Մինաս քահանայի Դպրատունէն ելած են.

6. Ամիրշէ սարկաւագ, որ կը յիշուի միայն 1621ին։

7. Առաքել որդի Սքանդարի եւ Սուլթանի, գրած է 1633ին Աստուածաշունչ, եւ գրած եւ ծաղկած է 1634ին Աւետարան։ Վախճանեցաւ 1634 ապրիլ 1։ Միաժամանակ աշակերտած է Բարսեղ Արծրունւոյ։

8. Գրիգոր, գրիչ 1630ի Տօնականին, ինչպէս կը գրէ. «Յիշեցէք զհոգեւոր ծնողն իմ զուսուցիչ արուեստիս զտէր Մինաս բանիբուն քահանայն [1]»։

[1] Կային այս շրջանին երկու գրիչ Գրիգորներ, երկուքն ալ կոչուած «Սասունցի». մինն է Գրիգոր որդի Ստեփանոս քահանայի եւ Շողիկի (կամ Շողոյի). «եմ, կ'ըսէ, ի բուն գաւառէն Սասնոյ, ի գեղջէն Նիչ կոչեցեալ», այլուր՝ «որ ի գաւառէն Հացու–

9. Եղիա սարկաւագ Ամթեցի: *Կը հաւաստէ 1620ին Մինաս, թէ ետու գրել զսա (Մատթէի Մեկնութիւն) աշակերտին իմոյ Եղիա սարկաւագի, որ առ մեզ է ի տառատպութիւն արհեստիս գրչութեան»․ 1626ին կը յանձնէ իրեն գրել Աւետարան մը․ այս առթիւ կ'անուանէ զանիկա «չնորհազգեծ ծրող» եւ «հոգեւոր որդեակ»․ 1637ին կ'օրինակէ Եղիազարի հետ ուրիշ Աւետարան մը: Կ'երեւայ թէ Եղիա յետ ժամանակի հեռա-*

---

*նեալ եւ ի գեղջէն Նչայ»․ ամուսնացած էր, կինն էր Մանուշակ: 1620ին այցելած է Երուսաղէմ եւ օրինակած Քարոզգիրք մը․ 1621ին կը գտնենք զինքը Տարոնի Եղրդուտ վանքը․ հոս կը տեսնէ Հաւաքածոյ գիրք մը գրուած 1321ին Երուսաղէմ․ կը տանի զայն Առաքելոց վանքը եւ կ'օրինակէ․ յետ ժամանակաց, հաւանօրէն 1630ին, կը նուիրէ զայն Երուսաղէմի վանքին (Երուսաղէմ, Թ. 939), Քարոզգրքին հետ (Երուսաղէմ, Թ. 541): 1636ին դարձեալ Երուսաղէմ է․ հոս ձեռք կը բերէ Ատենի Ժամագիրք մը եւ կը նուիրէ Ս. Յակոբեանց վանքին (Երուսաղէմ, Թ. 377․ Հմմտ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք, էջ 102):*

*Երկրորդ Սասունցի Գրիգոր գրիչն, որդի Պակօնի եւ Մոլինարին, այսպէս կը ներկայացնէ ինք զինքը․ Ցիշեցէք կ'ըսէ «զգծօղս սորա զԳրիգոր... զՍասընցի, որ ծնեալ եւ սնեալ եմ ի Բերիա, որ է Հալէպ, որ եւ այժմ եկեալ դադարեցայ... եւ ամուսնացայ․ ի Կոնիոն (իմացիր յԻկոնիոն) որ (է) Ղօնիա եւ մնացի․ Ժէ. ամ: Եկի ի Ղօնիա թվին ՌՂԵ (1646) եւ անդ բնակեցայ մինչեւ ի թվին ՌՃԺԲ (1663), որ այս գիրքիս թվական է: ԺԵ. ամաց էի՝ ուսայ գրագրութիւն․ մինչեւ ․ԽԵ․ հասայ ․Լ․ տարի գիր գրեցի բազում ․Ի․ Շարական ․Գ․ Այսմաւուր եւ այլ գիրք որի համար չի կայ»: Այս 1663 տարույս Մինաս Վ. Թօխաթեցւոյ յանձնարարութեամբ կը հանէ տպագիր Վարք հարանցէ նոր ձեռագիր օրինակ մը, որ երեք տարի կը պահանջէ (Համամճեան, Ցուցակ Գաղատիոյ, Թ. 5): Ուստի ծնած է Գրիգոր 1618ին, գրագրութիւն ուսած է 1633ին․ Իկոնիոն գացած է 1646ին:*

ցած է Ամիթէն. 1646ին կը գտնենք զինքը Կ. Պոլիս, ուր այլեւայլ օրինակութիւններ կատարած է (Բիւրակն, 1900, էջ 103, Սմբատեանց, Երնջակ, էջ 191 եւ Էջմիածին, Թ. 236):

10. Եղիազար, որդի Մինասի եւ Պաղչայի (Հոփսիմէի): 1637ին Եղիայի հետ կ'օրինակէ Աւետարան մը, զոր Մինաս կը նկարազարդէ: 1640ին յԱմիթ ի Ս. Կիրակոս կը գրէ իր Յովհաննէս եղբօր հետ Աստուածաշունչ մը եւ կը նկարազարդէ: Աղօթք կը խնդրէ «նաեւ հոգեւոր ծնողին իմոյ եւ ուսուցանողի ի յարհեստ գրչութեան տէր Մինաս քաջ քարտուղարին, որ բազում աշխատեցաւ ընդ անարժանութիւնս իմ» (Էջմ. 187): 1651ին Փիլիպպոս կաթողիկոս երբ կը հանդիպի Ամիթ, կը յանձնէ իրեն թերակատար նկարազարդուած Աւետարան մը, զոր սիրով կը լրացնէ (Էջմ. 274): 1468ին Խաչատուր Վ. Ատիչեցի Կ. Պոլսէն թերի գրուած Աստուածաշունչ մը կը բերէ Արղն. Եղիազար Վ. Հռոմկլայեցի կը ստանայ զայն եւ կը յանձնէ Եղիազարին յԱմիթ լրացնել պակասն եւ սրբագրել սխալներն (Աստուածաշունչ յԱրղն. Ջէնսիզեան–Պոտուրեան): 1647ին Խաչատուր գրիչ զԵղիազար «անդրանիկ ուսուցչին մերոյ» Մինասի, կ'անուանէ:

11. Խաչատուր գրիչ, որդի Գասպարի եւ Ծնահաւորի, Աւետաան մը կ'օրինակէ 1647ին յԱմիթ, ի Ս. Կիրակոս, որ կ'աւարտի

մայիս 11ին. կը խնդրէ «Աստուած ողորմի ասել նաեւ առաջին ուսուցանողիս իմոյ տէր Մկրտչին, որ յայրէն մինչեւ ի Տարականն ուսոյց... նաեւ զվերջին ուսուցանողն իմ զարուեստս գրչութեանս տէր Մինաս Քարտուղարն քաջ եւ արի, զոր է առ Աստուած փոխեալ, զոր Տէր Աստուած զնա սուրբ թարգմանչաց եւ գրչապետաց դասին դասակից եւ պարակից արասցէ. եւ զուսուցանողն իւր զնոր արուեստածինն զտէր Յովհաննէս վարդապետն ընդ յիշեալսն դասակցեսցէ եւ պսակակցեսցէ. ամէն: Նաեւ աշխատողքն առաջի իմ զհոգեւոր որդիքն իմ զմահդասի Սարգիսն եւ զողջախոյ եւ խոնարհամիտ Պօղոսն...: Նաեւ զհոգեւոր եղբայրն իմ զտէր Եղիազարն, որ է անդրանիկ ուսուցչի մերոյ. եւ զտէր Յունանն յիշել ի Տէր աղերսեմ» (Գ. Տէր Կարապետեան, Ձեռագիրք Տարօնոյ): Գրած է Աւետարան մ'ալ 1652ին (Երուսաղէմ 2347):

12. Կարապետ Մշեցի, աշակերտն Բարսեղ Արծրունւոյ. որ կատարած է օրինակութիւններ 1617ին եւ 1618—1625ին յԱմիթ եւ ի Մուշ:

13. Կարապետ որդի տէր Մինասի «նորահաս գրիչ տարաժամ փոխեալ (1626էն յառաջ): Ձունինք իրմէ որ եւ է գրչութիւն:

14. Կիրակոս աշակերտ տէր Ստեփանոս Կարմիրի: Ձունինք իրմէ ալ որ եւ է գրչութիւն:

15. Միքայէլ քահանայ. 1621ին «տէր Միքայէլ նորընծայ քահանայ ի Ս. Սարգիս Մելքոն դրչի հետ կ'օրինակէ Աւետարանի մէկ մասը. իսկ 1632ին կը մասնակցի Աստուածաշունչի օրինակութեան. կ'ըսուի. «այլ եւ քաջ քարտողարին տէր Մինաս անհաս դրչին, տէր Միքայէլ նման նմին որ զայս սուրբ գիրքս գրեցին, երանգ երանգ զարդարեցին, ոսկենկար զառ ծաղկեցին կենդանագիր պատկերք սորին զանազանեալ գեղեցկացուցին:

«Այլ եւ գրողացն եւ ծաղկողացն երփն երփն գունով երկուց քահանայիցն՝ Ամբեցւոյ տէր Միքայէլ աւագ երիցուն սուրբ Սարգսայ որ յառաջին սկսաւ Աստուածաշունչս եւ ԺԴ տետր գրեաց եւ ծաղկեաց...»:

16. Յակոբ քահանայ որդի Մարտիրոսի եւ Հազարխաթունի, ի Ս. Կիրակոս, 1621ին կ'օրինակէ Հեքիմարան եւ 1628ին կը նորոգէ ձեռագիր մը:

17. Յովհաննէս սարկաւագ. 1622ին Ամիրշէ եւ Յովհաննէս սարկաւագները, «որ սկիզբն առնէին գրչութեան եւ ուսանէին առ ոտս տէր Մինաս դրչի», կ'օրինակեն Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութիւնը: Հաւանօրէն սա էր այն աշխարհիկ քահանայն Յովհ. որդի Գրիգորի եւ Ֆիրիխաթի, որ Աստուածաշունչ մը կը գրէ եւ Մինաս կը նկարազարդէ եւ կը վախճանի 1635 ապրիլ 5ին:

18. Յովհաննէս սարկաւագ ի Ս. Կիրա–

կոս, 1628ին կ՚օրինակէ Սաղմոսարան մը· կը խնդրէ խոշորութեան համար ներողամտութիւն, «բայց դուք գիտէք զի կատարեալ չէի յարհեստ գրչութեան»: Սա թերեւս նոյն ըլլայ Եղիազար գրչի համանուն եղբօր հետ, որ նոյնպէս գրիչ էր, յիշուած 1640ին: «Յովհ· գրիչ մ՚ալ կը յիշուի 1646ին ի Ս· Կիրակոս:

19· Յունան, որդի Մինասի եւ Խաթուն պակուն: Սա կը յիշուի իր հօրմէն 1626ին իբրեւ «պատանեակ», որ կը հետեւի գրչութեան արուեստին: Ան իբրեւ գրիչ առաջին անգամ երեւան կու գայ 1641ին ի Ս· Կիրակոս· կ՚օրինակէ Ճաշոց մը· «ի գրելն» իրեն օգնական կ՚ըլլան Հայրապետ սարկաւագ եւ Նիկողայոս դպիր (Ջէնտիզեան–Պոտուրեան): 1644ին կ՚օրինակէ Սարգիս Կունդի խմբագիր Մեկնութիւնն Յովհաննու (Համամճեան, Ցուց· Գաղատ· 39)· 1650ին՝ Աւետարան մը (Թորոս Աղբար, Բ·, 444)· 1648ին՝ Մաշտոց մը (Համամճեան, անդ, 49) եւ Քարոզգիրք (Վիեննա, Թ· 102· Ցուցակ, 373)· 1666ին Յովհաննէս Վ· Արղնցի կիսատ օրինակուած Աստուածաշունչ մը «ետու, կ՚ըսէ, գրել զմնացեալն ի կերտն Տիգրանու ոմանց տխմարավարժ գրչաց՝ ձեռամբ ումեմն բարեսէր եւ արհեստավարժ գրչի տէր Յունան Ճախաճայի, բայց ոչ իւր ձեռամբ, այլ աշակերտաց այլ եւ այլ գրչաց, որպէս որ տեսանէքդ· զի թէպէտ ինքն կատարեալ հմուտ

էր արհեստին, բայց վասն սքաղմանց ժողովրդեան ոչ կարաց գրել իւրով ձեռամբ. այլ եւ գրել իւրոց թերակատար աշակերտաց: Եւ արդ զինչ եւ իցէ կատարեցաւ Աստուածաշունչ տառս ի Թվին մարդեղութեան Բանին Աստուծոյ Ռ.Ո.ԿԸ. իսկ ի մերումս ՌԺԷ (1668, Էջմիածին, Թ. 202): Անկէ կը տեսնուի, թէ Մինաս գրչապետի մահէն ետքը, դպրատունը — ժամանակ մը Եղիազարի վերատեսչութեան տակ — իր գոյութիւնը պահպանած է մինչեւ 1668, հիմնադրի որդւոյն Յունանի ղեկավարութեան տակ:

Հաւանօրէն իրեն կը հային Գրիգոր գրիչի տողերս, գրուած 1672ին ի Բաղէշ, ի մասին Ղազար Փարպեցւոյ Պատմութեան ձեռագրին. «Ով սուրբ ընթերցաւղք եւ եղբարք, գիրքս հին էր եւ աւրինակս: Յունան վարդապետն կարդացեալ էր զաւրինակն եւ նորոգեալ. եւ զպակասութիւն թղթոցն որ պակասէ, ոչ էր գտեալ. եւ ես ոչ կարացի գտանել...» (Էջմ. 2639, թղ. 386բ. Հմմտ. Ղ. Փարպեցի, Թիֆլիս 1904, էջ Ե—Զ):

Այնու որ Ղազար Փարպեցւոյ Պատմութիւնը Յունանի ձեռքը կը տեսնուի, հարկ է ենթադրել թէ այդ ձեռագիրը գտնուած է ժամանակ մը Ամիթ, գոնէ նորոգութեան համար: Ուստի հարց կը ծագի, թէ ո՞ր վանքէն կամ որ քաղաքէն տարուած է հոն այդ ձեռագիրը: Թէեւ այս հարցին վճռական պատասխան մը տալ կարելի չէ, բայց կը տես–

նուի որ ան Բաղէշի մէջ նորոգուած չէ եւ Բաղէշի Ամիրտոլուի վանքին պատկանած չէ: Վարդան պատահած ըլլալու է ձեռագրիս կա՛մ Ամիթ, կամ Առաքելոց վանքը եւ կամ մեզի անծանօթ վայր մը. եւ փոխադրութեամբ բերած է Բաղէշ եւ հոս օրինակել տուած եւ վերադարձուցած: Զայս կը հաստատէ այն հանգամանքը, որ Վարդան իր վանքին ձեռագիրներու ցուցակին մէջ որ եւ է խօսք չէ ըրած այս հին օրինակի մասին: Բաղիշեցի գրասէր վարդապետս սովորութիւն ունէր նման հին ձեռագիրները օրինակել տալէն ետքը էջմիածին ուղարկել ի պահպանութիւն, ինչպէս ըրած էր Ղեւոնդի Պատմութեան գաղափար-օրինակը:

20 · Ռոհիկ (Ռուհիճան) սարկաւագ. Ոսկեփորիկ մը օրինակուած է ի Ս. Կիրակոս «ձեռամբ... Ռոհիկ սարկաւագի», որ ինք զինքը նաեւ Ռոհիճան Համթեցի կը կոչէ (Վենետիկ, Թ. 293 · Ցուցակ, Բ., 1056—1057):

21 · Սահակ, որդի Սարգսի ի Ս. Սարգիս գրած է Գր. Տաթեւացւոյ Հարցմանց գիրքը (էջմիածին, Թ. 806):

22 · Սարգիս «քաջ երաժիշտ եւ արագագիր գրչապետ եւ նկարող» մը կը յիշէ Վարդան Բաղիշեցի 1653ին. «որ է սա, կ'ըսէ, ի Միջագետաց, ի քաղաքէն յԱմթայ, եկեալ աստ (ի Բաղէշ, յԱմիրտոլու վանս) վասն ոքնութեան սուրբ գրոց ընթերցման. որ եւ

իսկ ունի զցայգաջան աշխատութիւնն՝ դե-գերեալ ի դրունս խմաստից միշտ. զոր եւ լցուսցէ Տէր զանձկութիւն ըղձից փափագա-նաց սորա» (Զմմառ, 349)։ Անշուշտ Ամիթի Դպրատան աշակերտներէն էր Սարգիս, թէեւ չունինք իր ձեռքէն Ամիթ գրուած ձե-ռագիրներ։

23. Սափար սարկաւագ, որդի Խաչա-տուրի եւ Հռիփսիմէի, աշակերտ տէր Յա-կոբի 1629ին ի Ս. Կիրակոս կ՚օրինակէ Սաղ-մոսարան մը (Լալայեան, Թ. 13). 1633ին Խրատ դրչութեան արհեստի (Վիեննա, Թ. 389, Յուցակ, 843). 1633—1634ին մաս-նակից էր Աստուածաշունչի մ՚օրինակու-թեան. 1635ին կ՚ըսուի իրեն համար նոյն գրքին մէջ. «գրող սուրբ Աստուածաշունչիս Սաֆար դպիրն, որ էր աշակերտ... Մինաս դրչիս»։ Վախճանեցաւ 1635, յունիս 1ին։

3.

ԱՂԲԻՒՐՆԵՐ ԲԱՐՍԵՂ Վ. ԱՐՃՐՈՒՆԻՒՈՅ ԿԵՆՍԱԳՐՈՒ-ԹԵԱՆ ԵՒ ԱՄԻԴԻ ԴՊՐԱՏԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ (1590—1640)

Այս տեղ պիտի տամ, համառօտ քա-ղուածքներով եւ ժամանակագրական դասա-ւորութեամբ այն ձեռագրական Յիշատակա-րանները, որոնք Ամիդ գրուած են եւ կը հային Բարսեղ վարդապետի կենսագրու-թեան եւ Դպրատան աշխատաւորներուն, գրիչ-

ներու, մանրանկարիչներու եւ կազմարար–ներու:

1· 1590· Միքայէլ Աստրւոյ ժամանակա–գրութիւնը կ՚օրինակուի «հրամանաւ քաջ բարունապետին տէր Սրապիոնին, ձեռամբ Ղազար աբեղայի»: Կը խնդրուի յիշել «զմեծ բարունապետն տէր Սրապիոն հոյլին բարի Հայոց... եւ ընդ նմին զերկու աշակերտսն՝ տէր Ոստակէսն եւ զտէր Թուման. ընդ նմին եւ զԲարսեղ սարկաւագն· եւ զայլսն» (Մուշ, Եղրդուտի Ս. Յովհաննէս. Ցուցակ Գեղամ Տէր–Կարապետեանի):

2· 1594· Ժողովածոյք պատմագրաց (Փոքր Սոկրատ եւն)· կ՚օրինակէ Ստեփանոս գրիչ, Սրապիոն վարդապետի համար (էջ–միածին, Թ. 1518· հմմտ. Տէր–Մովսէսեան, Սոկրատ, էջ ԻԶ):

3· 1597· Յայսմաւուրք, գրիչն Ստեփա–նոս էր «ընիկ Աթխայ երկրէն եւ ի գեղջէն որ Նունիաս ասեն», ատինձանով քահանանայ· «կատարեցի ի լաւ եւ ընտիր աւրինակէ որ եւ Նաղաշ կոչեցեալ եպիսկոպոսէ· ի դառն եւ ի նեղ ժամանակին գրեցի եւ ծաղկեցի...: Աստուած ողորմի ասացէք անարժանիս Ստե–փանոս... քահանայիս եւ... հօրս Տարվիչին եւ մօրս Մարիամին եւ որդւոցն իմոց Մինաս սարկաւագին... եւ կողակցին իմոյ Զինարին եւ հոգեւոր հօրն իմոյ եւ վարպետիս տէր Աստուածատուրին որ բազում աշխատանք կրեց հետ մեզ եւ կատարելութեան ոչ եհաս՝

*վախճանեցաւ»* (*Նոր Ջուղայ, Տէր–Աւետիսեան, Ցուցակ, Թ.* 230)։

4. 1597. «*Թվին ՌԽԶ. եկի ես Բարսեղ ծառա սուրբ Առաքելոցն... Սրապիոն վարդապետին Եղեսիոյ. ի վանքս սուրբ որ է... որ է Սասնու. ի գեղջէն Մարմ̃իտու... (Մի–ջա)գետս Ասորոց Արղին յՈւրհա ա... գրց որ եւ յայսմ ամի եկան հրամ... հ վանքս. ձմեռն մի յառաջնորդութեան...*» (*Երեւան, Թ.* 78 *Ճառընտիր, Թղ.* 1*ա*)։

5. 1599. *Սրապիոն վարդապետ* 1591*ին կ'երթայ Երուսաղէմ կը տեսնէ հոն նկարազարդ Հարանց Վարք մը, գրուած Կաֆացի Թադէոս «յոքնահանճար գրչապետէ». կ'առնէ զայն օրինակութեան համար եւ կը բերէ Ամիդ, եւ կը յանձնէ Յովհաննէս գրչին օրինակելու զայն հանդերձ նկարներով։ Օրինակութիւնը կ'ելլէ ի գլուխ. իսկ «զկնի աւարտմանն գրոցս՝ անվ̃նաս եհաս Օրինակն ի սուրբ Երուսաղէմ»*։

«*Աղօթիւք հայցեցէք ի Քրիստոսէ թողութիւն... եղկելի գծողիս* Յովանիսի *եւ իմ ծնողացն ի Քրիստոս գնացելոցն՝ հօրն Ճանիպէկին եւ մօրս Եթարին եւ բազմերախտ եղբարցս իմ Կարապետին եւ Աստուածատուր սարկաւագին, որ նոքօք անզբաղ եմ ի գրչութիւնս. զի հոգացող են մարմնաւոր պիտոյիցս»։ Օրինակութիւնը կը սկսի* 1592*ին եւ կ'աւարտէ* 1599*ին օգոստոս* 31*ին «Ամիթ, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի... ձեռամբ*

յոգնամեղ··· գրչի Յովանէս միայն անուամբ երիցու, զոր բազում աշխատութեամբ··· յանկ ելեալ կատարեցի զսուրբ Հարանց վարքս··· ըստ խւրոյ օրինակին, որչափ կար իմ եհաս. եւ զարդարեցի պայծառ եւ ոսկէ-նկար անկուածով, կենդանագիր պատկերօք զսրբոց աստուածազգեաց հարցն, ի զուար-ճութիւն տեսողաց եւ ի փառս Աստուծոյ: Եւ զանուանս սրբոցն յայտնիչ կարմրադեղով արարի···: Եւ զի յորոշեալ ամենայն ա-նուանց երկրաւորաց՝ անունն տէրունական կարմրադեղով, ոսկւով, սոյնպէս եւ սրբոցն անուանքն··· կարմրադեղով եւ ոսկւով···» (Կեսարիա, Ս· Կարապետի վանուց Նոր Մա-տենադարան, Թ· 9· Պալեան, Ցուցակ, ան-տիպ):

6· 1601· «Ի Թվականիս հայկազեան տու-մարի ՌԾ· եկի ես անարժան Բարսեղ սպա-սաւոր բանի եւ աշակերտ Սրապիոն քաջ րա-բունապետին Ուռհայեցոյ, ի գիւղաքաղաքս Ջուղայ, յաւուրս զարնային· յորում ամի մարախ եկն եւ գնացաք ի դաշտն ի պահպա-նել՝ ունելով բարեխօս զսուրբ Ստեփաննոս Նախավկայն» (Էջմիածին, 1722, Թղ· 86բ· ի վերջ «Յօսք իմաստասիրաց» = Աղուսա-գրոց գրքին, որ կը Թուի տպագիր ըլլալ, Ջուղայի՞ տպարանէն):

7· 1603· Խաչատուր Ջուղայեցի կը գնէ 1497ին գրուած Աւետարան մը, զայն յԱմիդ, ի դուռն Ս· Սարգսի, կազմել կու տայ Յով–

Յովանէս գրչին եւ կը նուիրէ Ջուղայի Ս. Գէորգ եկեղեցւոյ (Տէր Աւետիսեան, Ցուց. Նոր Ջուղայի, Թ. 79)։

8. 1604. Ուռհայեցի Աստուածատուր սարկաւագ «ետ վերստին նորոգել զսա (Ճաշակնոց) ՌԾԳ. Թուին ի մայրաքաղաքս Համիթ ձեռամբ Յովանէս մեղապարտ գրչի» (Վիեննա, Թ. 212. Ցուցակ, էջ 535)։

9. 1605. Աւետարան մը, որ գրուած է 1578ին ի Պոռ, «Յամի ՌԾԴ. ծաղկեցաւ եւ սրբագրեալ կազմեցաւ Աւետարանս ձեռամբ Յովանիսի ի յԱմիթ մայրաքաղաքի, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի ի դիտապետութեան մերոյ նախանդիս տէր Սրապիոն վարդապետին, որ եւ չնորհիւ տեառն՝ Գրիգոր կաթողիկոս սուրբ էջմիածնայ, ի դառն եւ ի նեղ ժամանակիս, զի աւերեցին գերկիրս...» (Թորոս Աղբար, Բ., 435)։

10. 1605. Խօճայ Միրաք կը փրկանաւորէ զինուորներու ձեռքէն Աւետարան մը «եւ բերեալ յԱմիթ՝ ետ նորոգել եւ նկարել զպատկեր աւետարանչացն, ձեռամբ Ստեփանոս գրչի եւ ետ նուէր Ս. Կիրակոս եկեղեցւոյն» (Թորոս Աղբար, Բ., 438)։

11. 1606. Ստեփանոս քահանայ որդի Դարվէշին ի Ս. Կիրակոս կը գրէ եւ կը ծաղկէ Ճաշակնոց մը (Հայաստանեայց Եկեղեցի, 1941, էջ 278)։

12. 1607. Երուսաղէմի Թ. 3407 Հաւաքածոյք մըն է, երբեմն սեպհական Բարսեղ

վարդապետին. ՝այստեղ ունի ա՛ն այլեւայլ յիշատակագրութիւններ.

«Ես Բարսեղ աշակերտ տէր Սրապիոն քաջ րաբունապետին ՌԽԲ (1593) թուին արեղայ աւրհնեցայ յԱմթայ վանքն Հոկտեմբեր ամսոյ:

ՌԽԸ (1599) վարդապետական իշխանութիւն առի յԱմիթ ի սուրբ Կիրակոս եկեղեցին սեպտեմբեր յԼ:

ՌԾԳ. թուին եպիսկոպոս եղէ ի նոյն Համիթ քաղաքի յուլիս յԼ:

Բայց գիտելի է զի արեղայ, վարդապետ, եպիսկոպոս Սրապիոն վարդապետն արար զիս. սա ուսուցիչ ինձ ի փոքր ժամանակէս:

Ես նուաստ ծառայ ծառայից Աստուծոյ Բարսեղ պիտակ անուն սպասաւոր բանի, շնորհաւք ամենասուրբ Հոգւոյն եւ աջողութեամբ Նորին ժամանեցաք յաստիճան վարդապետութեան եւ առաք գաւազան ի տէր Սրապիոն քաջ րաբունոյն իմմէ ի թուականութեան հայկական սեռի արեղականն տումարի ՌԽԸ (1599) եւ ի կենարարին մերոյ գալստեան խոնարհութեամբ յաշխարհ ՌՈ (1600), ի հրոտից ամսոյ Հայոց. ԺԳ եւ ի սեպտեմբեր Հոռմայեցւոց յԼ. ի մայրաքաղաքս Համիթ ի սուրբ Կիրակոսի եկեղեցին, յաւուր տօնի Վարագայ սուրբ Խաչին, յառաջնորդութեան քաղաքիս տէր Սրապիոն վարդապետիս իմոյ. եւ յաթոռակալութեան

եւ ի հայրապետութեան էջմիածնայ տէր (դատարկ) կաթողիկոսին եւ ի Սաա նահանգին տէր Ազարիա կաթողիկոսին. ի թագաւորութեան Տաճկաց Մահմատին. զոր խընդրեմ յամենայն յիշել ի Տէր միով ողորմիայիւ. եւ էի ես յայսմ ամի. ԻԵ. ամաց» (էջ 184—185):

«Ես Բարսեղ նուաստ ծառայ ծառայից Աստուծոյ պիտակ անուն վարդապետ, աշակերտ տէր Սրապիոն քաջ րաբունապետին եւ Գրիգորի Հայոց հայրապետին, աւրհնեցայ եպիսկոպոս ի նոյն վարդապետէս իմմէ, որ նստաւ ի կաթողիկոս յէջմիածին ի ՌԾԲ (1603) թւին եւ գիս աւրհնեաց եպիսկոպոս ի ՌԾԳ (1604) թուին ի Համիթ քաղաքի յուլիս ամսոյ յԼ. ի սուրբ Սարգսի օրին» (էջ 187):

Իսկ էջ 236 ունի երկար չափական գրութիւն մը, որ կ'աւարտի այսպէս.

Ողեալ եղեւ բանս յինէն
Բարսեղ անուն սպասաւորէն
Հազար յիսուն եւ վեց թվին
Յիմար մտաց եւ եղկելի,
Ի յապիկար ապաշնորհէն.
Սրապիոնի աշակերտէն.
Բանս ի կարգի շարատողեցի.
Բարսեղ անուն Արծրունեցի:

Հայաստանեայց եկեղեցի, 1949, էջ 44ª:

13. 1608. Աւետարան, զոր կը ստանայ Բարսեղ եպիսկոպոս առաջնորդն սուրբ վա-

*նայն ԺԲ Առաքելոց եւ Ամթայ» եւ կը նուիրէ արծաթէ սկիհով մը իր ծննդավայր Մարմանդ գիւղի Ս. Գէորգ եկեղեցւոյն, ի յիշատակ ծնողաց եւ եղբօր մղտեսի Ապտուլին, «որ բազում աշխատեցաւ ի շինումն եկեղեցւոյն» (Ջէնսիզեան–Պատուրեան) :*

14 · 1609 · *Կարապետ գրիչ, «որ կամ, կ՚ըսէ, ի ծառայութեան տէր Բարսեղ վարդապետին», կ՚օրինակէ յԱմիդ Մաշտոց մը «յառաջնորդութեան տէր Բարսեղ քաջ րաբունապետին եւ աստուածաբան վարդապետին» (Հռոմ, Վատիկանեան Մատենադարանին, թ.* 20 · Tisserant *էջ* 197) :

15 · 1609 · *Բարսեղ առաջնորդ Մշոյ եւ վանիցն Առաքելոց, ի դարանի վանիցն գտաւ Հարանց Վարք եւ տարաւ յիւր վիճակն ի Համիդ ի դուռն Ս. Կիրակոսի: Եւ զի սկիզբն ձեռագրին ցեցակեր լեալ էր, ետ վերստին նորոգել եւ զպակասն գրել Ստեփանոս գրչի ի վայելումն եղբօրն իւրոյ Ապտուլի եւ յետ այսր կենաց՝ յիշատակ Առաքելոց վանաց (Պատուրեան, հմմտ. Ալիշան, Հայապատում, Բ., էջ* 610—611) :

16 · 1609, *նոյեմբ.* 12 · *«Գրեցաւ սուրբ Աւետարանիս. Բ. գլուխն՝ Ղուկաս եւ Յովհաննէս եւ Յանկ նորին ձեռամբ հօրն իմոյ* Ստեփաննոս *քահանային. եւ միւս երկու գլուխն եւ ծաղիկքն եւ տնօրինականքն եւ համարաբբառքն, խորանքն ձեռամբ նուաստ եւ զառածեալ Մինաս գրչի» յԱմիդ, ի Ս.*

Կիրակոս «ի յաւաջնորդութեան մայրաքա-
ղաքիս Համթայ տէր Բարսեղ աստուածարան
վարդապետին եւ սուրբ հայրապետին, որ
իբրեւ գջահ արփիափայլ փայլէ ի մէջ եկե-
ղեցւոյ Նոր Սիոնի, նման անուանակցին
իւրոյ Բարսեղի Կեսարացւոյ, զոր Տէր Աս-
տուած պահեսցէ զնա յերկար ամօք մինչեւ
ի խորին ծերութիւն ի պայծառութիւն սուրբ
եկեղեցւոյ եւ ի պարծանս մեր. ընդ նմին եւ
զիւր եղբայրն զմահդասի Ապտուլն, որ վասն
Աստուծոյ թողեալ է զաշխարհս, հետեւէր
է աստուածային բանին...»: «Յիշեսջիք ի
Քրիստոս զնուաստ Մինաս գրիչս եւ զհայրն
իմ Ստեփանոս քահանայն... եւ զմայրն իմ
զփոխեցեալն աստեացս զՁինարն... զուսու-
ցիչն իմ զտէր Յովաննէս գրչապետն եւ
զկենդանագիր սրբոց պատկերաց նկարողն,
որ բազում աշխատութեամբ աշխատ եղեւ
հետ անարժանիս յուսուցանել զարուեստս...
Աստուած պահեսցէ զնա երկար ամօք ի վե-
րայ երկրի հանդերձ եղբարրքն ի պարծանս
ամենայն գրչաց. եւ զաշակերտն իւր զՄել-
քոն զպիրն, որ յոյժ կաթոգին է ուսանել զա-
րուեստս գրչութեան» (Աւետարան, Լա-
լայեանց, Ցուց. Վասպուրական, Թ. 357,
էջ 831—838):

17. 1611. Արդ գրեցաւ եւ ծաղկեցաւ ոս-
կենկար՝ մատեանս աստուածաշունչ համա-
ռօտ տոհմաթուիւք, յԱմիթ, ընդ հովանեաւ
Ս. Կիրակոսի ձեռամբ Մինաս գրչի աշա-

կերտի Յովհաննէս գրչապետի» ի խնդրոյ Աթախցի Բարսեղ վարդապետի, որ կը նուիրէ ի դուռն Ս. Առաքելոց մօտ յԱթուխ (Զէնաիպեան–Պոտուրեան) ։

18· 1611· Նոյն մատեանէն երկրորդ օրինակ մ'ալ կը յիշուի ի Տարօն, գրուած նոյն գրչէն եւ նոյն ստացիչին համար (Գ. Տէր-Կարապետեան) ։ Հոս կ'ըսուի. «Թվ. ՌԿ. եղեւ չարժ ի կողմանս Համիթ քաղաքին» ։

19· 1611· Գ. Սրուանձտեանց կը յիշէ Աւետարան մը գրուած ՌԿ (1611) թուին յԱմիդ «յանպատշաճ ընակութեանս եւ անհանգիստ նեղ եւ անձուկ յարկիս ի թաղին որ կոչի Զըխար մերձ Մէրտընայ դուռն քաղաքիս»· առանց գրչի անունը նշանակելու ։ Առանց տարակուսի ըլլալու է գրչին անունը Մելքոն· տես 24 եւ այլն (Թորոս Աղբար, Բ., էջ 424) ։

20· 1612· Ստեփանոս գրիչ կը նորոգէ Աւետարան մը յԱմիդ, Ս. Կիրակոս, ի թաղն Փարաքանտայ, որ ապա կը նուիրուի Բարձրահայեաց Ս. Աստուածածնի վանքին «յառաջնորդութեան տեառն Ղազարու քաջ եպիսկոպոսի (Պոտուրեան) ։

21· 1612· Ըռշնիկ գիւղին Ստեփանոս երէց Աւետարանս պր. Նրեսէսի մօտ գրաւ կը դնէ յԱմիդ. «յետոյ Ներսէսն գրաւն եթող եւ տուեց յիշատակ առաջի տէր Բարսեղ վարդապետին» եւ վերադարձուց նոյն գիւղի Ս. Սահակ եկեղեցին (Լոնտոն, Բրիտ. Թան-

*դարան*, Conybeare, Catalogue, *թ*. 21, *էջ* 38—39) ։

22. 1612. *Ճաշակնոց մը գրուած 1487ին ի Վան, կը ստանայ Վրթանէս եպ. Ջուղայեցի եւ կազմել կու տայ յԱմիդ* Յովհաննէսի (*Էջմիածին*, *թ*. 1591, *թղ*. 432*ա*) ։

23. 1613. *Մինաս գրիչ ի Ս. Կիրակոս վաճառական պր. Պաղտասարի պատանի որդւոյն Գասպարի համար կ'օրինակէ Յովհաննու Աւետարանը փոքրադիր* (*Վենետիկ*, *թ*. 115, *Ցուցակ*, *Ա*., *էջ* 510) ։

24. 1613. *Յովհաննէս գրիչ ի Ս. Սարգիս կ'օրինակէ Մաղաքիա Վ. Թոխաթեցւոյ համար Ներսէս Շնորհալւոյ Մատթէի Մեկնութիւնը, ընտիր բոլորգրով. կը խնդրէ յիշել «եւ զատար գրչութեանս զհողեւոր որդեկս զՄելքոն գրիչ»* (*Էջմիածին*, 1245) ։

25. 1613. *Ստեփանոս քահանայ ի Ս. Կիրակոս կ'օրինակէ Սաղմոսարան մը Յովհ. Վ. Ուրհայեցւոյ համար* (*Սիւրմէեան*, *Ցուցակ Հալէպի*, *թ*. 131, *էջ* 224) ։

26. 1613. *Մինաս որդի Ստեփ. քահանայի կը գրէ ի Ս. Կիրակոս Մատթէոս վարդապետի Մեկնութիւնն Գործոց, Յովհ. Վ. Ուրհայեցւոյ համար* (*Պոտուրեան*) ։

27. 1614. *Ստեփանոս գրիչ կ'օրինակէ Գիրք Քիմիական արուեստի: «Յայսմ ամի եղեւ զժտութիւն ի մէջ Վարդապետաց եւ Էջմիածնայ Կաթողիկոսին. Աստուած վերջքն բարի կատարէ, ամէն»* (*Էջմիածին*, *թ*. 2527) ։

28· 1615· Բարսեղ Վ· աշակերտ Սրապիոնի, գրել կու տայ յԱմիդ Կիւրղի Պարապմանց եւ Գանձուց գրքերն եւ կը նուիրէ Մուշի Եղիազարու վանքին: «Յիշեսջիք զաւազ եղբայրն իմ զԱպտուլ, որ եղեւ պատճառ ուսման մերոյ» (Հ· Ն· Սարգիսեան–Պոտուրեան):

29· 1615· Վարդանի Մեկնութիւնն Երգոց երգոյն «գրեցաւ հրամանաւ Բարսեղ աստուածարան Վարդապետի ի մայրաքաղաքն Համիթ, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի, ձեռամբ Մելքոնի գրչի: Աշակերտ նորին Բարսղի տէր Կարապետ գրեալ էր զԱռակաց մեկնիչն. եւ այժմ ես յետնեալս գրեցի զսա, զի լիցի յիշատակ ի մենաստանն Եղիազարու, ուր է անդ նշխարք ԺԲ· Առաքելոցն: Արդ խնդրեմ յիշել զԲարսեղ վարդապետն, որ է այժմ առաջնորդ Համթայ» (Պոտուրեան):

30· 1616· Աւետարան մը կը գրուի յԱմիդ «յըռամկաց միջի, ի թաղն որ կոչի Զըխալ, մերձ Մերտինա դռան քաղաքիս, ի վերնայարկ փոքր դատիկոնիս . . . ձեռամբ չնորհազուրկ գրչի Մելքոն դպրի, որ հարկեալ ի մէնջ՝ որդիական հնազանդութեամբ գրեաց . . . որ եւ ես մեղապարտ Յովանէս գրիչս ուսուցաւղ նորին, ձեռնարկեալ ծաղկեցաք ի միասին եւ զարդարեալ ոսկենկար յանկուածով յաւրինեցաք զսա · նախ զներդնաւրէնութիւն մարմնացելոյ Բանին կենդանագիր պատկերաւք, սկսեալ ի յԱւետեաց հրեշտա–

*կապետին Գաբրիէլի որ առ սուրբ կոյսն Մարիամ եւ զԾնունդն ըստ կարգի զամենայն գլխաւորսն մինչ ի հանդերձեալ համաւրէն յարութիւն հրաշակերտ յաւրինուածով։ Եւ ի նոյն չարս զՀամաբարբառաց ·Ժ· խորանսն բազմազան խորհրդով, պատկերաւք, թռչնօք եւ գազանաւք եւ ազգի ազգի չորքոտանաւք, ծառաւք եւ ծաղկաւք, բազմախուռն տերեւաւք···։ Ի յանհայրապետութեան ժամանակի ազգիս Հայոց եւ ի վերագիտողութեան մայրաքաղաքիս Համթայ վիճակի եւ աթոռոյ երջանիկ եւ երանաշնորհ արքեպիսկոպոսին տէր* Բարսեղ *աստուածաբան վարդապետի, որ իբրեւ զՋահ փայլէ···։*

*Մելքոն գրչի ծնողք են՝ Ամիրճան եւ Մարիամ եւ եղբարք՝ Ֆարաճ եւ Պաղտասար։ Յովհաննէսի ծնողք՝ Ճանիպէկ եւ Եթար, կինը՝ Հումայ, ուսուցողն վարժապետն՝ տէր Աստուածատուր քարտուղար, «որ աշխատեցաւ ընդ անարժանիս ի յուսումն հոչակաւոր արհեստիս մելանագործութեան» (Ա· Սիւրմէեան, Ցուցակ Եւրոպայի մասնաւոր Հաւաքածոներու, Թ·* 13· *Պարիս* 1950, *էջ* 20—23 *եւ Թորոս Աղբար, Բ·,* 418—419)։

31· 1618· *«Փառք··· որ ետ կարողութիւն տկար անձինս* Բարսեղ *սոսկանուն բանի սպասաւորիս, որ ետու գրել զաստուածաշունչ տոմս (Մեկնութիւն) Առաքելոց պրակիս···։ Գրեցաւ ի մեծ թուականին Հայոց*

ի ՊԿԷ (1418, պէտք է կարդալ ՌԿԷ, 1618) ի դուռն ԺԲ սուրբ Առաքելոց Եղիազարու վանացն, յիշատակ ինձ, ուսուցչին իմոյ քաջ հռետորին Սրապիոն վարդապետի...»: Ետքը կը գրէ․ «Գծագրեցաւ ձեռամբ Կարապետ եպիսկոպոսի եւ ծաղկեալ կազմեցաւ ձեռամբ մեղապարտ Յովհաննէսի» (Հայաստան, 1851, Թ․ 98):

32․ 1620․ Բարսեղ Վ․ Ալթախցւոյ համար կ'օրինակուի Գրիգոր Տաթեւացւոյ Քարոզածոյքն Մատթէի, Առակաց եւ Երգոց երգոյն․ կը խնդրուի յիշել «նաեւ զիս մեղօք տառապեալ Մինաս գրիչս, որ ետու գրել զսա աշակերտին իմոյ Եղիա սարկաւագի որ առ մեզ է ի տառատպութիւն արհեստիս գրչութեան... ՌԿԹ․ ի մայրաքաղաքս Համիթ, ընդ հովանեաւ սուրբ Կիրակոսայ ի յառաջնորդութեան տէր Բարսեղ աստուածաբան Վ․-ի Արծրունւոյ» (Էջմ․ 1299):

33․ 1621․ Մեծադիր նկարազարդ Աւետարան մը կը գրուի «ի թվ․ Հայոց Ռ․որդ ամի եւ եաւթանասներորդ աւելորդի» յԱմիդ «ի թաղն որ կոչի Զըխալ, ընդ հովանեաւ Ս․ Սարգսի, ձեռամբ երկու գրչաց» Յովհաննու գլուխն Մելքոն գրչին, եւ նախորդները տէր Միքայէլ նորընծայ քահանային «ի վերադիտողութեան Համթայ վիճակի արքեպիսկոպոսի տէր Բարսեղ վարդապետին» (Թորոս Աղբար, Բ․, 425):

34․ 1621․ «Ես Բարսեղ վարդապետ եղի

գայս Յորայ եւ Յովհաննու քաղուածու գիրքս յիշատակ ինձ... ի դուռն վանացն Մշոյ Ս. Առաքելայք կոչեցեալ» (Գ. Տէր-Կարապետեան)։

35. 1621. Մարտիրոս Ամթեցի քահանայ օրինակել կու տայ «Հուքումարան» մը (Ամիրտովլաթի գործերը) «յառաջնորդութեան մերում տէր Բարսեղ քաջ րաբունապետին, (որ) իբրեւ զճրագ փայլէ ի մէջ աշտանակի, ի մայրաքաղաքն Տիգրանակերտցի, ընդ հովանեաւ եկեղեցւոյս սուրբ Կիրակոսի եւ մօր նորա Ուղիտայի»։ Գրիչին անունը՝ «Ես անարժան եւ նուաստ Յակոբ գրիչս» (ծնողք՝ Մարտիրոս եւ Հազարխաթուն. Երեւան, Պետ. Թանգ. Թ. 730)։

36. 1622. Միքայէլ Ասորւոյ Ժամանակագրութիւնը կ՚օրինակուի յԱմիթ «ձեռամբ սարկաւագացն Ամիրչին եւ Յովհաննիսին, որ սկիզբն առնէին գրչութեան եւ ուսանէին առ ոտս տէր Մինաս գրչի։ Աստուած իւրեանց շնորհք եւ իմաստութիւն տայ, որ զայս հոգեւոր արուեստս կատարեալ ուսանին» (Արարատ, 1888, էջ 406)։

37. 1624. «Գրեցաւ Միխայէլս եւ Բուզանդարանս ի Դպրատանն նուաստ Մինաս գրչի՝ ձեռամբ աշակերտացն իմոց ի դուռն Կիրակոսի եւ մօրն նորա Յուղիտայի ի մայրաքաղաքս յԱմիթ, յառաջնորդութեան տէր Բարսեղ աստուածաբան Վարդապետին...։ Յիշեսջիք զմեղուցեալ նուաստ Մինաս գրիչս ...եւ զամենայն աշխատաւորքս» (Երուսա-

դէմ, Թ· 307· եւ Վիեննա, Թ· 236, Ցուցակ, էջ 618)։

38· 1624· Յայսմաւուրք մը կը գրուի յԱմիդ, ի Ս· Սարգիս «ի վերադիտողութեան նահանգիս Բարսեղ արհիեպիսկոպոսին», յիշատակ ոսկերիչ Եղիային։ Գրչին անունը չէ յիշուած (Թորոս Աղբար, Բ·, 427/28)։

39· 1624· Բարսեղ վարդապետ Ամիթ կը բերէ Առաքելոց վանքի Հարանց Վարքը նորոգելու համար։ Կը նորոգէ Ստեփանոս գրիչ։

40· 1625· Բարսեղ Վ· Ամթեցի կը յանձնարարէ իր աշակերտին Կարապետին օրինակել Անանիա Սանահնեցւոյ Մեկնութիւնն Պաւղոսի Թղթոց, որ ի գլուխ կ'ելլէ ընթացս 1618—1625 տարիներուն, յԱմիդ եւ յԱռաքելոց վանս։ 1624ին Առաքելոց վանքը ուխտի կու գայ «Բաղիշեցի տէր Սահակ գրագիրն»· իրեն կը յանձնէ Կարապետ գիրքս «ծաղկել եւ կազմել», որ եւ կը կատարէ։ Յիշատակարանին կցած է Բարսեղ Վարդապետ իրենը, որ է այսպէս·

Փառք···։ Արդ ի ժամանակս յետինս եւ անբարի, դառն եւ դժուար, ես Բարսեղ վարդապետս, յետինս յորդիս Նոր Սիոնի, ցանկացող եղէ սուրբ տառիս· վասն որոյ եւ փափագեալ իմ աստուածախօս վարդապետութեան սուրբ առաքելոյն Պաւղոսի, բացայայտեալ սրբոց հարցն Յովհաննու Ոսկեբերանի եւ Եփրեմի, զոր յետոյ այլք ի սրբոց վարդապետաց համառօտեալ յԱնանիայ վար-

*ղապետէ Սանահնին, որ էր ի ժամանակս կաթողիկոսութեան տեառն Պետրոսի, յաւուրս Դէոսկորոսի, առ ի պէտս սպասաւորաց բանի: Եւ ես Բարսեղ վարդապետս ետու գրել գայս բուրաստանս ամենայլի, գանձ անկողոպտելի, յիշատակ հոգւոյ իմոյ եւ մխիթարիչ մարմնոյ, ափոփիչ տրտմութեան եւ փարատիչ ձանձրութեան: Եւ եդի ի դուռն վանուցն (յիշատակ ինձ) եւ մօրն եւ եղբարց իմոց, մահդասի ծերունի Ապղուլին, որ ի բազում ժամանակէ ճգնի ի դուռն նոյն վանուցն, որ Երկոտասան Առաքեալք վերաձայնի, եւ այլ եղբարցն փոխեցելոցն առ Քրիստոս: Արդ ընկալ դու ողորմութեամբ քով որպէս գերկուս լումայս այրւոյն յանկարօտ գանձանակ փառաց քոց, եւ տուր մանկանց զաս ըստ հաճոյից կամաց քոց եւ տուր նոցա լինել երկիր բարի եւ պարարտ...:*

*«Արդ գրեցաւ աստուածախօս Մեկնութիւնն Պաւղոսի առաքելոյն ի թուին Հայոց Ռ եւ ՀԵ ամին յերկիրն Տարօնոյ ի վանքն Եղխապարու ի դուռն սուրբ Աստուածածնին եւ ԺԲ. սուրբ Առաքելոյն եւ սուրբ Ստեփանոս Նախավկային եւ սուրբ Գրիգորի մեր Լուսաւորչին եւ այլ սրբոցն որ են աստ հաւաքեալ: Վասն որոյ եւ աստ եդի յիշատակ ինձ եւ ծնողացն իմոց հօրն եւ մօրն եւ եղբարցն մահդասի Ապտուլին եւ Մեհերին փոխեցելոցն առ Քրիստոս, եւ Մաքսուտին փոխեցելոյն, զոր Տէր Աստուած ողորմեսցի նոցա...: Եւ արդ սկիզբն եղեւ գրոցս ի ՌԿԷ*

*թուին ի մայրաքաղաքն Տիգրանակերտ որ Ցամիդ ասի, ձեռամբ հոգեւոր որդւոյն իմոյ Կարապետ բանի սպասաւորի. եւ տարեալ ի նոյն վանքն Ղազարու գրեաց եւ աւարտեաց ի թուին ՌՀԴ. ամին...»* (Ձեռագիր Կարապետ արքեպիսկոպոսի: Ցիշատակարանս հրատարակած է Թ. Մ. Աստուածատուրեան, Հայաստան, 1851, Թ. 51):

41· 1626· *Կ՚օրինակուի Աստուածաշունչ մը. «Պատուական ծերունին տէր Մարտիրոս արքեպիսկոպոսն* (Զնքուշի)*... եւ բարի շաուաւիղ յարմարոյ նորա ժրաջան մեղուն եւ քաջ փիլիսոփայն տէր Յովհաննէս վարդապետն ցանկացող եւ փափաքող եղեն աստուածային մեծ բուրաստանիս... ստացան զսա յիշատակ բարի... եւ պահապան աստուածախնամ գիւղաքաղաքիս Զնքուշայ...: Ցանգ ելեալ աւարտեցաւ Ս. Աստուածաշունչս ձեռնտուութեամբ... Մինաս դրչի, որ եւոռ գրել զսա աշակերտաց եւ հոգեւոր որդւոց իմոց Յովհաննիսի եւ Առաքելի...: Կազմեալ ծաղկեցաւ սա ոսկենկար յանգուածով. առաջին խորանն հանդերձ վեցօրեայ արարչագործ պատկերօք. եւ Աւետարանի առաջին խորան՝ եւ ընդդէմ խորանի չորեքկուսի աւետարանչացն պատկերք եւ Քրիստոսի խաչելութիւնն. եւ այլ ցրուածաղիկքն խամ Թիփերով, ոսկերով եւ խորանով: Ես նուաստ Մինաս գրիչս ծաղկեցի եւ աւարտեցի... յաշխարհս Միջագետաց ի մայրաքաղաքն Տիգրանակերտ... ի դուռն սրբոյն*

Կիրակոսի... ի Հայոց Թուականութեան ՌՀԵ (1626) ի հայրապետութեան սրբոյ Էջմիածնայ Մելքիսեդեկկ աթողիկոսին, որ փախուցեալ է յաշխարհն Ռուսաց եւ աթոռն ամայի է մնացեալ. յորում ժամանակի միահամուռ բարձաւ քահանայութեան (շնորհ), զի ոչ ուրեք երեւի ճշմարտութիւն, այլ ագիտութիւն թագաւորէ...» (Թորոս Աղբար, Բ., 417—418)։

42. 1626ին Եղիա եւ Մինաս գրիչները յԱմիդ «յառաջնորդութեան մայրաքաղաքիս Համթայ տէր Բարսեղ աստուածարան վարդապետին եւ շնորհազարդ հայրապետին» կ'օրինակեն Մինաս Կարնեցւոյ համար Աւետարան մը (Բերլին, Թ. 15. Karamian, Verzeichnis, S. 10—11)։

43. 1626. Նորոգեցաւ (Սաղմոսարանս) ձեռամբ փծուն եւ անիմաստ Ստեփանոսի մականուամբ Կարմիր ասի, ի դուռն սուրբ Կիրակոսի, ի յառաջնորդութեան Ամթայպօլի տէր Բարսեղ վարդապետի, որ ինքն ետուր նորոգել, թվ. ՌՀԵ (Հոմ, Բորդեան, Թ. 78, Tisserant, 148)։

44. 1628. «Վերստին նորոգեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ փծուն սուտանուն Յակովբիս, որ անուամբս միայն կոչիմ քահանայ... ի յառաջնորդութեան մայրաքաղաքիս Համթայ քաջ եւ արի տէր Բարսեղ քաջ րաբունապետին, ընդ հովանեաւ սուրբ Կիրակոսի եւ մօր նորա Յուղիտայի, ի Թուաբերութեան Հայոց ՌԾ. ամի .Իէ. աւելորդի»

(Աւետարան գրուած 1485ին. տեսած եմ Լայպցիկ, Rosenthal գրավաճառին քով)։

45· 1628· Ճառընտիր, կը նորոգէ ի Ս. Կիրակոս, Ստեփանոս Կարմիր, որդի Տարվիչի եւ Մարիամու (Ջէնսիզեան–Պատուրեան)։

46· 1628· Սաղմոսարան կը գրուի «ձեռամբ Յովհաննէս սարկաւագի... ի քաղաքն Ամիթկերտի»․ յառաջնորդութեան տէր Բարսեղ վարդապետի, ի Ս. Կիրակոս. «յիշեցէք զուսուցիչն արհեստիս զտէր Մինաս բանիբուն քահանայն եւ զաստուածարան գրչապետն...։ Ով եղբարք անմեղադիր լերուք խոշորութեան գրչիս... զի կատարեալ չէի յարհեստ գրչութեան» (Թորոս Աղբար, Բ., 413)։

47· 1629· Սաղմոսարան մը կ՚օրինակուի ի Ս. Կիրակոս «յառաջնորդութեանս Համթայ Բարսեղ քաջ րաբունապետիս, ձեռամբ ...փծուն գրչի Սաֆար սարկաւագի» (որդի Խաչատուրի եւ Հոփսիմէի)։ Խնդրէ յիշել «զուսուցիչն իմ զտէր Յակոբն» (Լալայեան, Ցուց., Թ. 13, էջ 37—38)։

48· 1630· Տօնական. «Աւարտեցաւ ոսկեփոր Տօնականս ի մայրաքաղաքս Համիթ, ընդ հովանեաւ տաճարիս Կիրակոսի եւ մօր նորա Յուղիտայի, ի յառաջնորդութեան տէր Բարսեղ րաբունապետի, ձեռամբ... Գրիգոր գրչի, ի խնդրոյ... տէր Սարգիս քահանայի...։ Յիշեցէք եւ զհոգեւոր ծնողն իմ զուսուցիչ արհեստիս զտէր Մինաս բանիբուն

քահանայն, եւ գծնողն իւր զտէր Ստեփաննոս քահանայն, զոր Տէր Աստուած առողջ կենօք պահեսցէ եւ յետ աստեացս երանելոյ անթառամ պսակին արժանիս արասցէ» (Թորոս Աղ-բար, Բ., 451/2)։

49· 1630ին ճաշոց գիրք մը կ՚օրինակուի յԱմիդ «ընդ հովանեաւ Ս· Կիրակոսի, ի կաթողիկոսութեան Էջմիածնայ տեառն Մովսէսի · · · յառաջնորդութեան քաղաքիս Բարսեղ արքեպիսկոպոսի»· գրիչը չէ յիշուած (Թորոս Աղբար, Բ·, 428)։ Տարին մատնանիշ չէ եղած· բայց կը յիշուի Բաղդատի պաշարումը 1630 տարւոյ։

50· 1631· Ամիդի Ս· Սարգիս եկեղեցւոյ երեսփոխանները Խաչատուր եւ Ստեփաննոս յորդորմամբ Բարսեղ դիտապետին կը ստանան Աւետարան մը եւ կը նուիրեն ի դուռն Ս· Կիրակոսի (Ջէնսիզեան–Պատուրեան)։

51· 1631· Հաւաքածոյ ձեռագիր մը գրուած 1220ին ի Դրազարկ, կը պահուէր Տարօնի Առաքելոց վանքը· «յառաջնորդութեան մեծ րաբունւոյն Բարսղի» կ՚առնէ զայն առաջնորդին եղբայրն՝ Ապտուլ ճգնաւոր իր քով կարդալու։ Քիւրդերը կը գողնան զայն, բայց կը ստիպուին սքանչելեօք վերադարձնել (Վենետիկ, Թ· 303· Ցուց·, էջ 1138)։

52· 1632· Բարսեղ վարդապետ յանձնարարած է Ամդեցի երկու գրիչներու գրել իրեն համար Աստուածաշունչ մը նկարազարդ, զոր ուխտած էր նուիրել Երուսաղէմի Ս· Յակոբեանց։ Այս օրինակութիւնը ի

գլուխ եղած է յընթացս ինն տարիներու։ Բարսեղ ունի հոն Ցիշատակարաններս. առաջինը՝ չափական տողերով· կը ներկայացնեմ կրճատումներով.

Փառք···

Զոր ես նուաստս յամենայնի··· Գիտակ անուն Բարսեղ չնչին···
Ետու գրել զսա ի քարտին··· նախ հոգւոյ իմոյ ծնողին,
Որ ծնաւ յիմաստս սուրբ գըրին տէր Սրապիոն բարունին,
Եդեսիոյ մեծ քաղաքին։ Եւ մարմնաւոր իմոյ ծնողին,
Հօրըս իմոյ Ապուհարին եւ մօրս Ելչիկ վերակոչին։
Այլ եւ եղբարցս իմ ըստ կարգին տաւգ եղբօրըս Ապտուլին·
Որ նա եւ զմեզ յուսումն բանին, ինքն ստացաւ վարըս մթին,
Խստակրօն ճգնաւորին· հրաժարեալ ի յաշխարհէս,
Քառասուն չորս ամ խըստագին ընակեցաւ յանապատին···
Միւս եղբօրըս Մաքսուտին, Մհերին եւ Արեւին···
Աստուածաշունչըս պատուական սկսեալ ՌՃ եւ մի թվական,
Ստացա ես անարժան աւարտեցաւ յետ ինն ամեան.
Առ յիշատակ ինձ ապագայն ի սուրբ քաղաքն տէրունեան···
Այլ եւ քաջ քարտօղարին տէր Մինաս անհաս գծչին,
Տէր Միքայէլ նման նմին որ զայս սուրբ Գիրքս գրեցին.
Երանգ երանգ զարդարեցին ոսկէնկար զայս ծաղկեցին.
Կենդանագիր պատկերք սորին զանազանեալ գեղեցկացուցին···։

*Այլ եւ գրողացն եւ ծաղկողացն երփն-երփն գունով երկուց քահանայիցն Ամթեցւոց տէր Միքայէլ աւագերիցուն սուրբ Սարգսայ, որ յառաջն սկսաւ Աստուածաշունչս եւ ԺԴ. տետր գրեաց եւ ծաղկեաց. եւ տէր Մինաս վարդապետին սուրբ Կիրակոսայ, որ ·Լ· տետր գրոցն նա գրեաց, սկսեալ ի Մնացոր-դացն մինչ ի վերջ Աստուածաշունչ գրոցս եւ ծաղկեաց զանազան եւ հրաշալի գուներով. եւ բազում աշխատութեամբ... սկսեալ ՌՀԱ* (1622) *եւ աւարտեցաւ ՌՁԱ. թուին: Զոր առեալ ես անարժան մեղաւորս Բարսեղ՝ բե-րեալ ի սուրբ քաղաքս Երուսաղէմ եդի յի-շատակ ինձ եւ վերոյ գրելոցս ի սմա ի սուրբ Յարութիւն եւ ի Ս. Յակոբայ... (յաւուրս Տր. Պարոնտէրի, որուն գործերուն մասին կը խօսի): Աստուած ողորմի ասացէք ինձ անարժան Բարսեղ վարդապետիս եւ որք ի վերայ մեր մարմնաւոր երախտիք ունին թէ հոգեւոր եւ թէ մարմնաւոր, սպասաւորքս եւ աշակերտեալ մանկունս՝ զԿարապետ եպիս-կոպոսն եւ զՅովանէս վարդապետն Մշեցի եւ զՂազար վարդապետն Սուրբ Աղբերակցի, զՂուկաս վարդապետն, որ եւ զայժմուս սպասաւորք՝ զՅովանէս մալազն եւ զԱռա-քելն որ զյիշատակս գրեաց, եւ զԱնդրէաս սարկաւագն որ է ինձ արեանառու...: Գրե-ցաւ ՌՁԱ* (1632) *թուին, մարտի ·Ե· չորրորդ շաբաթ պահոց, ի Վերնատունն հանդէպ սուրբ Գերեզմանին Քրիստոսի. ամէն:*

*Ձեռագրին սկիզբը, էջ 4ա.*

«Ես Բարսեղ նուաստ, անուամբ եւեթ վարդապետ, սեփական կայիւ Արծրունի, ի գեղջէն Մարմանդու, վերատեսուչ վանացն Ղազարու յորջորջեալ Մշու սուրբ Առաքելոց, եւ առաջնորդ մայրաքաղաքին Համթայ, յամի ՌՁԱ թուին եկի ի սուրբ եւ աստուածակոխ քաղաքս Երուսաղէմ. եւ բերեալ եղի զսուրբ աստուածային Աստուածաշունչ Գիրքս յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց, ի սուրբ Յակոբ եւ ի սուրբ Յարութիւն»: Յորում ժամանակի էր աթոռակալ եւ առաջնորդ տէր Գրիգոր արքեպիսկոպոս սուրբ Երուսաղէմայ (Երուսաղէմ, Թ. 2559: Վերջին յիշատակագրութիւնը տուած է նաեւ Յ. Քիւրտեան, Հայաստանեայց Եկեղեցի, 1949, էջ 46· եւ ասկէ՝ Տ. Մկունդ, Ամիդայի արձագանգներ, Նիւ Եորք 1950, էջ 309):

53· 1633· Արղնիի Ղուկաս եպիսկոպոսի համար Աստուածաշունչ մը կը գրուի «յԱմիթ ի դուռն Ս. Կիրակոսի ի Հայոց թվականի ՌՁԲ. ... յառաջնորդութեան մայրաքաղաքիս տէր Բարսեղ աստուածաբան վարդապետին: Յաւուրս սորա հաստատեցաք Դպրոց յարհեստ գրչութեան. պատճառ ինքն լինելով ետուր գրել մագաղաթ Աստուածաշունչ մի յոսկենկար յանկուածով. եւ տարեալ յԵրուսաղէմ եդ յիշատակ ի դուռն Սրբոյն Յակոբայ: Եւ այն եղեւ նպաստ որ գրեալ եղեւ .Դ. Աստուածաշունչ մինչեւ ցայժմ: Որ մինն այս է, զոր ստացաւ յԱրղնու Ղուկաս եպիսկոպոսն յիշատակ հոգւոյ իւրոյ եւ

*ծնողացն: Այլ եւ յայսմ ամի էր քաղաքիս Համթայ իշխան եւ տեղապահ՝ սիրելին թագաւորին՝ Մուրթազայ փաշայն, սիրող քրիստոնէից. որ յաւուրս սորա շինեցան եւ նորոգեցան եկեղեցիք քրիստոնէից. եւ յայսմ ամի նորոգեցին զսուրբ Կիրակոսի եկեղեցին եւ մեծացուցին եւ սրահ կամարակապ շինեցին զաւիթ եկեղեցւոյն. եւ պատճառ նորոգման խոճա Երեմիան. եւ երեսփոխան մզտեսի Գասպարն, որ մեծ Դպրոցի խուց շինեաց. զվարձն եւ զփոխարէնն յԱստուծոյ ընկալցին»* (*Թորոս Աղբար*, *Բ*., 396—398): *Սրուանձտեանց Յիշատակարանս ամբողջութեամբ յառաջ չէ բերած: Նոյնը օրինակած եւ Վենետիկի Մխիթարեանց ուղարկած է Ջէնսիզեան, ուսկից համառօտած է Հ. Մ. Պոտուրեան. ակէ կ'առնեմ հետեւեալները: Նկարողն է Մինաս, որդի Ստեփանոս քահանայի եւ Զինարի, եւ հայր Յունանի եւ Կարապետի: Գրչութեան արուեստի ուսուցիչն է ան, ունի աշակերտներ՝ Յովհաննէս եւ Ստեփանոս Կարմիր: Իսկ իր ուսուցիչն եղած է Յովհաննէս հռչակաւոր եւ քաջ քարտուղարն, որ ի ծերութեան առած է վարդապետական իշխանութիւն: Մանկութեան շրջանին ուսուցիչն եղած է Նիկողայոս քաղցրառ երաժիշտը:*

54. 1634. *Ստեփանոս Կարմիր, ուսուցիչն Կիրակոսի, ի դուռն Ս. Կիրակոսի կը նորոգէ 1270ին գրուած Աւետարան մը* (*Ջէնսիզեան–Պոտուրեան*):

1634ին Ամթայ առաջնորդին համար օրինակել կու տայ Մինաս գրիչ եւ ծաղկող իր աշակերտին Առաքել աբեղային Աւետարան մը, զոր ապա ինքը կը ծաղկէ: Յիշատակարանին մէջ կը գրէ Մինաս. Ստացողն է Բարսեղ արքեպիսկոպոս, Ամդայ առաջնորդը, «ի ներկայումս անձին իւրոյ եւ յապայս յիշատակ նախ հոգեւոր ծնողին իւրոյ (Սրապիոն–Գրիգոր կաթողիկոսի) յիմաստս վարդապետութեան, յորմէ զփոքրուց ուսումն եւ զաստիճան կուսակրօն քահանայութեան եւ զիշխանութիւն վարդապետութեան եւ զտեսչութիւն եպիսկոպոսութեան առեալ էր... եւ ապա մարմնաւոր ծնողաց իւրոց՝ հօրն Ապուհարին եւ մօրն Ելչիկին եւ աւագ եղբօրն մահտեսի Ապտուլին, որ է պատճառ ուսմանն իւրոյ... եւ զմիւս եղբայրն՝ զՄախսուտն... եւ զմիւս եղբայրն զՄհերն... եւ զմիւս եղբայրն զԱրեւ. նաեւ զքուերքն իւր զՄանդրուտն, զԲնքուշն, զՄարխամն, զՊահրին, զՇուշանն: Ստացաւ Բարսեղ վարդապետ հոգեւոր հայրն մեր. որ եւ գրեալ էի նմա ոսկենկար Աստուածաշունչ մի... զոր տարեալ ետ յիշատակ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ: Եւ այս տէր Բարսեղ... վարդապետի ժամանակն սահմանեցաք Դպրատուն եւ շնորհօք ամենազօրին Աստուծոյ եւ օժանդակութեամբ Դիտապետին մերոյ գրեալ եղեւ Ս. Աստուածաշունչ եւ այլ բազում գրեանք...: Եղեւ գրչութիւն սորա ի Համիթ... ի Թվ. Հայոց ՌՁԳ...»:

«Ես Նուաստս ի վարդապետաց եւ յե-տինս ի բանասիրաց Բարսեղ անուամբ եւեթ վարդապետս եառ գրել սուրբ Աւետարանս յիշատակ ինձ...: Ես Բարսեղ վարդապետս յաւուր մահուան իմոյ եդի զսուրբ Աւետա-րանս յիշատակ ի դուռն սուրբ Սարգսայ զօ-րավարին... ընթերցողք տացեն զողորմիս» (Թորոս Աղբար, Բ., էջ 430—433):

55. 1634. Աւետարան մը կը դրուի յԱմիթ, ընդ հովանեաւ Ս. Սարգսի «ձեռամբ Առաքել արեղայի, աշակերտի Երջանիկ եւ երանաշնորհ քաջ եւ արի արքեպիսկոպոսի տէր Բարսեղ աստուածաբան վարդապետի եւ վերադիտողի մայրաքաղաքիս Համթայ» (Թո-րոս Աղբար, Բ., 417—418):

56. 1635. «Արդ գրեցաւ սուրբ Աստուա-ծաշունչս ի յաշխարհս Միջագետաց, ի մայ-րաքաղաքն Տիգրանակերտ որ այժմ Համիթ վերաձայնի, ի դուռն սուրբ Կիրակոսի, յա-ռաջնորդութեան մայրաքաղաքիս տէր Բար-սեղ արքեպիսկոպոսին եւ աստուածաբան վարդապետին... Հայոց մեծաց թու. ՌՁԴ»: Նոյն տարւոյն մարտ 28ին կը ծագի յԱմիթ եւ գիւղերը մահ տարաժամ. ապրիլ 1ին «մեռաւ Առաքել արեղայն, որ էր գրագիր. եւ ապրիլ 5 մեռաւ տէր Յովաննէս սրբասէր քահանայն եւ անձանձիր միշտ գրողն եւ կենակիցն այլ ի հետն ի միում գիշերի»: Յունիս ամսոյն սկիզբը «առաւել սաստկացաւ մահն. եւ գրող սուրբ Աստուածաշնչիս Սաֆար դպիրն, որ էր աշակերտ անարժան թարմատար Մինաս

*գրչիս, սա այլ խոցեցաւ եւ Ետառ զվախճանն տարաժամ մահուամբ եւ եղեւ ինձ մեծ սուգ եւ կսկծալի դառնութիւն. զի սոքօք պարծէի. զի դպրատունն իմ ամայի եղեւ. այլ փառք եւ գոհութիւն տվողին եւ առողին»: «Աստուած ողորմի ասացէք գրողի սուրբ տառիս Սափար դպրին (ծնողք՝ Խաչատուր եւ Հռիփսիմէ) . . . (յիշեցէք) զՄինաս գրիչս, որ Ետառ գրել ի Դպրատունն իմ զԱստուածաշունչս Սափար դպրին, եւ զծնողսն իմ զՍտեփաննոս քահանայ եւ զԶինարն» (Երուսաղէմ, Թ. 1127):*

57. 1637. *Աւետարան. «Եղեւ ինձ մեղապարտ եւ թարմատար գրչի Մինասի հանդիպիլ յաստուածապահ եւ ի տիրախնամ գիւղաքաղաքն (Ճենքուշ) որ ստուգաբանի Ճէն քօշայ, որ եւ այնպէս է, առ սիրելի եւ բազմագութ երախտաւորն իմ տէր Յովանէս սրբազան հայրապետն եւ աստուածաբան վարդապետն. (սա) յորդորեաց զքեռու որդին իւր զԹորոս. եւ հարկեաց ի վերայ իմ գրել զԱւետարանս. եւ ես յանձն առեալ շնորհօք Տեառն եւ ողորմութեամբ Նորին եառ գրել զգիրս Աւետարանիս աշակերտաց իմոց շնորհալի գրչաց Եղիայի եւ Եղիազարի. եւ իմ ծաղկեալ զսա աւարտեցի ոսկիակազմ բազում տնօրինականօք. . . : Եւ յորժամ սկիզբն արարաք սուրբ Աւետարանիս թվին ՌՁԴ. . . եւ յայսմ ամի եկն ի Ճնքուշայ տէր Յովանէս աստուածաբան վարդապետն ի քաղաքն Համիթ եւ նստեալ ի սուրբ Սարգիս յեկեղեցին*

դաս ասելով եւ լուսաւորելով զբազումս ա-
ստուածիմաստ վարդապետութեամբն իւրով.
եւ հարկեալ ի վերայ մեր տարաւ առ ինքն եւ
նստեալ անդ ծաղկեցաք զսուրբ Աւետա-
րանս...: Արդ եղեւ գրաւ գրութեան սո-
րա... մայրաքաղաքն Տիգրանակերտ որ այժմ
ասի Համիթ... ի յառաջնորդութեան յայսմ
նահանգիս տէր Բարսեղ ծերացեալ հայրա-
պետի եւ աստուածաբան վարդապետի:

Յիշեսջիք... զմեղուցեալ թարմատար
Մինաս գրիչս եւ զորդեակն իմ զՅունան նո-
րահաս գրիչն, որ ոսկեց զսուրբ Աւետարանս
եւ աշխատեցաւ ընդ իս ի ծաղկելն. Տէր Ա-
ստուածն մեր ձերով սուրբ եւ արժանաւոր
աղօթիւքն զշնորհք սորա առատասցէ: Նաեւ
զծնօղսն իմ զծերացեալ Ստեփանոս քահա-
նայն եւ զՁինարն եւ զաշակերտքն իմ զգրող
սուրբ Աւետարանիս...:

Դարձեալ յիշեցէք զծաղկող սուրբ Աւե-
տարանիս զտէր Մինաս գրիչն, զի յաւարտել
Աւետարանիս երկու օր ի մէջ անցեալ՝ եղեւ
գրաւ կենաց սորա, զի ի կոչողէն հրաման
եղեալ ցաւ մահու պատեալ զանձամբն, ճա-
նապարհորդեալ եկն եհաս ի Ջերմուկ վասն
առողջութեան մարմնոյն. այլ նայ ի սպանդ
վարէր ոչ գիտելով զապագայն. փութայր
իջանել ի ջուրն. եւ ընդգացն յորդ արիւն
հոսէր եւ ոչ ժուժեալ չուտով ելանէր եւ ոչ
կարաց ամենեւին խօսակցել եւ ոչ բան մի.
եւ ոմանց եղբարց բարձեալ տարան զնա ի
շէնն որ կոչիւր Ջերմուկ. եւ ուրբաթի,

Թ․երորդ ժամուն վճարեաց զհասարակաց զպարտսն․ փոխեցաւ յաստի կենացս եւ եդաւ ի սուրբ Արդլմսեհ եկեղեցին ի թվին ՌՁԶ (1637) օգոստոս ԻԵ․․․։ Եւ ես Յովհաննէս վարդապետ ինձէն եղեալ ականատես՝ չարաղրեցի զկտակ սորին» (Հոմ, Բորդեան, 85․ Tisserant, 187, 191)։

58․ 1637․ Պարիսի Թ․ 192 հայերէն ձեռագիրը, որ կը բովանդակէ Գաւազանագիրքն նահապետաց (Թղ․ 1—17ա), Սամուէլ Անեցի եւ Թովմաս Մեծոփեցւոյ Տարեգրութիւնն եւ Յիշատակարանը, ունի Թղ․ 17ա Յիշատակարանս․ «․․․Յորոց ի հոգիընկալ արանց իմաստից յարմատոյ չառաւիղեալ եւ սնեալ ի ծոցս լուսոյ սրբոյ մօրս մեր Սիոնի երջանիկ երիցս երանեալ բաբունապետն եւ աստուածարան Կարապետ վարդապետն․ զոր տեսեալ զիմաստաշար եւ զգիւրագիտ կարգ տոհմից ազգակցութեանց Հին եւ Նոր Կտակարանաց աստուածաշունչ տառից եւ ետ գրել զսա յիշատակ իւրն եւ ամենայն մերձաւորացն։ Դարձեալ գրեցաւ սա ի Թվ․ աբեթական տոմարիս Ռ ու քառասներորդի ամին (1591)։ Եւ որդին իմ տէր Մինասն յանձն էառ եւ ետ գրել իւր աշակերտին միոյ եւ ինքն ծաղկեաց․ եւ յետ սակաւ աւուրց վախճանեցաւ։

Դարձեալ ողբացէք․․․ զՍտեփաննոս քահանայս․․․։ Ես Ստեփաննոս քահանայս հայր նորա (Մինասայ) լալ(ագին) աչօք եւ ոգւոց հանեալ հառաչանօք կազմեցի ի քաղաքս

Համիթ, ի դուռն սուրբ Կիրակոսին եւ մօր նորա Ուղխտային եւ առաջնորդութիւն տէր Բարսեղ քաջ րաբունապետ վարդապետին»:

Այսքան միայն ծանօթ է ինձ Յիշատակարանս, որ ունէր անշուշտ շարունակութիւն, վասն զի Մակլէր իր ցուցակին մէջ կը յաւելու թէ «այս պատահած է 1637ին (Catalogue, էջ 107): Ստեփանոս ողբացած է իր որդւոյն Մինասի տարաժամ մահը:

59. 1640. Եղխազար գրիչ, որ կ'աշխատէր Աստուածաշունչի մը գրչութեամբ եւ նկարազարդութեամբ, ի գլուխ հանած է զայն ի Ս. Կիրակոս. «Արդ եղեւ աւարտ լըման սորա ... յամի ՌՁԹ (1640) յաշխարհս Միջագետաց ի քաղաքս Տիգրանակերտ որ եւ Համիթ վերակոչի, ընդ հովանեաւ սրբոյն Կիրակոսի ... ձեռամբ սուտ եւ փուտ գրչի Եղխազարի ... ի հայրապետութեան Վաղարշապատու սուրբ Էջմիածնայ տէր Փիլիպոս սրբասնեալ կաթողիկոսի եւ ի թագաւորութեանն Տաճկաց սուլթան Իպրահիմին, եղբօր սուլթան Մուրատին: Արդ ... աղաչեմ ... մեղաց թողութիւն հայցել ինձ եղկելի Եղխազարի եւ ծնողացն իմ ըստ մարմնի, հօրն իմ տէր Մինասին եւ մօրն իմ Պաղչային. եւ եղբօրն իմոյ Յոհաննէս գրչի, որ աշխատեցաւ ընդ իս ի սրբագրելն եւ սակաւ մի տեղ նա գրեաց ի Դանիէլէ մինչեւ Եզեկիէլի կէսն. զոր Տէր Աստուած օր ըստ օրէ աւելացուսցէ զշնորհս սորա: Նաեւ հոգեւոր ծնողին իմոյ եւ ուսուցանողի ի յարհեստ գրչութեան տէր

*Մինաս քաջ քարտուղարին, որ բազում աշխատեցաւ ընդ անարժանութեանս իմ . . .» (Էջմիածին, 187, Թղ. 453բ)։ Իսկ Թղ. 356բ, Մատթէոսի սկիզբը նկար մը խաչելութեան, չորս անկիւնը՝ չորս Աւետարանիչներ, ստորեւ՝ ստացիչն՝ Յովասափ Արծրունեցի եւ իր որդին ծնրադիր. վերեւ՝*

*«Տէր Յովասափ ստացող սմին,*
*Պետրոս որդեակն իւր ընդ նմին,*
*առ քեզ գոչեն Տէրդ երկնային.*
*ընջել գյանցանս մեղաց սոցին։»*

*Զմեղուցեալ Եղիազար նկարող պատկերացս յիշեա Տէր եւ ողորմեա» (Էջմ. 187)։*

60. 1640. *Փիլիպպոս կաթողիկոս, որ կ'ուղեւորէր դէպի Երուսաղէմ, հանդիպելով Ամիթ, կը յանձնէ Եղիազար գրչին կիսատ միայն լոքով նկարազարդուած Աւետարան մը, որպէս զի լրացնէ։ Եղիազար կը կատարէ կաթողիկոսին խնդիրքը ամենայն վայելչութեամբ. «ոսկենկար անկուածով եւ երկնագոյն լազվարտով, զՀամաբարբառսն եւ զՏնօրինականսն ըստ վկայելոցն յիւրաքանչիւր տեղիս. նաեւ զԹփերոյն եւ զգրին եւ զտէրունական անուանց զոսկին եւ զերանկս լիով կատարեալ»։*

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

Հոս կը կցենք Մեծարգոյ Օր. Սիրարփի Տէր Ներսէսեանի իրբեւ լրացում իմ «Բարսեղ Վ. Արծրունի, եպիսկոպոս Ամիթի» յօդուածիս ուղարկած թղթակցութիւնը, որ լոյս տեսած է «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, 1956, էջ 417—451:

*Գերաշնորհ Հայր,*

*Հետաքրքրութեամբ կարդացի ձեր վերջին յօդուածը Բարսեղ Վ. Արծրունիի մասին եւ շատ օգտուեցայ Ամիթի դպրատունի մասին ձեր տուած նոր տեղեկութիւններէն: Իմ հաւաքած նիւթերու մէջ գտայ կարգ մը ուրիշ տեղեկութիւններ, մեծաւ մասամբ քաղուած տակաւին անտիպ ձեռագիրներէն, որոնք կարծեմ արժէ հրատարակել իբր յաւելուած ձեր յօդուածին, եւ որոնք ներքեւ կու տամ:*

*Կը յիշէք Յովհաննէս գրչին 1599 թուին օրինակած եւ ծաղկած Հարանց վարքը, որուն օրինակը՝ գրուած Կաֆայի Թադէոս «յոքնահանճար գրչապետէ», Սրապիոն վարդապետ Երուսաղէմէն բերած էր, եւ որ «զկնի աւարտմանն գրոցս՝ անվնաս եհաս... ի սուրբ Երուսաղէմ»: Այս օրինակը անշուշտ Երուսաղէմի Թիւ 285 ձեռագիրն է,*

գրուած եւ ծաղկուած 1430 թուին ի Կաֆա, Թադէոս աբեղայ Ավրամենցի կողմանէ։ Ձեռագրիս մանրամասն նկարագրութիւնը Նորայր եպս. Պողարեան տուաւ Երուսաղէմի Ձեռագրաց Ցուցակին Գ. հատորին մէջ, էջ 113—118, արտատպելով նաեւ քանի մը մանրանկարներ։

Նոյն Յովհաննէս, որդի Ճանիպէկին եւ Եթարին, 1615ին կրկին անգամ Հարանց վարք մը կը ծաղկէ (Լոնտոն, Բրիտ. Թանգարան, Add. 27301, Conybeare, Catalogue. Թ. 88, էջ 209—215)։ Յովհաննէս Լոնտոնի ձեռագրի յիշատակարանին մէջ կ՚ըսէ թէ օրինակը Երուսաղէմէ բերուած է Մինաս Վրդ. Թէոդուպաւլսեցիի կողմանէ, առանց օրինակին գրիչը յիշելու, բայց այս օրինակը նորէն Երուսաղէմի Թիւ 285 մատեանն էր։ Այս ձեռագրին էջ 823ի փոքր յիշատակարանը կու տայ հետեւեալ տեղեկութիւնը։ «Զսուրբ գիրս Հարանց վարուց բերեալ ի սուրբ Երուսաղէմայ յօրինակի վասն, տէր Մինաս վարդապետն Թէոդուպաւլսեցին, որ եւ գաղափարեցաւ վասն իւրն, ըստ սորին նմանութեան։ Վասն որոյ ետ զսա վերստին նորագել յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողաց իւրոց։ Եւ նորոգեցաւ սուրբ գիրքս ի մայրաքաղաք Համիթ, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի եկեղեցւոյս ի ՌՀԴ (1625) թուին, ձեռամբ մեղսամած գրչի Յովանիսի։» Յովհաննէս նոյնութեամբ կրկնած է, Լոնտոնի ձեռագիրին մէջ, իր օրինակին մանրանկար–

ները։ Գրչութեան համար իրեն օգնած են Մինաս եւ Մելքոն աշակերտները՝ «յառաջի երկրորդ տետրէն մինչ ի ԻԱ տետրն, տէր Մինաս գրեաց, եւ ի ԻԲէն մինչ ի վերջ գրոցս, Մելքոն գրիչն գրեաց, եւ ի միասին ծաղկեալ աւարտեցի»։

Յովհաննէսէն ինծի ծանօթ են երեք ուրիշ նկարազարդ ձեռագրեր։ Առաջինը համառօտ Աստուածաշունչ մըն է, գրուած «ի հայկազեան թուականին ՌԾ (1601) ամին, ի մայրաքաղաքս Համիթ, ի դուռն սուրբ Սարգսի զօրավարին, որոյ ընդ հովանեաւն պարփակիմք, ի վերադիտողութեան մերոյս նահանգի Տիգրանակերտի սորուն ստացողի Սրապիոն վարդապետի։ Ձեռամբ յոգնամեղ եւ զառածեալ անձին սուտ եւ փուտ գրչի Յովանիսի եւ աշխատողի ընդ իս Ասլան պատանեկի, ի գրել եւ ի ծաղկելն»։ Այս ձեռագիրը այժմ կը գտնուի Dublin, Sir A. Chester Beattyի նոր հաւաքածոյին մէջ. այս ձեռագիրներուն իմ պատրաստած ուսումնասիրութիւնս մօտերս լոյս կը տեսնայ։ Յովհաննէս իր ծնողքին անունը չէ տուած, բայց մանրանկարները բաղդատած եմ ուրիշ ձեռագիրներու հետ. եւ կասկած չունիմ որ ասոնք ալ Ճանիբէկի եւ Նթարի որդի Յովհաննէսի գործն են։

Baltimoreի Walters Art Galleryի Թիւ 541 Աւետարանը գրուած է նոյն Յովհաննէսի կողմանէ, օգնութեամբ իր աշակերտ Մելքոնին։ «Յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս

ձեր զմեղապարտ Յովանէս գրիչս եւ հայցել թողութիւն յանցանաց իմոց: Այլ եւ ողորմեսցի Քրիստոս Աստուած ամենայն երախտաւորացն մերոց եւ ծնաւղաց իմոց: Հօրս Ճանիպէկին եւ մօրս Եթարին, եւ եղբարցս Կարապետին եւ Աստուածատուրին եւ կուսան քըւերս Մարգարտին եւ կնքահօրս տէր Աբրահամ սուրբ ծերունի կրօնաւորին՝ զպատճառն իմոյս տառակրթութեան...: Նաեւ ուսուցողին իմոյ տէր Աստուածատուր քարտուղարին ողորմեսցի Քրիստոս Աստուած եւ ընդ գրչապետացն դասեսցէ. ամէն: Այլ եւ զկենակիցն իմ զՀումայն եւ զհայրն իւր զԳրիգորն որ յայսմ ամի հանգեաւ ի Քրիստոս, եւ զմայրն իւր զՄելիքզատան եւ զդստերս իմ զՄարխամն եւ զՄարանան...: Նաեւ զհոգիացեալն մարմնոյն զհոգեւոր որդեակն իմ զՄելքոն պատանին, զշնորհալի դպիրն՝ զգծագրող սուրբ աւետարանիս խնդրեմ աւժանդակութիւն աղօթից ձերոց, զի մարդասէր Աստուած սուրբ հոգին առատապէս ծաւալեսցի ի նա եւ բազմապատիկ հեղեալ լցուսցէ շնորհօքն երկնային եւ պահեսցէ ի սէրն Քրիստոսի. անփորձ մնալ ի վերայ երկրի, մինչեւ ի խոր ծերութիւն...: Ընդ նմին եւ զծնօղս իւր, զԱմիրճան հայրն իւր, զհանգուցեալն ի Քրիստոս, որոյ ողորմեսցի Քրիստոս, եւ զմայրն իւր զՄարխամն եւ զեղբայրն զՊաղտասարն եւ զհանգուցեալն ի Քրիստոս. զՆանան որ զբազում մայրութիւն արարեալ է իւրն»:

Յովհաննէս իւր անունը գրած է նաեւ Յովհաննէս Աւետարանչի պատկերին տակ՝ «Եւ ես ծաղկողըս անարժան, որ Յովհաննէս կոչիմ յանուան, ըղխ արէք յիշման արժան, եւ զձեզ աւրհնէ անմահ արքայն»:

Յիշատակարանէն թերթ մը ինկած ըլլալուն, գրութեան թուականը չկայ: Ձեռագրին ստացողն է «հաւատարիմ եւ աւրհնեալ կինն Նապաթն, եւ ետ գրել զսուրբ քառաջահեան աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց. հօրն Սարգսին եւ մաւրն Տըլշատին, եւ իւր հանգուցեալ որդոցն Մելքոնին եւ Խաչատուրին եւ Ղարիպին... եւ ետ նուէր եւ ընծայ ի դուռն սուրբ Սարգսի եկեղեցւոյն, զի միշտ եւ հանապազ ընթերցցի»: Նապաթ կին մը ստացողն է նաեւ 1611 թուին Ամիթ գրուած Աւետարանին, որուն յիշատակարանէն մաս մը Գ. Սրուանձտեանց արտագրած է (Թորոս Աղբար, Բ., էջ 424): Արդեօք նո՞յն ձեռագիրն է, որուն այժմ կորսուած թերթէն Սրուանձտեանց գտած է գրչութեան թուականը:

Կը կարծեմ որ նոյն Յովհաննէսը ծաղկած է Էջմիածնի նոր Թիւ 44 Աւետարանը (Էջմիածին, 1951 Յուն.–Փետր., էջ 87): Ջուղայեցի Խոճայ Մահսումը կը ստանայ «զսուրբ աւետարանս ի Բաղէշ քաղաքի, ի գծագրողէն ումեմն Յովսէփ եպիսկոպոսէ: Եւ բերեալ ի Համիթ, ի գրչիս Յովանիսի, եւ ետ լընուլ զթերին, զգլխագիրն, զծաղկելն եւ զկազմելն, զոր եւ մեք... կատարե–

ցաք... ՌԾԷ (1608) թուին, ի մայրաքաղաքս Համիթ, ընդ հովանեաւ սրբոյ Սարգսի զօրավարին եւ այլ սրբոց...»: Ձեր նշանակած թիւ 24 մատեանը՝ էջմիածին թ. 1245, Ներսէս Շնորհալւոյ Մատթէի մեկնութիւնը, գրուած 1613 թուին, նոյնպէս Ճանիրէկի որդի Յովհաննէսին գործը ըլլալու է, քանի որ ան կը յիշէ իր հոգեւոր որդին Մելքոնը: Վերջապէս հաւանաբար նոյն Յովհաննէսն է, այն Յովհաննէս Համթեցին որ 1598ին նկար մը կ՚աւելցնէ երկու տարի առաջ Եդեսիա գրուած ձեռագրի մը մէջ (Երուսաղէմ, թիւ 260, Ցուցակ, Գ. հատոր, էջ 47):

Գալով Յովհաննէս Սարկաւագի մը եւ Խաչատուր դրչին, անոնք դեռ կ՚ապրէին 1660 թուին, երբ օրինակեցին եւ ծաղկեցին Երուսաղէմի թիւ 1947 Աւետարանը: «Քրիստոնեայ ոմն Աստախան անուն ցանկացաւ սուրբ մատենիս որ եւ ետ գրել զսուրբ աւետարանս Յոհաննէս ումեմն սարկաւագի, յիշատակ... հարն Աստուածատուրին եւ մարն Պալաչխին... եւ եղ զսա անջինջ յիշատակ ի աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ, ի դուռն սրբոյն Յակովբայ...: Արդ ծաղկեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ սուտ եւ փուտ Խաչատուր դրչի, ի մայրաքաղաքն Տիգրանակերտ որ այժմ ասի Համիթ, ի դուռն սուրբ Կիրակոսի, եւ մօր նորա Ուղիտայի, եւ սուրբ Սարգսի զօրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին, ի յառաջնորդութեան տէր Ոնոփրիոս րաբունապետին եւ

Աստուածաբան վարդապետին...: Արդ ես մեղաւոր Խաչատուր գրիչս... աղաչեմ... Աստուած ողորմի ասացէք ինձ եւ ծնաւղաց իմոց, հօրս Քասպարին եւ մօրս Ճնահաւորին, եւ կենակցուս եւ դստերս Աննային...:

Եղիայ Համթեցին, որուն 1646ին Պոլիս գտնուիլը յիշած էք, արդէն 1640ին հոն գացած էր, եւ օրինակեց ու ծաղկեց Աւետարան մը Մահդասի Մարիամին համար (Լալայեան, Ցուցակ, էջ 899—902):

Թէեւ այս ձեռագիրները Բարսեղ Ամթեցու մասին տեղեկութիւններ չեն տար, կը կարծեմ որ հետաքրքրական են Ամիթի դպրատան գործունէութեան համար:

Ձեր յօդուածին մէջ (էջ 426) կարծեմ վրիպակ մը սպրդած է: Ստեփաննոս Կարմիրի որդի Մինասի համար կը գրէք «Մինասի մասին Սիոն 1951, 142/146»: Բայց այս Մինասը, որդի Մախթումի եւ Մարթենիքին, տարբեր գրիչ մըն է — ան աշխատած է Վանի շրջանը, գրեթէ երկու դար առաջ, 1432—1469 թուերուն:

Մնամ յարգանօք

ՍԻՐԱՐՓԻ ՏԷՐ ՆԵՐՍԷՍԵԱՆ

ԽԴ.

# ՅՈՎՍԷՓ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԵՑԻ

## ԹԱՐԳՄԱՆԻՉ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔԻ

(991)

*Այս եւ յետագայ գլուխներու մէջ մտադիր եմ ուսումնասիրել Հայոց Յայսմաւուրքի սկզբնաւորութեան եւ զարգացումի պատմութիւնը յեցած նորագիւտ ձեռագրական աղբիւրներու եւ մեզմէ յառաջ կատարուած քննութիւններու վրայ:*

### 1. ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

1. *Հ. Միքայէլ Ջամչեան, Պատմութիւն Հայոց, Վենետիկ, Ա., էջ* 17—18:

2. *Հ. Մկրտիչ Աւգերեան, Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւն. Հատոր ԺԱ., Յաւելուած: Վենետիկ* 1814, *էջ ԾԳ—ՂՁ:*

3. *Հ. Ղեւոնդ Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, Վենետիկ* 1873, *էջ* 30—32:

4. *Հ. Ն. Ակինեան, Նիւթեր հայ վկայաբանութեան ուսումնասիրութեան համար, Վիեննա* 1910—1914:

5. P. Peeters, Pour l'histoire du synaxaire arménien: Analecta Bollandiana 30 (1911) 5—26.

6. N. Adonz, Note sur les synaxaires arméniens: Revue d'Orient Chrétien, 24 (1924)

211—218. Հմմտ. նաեւ N. Adonz, Les fêtes et les saints de l'eglise arménienne: անդ, 26 (1927—1928), 74—104, 222—278 (շարունա-կութիւնը ընդհատած): Այս աշխատութիւնը ներկայացուցած էր Ադոնց 1900ին Պետեր-բուրգի Համալսարանին իբրեւ քննաճառ: Որուն համառօտութիւնը տուած էր Արարատ 1900, էջ 251 (Ն. Ադոնցի աշխատասիրու-թեան համառօտութիւնը):

7. Sebastian Euringer, Die Passio des hl. Januarius von Benevent und seiner Genossen. Aus dem Armenischen übersetzt: Theologie und Glaube, 5 (1913) 369—374.

8. Sirarpie Der Nersessian, Le synaxaire arménien de Grégoire VII d'Anazarbe: Mélanges Paul Peeters, II (Analecta Bollandiana, 68 (1950). 261—285.

9. Հ. Գ. Սարգիսեան, Գրիգոր Անաւար-զեցի, Հայրապետ եւ գրիչ. Բազմավէպ, 1947, էջ 201—202. 1948, էջ 58—66, 116—123:

10. Jean Mécérian, Introduction à l'étude des synaxaires arméniens (Յայսմաւուրք): Mélanges de l'Université Saint Joseph, 30 (1953), fasc. 4, Bulletin arménologique, II. p. 99—178.

11. René Aigrain, L'Hagiographie, ses sources, ses méthodes, son histoire. Paris 1953, p. 87—89.

## 2. ՅՈՎՍԷՓ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԵՑԻ

*Վիեննայի Մխիթարեան Գրադարանը ստացաւ Յայսմաւուրք մը (այժմ Թ. 1058), որ գրուած է 1302ին ի Սեբաստիա։ Ան բովանդակութեամբ* յունական Յայսմաւուրքն *է նախնական վիճակին մէջ, Թարգմանչին Յառաջաբանով եւ Տօներու ցուցակով։ Թարգմանութիւնս վերնագիր կը կրէ «Տօնացոյց», թարգմանիչն է Յովսէփ, թարգմանուած է Կ. Պոլիս 991/2ին։*

*Որովհետեւ հայ գրականութեան մէջ առաջին անգամ երեւան կու գայ թարգմանչիս անունը, եւ սրբախօսական գրականութեան համար կարեւոր է թարգմանութեանս բովանդակութիւնը, թէեւ ոչ նոր, պարտք կը համարիմ նախ ներկայացնել թարգմանիչն, ապա նկատի առնել թարգմանութեանս աղերսը հայ Յայսմաւուրքներու եւ յունական Սինաքսարիոններու հետ եւ ի վերջոյ ծանօթացնել Ձեռագրին որպիսութիւնն եւ բովանդակութիւնը։*

*Յովսէփ անունո՛վ միայն ծանօթ էր մեզի. այժմ կու գայ անձամբ ներկայացնելու մեզի իր ինքնութիւնն եւ գործը. իր Յիշատակարանին մէջ կը գրէ. «Ես անարժանս եւ տգէտս եւ մեղաւոր Թարգմանիչս Յովսէփ, ծնեալ եւ սնեալ եւ ծերացեալ յաստուածապահ քաղաքիս Կոստանդինուպոլիս. եւ զհայրենի լեզու եւ զգիր ի տեղիս ուսեալ. ի միոյ հոռոմ Տօնացոյցէ Թարգմանեցի զճառս կարճառօտի*

ի Թորգոմական բարբառ ի Ն. եւ Խ. Թուականութեան Հայոց. եւ էր յԱդամայ ԶՌՇ անցեալ ամաց»։

Հայոց ՆԽ եւ Բիւզանդացւոց ՑՇ Թուականութիւնները միաբերան կը համապատասխանեն քրիստոնէական Թուականի 991/2 տարւոյն։ Եթէ Յովսէփ այս տարւոյն «ծերացեալ» հասակին մէջ կը գտնուէր, հարկ է ծնունդը իրր 920ին ենթադրել։

Զի յիշեր ծնողաց անունները. բայց կը չեշտէ, թէ ծնած է Կ. Պոլիս եւ հոն ուսած է «հայրենի լեզուն եւ գիրը». արտայայտութիւնս «հայրենի լեզու» Թոյլ կու տա՞յ կարծելու, թէ մայրենի լեզուն յունարէնն եղած ըլլայ։ Ան ուսած է հայերէն լեզուն եւ գրականութիւնը. չունինք որ եւ է վկայութիւն, թէ Կ. Պոլիս հայկական դպրոց գոյութիւն ունեցած ըլլայ Ժ. դարու առաջին կէսին. բայց գիտենք, թէ կար հոն հայ գաղութ մը ազդեցիկ ոյժով[1] եւ մտաւոր կարողութեամբ։ Մեզի ծանօթ է այս շրջանէն Թութայէլ դպիր, որ օրինակած է 909ին Աշոտ իշխանի համար հայերէն Աւետարան, որուն յիշատակարանն է. «ՅԾԸ Թուականութեանն Հայոց հրամանաւ տեառն Աշոտոյ գրեցաւ սուրբ Աւետարանս ի Կոստանդինուպոլիս ի ձեռն Թութայէլի ծառայի ծառային Քրիստոսի՝ տեառն Աշոտոյ[2]»։ Յովսէփ ունեցած ըլլալու

[1] Լեւոն սարկաւագ։

[2] Գարեգին Կաթ. Յովսէփեան, Յիշատակարանք, Ա., էջ 107։

է հմուտ հայերէնագէտ մը իրեն ուսուցիչ, որ սորվեցուցած է իրեն հայրենի լեզուն եւ յորդորած է հետեւող ըլլալ դասական գրականութեան, ըստ կարի խորշելով հելլենաբան դպրոցի նորաբանութիւններէ։ Աշակերտած է նաեւ յունարէն դպրութեան եւ խրացուցած է յոյն լեզուն։

Ակնարկութիւն չէ ըրած որ եւ է խօսքով թէ աշխարհի՞կ էր, թէ եկեղեցական։ Այն պարագան, որ ան յունական Սինաքսարիոններուն սիրող եւ հմտօրէն տեղեակ եղած է եւ վառուած նախանձախնդրութեամբ սըրբոց եւ վկայից պատմութիւնները հայ ժողովուրդին ի շինութիւն մատչելի ընելու, թոյլ կու տայ մեզի առանց վարանումի զինքը եկեղեցական ճանչնալու, եւ այն Հայ-հոռոմներու համայնքին մէջ։ 965ին Ղեւոնդ վարդապետ կ'անուանէ զինքը «օրհնեալ Յովսէփ» (տես վարը)։

## ՂԵՒՈՆԴ = ՊԱՆՏԱԼԷՈՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԵՒ ՅՈՎՍԷՓ

Սուրբ Պետրոսի Մատին պատմութեան մէջ կ'ըսուի թէ Պանտալէոն քահանայ Նիկեփորոս Բ. Փոկաս կայսեր (963, օգոստ. 16—15 մարտ 969) օրով Անձեւացեաց Ապուսահլ-Համազասպ թագաւորի կողմէն պատգամաւոր կ'ուղարկուի Կ. Պոլիս, ուր կը հասնի 965/6 տարւոյն եւ 966, յունուար 6ին կը բանախօսէ Ս. Սոփիայի Իմաստասիրաց կաճառին մէջ։ Քաղաքիս մէջ կը դեգերի իբր

եօթը ամիս։ Այս միջոցին կը հետապնդէ դիտնալու, թէ «գուցէ՞ արդեօք մասն ինչ ի նշխարաց սրբոց առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի»։ Յոյն վարդապետները կը պատասխանեն, թէ այժմ չունինք, բայց «Բարձեալ Եղեսացւոց» համաձայն Յուստինեանոս կայսրը, երբ աւարտած է Ս. Սոփիայի շինութիւնը, խնդրած է Հռոմի պապէն որ շնորհէ իրեն Ս. Պետրոսի եւ Ս. Պաւղոսի նշխարներէն մասունքներ, եւ ան ալ ուղարկած է նոյն Սրբոց մօրուքներէն վեց թել. որոնք սակայն ժամանակ մը վերջը Հռոմայեցիներէն կը գողցուին եւ Հռոմ կը տարուին»։ Ղեւոնդի փափագն էր ունենալ գլխաւոր առաքելոց մասունքները։ Ան կը վերադառնայ Անձեւացեաց երկիրը. հոս կը լսէ, թէ Ս. Պետրոսի մատը կը պահուի Կոգովիտի մէջ։ Թէ ի՞նչպէս բերուած է հոն այդ մատը, կը պատմէ իրեն Յակոբ մարգպան։

Այս չնաշխարհիկ Պատմութեան վերջը զետեղուած է Յիշատակարութիւնս, որ զմեզ հոս առաւելապէս կը հետաքրքրէ. «Որք ընթեռնույք՝ յիշեցէք զտառապեալս Պանտալէոն. զի բազում աշխատութեամբ հանի զդա յարկեղաց սրբոյն Սոփիայ եւ թարգմանեցի ի յունականէն ի հայ լեզու ձեռամբ օրհնելոյն Յովսեփայ ի փառս Աստուծոյ[3]»։

Որովհետեւ Ս. Պետրոսի Մատին պատմութիւնը լսած է Պանտալէոն բերանացի

---

[3] Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Բ., էջ 233—239։

աւանդութենէ եւ այնպէս ալ գրի առած է, Յիշատակագրութիւնս չէր կրնար նախնաբար անոր մասն եղած ըլլալ. այլ ուրիշ գրուածքէ մը պէտք է փոխադրուած ըլլայ հոս: Ուշադիր ընթերցմամբ կրնանք վերլուծել զայն այսպէս. Պանտալէոն ի խնդիր ելած է գրուածքի մը. մուտք շնորհուած է իրեն Ս. Սոփիայի Մատենադարանը. այն տեղ քրքրած է «բազում աշխատութեամբ» ձեռագիր հատորներ, յաջողած է ի վերջոյ գտնել իր փափագած գրուածքը ձեռագրի մը մէջ, զոր արտագրած է եւ տուած Յովսէփին, որպէս զի թարգմանէ հայերէնի: Այս անծանօթ գրուածքին թարգմանութեան կը պատկանի Յիշատակարանս:

Ի՞նչ էր այդ փնտռուած գրութիւնը: Ինձ կը թուի, թէ Պանտալէոնի մէկ գրուածքն էր, ճառ մը Միքայէլ, Գաբրիէլ եւ Ռափայէլ հրեշտակապետներու նուիրուած. ա՛յս ճառն է, որ թարգմանած է Յովսէփ եւ անկէ մաս մը զետեղած է ապա իր թարգմանած Տօնացոյցի (Յայսմաւուրքի) մէջ (Նոյեմբեր Ը.): Այս «Պանտալէոն» հաւանօրէն նոյն է Ղեւոնդ = Պանտալէոն հայ քահանայի հետ:

A. Ehrhard կը գրէ[4]. «Պանտալէոն սարկաւագ ի Կ. Պոլիս, որուն ժամանակը ԺԳ. դար կը համարուէր. բայց հաստատութիւնը կը հերքուի այնու որ cod. Marcian, cl. 2, 17

---

[4] K. Kurmbacher-A. Ehrhard, Geschichte der byzantinischen Literatur, München 1897, S. 167.

ձեռագիրը մինչեւ Թ. դար կ'իջեցնէ, ենթադրելով որ Պանտալէոն Սարկաւագ նոյն է τῶν Βυζαντίων վանքի Պանտալէոն քահանայի հետ: Այս երկուքի անունով ունինք դաւանական ճառեր, որոնցմէ վեցը հրատարակուած են[5]:

Այս Ղեւոնդ-Պանտալէոնի մասին մանրամասնութիւններ կը հաղորդէ Մատթէոս Ուռհայեցի · Յովհաննէս Զմշկիկ կայսր (965—969) երբ հասաւ Տարօն, պատգամաւորութիւն մ'ուղարկեց Հայոց Աշոտ թագաւորին եւ անոր քով հաւաքուած հայ իշխաններուն. Երբ կը վերադառնային պատգամաւորները, «գնացին եւ յիշխանացն Հայոց զկնի հրեշտակացն Հոռոմոց Իմաստասէրն Լեւոն եւ այլ եպիսկոպոսք եւ վարդապետք եւ արարին սէր եւ խաղաղութիւն ընդ թագաւորին Հոռոմոց եւ ընդ Աշոտոյ արքային Հայոց»: Կայսրը «զվարդապետն Հայոց զՂեւոնդ, զեպիսկոպոսն եւ զիշխանսն մեծաւ պարգեւօք յուղարկեաց առ Աշոտ թագաւորն Հայոց» (էջ 17—18): Ոչ շատ յետոյ Կայսրը, որ հասած էր Երուսաղէմ, կը գրէ «առ վարդապետն Հայոց Ղեւոնդ» այսպէս · «Մեր հաճելի եւ սուրբ թագաւորութեանս սիրեցեալ մեծ իմաստասէր Պանտալեւոն ողջոյն...: Յորժամ եկիր առ մեզ ի յԱշոտոյ շահնշահէն... տարար

[5] Migne, Patr. gr. 98, 1244—1269. 140, 573—592. Ճառն ի Հրեշտակապետս՝ անդ, 140, էջ 573—192 եւ անդ, 98, էջ 1259—1266 (հմմտ. BHG, p. 1285—1289):

զԲագարատ ի Պայն Անձաւացին . . . ։ Եւ արդ ջանացիր, որ զտանեմ զքեզ յաստուածապահ Քաղաքն մեր (Կ. Պ.) եւ անդ արասցուք տօն մեծ Հողաթափացն Քրիստոսի . . . եւ սուրբ Հերացն Մկրտչին Յովհաննու։ Եւ արդ հաճեալ ունիմ եւ գայս ինչ ի քէն. վասն զի խօսեցիս ընդ մեր իմաստասէրսն եւ ընդ փիլիսոփայիցն մերոց»։

Ղեւոնդ կ'երթայ Կ. Պոլիս. ուր «խօսեցաւ վարդապետն Հայոց առաջի թագաւորին ընդ ամենայն Իմաստասիրացն Հոռոմոց եւ անպարտելի երեւեցաւ ի մէջ վարդապետացն տանն Յունաց. վասն զի յամենայն հարցմունսն հաճելի երեւեցաւ. եւ բազում զովութեամբ բարերանեցին զնա եւ զուսուցիչն նորա։ Եւ մեծաւ պարգեւօք . . . գնաց . . . յաշխարհն Հայոց ի մեծ տունն Շիրակայ» (էջ 28—29)։ Այս տեղի կ'ունենայ 974/5 տարուոյն։

Մ. Ուռհայեցւոյ այս հաւաստումները կը բերեն զմեզ այն եզրակացութեան, թէ Ղեւոնդ–Պանտալէոն հմուտ էր յոյն լեզուին եւ գրականութեան. ան աշակերտած է անուանի ուսուցիչի մը։ Եթէ իր բանախօսութիւնները հիացմունք կը հնձեն, կրնանք ենթադրել թէ անոնք գրաւոր ալ աւանդուած ըլլան. ուստի Պանտալէոն Սարկաւագի կամ նոյնանուն Քահանայի գրուածքներէն մին կամ միւսը իր գրչէն ըլլան։ Ղեւոնդ գործած է նաեւ հայ միջավայրի մէջ. ան տեսնուած է Անձեւացեաց աշխարհը եւ ի Շիրակ. ուստի

հմուտ էր հայ լեզուին գոնէ ինք զինքը հայեցի արտայայտելու համար. յամենայն դէպս ոչ այն աստիճան, որ կարենար գրական աշխատութիւններ հեղինակել. այս է պատճառը, որ ան դիմած է Յովսէփի, որպէս զի հայերէնի վերածէ վերոյիշեալ ճառը:

Յովհ. Զմշկիկ Կայսր իր Թուղթին մէջ առ Աշոտ կը գրէ թէ առի Հէմս եւ Վոխտոն (Բիւրիտոն) եւ այլ քաղաքներ. «Գտաք, կ՚ըսէ ի Գաբաւոն զսուրբ Հողաթափն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որով եւ շրջեցաւ իսկ ի վերայ աշխարհի. նոյնպէս եւ զՊատկերն Փրկչին մերոյ, զոր Հրեայքն յետ ժամանակի խոցեալ էին, ուստի վաղվաղակի ել արիւն եւ ջուր եւ զխոց տիգին. գտաք եւ յայնմ քաղաքին զպատուական Հերս գլխոյ Կարապետին եւ Մկրտչին Յովհաննու եւ առեալ տանիմք ի պահպանութիւն աստուածապահ Քաղաքին մերոյ[6]»:

Յովսէփ իր թարգմանած Յայսմաւուրքին մէջ (Յունուար ԼԱ. 3) յիշելով Բիւրիտոնի Պատկերը՝ կ՚աւելցնէ «Եւ (զկնի) բազում ժամանակաց թագաւորն Յովհաննէս Զմշկիկ գնաց ի Հեմս, էառ զՔրիստոսի Աստուծոյ մերոյ զԿաղամարն եւ զՀողաթափն սուրբ ոտիցն Քրիստոսի. գնաց ի Բիւրիտոն, էառ զայն տէրունական Պատկերն, տարաւ ի Կոստանդինուպոլիս եւ եդ ընդ այլ սրբութիւնն ի փառս Աստուծոյ»: Այս յաւելուածը

[6] Մատթ., Ուռհ., էջ 26—28:

*չունին յունական Սինաքսարիոնները: Մ. Ուռհայեցւոյ քով Կաղամարի մասին խօսք չէ եղած:*

*Յովսէփ պէտք է ծանօթացած ըլլար Մոկաց Ստեփանոս եպիսկոպոսի մօրեղբօր, որ երկար ժամանակ Կ. Պոլիս ապրած էր դիւանորական ծառայութեան մէջ եւ 983ին վերադարձած, տանելով հետը Ս. Խաչի մասունքը (Ապարանից Ս. Խաչը), զոր ընծայեած էր իրեն Վասիլ կայսր* [7]*:*

740Ի ԵՒ 989Ի ԵՐԿՐԱՇԱՐԺՆԵՐԸ

*Սինաքսարիոնը հոկտեմբեր 26ին, երբ կը տօնուի Ս. Դեմետրիոս վկայի յիշատակը, կ՚արձանագրէ. «Այսօր յիշատակն է այն ահաւոր եւ սոսկալի երկրաշարժին, որ եղաւ վասն բաղում մեղաց մերոց. արեւի Ե.-չրջանն էր, լուսնի ԺԶ. Ինդիկտիոնի 9, 6249 տարւոյն, անօրէն եւ պատկերամարտ Լեւոն Իսաւրացւոյ թագաւորութեան ժամանակ»:*

*Թէոփանէս Խոստովանող իր ժամանակագրութեան մէջ յամի 6232 կը գրէ* [8]*. «Այս տարի, որ բռնաւոր Լեւոն կայսեր ԻԴ. տարին էր, մեծ եւ ահաւոր երկրաշարժ մ՚եղաւ Կոստանդնուպոլիս, հոկտեմբեր ամսի ԺԶ.ին, Ինդիկտիոնի 9ին, չորեքշաբթի օրը, ժամը 8ին. որուն հետեւութեամբ կործանեցան եկեղեցիներ եւ վանքեր. եւ ժողովուրդէն*

7 *Գրիգոր Նարեկացւոյ մատենագրութիւնք*, Վենետիկ 1840, էջ 376—389:

8 *Թէոփանէս*, էջ 634—635 (հրտ. Բոննի):

շատերը թաղուեցան աւերակներու տակ...։ Այս պատահեցաւ աշխարհի 6248ին, Եգիպտացւոց, այսինքն Աղեքսանդրացւոց 6232ին եւ Փիլիպպոս Մակեդոնացւոյ 1063 թուականին»։

Թէ՛ Սինաքսարիոնը եւ թէ՛ Թէոփանէս կը նշեն Ինդիկտիոնի 9, որ կը համապատասխանէ 6248 տարւոյն. ուստի Սինաքսարիոնի 6249 նկատելու է գրչի սխալ։ Թէոփանէսի հաւաստումը թէ հոկտեմբեր 26ի պատկերը չորեքշաբթի էր, ճշգիւ կը համապատասխանէ 6248ին։

Աշխարհի 6248(—5508) եւ Աղեքսանդրեան 6232(—5492) թուականները կը համապատասխանեն Փրկչական 740/1 տարւոյն (սեպտեմբերէ սեպտեմբեր)։ Թէոփանէս յիշելով Լեւոն Իսաւրացւոյ ԻԴ. տարին՝ անվիճելի կ'ընէ շարժին տարին 740, հոկտ. 26, որովհետեւ Լեւոն գահ բարձրացած էր 717 մարտ 25ին եւ վախճանած 741 յունիս 18ին։

Երկրաշարժս յիշած է նաեւ Միքայէլ Ասորի[9]. Սելեւկեան 1050ին (=739—740). «Կ. Պոլիս երկրաշարժ եղաւ. քանդուեցաւ քաղաքին մեծագոյն մասը»։

Ծանօթ է երկրաշարժիս նաեւ Յովսէփի, որ կը գրէ. «Յայսմ աւուր (ԻԶ. հոկտ.) եղեւ շարժ մեծ ի Կոստանդինուպոլիս յաւուրս Լեւոն արքայի Իսաւրոսի. եւ մեծ

---

[9] Chronique de Michel le Syrien, II, 504, ed. Chabot.

վնաս եղեւ ի մարդիկ եւ ի շինուածս»: Ան ուշքի առջեւ ունեցած է Սինաքսարիոնի վերոյիշեալ տեղիքը. թէպէտ տարին չէ յիշած, բայց գիտէ թէ այս 740 թուականէն «յետ ՄԽԹ ամաց» տեղի ունեցած է 989ի երկրաշարժը:

Ի մասին այս երկրորդ Երկրաշարժին արձանագրած է Սինաքսարիոնը 740ի շարժի յիշատակին կից.

«Պէտք է գիտնալ, որ նաեւ Վասիլ եւ Կոստանդին Կայսրներու օրով, 6498ին վասն բազում մեղաց մերոց պատահեցաւ երկրաշարժ սոյն այս օրը, գիշերուան ժամը երեքին. երբ նաեւ Տեառն մեծ եկեղեցւոյ մեծակառոյց շէնքը (Ս. Սոփիա) քանդուեցաւ եւ ուրիշ շատ շինուածքներ եւ բերդեր կործանեցան»:

Այս դէպքէն մէկ կամ երկու տարի ետքը Յովսէփ իր թարգմանած Յայսմաւուրքի մէջ նոյնը կը պատմէ այսպէս, վերը յիշուած հատուածին իբր շարունակութիւն. «Եւ յետ ՄԽԹամաց յաւուրս Բարսեղիոսի եւ Կոստանդինոսի եղբօր իւրոյ եղեւ յայսմ աւուր ի գիշերի ահաւոր եւ սոսկալի շարժ. որ այնպիսի չէ լեալ ի խաչելութենէն Քրիստոսի: Եւ անկաւ մեծ եկեղեցւոյն Սոփիայ կամարն արեւմտից: Եւ բազում եկեղեցիք եւ բարձրաշէն ապարանք եւ կամարակապ փողոցք կործանեցան: Եւ եկաց պտարի մի եւ ահ մեծ ի քաղաքին եղեւ»:

Յարգի են տողերս, վասն զի ժամանակակցի եւ ականատեսի վկայութիւն են:

Ուրիշ ժամանակակից մը, Լեւոն Սարկաւագ յիշելով գիսաւորի մը երեւումը՝ կը գրէ. «Երեկոյեան, երբ Դեմետրիոս մեծ վկային յիշատակը կը տօնուէր, տեղի ունեցաւ ահաւոր երկրաշարժ մը, որպիսի մինչեւ այսօր չէր եղած. Բիւզանդիոնի բուրգերը գգետնեց, տապալեց տուներ, որոնց տակ թաղուեցան բնակիչները. հողի տակ առաւ մօտակայ տեղերը. բաց աստի Մեծ Եկեղեցւոյն վերնայարկ կամարը արեւմտեան կամարին հետ վար նետեց, գետին տապալեց. զոր ապա Վասիլ կայսր վեց տարիներու ընթացքին նորոգեց»:

Պատմագիրը չէ նշած դէպքին տարին: Նորոգութիւնը պէտք է ենթադրել 991—997 տարիներուն:

Այս տեղեկութիւններուն ճշդիւ կը համապատասխանէն երրորդ ժամանակակցի մը, Ստեփանոս Ասողնիկի վկայութիւնք[11].

«Ի սոյն ամի, որ էր ՆԼԸ (989/90) թուականին նիզակաւոր աստղն կրկին անգամ երեւեցաւ յամսեանն քաղոց[12], որ օր ԺԵ. էր ամսոյն, ի տօնի Փոխման ամենասուրբ կուսի Աստուածածնին...: Եւ զկնի սակաւ

[10] Leon diacon, 175—176 (տպ. Բոննի):

[11] Ստ. Ասողնիկ, Գ., 27, էջ 250—251 (տպ. Մալխասեան):

[12] Իմացիր «Քաղոց ԻԴ. որ օր ԺԵ. էր աւգոստոս ամսոյ»:

աւուրց[13] չարժեցաւ աշխարհն Յունաց ահաւոր դղրդմամբ, մինչեւ կործանել բազում քաղաքաց եւ գիւղից եւ գաւառաց, եւս առաւել ի Թրակացւոց եւ Բիւզանդացւոց աշխարհին հանդերձ ծովովն... մինչ ի նոյն ինքն ի Թագաւորական քաղաքին Կոստանդնուպոլսի մեծաշուք եւ բազմապայծառ զարդ հրաշատեսիլ սեանց եւ պատկերաց եւ եկեղեցեաց մեծամեծաց կործանեալ փլուզանէր. եւ նոյն ինքն Սոփիայն, որ կաթողիկէն է՝ հերձանէր պատառմամբ վերուստ ի վայր:

«Վասն որոյ բազում ջան եղեւ արհեստաւոր ճարտարացն Յունաց առ ի վերստին նորոգել: Այլ անդ դիպեալ ճարտարապետին Հայոց Տրդատայ քարագործի՝ տայ զօրինակ շինուածոյն իմաստուն հանճարով պատրաստեալ զկաղապարս կազմածոյն. եւ սկզբնաւորեալ զշինելն. որ եւ գեղեցկագոյն շինեցաւ պայծառ քան զառաջինն»:

Երկրաշարժս կը յիշեն նաեւ Մ. Ուռհայեցի. «Ի թուականութեանս Հայոց ՆԼէ ամի եղեւ սաստիկ շարժ ընդ ամենայն արարածս. եւ փլաւ սուրբն Սոփի ի Կոստանդնուպոլիս» (89). եւ Գրիգոր Նարեկացի[14]. «Եւ զհրաշաշնորհ զարմանազան գերջանկացն հանդիսարան՝ զմեծանունն վկայարան սրբասնունդ եւ երանուհի տիկնոջն Սոփիայ եւս քան զեւս գեղեցկապանծ նոր պայծառու-

[13] Իմացիր, 989, հոկտ. 26:
[14] Մատենագրութիւնք, էջ 374—375:

թեամբ եւ ամրական դրութեամբ նորոգապէս վայելչացուցին (կայսերքն Վասիլ Բ. եւ Կոստանդին). եւ զայթաքեալն ի տատանմանէ ղողման շարժութեան վերին բարկութեանն՝ պատկանապէս պատսպարեցին. եւ անստուեր եւ անապական եւ անյաղթական զճշմարտութեան բան՝ ամենայն ազգաց ծանուցին»:

Գրիգոր Նարեկացին, որ ծանօթ է Ս. Սոփիայի վերանորոգութեան, գրած ըլլալու է տողերս 997էն ետքը:

Կեդրենոս[15], եւ իրեն հետեւելով Գլիւկաս[16] այս երկրաշարժի տարին կը նշանակեն 986ին (ամ աշխարհի 6494). որոնց ձայնակից եղած է Lebeau[17]: Այս տարւոյն ենթադրած է նաեւ Մատթ. Ուռհայեցի, որուն ձեռագիրք «ՆԼԵ» եւ «ՆԼԷ» ունին:

## ՅՈՎՍԷՓԻ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆՆ ԵՒ ՄԱՀԸ

Հայոց եկեղեցական գրականութեան մէջ դարակազմիկ գործ էր յունական Տօնացոյց-Յայսմաւուրքի թարգմանութիւնը, զոր ի գլուխ հանած է 991ին Յովսէփ Կոստանդնուպոլսեցի: Այդ տիտանական հատորը թարգմանեցի, կ՚ըսէ Յովսէփ, «եւ յուղարկեցի ի Հայոց եկեղեցիս, որ ընթեռնուն եւ գրեն զիւրաքանչիւր սրբոցն զճգնութիւնս եւ յիշեն

15 Կեդրենոս, էջ 696:
16 Glycas, p. 576.
17 Hist. du Bas-Empire, XIV, p. 169/70.

յանուանէ զմեղաւոր հոգիս *եւ վարձս ի վարձատուէն առցեն»*։

*Այս համեստ խնդրանքով իր տարիներու քրտնաթոր վաստակը իր ազգին կը նուիրաբերէ աշխատասէրը։ Ուղարկեցի, կ՚ըսէ, Հայոց եկեղեցիներուն, որ կարդան ի լուր եւ ի շինութիւն ժողովուրդին, օրինակութեամբ բազմացնեն իր աշխատութիւնը բազմաց յօգուտ, եւ ի նպաստ իրեն միակ խընդրանքով, որ օրինակողներն, ընթերցողներն եւ ունկնդիրները «յիշեն յանուանէ զմեղաւոր հոգիս», այս ինքը աշխատասիրողին անունը անմոռաց պահեն։*

*Թէ ինչ ընդունելութիւն գտաւ աշխատասիրութիւնս Հայոց քով, կը լռեն Ժ. եւ ԺԱ. դարու հեղինակները. ԺԲ. դարուն կը տեսնուի հատորս վկայասէր անձնաւորութեանց ձեռքը. մեզի ծանօթ են անոր օրինակութիւնները սկսեալ ԺԳ. դարու երկրորդ կէսէն. Վանական վարդապետ կը յանձնարարէ վերին Հայաստան Իսրայէլ եպիսկոպոսին ճոխացնել Յայսմաւուրքս հայկական սուրբերով։ Այս աշխատանքը կը շարունակեն Կիլիկիայի մէջ, նոյն դարուն, Կիրակոս Արեւելցի, Գրիգոր Անաւարզեցի, ապա վերին Հայաստան Գրիգոր Ծերենց Խլաթեցի։ Բազմացան Յայսմաւուրքներու օրինակները յընթացս դարերու. ուստի յարգեց ազգը Յովսէփի առաջին եւ երկրորդ խնդրանքները. բայց մոռցաւ, անտես ըրաւ երրորդ խնդիրքը՝ յիշել յանուանէ Յովսէփ առաջին*

աշխատաւորի անունը. ես մէկ ձեռագրի մէջ, գրուած 1302ին ի Սեբաստիա, գտած եմ անոր Յիշատակարանը. եւ մէկ Յայսմաւուրքի Յիշատակարանի մէջ՝ Յայսմաւուրքի համար վաստակաւոր անձանց թուին մէջ, լոկ «Յովսէփ» անունը:

Ոչ ոք հայ պատմագիրներէն յիշած է վաստակաւորիս անունը: Ստեփանոս Ասողնիկ, որ իր Պատմութիւնը 1004ին աւարտած է, թէեւ կը յիշէ Ժ. դարու անուանի վարդապետները, կու տայ արեւմուտք տեղի ունեցած անցուդարձերը, կը նկարագրէ 989ի երկրաշարժն եւ անոր հետեւանքները, բայց որ եւ է խօսք չէ ըրած օրհնելոյն Յովսեփայ գոյութեան մասին: Այսպէս նաեւ Մատթէոս Ուռհայեցի եւ ուրիշներ: Վարդան Բաղիշեցի, որ հայ եւ օտար պատմագիրներու շարքին կը խօսի նաեւ Յայսմաւուրքի մասին, կ՚անգիտանայ Յովսէփի անունը. «Յայսմաւուրք եւ այլ ճառք սրբոց թարգմանեալ եղեւ ի Յունաց եւ յԱսորւոց, ձեռամբ սրբոյն Գրիգորի Վկայասիրին: Իսկ յետոյ Գրիգոր Անաւարզեցին ձեռն արկեալ բազում ինչ այլայլեաց. եւ յետ նորա Գրիգոր Խլաթեցին որ կոչի Ծերենց. որ այժմ վարի յեկեղեցւոյ[18]»:

Զարմանալի է այս լռութիւնը: Պատճառը պէտք է վերագրել նախ Տէր Իսրայէլի

[18] Հ. Ն. Ակինեան, Բաղէշի Դպրոցը, Վիեննա 1952, էջ 305—306:

եւ ապա Կիրակոս Արեւելցւոյ, որոնք բարի նախանձով հետամուտ Յայսմաւուրքի հայացումի, հայկական սուրբերու ներմուծումի, ի բաց յապաւեցին առաջին հեղինակի յիշատակարանը եւ պանծացուցին իրենց անունները:

Կը պահանջէ արդարութիւնը, որ իւրաքանչիւր ոք իր արդիւնքով փառաւորուի: Այսօրուան Յայսմաւուրքի թարգմանիչն եւ խմբագրողն եղաւ Յովսէփ: Յայսմաւուրքի սկզբնագիրը, հիմնական մասը, հարազատագոյն բաժինը, ամբողջին երեք քառորդը կը պատկանի իրեն:

Իր Յայսմաւուրքը, զոր կոչած է Տօնացոյց, լոկ թարգմանութիւն չէ, այլ թարգմանաբար խմբագրութիւն: Որովհետեւ Յովսէփ նպատակ ունէր հայ ժողովուրդին հոգեշահ աշխատասիրութիւն մը տալ, ջանացած է դիւրիմաց, ամէնուն մատչելի լեզուով արտայայտուիլ: Ան ընտրած է դասական հայերէնի հետեւող ըլլալ, հեռու խրթնախօսութենէ եւ հելլենաբան բառերէ եւ մասնիկներէ: Նաեւ անուններու տառադարձութիւնը դասականներու հետեւողութեամբ կատարած է:

Յովսէփ որ պարապած է թարգմանութեամբ, հաւանօրէն թարգմանած է եւ այլ գործեր, թէպէտ չունինք առ այս չօշափելի ապացոյցներ: Կը համարիմ, թէ իր գրչէն ըլլան Վարք հարանցի ինչ ինչ հատուածներ եւ ընդարձակ վկայաբանութիւններ: Այս

հարցը կը լուծուի, եթէ Տօնացոյցի (Յայսմաւուրքի) բառարանն եւ քերականութիւնը մանաւոր ուսումնասիրութեան ենթարկուին եւ համեմատութեան առնուին անանուն թարգմանութիւններու հետ։

Յովսէփի մահուան տարին անծանօթ է։ Եթէ ան 991ին ինքզինքը «ծերացեալ» կը զգայ, հաւանօրէն կը գտնուէր 70ական տարիքի մէջ· պիտի չսխալինք, եթէ իր մահը իբր 1000 թուականին ենթադրենք։

## ԽԵ.

# ԱԲՐԱՀԱՄ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԺՈՂՈՎՈՅ

*«Յաղագս ժողովոյ արարեալ Աբրահամու Հայոց վարդապետի, ընկերակցի Մովսէսի Խորենացւոյ եւ Դաւթի Փիլիսոփայի, ի խնդրոյ Սահակայ Արծրունւոյ Մեծի իշխանի: Եւ մեր անտի համառօտեալ:*

*Արդ սկիզբն եւ առաջին ժողովն, որ եղեւ յաւուրս Փարիսեցւոյն յաղագս Սաղուկեցւոյն...*

*Բ. եւ ամենայն Հռոմայեցիքն հաստատեցին զհայհոյութիւն Լեւոնի եւ յաւելին ի վերայ երկուս կամս եւ երկուս ներգործութիւնս եւ երկուս կերպարանս. եւ գրով հաստատեցին: Կոստանդինոս այս Ծէ թիւ թագաւորացն եւ ի Քրիստոսէ ՉԻ. ի Քաղկեդոնէ ՄԽԲ ամ. ի Թուականէն Հայոց ՃԾԳ ամ.: Եւ որ գրեալս է՝ ժողովք ԻԵ. զոր հաւաքեցաք՝ ժողովք Յունաց եւ Հռոմայեցւոց»:*

= *Կիպրոս, Ս. Աստուածածին Եկեղեցի Նիկոսիոյ, Թ.* 20, *Թղ.* 145*բ*—159*ա*:

*Անվաւերական գրութիւն մըն է, ընծայուած «Աբրահամու Հայոց վարդապետի»,*

որ կը ներկայացուի «ընկերակից Մ· Խորենացւոյ եւ Դաւիթ Փիլիսոփայի», գրուած «ի խնդրոյ Սահակայ Արծրունւոյ Մեծի Իշխանի»: Այս «Սահակ Մեծ իշխան Արծրունեաց» առանց տարակուսի նոյն է Սահակ Արծրունի իշխանին հետ, որուն խնդրանքով գրեց Մ· Խորենացի Պատկերի պատմութիւնը· գործ մը, որ կեղծուած է, գրուած իբր 900–950ին: Այդ կեղծ Սահակ Արծրունին, որ խնդրած էր, կեղծ Մ· Խորենացիէն Հոգեաց վանքի Պատկերի պատմութիւնն, այժմ կեղծ Աբրահամ վարդապետէն կը խնդրէ «ԻԵ եկեղեցական ժողովներու պատմութիւնը: Այս Պատմութիւն ալ «համառօտեալ» կը ներկայացուի մեզի, այս ինքն Աբրահամու ընդարձակ աշխատութենէն «համառօտեալ»:

Աբրահամ վարդապետ, պէտք է ապրած ըլլայ 680էն ետքը, վասն զի իր Պատմութեան ԻԵ ժողովը գումարուած է Հռոմ Ագաթոն Քահանայապետի եւ Կոստանդին Դ· Պոգոնատոսի օրով: Նա ունեցած է ձեռքի տակ աղբիւր նախ Անանուն Ժամանակագրութեան Բ· Մասն, Պատմութիւն Կայսերաց, որմէ օրինակած է այն տեղ յիշուած ժողովներու պատմութիւնը բառ առ բառ: Նա կարդացած է նաեւ Փոքր Սոկրատը, ուսկից քաղած է Ը· Թ· Ժ· եւն Ժողովոց պատմութիւնը: Ունեցած է աչքի առաջ նաեւ Կանոնագիրքը, ուսկից առած է Գաւառական Ժողովներու, Գանգրայի, Նէոկեսարիոյ եւն կանոններու

յառաջարանութիւնները : Ծանօթ է նոյնպէս նաեւ Մ · Խորենացւոյ Հայոց Պատմութեան : Այսպէս ամբողջութեամբ օրինակուած է, մկրտուած հանուած յիշեալ աղբիւրներէ : Հաւանօրէն է գործ Ժ · դարու, միարնեայի մը ձեռքէ :

* * *

Յաղագս ժողովոց արարեալ Աբրահամու Հայոց վարդապետի, ընկերակցի Մովսէսի Խորենացւոյ եւ Դաւթի Փիլիսոփայի · ի խնդրոյ Սահակայ Արծրունւոյ Մեծի Իշխանի : Եւ մեր անտի համառօտեալ :

Ա · Արդ սկիզբն եւ առաջին ժողովն, որ եղեւ յաւուրսն Փարխեցւոց յաղագս Սանդուկեցւոցն · վասն զի յարութեան ոչ հաւատային · եւ ասէին ոչ իցէ հրեշտակք կամ հոգի : Վասն այսր հերձուածոյ արարին ժողով Փարխեցիքն ի սուրբ քաղաքն Երուսաղէմ եւ նզովեցին զաղանդ Սադուկեցւոցն :

Բ · Երկրորդ ժողովն եղեւ ի սուրբ Առաքելոցն ի սուրբ քաղաքն Երուսաղէմ վասն Հին Կտակարանացն · զի ոմանք ի հաւատացելոցն ասէին, թէ զթլփատութիւն, զոր եա Աստուած Աբրահամու եւ Մովսէսի, զնոյն եւ ինքն ընկալաւ · արդ պարտ է եւ յեկեղեցիս հեթանոսաց արկանել : Իսկ սուրբ առաքեալքն արարեալ ժողով խլեցին արտաքս :

<Գ.> Կոմաւղոս կայսրն, որ է ԺԵ թիւ թագաւորացն Հռոմէացւոց եւ ի Քրիստոսէ ամք ՃՀԸ եւ ամիս գ : Սա Գժան ամ · թա–

դաւորեաց: Յաւուրս սորա էր Թէաւդիտոն Պաւնտացի, որ ունէր զհերձուածն Մարկիոնի: Սա չորրորդ թարգմանութիւնս արար: Եւ առ սովաւ էր աղանդն Ալեղդեաց, որ հպարտացեալ է յալխս ծերութեան իւրոյ· եւ մի սկիզբն խոստովանէր եւ վասն մարգարէիցն ասէր, թէ ի հողւոյն հակառակութենէ էին· բազումս հայհոյեաց զՄովսէս· ընդ նմին եւ զԲանն Աստուծոյ· վասնզի էր նա հպարտացեալ ի բանս կուսի միոյ դիւահարեալ: Պատմէ Արադոն աշակերտն Տէրտիւանոսի ի Հռոմ քաղաքի, որ եղեալ կայ ի գիրս նշանաւորս ընդդէմ Մարկիոնի: Ի սոյն ժամանակս էր հերձուածն սուտ մարգարէութեան Թարդատիանոսի· եւ Փեղեստոսի· վասն զի Փռիւգացւոց կորուսթեան եղեւ առաջնորդ Մոնտանոս, որ էր ի Միսիայ Փռիւգացւոց գեղջէն· զի անուն էր նորա Բէրդէու, եւ արկ զթիւնս իւր ի կողմանս Ասիացւոց եւ Փռիւգացւոց, Մոնտան· եւ տայց զանձնէն թէ ես եմ հոգին բարեխաւս եւ Պրիսկիղ եւ Մաքսիմիղ կանայք մարգարէք Մոնտանիս: Եւ ոգին պեղծ որ էր ի Մաքսիմիղա, ասէր· Հալածիմ որպէս գայլ ի գառանց, եւ ոչ եմ գայլ, այլ Բան եւ Հոգի· եւ զաւրութիւն: Եւ պատմէ Մեղտեղիոս աւրինադիր եկեղեցւոյ, թէ Գուի ես ի Խաւսս, թէ ոչ է պարտ մարգարէի խաւսել արտաքոյ կամաց իւրոյ· եւ ասէ զՄոնտանեայ եւ զկանանցն, թէ չարժեցան յապականիչ Հոգւոյ անտի եւ

սպանին զանձինս խուրեանց ուրոյն ուրոյն ըստ ժամանակս յո | | | մահուն :

Իսկ Փղորիանոս ի Հռոմ քաղաքէ անկաւ յերիցութիւնէն եկեղեցւոյն եւ ընդ նմին Բաղէոտոս· սոքա զբաղում մոլորեցուցին զկնի խուրեանց եւ էին հակառակ ճշմարտութեան : Եւ Թարդատոս(°), որ երեւցաւ որպէս թէ յերկինս վերանայցէ, անկաւ եւ մեռաւ չարաչար, որ աս | | ուրում Ուրբանոսի· սյն իսկ յԳժանեբորդի ամի (Կո°մ) իղեա ելից զպաշտաւնն եկեղեցւոյն Հռոմայեցւոց· Աղիւթորոս եւ յետ նորա Գիկտորոս Աղեքսանդրացւոց :

Ի ժամանակս Թագաւորութեան Կոմոդոսի արար ժողով Բիկտոր հայրապետ ի Հռոմ սուրբ· էր եպիսկոպոս Կեսարիայ Պաղեստինացւոց Թէոփիլոս, Երուսաղէմի Նարկեսս, ի Կորընթոս Եղաղացւոց Բարքեղոս, Գալիլէացւոց Ղունկղէն Երէինոս· յաւուրս նոցա եղեւ ժողով վասն Արտեմոնի հերձուածոյն· այն զի եղծանելով եղծանէին սուրբ գիրս եւ փոխանակ այնր | | էր զիւր աւտարոտին առ ի յողդողդել զմիտս բազմամանցն· եւ նորոգեցին վերստին զկարգ սուրբ եկեղեցւոյ· սակայն ցանեղ որումն անզաջանալի մնար ուրեք ուրեք անիծելոյն Արտեմոնի :

Ի ժամանակս յայս եղեւ խնդիր բազում յուզմանց վասն սուրբ զատկին· վասնզի Ասիացւոց եկեղեցիքն զԺԴերրորդ լուսնոյն՝ կատկաց յորում եւ դիպէր յաւուրց չարա–

թին, լուծանէին եւ առնէին զատիկն: Իսկ եպիսկոպոս ոմն Հռոմայ Բիքտոր անուն հաստատեաց ըստ կարգի սուրբ եկեղեցւոյ. Եւ կամեցաւ հաստատել եւ ընդենուլ զԱսիացւոց եկեղեցեացն զառաջնորդսն իբրեւ ոչ առողջ միտս ունէր, վասն զի ոչ ի միաշաբաթն լուծանէին զզատիկն: Իսկ Երինոս ըստ անուան իւրում, վասնզի էր նա խաղաղ այր, գրեաց թուխտ առ Բիքտոր աղաչել ի խաղաղութիւն: Յայնժամ ամենայն եպիսկոպոսունքն միով հաւանութեամբ խորհեցան տանել զաւր զատկին զի ի միաշաբաթին լուծցին:

Դ. Կղաւդիոս կայսրն, որ ԻԸ թիւ թագաւորացն եւ ի Քրիստոսէ մինչեւ ցաս ամք ՄՀԴ. եւ ի Կոմոդոսէ ՂՁ. եւ թագաւորեաց Թ ամ: Առ սովաւ էր Պաւղոս Սամոստացին: Սա զառողջ կանոնսն զոր առաքելոցն էր եդեալ. որոշեաց եւ զԱրտեմոնի զհերձուածսն նորոգեաց: Վասն Փրկչին մերոյ ասաց, թէ մարդ էր սոսկ որպէս զամենայն մարդ. եւ բնակութիւն էր Բանին Աստուծոյ, այլ ոչ խոստովանէր զԲանն Աստուած մարդ լեալ ճշմարտութեամբ: Եւ սա հաստատեաց զկարգն Արտեմոնի. վասն որոյ Դիոնեսիոս Հռոմայ հայրապետն հրամայեաց ժողով լինել յԱնտիոք || Ձ եպիսկոպոսաց յաղագս քննութեան Պաւղոսի Սամոստացւոյ հայհոյութեանն: Որ էր գլուխ եւ առաջնորդ ժողովոյն Դիոնեսիոս Հռոմայ, Պարմեղիանոս եպ. Կեսարեայ Կապուտկացւոց, Գրիգորիս եւ

*Աթանագորոս եղբարք եկեղեցւոյն Պոնտացւոց քաղաքին, Հոմենոս Երուսաղէմի, Թէոդեկնոս Կեսարեայ Պաղեստինացւոց, Մաքսիմոս Բոր քաղաքի, որ առաջնորդ էր ժողովոյն: Յայնժամ աղաչեցին զԴիոնեսիոս զեպ·ն Աղեքսանդրի գալ ի ժողովն· վասնզի յառաջագոյն վիճաբանեալ էր ընդ Պաւղոսի Սամոստացւոյ բազում խաւսիւք: Իսկ երանելին Դոնեսիոս* (sic) *հրաժարէ գալ ի ժողովն յաղագս ծերութեան մարմնոյն: Բայց թուղթս երեւեցոյց զմիտս եւ զխորհուրդս, զոր ունէր բանս յաղագս խնդրոյ նոցա· եւ ընթերցեալ միաբան ժողովն որ յԱնտիոք նզովեցին զՊաւղոս զհերձուածողն եւ լուծեալ ընկեցին ի պատուոյ հայրապետութեան եւ մերժեցին յեկեղեցւոյն Անտիոքացւոց եւ հաստատեցին զհաւատս, զոր Դիոնէսիոս երանելին գրեաց ընդդէմ Պաւղոսի Ժ բանիւն հայհոյութեան լուծումն:*

*Ե· Յաղագս Մանէ հերձուածոյն:*

*Պրոբոս Կայսր ԼԱ թիւ թագաւորացն եւ ի Քրիստոսէ մինչեւ ցայս վայր ամք ՄՂԴ· եւ ի Կղաւդոսէ Ի ամ եւ Զ ամ թագաւորեաց: Առ սովաւ Մանինեցւոց մոլեկանութիւնն, սատակիչ կործանումն ի վարս մարդկան եմուտ: Զերկու բնութիւնս դոյգ ասաց Մանի, նիւթ եւ խաւար, որպէս թէ բարի կամ չար· եւ մոլեալ դիւահար աղանդովն ասէր· Ես եմ որ Մովսիսի երեւցայ ի լերինն հրով· եւ ես եմ հոգին բարեխաւս: Յայսմ ժամանակս աղանդն հերեսիովտացն յորդո–*

րէին եւ Մանիքեցւոցն եւ Սաբելացւոցն։ Ապա Մանիքեցւոցն եւ Վաղենտիացւոցն․ ապա Մարկիոնացւոցն ընդ ժամանակս ժամանակս եւ ոչ միում ժամանակի․ եւ ապա ժողով արարին սուրբ Հարքն (եւ) նզովեցին զչար աղանդն նոցա եւ հաստատուն արարին զկարգ սուրբ եկեղեցւոյն։

Զ· Յետ այսր ամենայնի յԱնկիւրիա եղեւ ժողով եպիսկոպոսաց վասն Լիկիանէ կոմսի, որ էր փեսայ մեծին Կոստանդիանոսի։ Արդ վասն զի Լիկիանէ բռնադատէր զերիցունս եւ զսարկաւագունսն ի զոհս կռոցն, յայնժամ սահման ապաշխարութեան կարգեցին ժողովեալ եպիսկոպոսքն ըստ կամաւոր եւ ակամայ մեղացն․ կարգս եւ կանոնս սահմանեցին սրբոյ եկեղեցւոյ ընդդէմ աղանդոյն Լիկանէի Փառամոլի։

Է· Իսկ ի յետ սուղ ինչ ժամանակաց ի Նիոկեսարիա եղեւ ժողով վասն պոռնկական աղանդոյն պեղծ ախտիցն որ թոյլ տային քահանայիցն սիրական գործով ունել զպատիւ քահանայութեան։ Յայնժամ ժողով արարեալ սրբոցն եւ նզովեցին զաղանդն եւ զկարգադիրն եւ կանոնս կարգեալ հաստատեցին, եթէ երէցն ամուսնաւ իւրով կացցէ ի կարգին, ապա թէ շնացաւ եւ կամ պոռնկացաւ, լուծցի ի պատուոյ քահանայութեանն։

Ը· Հրէից ժողովքն ի Հռոմ, որ ասի սիւնհոդոս։ Կոստանդիանոս կայսր, որ էր

ԼԴ Թիւ Թագաւորացն եւ էին ի Քրիստոսէ մինչեւ ցայս վայր ամք ՅԻԲ ԼԴ ամ Թագաւորեաց սա· եւ ի Կղաւդէոսէ էին ամք ԽԲ: Արդ ի սորա չորրորդ ամին եղեւ ժողով քրիստոնէից եւ Հրէիցն ի Հռոմ քաղաքի, որպէս եւ գրեալ է ի Սոկրատի անդ: Վասն զի ժողովեալ Հեղինեայ, մայր Կոստանդիանոսի, առաջի նոցա եւ ասէ· ընտրեցէք արս գիտունս ի ձէնջ, որք կարողք են բանիւք գիտութեամբ կալ ընդդէմ քրիստոնէիցն վարդապետաց· եւ ընտրեցին արս ԲԺան ի Փարիսեցւոցն վարդապետս գիտունս եւ հմուտս աւրինաց եւ մարգարէից, որք լեզու ունէին ոչ միայն եբրայեցի, այլեւ Հռոմայեցի եւ Հելլենացն ճարտարաբանք· եւ իշխանք հանդերձ Թագուհեաւն գնացին ի քաղաքն· եւ ժողովեալ Կոստանդիանոսի եպիսկոպոսս ԻԳ· եւ էր գլուխ ժողովոյն Մեծն Սեղբեստրոս: Եւ էին Հրէիցն դպիրք ԺԲան եւ քահանայք ՃԾ· եւ իշխանք ամենեքեան ընտրեալ գիտութեամբ· բայց առաւել ժրունքն Արիաթար գլուխ եւ Զամբրի հզաւր ցուցեալ վասն զի էր ճարտար մտաւք: Եւ ժողովեցան առաջի Կոստանդիանոսի եւ Հեղինեայ մաւր նորա: Ասացաւ զի լիցին ԲԺան ի Հրէից եւ ԲԺ ան ի քրիստոնէից: Աստ Սեղբեստրոս մինն Աստուծոյ ունի զյաղթութեան շնորհս ի հոգեւոր պատերազմին, որ նովաւ չարժի բան· եւ խաւսեցան եւ յաղթեաց սուրբն Սեղբեստրոս բանիւ եւ արդեամբք:

Թ. Սուրբ ժողովն որ ի Նիկիա Բիւթանացւոց: Յամս աստուածապատկեալ մեծի թագաւորին Կոստանդիանոսի քրիստոսասէր եւ բարեպաշտ արքայի: — Ի սորա ի ԺԹ ամին եղեւ սինհոդոսն ի Նիկիա Բիւթանացւոց, ՅԺԸ հարցն վասն Արիոսի Աղեքսանդրացւոյ: Արդ լինին ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ ցժողովս այս ամք ՅԼԴ: Վասն զի Արիոս արարած ասէր զՈրդին Աստուծոյ եւ ոչ խոստովանէր ի բնութենէ Հաւր եւ ոչ հաւասար Հաւր եւ ոչ յէութենէ Հաւր. եւ ոչ ծնեալ ի Հաւրէ յառաջ քան զյաւիտեանս, այլ այլուստ ստար եւ կրտսեր ըստ արժանեաց եւ տարրական ի սկզբնաւոր ժամանակագիտ եւ<բստ> առաքինութեանց եւ ճգանց էհաս յաստուածութիւնն: Եւ հնարէր աստուածային գրաւք յաղթող լինել պանծալով յառաքելոյ բանն, որ ասէ. Հնազանդեալ եղեւ մահու չափ եւ մահու խաչի. վասն որոյ եւ շնորհեցաւ նմա: Եւ յայամ մասց ասէր Քրիստոսի մի բնութիւն, ըստ որում Եւտիքէսն ասաց չփոթեալ եւ խառնակեալ: Եւ վասն չարչարանաց մարմնոյն փո | | եւ պատպս. եւ եթէ հաւատարիմ է արարչին իւրոյ որպէս Մովսէս յամենայն տ(ան): Եւ ասէր զնա ածեալ արար Աստուած. եւ ուրացեալ ի ճշմարտութենէ եւ յուղղափառ հաւատոյ՝ երկրորդ Յուդա եղեալ հայհոյեաց զանեղութիւն սուրբ Երրորդութեան ասելով թէ Որդի արարած է եւ չէ հաւասար արարչին:

էին եւ համ[1] խորհուրդքն նորա փիլիսոփայք Աետխանոս եւ Աստերիոս, Եւնոմիոս, որք ասէին զՈրդի ոչ գոլ ի բնութենէ Հաւր, այլ որպէս զմի յարարածոցս: Յայնժամ ազդ արարին զայս ամենայն երկեղացացն Աստուծոյ առ Մեծն Կոստանդիանոս, զի լիցի ժողով ի մայրաքաղաքն Բիւթանացւոց: Յայնժամ հրովարտակ հասանէր առ Տրդատ արքայն Հայոց Մեծաց ի յինքնակալ կայսերէն Կոստանդիանոսէ, զի զկենդանի վկայն Աստուծոյ զսուրբն Գրիգորիոս ընդ իւր առեալ ի սուրբ ժողովն եկեսցէ արքունական զաւրաւքն· զոր ոչ առ յանձն Մեծն Տրդատ· վասն զի լուեալ էր զխնամանալն Շապհոյ ընդ Հնդկաց թագաւորին եւ ընդ արեւելյն Խականայ եւ զաւրավարելն Ներսէհի, որ եւ թագաւորեաց ամս Թ. եւ Որմզի որ աւպ· եւ նա թագաւորեաց ամս զ· նահատակութեամբ· եւ ի կասկածի եղեալ Տրդատ, զի մի արդեաւք պայմանին տեսցէ, ըստ սովորութեան հեթանոսութեան· վասն այսորիկ ոչ էթող զաշխարհն առանց իւր· բայց եւ ոչ սուրբն Գրիգոր հաւանեցաւ երթալ, զի մի զառաւել պատիւն ընկալցի ի ժողովոյն յաղագս խոստովանողական անուանն, այլ առաքեն զսուրբն Հռոստակէս հարազատ որդի սուրբ Լուսաւորչին, երկոցունց զլրումն անխծանել զամենապեղծն Արիոս· եւ խաղացեալ գնաց բազմաւք: Գայր եւ սուրբն Յակոբ հայրապետն Մծբնայ,

---

[1] իմացիր՝ համախորհուրդք:

նախնի սրբոյն Գրիգորի, զի Անակայ քուեր որդի էր՝ հաւրն սրբոյն Գրիգորի: Գայր ընդ նմա սուրբն Եփրեմ աշակերտ սրբոյն Յակորայ: Գային եւ եպիսկոպոսք Պարսից՝ Աւթուղ եւ Սեդ Յոհան Պարսից, Եւթաղ Եդեսեայ: Եւ եկեալ առ Մեծն Ղեւոնդ ի կեսարիա Կապպադովկիացւոց ի Գամրայ աշխարհն եւ հանդիպեալ ըստ պատահմանն, զի Ղեւոնդ մկրտէր զԳրիգոր զհայրն Գրիգորի Աստուածաբանի· եւ ահա նոյն ժամայն լոյս ծագեաց ի վերայ նորա· եւ ոչ այլ ոք ետես, բայց միայն Ղեւոնդ եւ Ռըստակէս եւ Յակոբ Մծբնայ: Եւ գնացին ի ժողովն Աղեքսանդրոս յԱղեքսանդրէ, Ստաթէոս յԱնտիոքայ, Սեղբեստրոս ի Հռոմայ, Մետովփրիանոս Կոստանդնուպոլսի առաջին եպիսկոպոսն· յետ որոյ յաջորդեաց Մեծն Աղեքսանդրոս· եւ այլ երամք սրբոցն· որք անիծեալ զամենաչարն Արիոս եւ զհուլմխոհսն իւր ընկեցին ի սուրբ եկեղեցւոյ եւ հանին արտաքոյ սահմանացն ի հեռաւոր տեղիս· եւ հաստատեցին զհաւատ սուրբ եկեղեցւոյ եւ քարոզեցին զտէրն Յիսուս Քրիստոս Աստուած եւ ի բնութենէ Հաւր հարթ եւ հաւասար, էակից եւ փառակից, արարչակից եւ աթոռակից եւ որ ինչ ըստ այսմ աստուածաբանի: Խաւսեցաւ սուրբն Յակոբ բազում բանս հաւատոյ եւ ի կատարմանն միաբանեցին զՀաւատամքն: Յայսմ ժամանակս հաստատեցին կանոնք եւ կարգս սուրբ եկեղեցւոյ, քահանայից եւ ժողովրդոց:

Ժ. Դարձեալ կրկնակի չարժեալ աղանդն Արիոսի ի սոյն ժամանակս Կոստանդինանոսի. որով եւ ժողով հրամայեցաւ լինել վասն սրբոյն Աթանասի Աղեքսանդրացւոյն. հերձուածող զսա ասէին աշակերտքն Արիոսի, Սաբելեան ասէին զսա: Քահանայն Սերի, որ էր Արիանոսական, մտանեաց թագաւորին, թէ այլ կտակեայ գտեալ հրամէ գտենուլ եկեղեցականացն: Եւ հանդիպեալ ի տեղւոջն Մակարիոս քահանայ Աղեքսանդրացի ստեաց զաստցեալսն: Եւ դարձեալ ասէին թէ բազում ոսկի եա ումեմն յեկեղեցւոյն Աստուծոյ Աթանաս. եւ քննեալ գտին սպառ. այլ եւ ասէին զնա կախարդ. եւ թէ ունի զհատեալ ձեռն Արսենիոսի եւ այնիւ գործէ: Վասն այսորիկ ժողովեցան Կ. եպիսկոպոսք ի Տիւրոս եւ կոչեն զերանելին Աթանաս ի ժողովն եւ ոչ կամեցաւ գնալ. ոչ վասն զրպարտութեանն, այլ զի մի ի Նիկիական ժողովոյն ուծցին յԱրիոսութիւն համականք նորա. Սերի եւ Թէոգոտէի, որ զթագաւորն դարձուցին յընդունել զԱրիոս. այլ հրաման թագաւորին եւ զօրծակալացն ոչ թողացուցանէր. զնա ածին զտէրն(°) Մակարիոս երկաթի կապանաւք զհետ Աթանասի ի ժողով եւ սուտ գտան զրպարտողքն:

ԺԱ. Յետ այսորիկ Սոաթիացւոց ժողով. Հերձուածն որ ամենայն տանից եւ կարգաց եկեղեցւոյ եղծումն առնէին. եւ ժողովեալ ի Գանգրի ԵԺ եպիսկոպոսք եւ

նզովեցին զնոսա եւ արարին հալածական ի հեռաւորնակ տեղիս եւ այդ առնէին յաշխարհին Հայոց, զի ուխ չարութեան նոցա ի տանէն Թորգոմայ եղեւ եւ դարձեալ հաստատեցին զկանոնս ժողովոյն Նիկիա:

ԺԲ. Դարձեալ յետ այսօրիկ աղանդն Արտեմոնի եւ Կաղբերոսի, Կիրինթոսի, որք ի յառաջնոցն ումանց ունէին եւ սկսան տաւնից եւ սուրբ ընթերցուածոցն, որք ի յառաքելոցն եղան, այլափոխումն առնել եւ զԾննդեան Տեառն փոխեցին ի յունուարի Զ.էն ի Դեկտեմբեր ԻԵ. եւ ի սկիզբն ընթերցուածոցն զաւետարանացն հաստատեցին եւ զմի տաւնն ընդդէմ առաքելոցն ընդ երիս բաժանեցին եւ ըստ մոլորութեան Արտեմոնի կարգեցին: Վասն որոյ ժողովեալ ի յԱնտիոք սուրբ Հարքն եւ հաստատեցին կանոնք ըստ առաքելոցն. եւ հաստատեցին զտաւն ծննդեան ի Յունուարի Զ. որ է Յայտնութիւն. եւ անէծս եդեալ, եթէ ոք լուծցէ:

ԺԳ. Արդ ի յայս ժամանակս յարեաւ Նոմատացւոցն հերձուածն, որ Դժերրորդ այլք կոչեն: Սոքա անարգեցին զաւր յարութեան կիւրակէին, վասն զի յորում աւուր հանդիպէր լուսին, անդ կատարէին զատիկն հրեարէն: Եւ յաղագս սոցա ժողովեցան ՃԾԳ եպիսկոպոսք եւ զսուրբ զատիկն ի կիրակի արձանացուցին եւ նզովեցին զնոմատացիսն եւ զկարգս նոցա. եւ հաստա—

*տեցին զկարգ սուրբ Եկեղեցւոյ անշարժելի ըստ սուրբ Հարցն :*

*Նաւատիոս քահանայ էր եկեղեցւոյն Հռոմայ, եւ Կոռնելիոս եպիսկոպոս Հռոմայ : Եւ որք յառաջն ի հալածանս անդանաւր Դեկոսի զոհեցին վասն երկեղին : Իսկ Կոռնելիոս զդարձեալսն ընդունէր ապաշխարութեամբ ի հաղորդութիւն մարմնոյ եւ արեան Որդւոյն Աստուծոյ : Իսկ Նաւատիոս ոչ ընդունէր զապաշխարութիւնն : Եւ յաղագս այսր պատճառի յեպիսկոպոսութիւնն ահա ձեռնարկեցաւ Փռիւգացւոցն· եւ գրեալ յամենայն եպիսկոպոսունսն, որ յամենայն աշխարհն՝ մի ընդունել որք ի հալածանս գլորեցան՝ գալ ի հաղորդութիւն Տեառն, այլ յորդորել յապաշխարութիւնն եւ զթողութիւնն յԱստուծոյ ընկելուլ : Կոռնելիոս առաքէ թուղթ մեղուցելոցն յետ մկրտութեանն ապաշխարութեամբ թողութիւն գտանել եւ հաղորդութեան արժանանալ : Կացին ոմանք ի Նաւատիանոսի վարդապետութիւնն, որք Նաւատիոսք կոչեցան· եւ երեւի յազգն Փռիւգացւոց քան զգլրազուամ ազգս· քանզի զարշ եւ զազիր է ի նոսա պոռընկութիւնն· իսկ առ Վաղենտիանոս : Այս եղեւ ժողովն Նաւատիանոսացն, ուրանաւր Սաղրիս զետոյ ակունքն են· ոչ նշանաւորք որ ի Փռիւգիա եպիսկոպոսք· եւ փոխել զտաւն զատկին ընդ Հրէից տաւնէին : Եւ յաղագս այսր պատճառի պատառեցան Նաւատիանոսացն եկեղեցիքն· քանզի թագաւորն Վաղենտիա—*

նոս լռութեամբ կայր առ եկեղեցիւն եւ ոչ զմիոյ հերձուած խափանէր յինքենէ ։ Ընդ այն ժամանակս վախճանեցաւ եպիսկոպոսն Կուռնելիոս եւ ընտրութեամբ ձեռնադրեցաւ Ապաւիոս եւ զհաւատս ճշմարիտ խոստովանութեան Նիկիայ հաստատեաց ։

ԺԴ․ Գորգայ ժողովն ։ — Դարձեալ ի յաւուրսն երանելւոյն Աթանասի Աղեքսանդրու հայրապետին երեւեցաւ այր մի արիոսական Գորգիանոս անուն ի Կապոկրատեայ․ եւ հասեալ յԱղեքսանդրիա եւ չփոթեալ զամենայն քաղաքն փիլիսոփայական արուեստիւն ։ Իսկ իշխանք քաղաքին, զորս մերժեալ էր երանելին Աթանաս յեկեղեցւոյ, վասն անօրէնութեանց, միաբանեցան ընդ Գորգիանոսի․ եւ հալածական արարին զԱթանաս ի յանջրդի աշխարհ ։ Եւ գնացեալ սուրբն բնակեցաւ ի յանապատին Սկիւթ ։ Իսկ Գորգայ ժողով արարեալ ի Սելեւկիա եւ զհայհոյութիւնն Արիոսի հաստատեցին յամենայն Եգիպտոս ։ Իսկ երանելւոյն Աթանասի արարեալ ժողով զամենայն դասս կրանաւորաց եւ յորդարուղխ արտասուաւք հայցէր յԱստուծոյ ։ Եւ յետ աւուրց ինչ Գորգիանոս սատակեալ եղեւ ։ Եւ դարձաւ Աթանաս յաթոռն իւր․ եւ հաստատեցաւ կարգ սուրբ եկեղեցւոյ յԵգիպտոս ։ Այս եղեւ յաւուրս Կոստանդիանոսի որդւոյ Մեծի Կոստանդիանոսի․ ի ԺԱ ամին Վաղէսի փոխեցաւ յաշխարհէ ամենազովելին Աթանաս ։

Արդ ի յայնմ ժամանակին էին հերձուա—

ծողք Արխոստականք յոյժ, յոյժ որք արարած ասէին զՔրիստոս Աստուած: Եւնոմիոսացիք, երկնային զիւնութեանցն զլուխ ասէին զՔրիստոս եւ ոչ ի բնութենէն Հաւր. եւ Սաբելացիքն, որ զերիս անձինս սրբոյ Երրորդութեան մի ասեն, լոկ անուամբ զանազանել: Եւ Աւդէոսացիք, որ բնակաբար զմարդկային պատկեր ունելով ասեն Երրորդութեան: Եւ Ապողինարացիքն, որք մարդկային ոգի ոչ ասեն առեալ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Եւ Մակեդոնացիքն, որ զՀոգին սուրբ նուազ ասեն քան զՀայր եւ զՈրդի: Եւ Պանդորեցիքն, որք զԲանն ի մարմին ասեն յեղեալ: Եւ Մանիքեցիքն, որք առ աչաւք ասեն երեւեալ յաշխարհս: Եւ Սոփրոնացիքն որք առանց մարդկային չնչոյ ասեն զմարմնաւորութիւն Քրիստոսի: Եւտիքիանոսք, որք յերկնից ասեն բերել զմարմինն Քրիստոսի եւ ոչ ի Կուսէն սրբոյ:

ԺԵ· Գանդրայ ժողով: — Արդ զկնի սուղ ինչ ժամանակաց դարձեալ ժողով եղեւ ի Գանդրիա. զի բուսաւ պէսպէս հերձուածս. ոմանք զամուսնութիւնն գարշ համարէին, ոմանք պեղծ ասէին եւ ոմանք թէ որք յամուսնութեան են եւ չնան կամ մեղանչեն՝ անյոյս են ի փրկութենէ Աստուծոյ: Եւ կանանց հանդերձս արանց զգեցուցանէին եւ փոքրէին զվարս (զհերս): Այլեւ զպտուղս եւ զպտաւս եկեղեցւոյ անարգէին եւ այնպէս սուրբս անուանէին զանձինս: Վասն

*որոյ ժողովեալ սուրբ հարքն ի Գանգրիա վարդապետք ի կողմանց կողմանց՝ եպիսկոպոս Եժան, ի մեծ եկեղեցւոջն Գանգրացւոց առ սուրբն Եւսեբի, որ գլուխ եւ առաջնորդ էր եկեղեցւոյն Գանգրայ· եպիսկոպոսն Եւսեբի եւ Հեղինիոս, Եւգինիոս, Վաղղիպոս, Բիթիոս, սուրբն Գրիգորիոս, Եղաղսիոս, Հիւպատոս, Պրովբեմիոս, Բարսեղիոս, Փեղիմոն, Ակղիոս, Պաւղոս· եւ որք ի կողմանս արեւելից եւ արեւմտից, որք ժողովեցան եւ հաստատեցին զկարգ սուրբ եկեղեցւոյն Նիկիայ:*

*ԺԶ· Անտիոքացւոց ժողովն: — Արդ յետ այսր ամենայնի սկսաւ բուսանիլ պէսպէս հերձուածս առ եպիսկոպոսունսն եւ առ քահանայսն եւ առ սարկաւագունսն եւ առ ամենայն ուխտաւորս սուրբ եկեղեցւոյ, զի եպիսկոպոսք յոյլոյ վիճակ առնէին ձեռնադրութիւն· եւ եպիսկոպոսք եւ քահանայք անխտիր նստէին յամենայն սեղան եւ աներկեղարար յեկեղեցիս ննջէին եւ նստեալ հաց ուտէին· եւ քահանայքն եւ սարկաւագունքն խաղային ի հարսանիսն անամաչ: Եւ վասն այսր պատճառանաց ժողով արարեալ ԼԲ եպիսկոպոսացք յԱնտիոք քաղաքի եւ խլեալ խափանեցին զբազում հերձուածսն եւ եդեալ կանոնք եւ հաւատ զՆիկիայն հաստատեցին ի սուրբ եկեղեցւոջ:*

*ԺԷ· Կոստանդնուպաւլսոյ ժողով: — Ցորժամ Թագաւորեաց մեծն եւ բարեպաշտն*

Թէոդոս, որ էր Խ· թիւ թագաւորացն· եւ
էր ի Քրիստոսի գալստենէն մինչեւ ցայս
վայր ՆԵ· եւ ի Կոստանդիանոսէ ՁԴ ամ·։
Արդ յաւուրս մեծին Թէոդոսի յարեաւ Մա-
կեդոն ոմն եպիսկոպոս Մակեդոնացւոց եւ
հայհոյէր զամենասուրբ զՀոգին· ոչ ի Հաւր
էութենէ ասէր զՀոգին, այլ յաւտար էութենէ
ասէր գոյացեալ զսուրբ Հոգին։ Յայնժամ
բարեպաշտն Թէոդոս հրամայեաց ժողով
մեծ լինել ի Կոստանդնուպաւլիս ՃԳ·որ-
դում ամի իւրոյ թագաւորութեան, ՃԾ եպիս-
կոպոսաց։ Եւ յառաջ քան զժողովս սատա-
կեալ էր ամենապեղծն Մակեդոն։ Իսկ դասք
սուրբ հարցն յառաւաւտէ յառաւաւտ զայլին
ի վերայ զերեզմանին եւ անիծանէին զա-
ւուրս Ը զանիծեալ ոսկերսն Մակեդոնի հո-
գեմարտի։ Իսկ յետոյ Դիմոփորոս արխո-
կան ունէր զեպիսկոպոսութիւն Կոստանդ-
նուպաւլսի, զոր հանեալ ի քաղաքէն Թէո-
դոս մեծ եւ տայր զաթոռն Գրիգորի Աստուա-
ծաբանի մինչեւ ի հաւաքել ժողովյն, վասն
զի Գրիգոր Աստուածաբան յառաջագոյն
եկեալ էր ի Կոստանդնուպաւլիս վասն Արիա-
նոսացն հերձուածոյն։ Եւ էին գլխաւորք ժո-
ղովյն· Կիւրեղ Երուսաղէմի, Տիմոթէոս
անստացուածն քաղաքին Աղեքսանդրացւոց,
Մելիտոս Անտիոքացւոց, Գրիգորիոս Նիւ-
սացւոց, Գաղատիոս Կեսարիայ Պաղեստի-
նացւոց, Դամասոս Հռոմայ, Մեղիտիոս Եփե-
սոսի, Նեքտառիոս Կոստանդնուպոլսի, Բար-
սեղ Կեսարիայ, Գրիգոր Աստուածաբանն,

որոյ զաթոռն ընկալաւ· ի նոյնում Նեքտա–րիոս ձեռնադրեալ ի սուրբ ժողովն· յետ որոյ փոխանորդէ զնորին աթոռն Յոհան, անուանեալն Ոսկեբերան: Էր եւ Ներսէս Հայրապետն Հայոց, զոր մեծարեալ զաթոռ հայրապետութեան ի վեր եդին քան ՃԾ իցն: Եւ սահմանեալ սուրբ ժողովն զդաւանու–թիւնս հաւատոցն եւ քարոզեցին զսուրբ Հո–գին հաւասարապատիւ, փառակից եւ էակից եւ իշխանակից Հաւր եւ Որդւոյ համագոյ եւ նզովեցին զՄակեդոն· եւ նա ընդ մեռեալս էր ընդ այլ հերձուածողսն եւ կարգեցին կա–նոնք եկեղեցւոյ վասն պէսպէս յանցանաց· եւ հաւատոյ խոստովանութիւն զՆիկիայն· կարգեցին զսուրբ Աստուածն խաչեցար(իւ) յերեկորեայն եւ ի վաղորդեայն եւ ի ճաշոյ ժամին: Եւ էր ժողովն ի Մարգաց ամսեանն ի ԻԵ:

Յաւուրս Թէոդոսի յարեան է մանկունք, որք յԵփեսոս ննջեցին յաւուրսն Դեկոսի ամբարշտին· զկնի ՃԾ ամին յարեան ու դար–ձեալ ննջեցին ի նոյն այրն ի Ժ ամին Թէո–դոսի:

Արդ յառաջ քան զԹէոդոս եղեն ժողովք Արիանոսացն ի տեղիս տեղիս հակառակս միասնական հաւատոյ, զորս ոչ ընդունի եկե–ղեցի Աստուծոյ: Առաջին եղեւ ի Տիրոս· եղեւ առ Դիոսաւ հայրապետին Արիանո–սացն: Բ· յԱնտիոք քաղաքի· Գ· ի Սելեւկիա· Դ· ի Կոստանդնուպոլիս· Ե յԱնկիւրիա

Թրակացւոց· Զ· ի Սերմինն: Այս ինչ գործեցաւ յաւուրսն Թէոդոսի:

ԺԸ· Թէոփիլիանց ժողովն: — Արկադէոս թագաւոր որդի էր մեծին Թէոդոսի արքայի Յունաց եւ Հռոմայեցւոց· ոչ գովելի վարս ստացեալ: Սա աքսորեաց զերանելին Յոհան Ոսկէբերան: Սա արար զժողովն Թէոփիլեանց, հրապուրեալ ի կնոջէ իւրմէ Եւդոքսիայ· զի էր կին չար: Յայսմ աւուրս էր Եւթաղ Աղեքսանդրացի աշակերտ երանելւոյն Աթանասի: Սա արար զցանկն առաքելոյ եւ Գործոցն հանդերձ Կաթողիկէիւքն վասն հերձուածողացն Կաղարիոնի եւ Կապոկրատեայ, որք սոսկ մարդ ասացին զՔրիստոս եւ զՀին Կտակարանն ոչ ընդունէին եւ զվկայութիւնն որ յաղագս Քրիստոսի էր, խոտէին: Վասն այսորիկ պարապեաց գրեաց զԸնդ ուսումնասէրն ի խնդրոյ Աթանասու վարդապետին իւրոյ· եւ ասի թէ Եւթաղ եպիսկոպոս էր ի Դրան մեծին Թէոդոսի թագաւորին: Ի սոյն աւուրս Եպիփան Կիպրացի:

ԺԹ· Առաջին ժողովն Եփեսոսի: — Արդ ընդ ժամանակս Թէոդոսի, որդւոյ Արկադէոսի, որդւոյ Թէոդոսի մեծի, որ էր ԽԲ թիւ թագաւորացն եւ ի Քրիստոսէ մինչեւ ցայսվայր ամս ՆԽԳ· եւ ի Թէոդոսէ մեծէ ԼԸ: ԼԷ ամ թագաւորէ սա: Յաւուրս սորա էր սուրբ Սահակ Հայոց Հայրապետ եւ Մեսրոպ վարդապետ: Արդ ի յայսմ ժամանակիս բա–

զում հերձուածս բուսաւ. եւ էր հերձուածն Մաթեանցն եւ Մարութեանց եւ Դէոդորի Տարսոնեցւոյ աշակերտին Պաւղոսի Սամոստացւոյն, որ էր վարդապետ անաւրէն Նեստորի. եւ Դէոդոր է շնորհիւ Որդի ասէ զԲանն Աստուած. եւ ի բնութենէ Հօր ոչ խոստովանէր. եւ ի մկրտութեանն ասէ արժանաւորեցաւ ի Մարիամայ մարդ ածանիլ հոգւոյն եւ լինել տաճար Բանին: Սա աշակերտ էր Պաւղոսի պղծոյ Սամոստացւոյն: Իսկ Թէոդորոս Մամուեստացի աշակերտ Թէոդորիտէ այսպէս ասէր. Ոչ Աստուած Բանն ծնաւ ի Մարիամայ, այլ մարդ սոսկ ի կուսէն ծնեալ. եւ վասն ազնուականութեան գոլ հաճոյ Բանին. եւ բնակեաց ի նմա եւ վասն այսորիկ ճգնէր առ հոգեկանսն զի հնազանդեցուսցէ զախտսն մարմնականսն եւ արժանացի կոչիլ որդի Աստուծոյ, որ ծնաւ ի Մարիամայ: Իսկ Նեստոր ուսեալ զընախաւսութիւն վարդապետին իւրոյ Թէոդորի եւ ասէ ոչ ուրեք իշխեցին ասել Հարքն թէ Աստուած Բանն ծնաւ ի Մարիամայ. այլ առին զանուանս, որք նշանակեն զբնութիւնս Բ. քանզի Քրիստոսն եւ Որդին եւ Տէրն եւ Բանն զԱստուածութիւնն զեկուցանեն. իսկ երբեմն զմարդկութիւնն. իսկ երբեմն զերկական եւ ոչ դարձեալ այլ որդի եւ այլ միւս. այլ ինքն որդի է կրկնակ, ոչ արժանաւորութիւնք զկրկնական առ Քրիստոս որոշեմք զբնութիւնսն. քանզի կրկնակաւք ահա բնութեամբ միականք բնութեանցն. ընտանի

կարգաւորութեանն յամենայն ժամ մնացելոց · իսկ արժանաւորութեանն չարայարմարեցելոց առ ճոխութիւնն, որպէս յառաջն ասացաք միականք · եւ այլ անթիւ է նոցա հայհոյութիւնն, որ յաղագս երկուց բնութեանցն :

Այս վիշապագլուխ Նստաւ հայհոյեաց զանեղութիւն Որդւոյն Աստուծոյ եւ շրջարեկան թղթովք աղանդեաց զոխեղիրս առ Հասարակ, զի էր հայրապետ Կոստանդ(իա)-նուպօլսոյ · որ փախեաց ի Դիպոլոսն եւ զՊաւղոսի Սամոսատացւոցն եւ զԴիոդորխուէ զհայհոյութիւնն նորոգեաց՝ Բ · բնութիւն չարայարեալ արկանէր ի տնաւրէնութիւն Որդւոյն Աստուծոյ եւ փիլիսոփայական արուեստին երկակեցոյց ժարժմանցն չնչական հեթանոսացն եւ ձեւացոյց զԲ բնութեանցն · քանզի ոչ խոստովանէր զԲանն Աստուած մարդ լեալ, այլ ի մարդ բնակեալ ասէր · քանզի բնակութիւն, ասէ, ընկալաւ Բանն զմարդկութիւնն · եւ այսիւ ցուցանէր զամբարշտութիւնն իւր հակառակ ճշմարիտ վարդապետութեանն եղեալ :

Իսկ յորժամ գիտաց զայս ամենայն ամենագովելին Կիւրեղ հայրապետն Աղեքսանդր քաղաքին եւ ասէր երիցս անգամ առ Նեստոր դառնալ ի հայհոյութեանցն : Իսկ Նեստոր հակառակ առնէր պատասխանի : Վասն որոյ գրէ Կիւրեղ առ բարեպաշտն Թէոդոս զի տացէ հրաման ժողով լինել յԵփեսոս : Ի ԺԱ ամի թագաւորութեան իւրոյ եղեւ ժո-

զով ԾՄԳ եպիսկոպոսաց. Մեծն Կիւրեղ ախոյեան ամենայն ուղղափառաց, որ էր գլուխ եւ առաջնորդ Սիւնհոդոսին Եփեսոսի, Յոհան Անտիոքայ, Պաւղոս Եմեսու, Թէոդոս Անկիւրայ, Ակակիոս Մէլիտինայ, Պրոկղոս Կիլիկիայ, Կեղեստինոս Հռոմայ, Յոբնաղ Երուսաղէմի, Մեմնոս Եփեսոսի: Այսք ամենայն գլխաւորք էին ժողովոյն Եփեսոսի: Եւ էր ընդ նոսա Նեստոր եպիսկոպոսն Կոստանդնուպոլսոյ, ի յետ որոյ ընկալաւ զաթոռն Փղաբիանոս: Յայնժամ բարեպաշտ արքայն Թէոդոս եւ Կիւրեղ գրեն ի Հայք առ սուրբն Սահակ եւ Մեսրովբ գալ ի ժողովն հանդերձ եպիսկոպոսաւք: Իսկ յաղագս չփոթման ժամանակին եւ Պարսից նեղութեանն ոչ կալան յանձին գնալ ի ժողովն, այլ միաբանեալ սուրբ ժողովոյն նոցա եւ գրեալ թուղթ Սահակ եւ Մեսրոպ Հայոց եպիսկոպոսաւքն անիծեալ զանաւրէն Նեստոր ընդ ամենայն հերձուածողսն:

Իսկ սուրբ ժողովն որ յԵփեսոս, միաբան նզովեցին զանիծեալն զՆեստոր եւ զհամախոհսն իւր զՅովհաննէս զԱնտիոքայ եպիսկոպոսն եւ որ ընդ նմա արեւելեանք՝ թագաւորով եւ եպիսկոպոսովք Լ, զորս հրապուրեալ էր Նեստոր: Մարդադաւանքն որոշեցին զմիութիւն Բանին մարմնացելոյ ի միմեանց եւ անուանեցին զմարմինն Քրիստոս եւ զԲանն Աստուած եւ ասեն այսպէս, թէ Մարիամ զՔրիստոս ծնաւ. վասն զի Քրիստոսդ անուն մարմնոյն է եւ ոչ Աստուա-

ծոյն, վասն զի Աստուած առանց անուան է։ Եւ յայտնի է կեղծաւորութիւն նոցա, զի ոչ զԲանն Աստուած ի Մարիամայ ծնեալ ասեն մարմնով. եւ յորժամ այսպէս ասեն, զիարդ լցէ նոցա ստուգութեամբ ասել զԿոյսն Աստուածածին, վասն զի որոշեցին զբնութիւն յաղագս անուանցն եւ ասեն թէ որպէս անուանքն որոշ են, նոյնպէս եւ բնութիւն Բ։ Աստանաւր ուրանան զամենահնարութիւնն Աստուծոյ եւ ասեն. անհնար է Բ բնութեանցն կատարեալ մի բնութիւն լինել. եւ կեղծաւորելով Բ բնութեանցն Բ տաւնս առնեն. զմիւսն Քրիստոսի ծննդեան եւ զմիւս եւս յայտնութեամբն գալ Քրիստոսի ի մկրտութիւն։

Յիւր հաւատոյ բանսն գրէ Նեստոր այսպէս. Անփոփոխելի եւ անայլայլելի Բանին Աստուծոյ երկուս բնութիւնս խոստովանիմ. Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ եւ մարդ կատարեալ ի զաւակէ Դաւթի եւ Աբրահամու։ Գրէ դարձեալ. Ոչ Բանն Աստուած հանդերձեցաւ պատանաւքն ի Յովսեփայ, այլ մարմինն։ Գրէ դարձեալ. Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ։ Գրէ. Զերկակսն որոշեմք առ Քրիստոս զբնութիւնսն. զի կրկնահաս բնութեամբն. իսկ արժանաւորութեամբն մի։ Գրէ. Իբրեւ զմի որդի երկրպագեմք զառեղն եւ զառողն. բայց զբնութեանցն զանազանութիւնսն ճանաչեմք։ Գրէր երանելին Կիւրեղ զՆեստորէ եւ ասէր. Այս է Նեստորի չարափառութիւն,

զի կեղծաւորի խոստովանիլ թէ մարմնացաւ, մարդացաւ Բանն Աստուած, բայց զմարմնանալոյն զաւրութիւնն ոչ գիտելով՝ Բ· խոստովանելով բնութիւնս։ Դարձեալ գրեն Նեստոր եւ վարդապետն իւր Թէոդիտոն այսպէս· Ոչ ասեն Բ երեսք այլ մի· յայդ բնութեանցն որոշելով առ Քրիստոս։

Յորժամ նզովեցին զատեցեալն Աստուծոյ զՆեստոր հրամանաւ արքունի երկաթի կապանաւք տարան ի հեռարնակ տեղիս յաքսորս ի Խուժաստան արեւելք ընդդէմ Պարսից։ Իսկ նորա կամեցեալ մտանել ի Հայոց աշխարհն եւ գիտացեալ ազգին Հայոց՝ քարավէժ արարին· եւ բազում հալածանաւք եւ նախատանաւք դարձուցին յաշխարհն Պարսից· եւ եղեւ խաղաղութիւն եկեղեցւոյն Աստուծոյ։

Ի սուրբ ժողովն մեծարեն զԿիւրեղ եւ էր յարացեալ։ Եւ ասաց «Պայծառ է մեզ բանս եւ չնորհաւք լցեալ»։ Եւ միւս «Պայծառ տեսանեմ զդասակցութիւն ամենայն սրբոց»· ընդ նմին եւ այլ խոստովանութիւնս հաւատոյ։ Նոյնպէս եւ Ջենոբ եպիսկոպոսի եւ միաբան ժողովոյն ազդեալ սուրբ Հոգին եւ մեծաւ գոհութեամբ երգէին զերգս զայս սրբոյ Երրորդութեանն· «Փառք ի բարձունս Աստուծոյ»· եւ կարգեցին ի ժամ առաւաւտուն որպէս ի Նիկիա զՀաւատամք եւ ի Կոստանդնուպաւլիս զՄաչեցարն, եւ կարգեցին կանոնք վասն պէսպէս յանցանաց։

Յայնժամ երանելին Կիւրեղ Թղթով

ծանուցանէր Յոհաննու Անտիոքացւոյ եպիսկոպոսին զամբարշտութիւնն Նեստորի։ Եւ առաքեն արեւելեանքն եպիսկոպոսքն որ յայս կոյս Ովկիանոսի զՊաւղոս Եմեսացւոյ եպիսկոպոսն առ սուրբն Կիւրեղ, զի լիցի խաղաղութիւն ընդ միմեանս։ Եւ եղեւ խաղաղութիւն եւ միաբանութիւն Անտիոքացւոցն եւ Աղեքսանդրացւոցն։ Իսկ ի լուծանելն Նեստորի կալաւ զաթոռ Հայրապետութեան Կոստանդնուպոլսի Մաքսիմիանոս զամս Գ· եւ զկնի նորա Պրոկղ· եւ զկնի Պրոկղի երանելին Աբիանոս։

Յորժամ դարձաւ մեծն Կիւրեղ յաթոռն իւր՝ յետ աւուրց ինչ վախճանի· եւ ձեռնադրեցաւ յաթոռ Հայրապետութեան Աղեքսանդրի զաշակերտն իւր զսուրբն Դէոսկորոս զշառաւիղն սրբոց հարցն, հմուտ փիլիսոփայական հմտութեանց, լցեալ հաւատով եւ սիրովն որ ի Քրիստոս եւ յամենայն կողմանց կարող էր աւգնել հաւտին Քրիստոսի։

<Վկայութիւնը ի Հարց>

Տեառն Կիւրղի եպիսկոպոսի։ — Մարմնանայ առանց փոփոխելոյ անտեսանելին· ծնանի ըստ մարմնոյ անսկիզբն· զարգանայ ըստ մարմնոյ հասակի որ բնութեամբ ամենակատարն է· եւ չարչարանաց համբերէ որ քան զչարչարանսն գեր ի վերոյ է· ոչ որով էրն համբերեաց թշնամանաց, այլ որով եղեւ ընկալաւ զամենայն չարչարանսն։ Անքննելի է ծննդեանն աւրինակ, քանզի ոչ ոք զինքն

*տեսանեն միտք. զի ծնաւ հաւատամք. բայց թէ ո՞րպէս կամ որով աւրինակաւ իբրեւ անխնդրելի եւ անհասանելի լռութեամբ պատուեսցի:*

*Սուրբ եպիսկոպոսին Պաւղոսի Եմեսացւոյ ասացեալ յաղագս Որդւոյն Աստուծոյ: — ԶՈրդւոյ բնութիւնն զՀաւր բնութիւնն ասեն ասէք. թէ աւտար ի Հաւր բնութենէ, զայս ասել կամին. լսել ի մէնջ եթէ Հաւր բնութենէ, զի հաստատեսցեն հասարակ լինել Որդւոյ բնութեան. եւ եթէ աւտար ի Հաւր բնութենէ, ապա աւտար ի Հաւր գոյացութենէ. այլ մեք զՈրդի ոչ Հաւր բնութեանն ասեմք եւ ոչ աւտար ի Հաւր բնութենէ, այլ յատուկ բնութիւն Որդւոյ, որպէս Հաւր բնութիւնն Հաւր. քանզի բնութիւնն հասարակարար ասի եւ յատկապէս. հասարակ բնութիւն Հայր եւ Որդի եւ Հոգի սուրբ. եւ յատուկ Հայր կամ Որդի կամ Հոգի սուրբ, յատուկ նոյն է եւ որ ինչ հասարակն եւ զատ ի թուոյ. եւ հասարակն է որ ինչ յատուկն զատ ի թուոյ, որպէս զմի ինչ մարդկային հասարակ բնութիւնն զամենայն մարդ եւ զոմն մարդ յատուկ բնութիւն. եւ է յատուկն մի մարդ կենդանի, բանական, մահկանացու, մտաց եւ հանճարոյ ընդունակ: Արդ, որպէս ասի յատուկն հասարակ, վասն ոչ ընդունելոյ թիւ, եւ ոչ այլ ինչ զատի ի հասարակէ, վասն զի (զմի՞) մի սահման ունելոյ, այսպէս ոչ ասի Որդւոյ բնութեանն Հաւր*

*բնութիւն, եւ ոչ այլ ինչ զատ ի Հաւր բնութենէ:*

*Նորին Պաւղոսի: — Հարցանէ ցքեզ երկարնակն եթէ Երրորդութեանն բնութի՞ւն մարմնացաւ ի սուրբ Կուսէն, եթէ այլ ումն բնութիւն: Եւ դու զգոյշ լեր, քանզի վրիպեցուցանող է հարցումնդ· զի թէ ասես Երրորդութեանն բնութիւնն մարմնացաւ, ասէ՝ ապա Հայր եւ Հոգի մարմնացաւ· վասնզի մի՛ է բնութիւն Երրորդութեանն: Եւ եթէ ասես, թէ այլ բնութիւն մարմնացաւ, նա ապա ուրեմն ոչ մինն յԵրրորդութենէն մարմնացաւ, այլ ումն մարմնացաւ: Բայց դու ուղղակի ձեւացո՛ զբանն եւ ասա ցնա, թէ դու նման իմն ձեւացուցանես զքո բանդ· այսպիսի իմն որպէս յորժամ հարցանէ ոք զմարդ, եթէ զհրեշտակի՞ ունիս բնութիւն, եթէ զսատանայի· որ ոչ այն է եւ ոչ այն: Արդ ես ոչ զԵրրորդութեանն բնութիւն ասեմ մարմնացեալ որ հասարակն յայտնի է, եւ ոչ զայլ բնութիւն· բայց զմի դէմ, որ է Որդի, որ զկերպարանն առեալ վասն Հաւր ուսաք ճշմարտապէս· եւ որոշի Որդի ի Հաւրէ, այլ ոչ բաժանի: Արդ ես զնոյն ասեմ մարմնացեալ ի սուրբ Կուսէն յատուկ առանձնաւորութիւն եւ բնութիւն եւ ոչ բաժանեալ յԵրրորդութենէն· վասն զի հասարակ է Երրորդութեանն մի բնութիւն, մի տէրութիւն եւ մի Աստուածութիւն եւ մի արարչական զաւրութիւն եւ որ ինչ սոցին նման: Արդ որ հասարակն է, նոյն եւ յատուկ եր–*

կաքանչիւրոցն առանց բաժանելոյ եւ առանց այլայլութեան. վասն զի ոչ ոք յԵրրորդութենէն աւտար եւ ոչ ծառայ եւ ոչ արարծական եւ ոչ արտաքուստ ի ներքս մտեալ:

Ի. Յաղագս երկրորդ ժողովոյն Եփեսոսի: Յորժամ հրաժարեաց յաշխարհէս հիմն եւ աշտարակն հաւատոյ Կիւրեղ, աղանդ անիծելոյն Նեստորի դարձեալ բորբոքէր յիւրոց աշակերտացն ի Փղաբիանոսէ, որ էր հայրապետ Կոստանդնուպոլսի. սկսաւ ուսուցանել զՆեստորի հայհոյութիւնն: Իսկ Եւտիքէս ոմն վանական, որ էր ի կղզւոջն ի Կոյի, առադրէր ընդդիմակս Փղաբիանոսի մի բնութիւն ասել չփոթեալ եւ խառնակեալ, գլ. Ը արարեալ: Եւ քանզի ոչ խոստովանէր զԲանն Աստուած առեալ մարմին ի սրբոյ Կուսէն եւ լինել մարդ, այլ ասէր ոչինչ էառ ի Մարիամայ, բայց միայն մարդ եւ բնութիւն եւ կերպարանաւք գտեալ իբրեւ զմարդ եւ ոչ ճշմարտութեամբ: Եւ ժողովեալ Փղաբիանոսի զհոմախոհ եպիսկոպոսունսն իւր եւ լուծանէր ի պատուոյ զԵւտիքէս մոնոզոնն: Յայնժամ գիտացեալ երանելին Թէոդոս Թագաւորն զհակառակութիւնս նոցա՝ հրամայեաց Բ. ժողով լինել յԵփեսոս առ ի քննութիւն Փղաբիանոսի եւ Եւտիքոսի. եւ առ ի տեսանել զՏումարն Լեւոնի զԴժան գլուխն, զոր գրեաց առ Փղաբիանոս վասն Եւտիքէ մոլորութեանն, յորում Բ. բնութիւնս խոստովանի մարմնացելոյ Բանին Աստուծոյ եւ Բ կերպարանս եւ Բ ներգոր-

ծուլթիւնս եւ ըստ Նեստորի տուն Բանին Աստուծոյ խոստովանի զկուսածին մարդն եւ յետ ծնանելոյ Կուսին, ապա աստ զԲանն Աստուած բնակիլ ի մարդն· քանզի ասէր այսպէս յԺԲ գլուխ պատմութեան իւրոյ հայհոյութեանն· եւ Որդի մարդոյ, ասէ, վայր եկեալ յերկնից, յորժամ Որդին Աստուծոյ զմարմինն առ անտուստ ի Կուսէն, յորժամ ծնաւ առ ընկալաւ իւր մարմին, եւ սոսկ մարդ ասէ չարչարեալ եւ մեռեալ ի խաչին: Եւ յայնժամ ժողովեցան եպիսկոպոսք Մ, որք էին գլխաւորն սուրբ ժողովոյն· Յոբնաղ Երուսաղէմի, Դէոսկորոս Աղեքսանդրի, որ էր գլուխ եւ առաջնորդ ժողովոյն, որ հաւատացաւ նմա ի Թագաւորէն· Դոմնաս Անտիոքին՝ հոմխոհ Նեստորի, Յոհան Եգիպտացւոց աշակերտ Նեստորի, Իբաս Ուռհայեցի, որ զԹուղթ տումարին գրեաց եւ զովեաց զՆեստորի հայհոյութիւնն եւ ամբարշտութիւն ասաց զԿիւրղի խոստովանութիւնն· զայս եւ այլ բազում ինչ առ Մարի[1] գրեաց· Դիոդորիտոս Կիւրոս քաղաքի, աշակերտակից Յոհանու Եգիպտացւոյ, Նեստորի մոլորութիւնն. եւ էր հակառակ Կիւրղի Աղեքսանդրացւոյ, վասն որոյ զպրութիւնս արարեալ Բժան գլխոյ ընդդէմ Կիւրղին Բժան գլխոյն նզովիցն կարգեաց ըստ Թէոդ<որ>ոսի Մամուեստացւոյն, որ ասէր հաճութեամբ բնակիլ ի մարդն զԱստուած Բանն· քանզի յերրորդ գլխի հայհոյութեան իւրոյ ասէր

[1] Զ. մայրն իւր:

այսպէս. Ոչ ի կուսէ ծնեալ Աստուծոյ կերպարանն, այլ տաճար բնակիչ ունելով ըստ Պաւղոսի ձայնին. «Քանզի ի նմա ասէ բնակել հաճեցաւ ամենայն լրումն աստուածութեան». եւ ի յերկրորդ ժԸ գլուխն ասէր այսպէս. Իսկ պիտի հաւատալ Տեառն ցուցողին երկուց բնութեանցն, որ ասէր ցՀրէայսն. «Լուծէք զտաճարս զայս եւ զերիս աւուրս կանգնեցից զսա». քանզի ցուցանէ լուծեալ զտաճարն եւ կանկնիչ զԱստուած. ուրեմն ոչ է չարչարեալ Աստուած, այլ ի մէնջ Աստուծոյ առեալ մարդն: Ղեւոն Հռոմայեցի ոչ եկն ի ժողովն, այլ փոխանակ իւր առաքեաց տալ բերել զգիրս Դժան գլխոյ հայհոյութեանն իւրոյ: Եւսեբի Դորեղու առ Աբխանոան գրեալ յառաջագոյն:

Յայնժամ սուրբն Դէոսկորոս եւ ամենայն ժողովն որ յԵփեսոս, գրեն ի Հայք հրամանաւ թագաւորին՝ առ սուրբն Յուսէփ հայրապետն Հայոց եւ առ Ղեւոնդ եպիսկոպոսն զալ ի ժողովն Հայոց եպիսկոպոսաւքն. վասն զի չիք հնար առանց Հայոց լինել մեծ ժողով ի Հռոմ վասն երդմանն եւ կապակցութեանցն, որ ընդ սուրբ եւ աստուածասէր թագաւորացն էր Կոստանդիանոսի եւ Տրդատայ: Իսկ նոքա ոչ չոգան առ ժողովն, վասն զի ամենայն Պարսիկս մինչեւ ի Հնդիկս շարժեալ գային ի վերայ աշխարհին Հայոց առաջին պատերազմն: Արդ ի յայամ ժամանակիս էր պատերազմն սուրբ Վարդանանցն ի վերայ արեան գետոյ: Արդ յաղագս քրիս-

տոսական հաւատոյն կարգեալ եղան երկուս պատերազմս. վասն զի յԵփեսոս զՔրիստոս Աստուած եւ Տէր եւ արարիչ երկնի եւ երկրի քարոզեցին. եւ յաշխարհն Հայոց ի վերայ Քրիստոսի աստուածութեանն մեռանել յանձն առնուին: Եւ յայնժամ գրեալ առ Նոսա սուրբն Յուսէփ հանդերձ ամենայն եպիսկոպոսաւքն Հայոց եւ անիծեալ զՓղարիանոս եւ զԵւտիքէս ընդ ամենայն հերձուածողս:

Իսկ ժողովն որ յԵփեսոս սահմանեցին ըստ հարցն խոստովանութեանն եւ զնշանակ հաւատոյն կնքեալ մի բնութիւն Աստուծոյ մարմնացելոյ ասացին: Իսկ Եւտիքէս խոստովանէր զյանցանս իւր եւ նզովէր զհայհոյութիւնն եւ զաղանդն իւր. եւ գիր խոստավանութեան տայր ժողովոյն, որ ասի Վիրեղոն. եւ ըստ հրամանի կանոնացն ընկալեալ լինէր, զոր յետոյ ի նոյն աղանդս դարձաւ. եւ այլ հոմախոհքն ոչ դարձան յիւրաքանչիւր հայհոյութենէ, զորս նզովեաց սուրբ ժողովն ասելով. Որ ոք ասասցէ զՔրիստոս Բ բնութիւն, անիծեալ լիցի յԱստուծոյ: Յայնժամ երանելին Դէոսկորոս լուծանէ ի պատուոյ զհոմախոհսն Նեստորի զՓղարիանոս, զպաղատան եպիսկոպոս, որ բարկութեամբ հարեալ յԱստուծոյ յետ Ը. աւուր սատակէր. խոտեցին եւ զՏումարն Լեւոնի եւ անիծեալ իբրեւ զՆեստորի զհայհոյութիւնն, լուծանէին եւ զԹէոդորոս զԿիւրոս քաղաքի եպիսկոպոսն եւ զԻբաս Եդեսացւոց եպիսկոպոսն եւ Յոհան Եգիպտացւոց եպիսկոպոսն եւ

*զԴոմնասէ Անտիոքայ եպիսկոպոսն եւ փոխանակ նորա ձեռնադրեալ եղեւ ի ժողովէն եպիսկոպոս Մաքսիմանոս։ Եւ Դիոսկորոս եւ ամենայն ժողովն ասացին յերգոցն Կիւրղի ձայնիւ այսպէս. Ի սուրբ Երրորդութենէն ծանեաք զՏէր մեր Յիսուս Քրիստոս զԲանն Աստուած եւայլն։ Եւ եղեւ խաղաղութիւն եկեղեցւոյ Աստուծոյ յաւուրն Թէոդոսի արքայի զամս Բժ։ Իսկ Յոբնաղ Երուսաղէմացի գաղտ պահեալ զաղանդն իւր յահէ սուրբ հարցն։ Իսկ Իբաս Ուռհայեցի զղջացեալ տայր գիր խոստովանութեան սուրբ հարցն յայտնեալ զյանցանս իւր եւ անիծեալ զաղանդն իւր. բայց յետոյ ի նոյն դարձաւ։*

*ԻԱ. Յաղագս ժողովոյն Քաղկեդոնի։ — Արդ յետ փոխելոյ Թէոդոսի բարեպաշտ արքայի եւ Կիւրղի Աղեքսանդրու հայրապետի։ Եւ վասն զի զաւակ ոչ գոյր աստուածապակեալ թագաւորին Թէոդոսի՝ թագաւորութիւնն անկանէր ի Պուղքէր, որ էր քոյր սուրբ թագաւորին Թէոդոսի, որ նախ զկուսութիւն պահէր կեղծաւորութեամբ եւ ապա կին եղեալ Մարկիանոսի։ Եւ Պուղքէր յառաջագոյն եղեալ էր յաղանդոյն Նեստորի։ Եւ յաղագս պատճառանաց ինչ դեղ մահու արբուցանէր Թէոդոսի թագաւորի եւ լրբաբար առեալ զՄարկիանոս ոչ ի թագաւորական ազգէ։ Իսկ Մարկիանոս էր աղանդակից Նեստորի եւ թագաւորեաց նախանձով։ Եւ էր ի Քրիստոսի գալստենէն մինչեւ ի ժողովն Քաղկեդոնի ամս ՆՀԳ. յԵփեսոսի*

*ժողովոյն Լէ ամ, ի յուլիս ամսոյ ի ԺԶՆ· եւ յառաջին ամէն Աբրահամու ՄՆՀԵ ամ: Մարկիանոս ԽԳ թիւ թագաւորացն:*

*Սա յերկրորդ ամի թագաւորութեանն իւրոյ հրամայեաց ժողով մեծ լինել ի Քաղկեդոն ի մայրաքաղաքն Բիւթանացւոց: Եւ քինախնդիր լեալ լուծմանն Նեստորի եւ նորին համախոհ եպիսկոպոսացն՝ հրապուրեալ ի Պաւղքերէ զուգակցէ իւրմէն, վասն զի էր սիրելի Փղաբիանոսի: Եւ առաւել յորդորեալ զժողովոյն զումարումն, զի էր աղանդակից Նեստորի· եւ դեռ եւս կենդանի էր ի կողմանս Խուժաստանաց· զոր հրամայեաց Մարկիոն ածել զՆեստոր· զի ընկալեալ լիցի ի ժողովն Քաղկեդոնի· իսկ ի դառնալն Նեստորի բարկութիւն յԱստուծոյ հասեալ ի վերայ նորա եւ եղեալ որդնալից որպէս զՀերովդէս սատակեցաւ ըստ արժանեաց իւրոց նեխեալ որովայնն եւ հոտեալ փոր նորա եւ հրով տոչորեալ ամենայն անդամք նորա: Եւ էին ժողովեալքն ի Քաղկեդոն ՈԼՋ եպիսկոպոսաց սրբոց եւ անսրբոց, որք էին գըլխաւորքս այսորիկ· Դէոսկորոս Աղեքսանդրու, որ գլուխն էր Բ· Եփեսոսի· Յոբնաղ Երուսաղէմի, Մաքսիմիանոս Անտիոքայ, Ստեփանոս Եփեսոսին, Ղեւոն Հռոմայ, Եւսեբի Դորեղու, Անատաւլիս Կոստանդնուպոլսի:*

*Յայնժամ գրեցին ի Հայք միաբան ժողովն հրամանաւ թագաւորին Մարկիանոսի առ սուրբն Յուսէփ Հայրապետն եւ առ Ղեւոնդ*

եւ առ Սահակ եպիսկոպոս զալ ի ժողովն, զորս, ոչ ընկալան զհրամանս նորա, այլ յետոյ զխոտացեալ զհայհոյութիւն ժողովյն Բաղկեդոնի՝ անիծեալ զժողովն Բաղկեդոնի եւ զՏումարն Լեւոնի ընդ այլ հերձուածողսն: Արդ ի յայսմ ամի եղեւ Բ պատերազմ Վարդանանց, որ եւ կատարեցան:

Յայնժամ հրաման ետ Թագաւորն զատուցանել զԴէոսկորոս ի միաբանութենէ եպիսկոպոսացն: Եւ խնդրեաց Թագաւորն դնել սահման հաւատոյ ըստ գրեցելոցն Լեւոնի հայհոյութեանն: Յայնժամ հրամայեաց Յորնաղ Երուսաղէմի եպիսկոպոսն Ասկիղիպիդայ սարկաւագի Կոստանդնուպոլսի առնել սահման հաւատոյ եւ դնել ի նմա զԲ-ուց բնութեանցն եւ զմէկլինն խոստովանել· որում առ երկեղի հաւանեալ եպիսկոպոսքն՝ Թերեւս զերծցին եւ ետուն զգրեալսն առ Թագաւորն: Իսկ Թագաւորն ոչ ընկալաւ, այլ ետ տանել առ Նեստոր զգիրս զհայհոյութեան Թղթոյն Լեւոնի ի Հռոմ: Եւ իբրեւ ընթերցան մասն ինչ զառաջինսն զաղաղակ բարձինեալ ամեն միաբան եպիսկոպոսքն· Այսոցիկ ոչ հնազանդիմք եւ ոչ հաւատամք· վասն զի այս Պաւղոսի Սամոստացւոյ է բանքս· այսպէս եւ ոչ Նեստոր հայհոյեաց, որ այսպէս էր գրեալ ի գիրս Լեւոն Հռոմայ· Աստուած խոստովանիմ ըստ այնմ, որում ի սկզբանէ էր Բանն եւ Բանն էր առ Աստուած եւ Աստուած էր Բանն· եւ մարդ խոստովանիմ ըստ այնմ, որում Բանն մար-

մին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ: Դարձեալ՝ մինն փայլէր սքանչելագործութեամբն եւ միւսն չարչարանաւքն ստորանկեալ: Գրէ դարձեալ Իմաստութեամբ շինողին իւր տուն, քանզի Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ: Գրէ դարձեալ Բազցնուլն եւ ծարաւիլն վաստակելն եւ ննջելն խոստովանիմ բարէ մարդոյ, այլ ի հինգ հացէն զհինգ հազարսն յագեցուցանել, եւ Սամարացւոյն զջուրն կենդանական շնորհել եւ ի վերայ մկանանց ծովուն գնել եւ զկոհակս այտմանց ծովուն ի վերայ սաստել մրրկին եւ խաղաղացուցանել՝ աներկրայապէս Աստուծոյ խոստովանիմ: Գրէ դարձեալ. Պահէ երկաքանչիւր բնութիւնն անհատաբար յինքեանց յատկութիւնն եւ ոչ բարձան կերպարանք ծառային եւ Աստուծոյն: Գրէ դարձեալ, Եթէ ոչ էբարձ զբնութեանցն զանազանութիւնն վասն միաւորյն, այլ տուեալ ողջ պահեաց զիւրութիւնն զերկաքանչիւր բնութեանցն: Եւ այսպիսի բանիւք ծածկեալ զհայհոյութիւնն իւր խորամանկութեամբ եւ բազմահնար արուեստիւք: Իսկ եպիսկոպոսացն ճանաչել զկեղծաւորութիւնն Լեւոնի՝ ի բաց ընկեցին յինքեանց զգիրս նորա:

Յայնժամ Թագաւորն հանդերձ կնաւն եկեալ առ միարան եպիսկոպոսունսն եւ եկաց առ նոսա զաւուրս Գ., խաւսէր ընդ նոսա հնարիւք: Իսկ ժողովականք ոմանք յերկեղէ, ոմանք ակնառութեամբ Թագաւորին

եւ թագաւուհւոյն եղեն հաւանեալ նորաձայնութեանն պիղծ հայհոյութեանն թղթոյն Լեւոնի. զորս յառաջագոյն նզովեցին եւ դարձան եւ եղեն ընդ ինքեանց նզովիւքն. ընկալան զանիծեալն Թէոդորիտոս, զոր լուծին ի պատուոյ քահանայութեան, որ էր յաշակերտացն Նեստորի. զորս կացուցին գլխաւոր ժողովոյն Քաղկեդոնի: Ընկալան եւ զԻբաս Ուռհայոյ եպիսկոպոսն եւ գրեցին սահման հաւատոյ ըստ Լեւոնի հայհոյչի եւ Թէոդորիտեայ մոլորութեանն, որ հաւասարին Նեստորի անիծելոյն եւ Թէոդոս եւ Դիոդորի եւ Պաւղոսի Սամոստացւոյ եւ Արտեմոնի կատարեալ հայհոյութեանն նմանեալ: Յորում կայ յետ սակաւուց այսպէս. Խոստովանիմք միաբան ամենեքեան զՏէր մեր Յիսուս Քրիստոս ըստ աստուածութեանն ի Հաւրէ եւ ըստ մարդկութեանն ի Կուսէն միածին յերկուց բնութեանցն՝ ոչինչ բառնալով զբնութեանցն զանազանութիւնն վասն միանալոյն, այլ առաւել ողջ պահելով զյատկութիւն երկաքանչիւրոյ բնութեանն եւ մի դէմ եւ մի անձն խոստովանելով, վասն զի մի իւրեանց ամբարշտութիւնն յայտնեսցի՝ զՆեստոր պատճառանաւք նզովեցին: Իսկ որք ոչ հաւանեցան՝ զնոսա աքսորեցին. զՊետրոս Անտիոքացի, զՏիմոթէոս եւ զԱնատոլի զնորին եղբայրն եւ զմեծն Դէոսկորոս զհայրապետն Աղեքսանդրու. զորս եւ հերձուածողս անուանեցին եւ խորհրդակից Եւտիքէի ասացին. եւ ընդ նոսա աքսորե-

ցաւ նախ ի Կիզիկոն եւ ապա յԵրակլիա. եւ ապա ի Պանփիլպաղոնիա. եւ անդ կակարեցաւ բարի վկայութեամբ եւ խոստովանութեամբ ի Քրիստոս Յիսուս մեծ վկայն Քրիստոսի սուրբն Դէոսկորոս:

Յետ ժողովոյն Քաղկեդոնի թագաւորեաց Զենոն: Սա գրեաց յամենայն կողմանս աշխարհին Յունաց եւ Հռոմայեցւոց, որ կոչի Հէնէտիկոն, այս է սահման ուղղափառութեանն, որ ունի սահման հաւատոյ. եւ նզովեցին զժողովն Քաղկեդոնի, եւ որք Բ բնութիւն խոստովանին. եւ եղեւ խաղաղութիւն ամենայն եկեղեցւոյ: Իսկ Հռոմայեցիքն ամբարտաւանեալք վասն իւրեանց նախնական հայհոյչին Լեւոնի՝ մնացին ի նոյնն: Եւ եղեւ այս ի մի ամի թագաւորութեանն Զենոնայ: Եւ ի նմին ամի եղեւ սաստիկ շարժ ի Հռոմ, մինչեւ նեխեցաւ երկիրն ի դիականցն բազմութենէ: Եւ ի նմին ամի դարձաւ Տիմոթէոս յաթոռն իւր յԱղեքսանդրիա հրամանաւ թագաւորին. եւ յետ Բ ամի վախճանեցաւ:

Իսկ յորժամ Յուստինոս թագաւորեաց Յունաց եւ Հռոմայեցւոց, նա նորոգեաց զաղմկեալ ժողովն Քաղկեդոնի յԲ. ամի թագաւորութեան իւրոյ: Սա շինեաց զսուրբ Սոփի հակառակ Սողոմոնի արքայի, զի առաւելեսցի քան զնա փառաւք: Սա փոխեաց զԾնունդն Քրիստոսի ի յունվարի Զ.էն ի դեկտեմբերի ԻԵ., ոչ հաճեցաւ ընդ եղեալն առաքելոց որ մինչեւ ցայսվայր տաւնեցաւ

ամս ՇԿԲ: Արդ սովաւ բուսաւ աղանդն Արտեմոնի: Եւ եկաց սա յաթոռ թագաւորութեան ամս Թ: Յուստինոս Երկրորդ· սա եղեւ աստուածամարտ· ի սորա ԺԳ ամին եղաւ թուականն Հայոց· եւ ի բաց կացին ի հայհոյութենէ Յունաց եւ Հռոմէց:

ԻԲ. Հայոց ժողովն է: — Առ սովաւ եղեւ ժողով Հայոց ի Դուին քաղաքի ի Ներսիսէ հայրապետէ Հայոց, որ ասի երկրորդ Ներսէս. եւ հաստատեցին զհաւատն Նիկիայ:

ԻԳ. Իսկ Յուստինոս աստուածամարտ գոլով, զոր ոչ յաջողակի յորդորումն զիտացեալ: Բենդաղոս Հռոմայ հայրապետն հրամայեաց ժողով առնել. եւ հաստատեաց զհայհոյութիւնն Քաղկեդոնի եւ զտումարն Լեւոնի: Իսկ Յուստինոս հաւանեալ նմա եւ հրամայեաց ժողով մեծ լինել ի Կոստանդնուպոլիս, որ կոչի Ե·երրորդ ժողով: Եւ հրաման հանեալ թագաւորն, թէ եպիսկոպոս կամ հայրապետ, որ ոչ քարոզեսցէ զժողովն Քաղկեդոնի ընդ սուրբ ժողովս, ելցէ ի պատուոյ եւ ի վիճակէ իւրմէ: Յայնժամ տէր Անթիմոս Կոստանդնուպոլսի հայրապետն եւ այլ բազում եպիսկոպոսք յանձն առին լինել հալածական վասն անուանն Քրիստոսի եւ հաստատուն պահել զճշմարտութիւն հաւատոյ սրբոց հարցն. ընդ որս եւ Յուլիանոս եպիսկոպոսն Ալիկառնոյ Կիպրացւոց քաղաքի ոչ հաւանեցան պիղծ սահմանադրութեան ժողովոյն Քաղ–

կեղոնի: Իսկ ժողովեալ եպիսկոպոսունքն հաստատեցին զիւրեանց հայհոյութիւնն, Դժան գլուխս, զորս հաստատեաց ամբարիշտն Յուստինոս: Սա առաքեաց զաւրս ի քաղաքն Երուսաղէմ, զի փոխեսցեն զաւր սուրբ քառասներորդացն:

Յուստինոսն այս երրորդ ամ կամեցաւ բառնալ զաղանդ ժողովոյն Քաղկեդոնի. եւ բազումք երկրպագեցին զԹագաւորն. եւ ապա դաւողական մահ նմա հասանէր: Հայհոյիչքն եւ աղանդակիցքն Քաղկեդոնի դեղ մահու տուեալ վճարեցին զնա ի կենացս եւ ի նմին ժամու յառաջին հայհոյութիւնն, որ Թագաւորեաց ամս Թ.:

ԻԴ. Յաղագս Կոստանդնեայ կայսերն: — Կոստանդին որդի Կոստանդնի, թոռն Հերակլի. ի սորա Բ.որդ ամին առաւ Դւին ի Տաճկաց. եւ եղեւ համար գերութիւնն ԼԷՌ: Ի սորա աւուրս եղեւ ժողով ի Հռոմ քաղաքի ՃԾ եպիսկոպոսաց եւ մոնոզոնաց բազմաց, զոր արար Մարտինոս Հռոմայ հայրապետն, որ ասէր ի վերայ Քրիստոսի երկուս կամս եւ երկուս ներգործութիւնս, ըստ երկու բնութեանցն. եւ գրեցին անափոռս առ Թագաւորն, կոչել ի միաբանութիւն ինքեանց. իսկ Թագաւորն Կոստանդնուպոլսացւոցն եւ Աղեքսանդրացւոցն եւ Փարանացւքն ոչ հնազանդեցան Հռոմայեցւոցն. վասն զի Թէպէտ զերկուց բնութիւնն ըստ քաղկեդոնացւոցն խոստովանին, այլ ոչ ընկալան զաւելորդել զհայհոյութիւնն

Հռոմայեցւոց, որք Բ կամս եւ Բ ներգործութիւնս ասացին ի վերայ Բանին Աստուծոյ: Իսկ Հռոմայեցիքն հաստատեցին զխուրեանց հայհոյութիւնն որ ի նախնոյն Լեւոնէ էր· եւ նզովեցին զՍէրգիս եւ զՊիւրոս եւ զՊաւղոս եւ զԿոստանդնուպոլսի եպիսկոպոսն եւ զԿիւրոս զԱղեքսանդրի եպիսկոպոսն եւ զԹէոդորոս Փճրանայ եպիսկոպոսն եւ սփռեցան յխրաքանչիւր վիճակս: Եւ յետ սակաւ աւուրց տատաքեցին Կոստանդնուպոլսեցիքն ի Հռոմ եւ եւուն ածել կապանաւք զՄարտինոս Հռոմայ հայրապետն ի Կոստանդնուպոլիս եւ աքսորեցին ի Բոսփորայ եւ այլ երկուս ոմանս ընդ նմա: Իսկ յետ սուղ ինչ ժամանակի երեւեցաւ Մաքսիմոս ոմն փիլիսոփայ· եւ էր միայնակեաց ի Կոստանդնուպոլիս նորին աղանդոյն Մարտինոսի· որ ասէր Բ կամս եւ Բ ներգործութիւնս ի վերայ Քրիստոսի եւ ըմբռնեալ զՄաքսիմոս հրամանաւ թագաւորին տանջեցին բազում չարչարանաւք· եւ ծայրատեալ զնորա զլեզու եւ զձեռս աքսորեցին այլովք ընկերաւք յաշխարհն Ղազիկեցւոց, որ եւ անդէն սատակեցաւ: Իսկ Կոստանդին նեղեալ ի զաւրացն Տաճկաց եւ գնացեալ զաւրաւք ի պատերազմ ի Սիկիլիա եւ անդէն սպանաւ:

ԻԵ. Յաղագս Բ. Կոստանդնեայ կայսեր: — Կոստանդին Բ.: Ի սորա աւուրս եղեւ ժողով ի Հռոմ առ Ագաթոնաւ հայրապետիւն ՃԽԵ եպիսկոպոսաց, առ ի քննութիւն վասն Մարտինոսի հայհոյութեանն: Եւ

որք ժողովեցան, զնոյն աղանդն հաստատեցին զՄարտինոսի եւ զՄաքսիմոսի զմոլորութիւնն, որ Բ կամս եւ Բ ներգործութիւնս հաստատեցին, ասացին ի վերայ Քրիստոսի եւ եկեալ անափառս առ Թագաւորն Կոստանդին այլուքն հանդերձ աղաչեցին զնա, զի եղիցի միաբանութիւն Հռոմայեցւոցն եւ Կոստանդնուպոլսայեցւոցն: Եւ հաւանեալ Թագաւորն գրեաց առ ամենայն կողմանս Յունաց եւ Հռոմայեցւոց աշխարհին, զի եղիցի ժողով ի Կոստանդնուպոլիս առ Թագաւորն: Յայնժամ ժողովեցան եպիսկոպոսք ՃԿԵ եւ միաբանեալ հաստատեցին զհայհոյութիւնն Մարտինոսի եւ Մաքսիմոսի եւ հանեալ զպեղծ ոսկերս նոցա նշխարս կարգեցին եւ գրեցին նոցա յիշատակարան ընդ սուրբս լինել: Եւ զԱնտիոքացին նզովեցին, զի ոչ հաւանեցան հայհոյութեանն. նզովեցին զՄակար եպիսկոպոսն Անտիոքայ, եւ զՍտեփանոս նորին աշակերտն եւ զՊաւղաւ fnnli միայնակեացն, զորս եւ աքսորեցին. եւ ամենայն Հռոմայեցիքն հաստատեցին զհայհոյութիւնն Լեւոնի եւ յաւելին ի վերայ Բ կամս եւ Բ ներգործութիւնս եւ Բ կերպարանս. եւ գրով հաստատեցին:

Կոստանդինոս այս ԾԷ թիւ թագաւորացն եւ ի Քրիստոսէ ՁԻ. ի Քաղկեդոնէ ՄԽԲ ամ. ի Թուականէն Հայոց ՃԾԳ ամ: Եւ որ գրեալս է՝ ժողովք ԻԵ. զոր հաւաքեցաք ժողովք Յունաց եւ Հռոմայեցւոց:



# ԱՆՈՒԱՆԱՑԱՆԿ *



* Ցանկիս մէջ առնուած չեն հրատարակուած Բնագիրներու եւ Յիշատակարաններու մէջ եղած անուններ։

